ՄԵԾ. ՏԻԳՐԱՆ ԱԹՐՕԿԵԱՆՑԻ ԾԱԽՔՈՎ.



# ՓԱՐՐԱՐԻ ՔԱՐՈԶՆԵՐ

Թարգմանութիւն ռուսերէնից

*Ս. Մ.*

ՎԱՂԱՐՇԱՊԱՏ
ՏՊԱՐԱՆ ՄԱՅՐ ԱԹՈՌՈՅ Ս. ԷՋՄԻԱԾՆԻ
1901

ՄԵԾ. ՏԻԳՐԱՆ ԱՖՐԻԿԵԱՆՑԻ ԾԱԽՔՈՎ.



# ՖԱՐՐԱՐԻ

# ՔԱՐՈԶՆԵՐ

Թարգմանութիւն ռուսերէնից
Ս. Մ.

ՎԱՂԱՐՇԱՊԱՏ
ՏՊԱՐԱՆ ՄԱՅՐ ԱԹՈՌՈՅ Ս. ԷՋՄԻԱԾՆԻ
1901

*Ըստ Բարձր հրամանի Նորին Ս. Օծութեան Վեհափառ Քահանայապետի և Ս. Կաթուղիկոսի ամենայն Հայոց Տ. Տ. ՄԿՐՏՉԻ Դիւանս թոյլատրէ հրատարակութիւն թարգմանութեանս, որ ընդ անուամբս «Փարրարի Քարոզներ», չը գտանելով արգելս ինչ յաղագս տպագրութեան, ուստի և վաւերացուցանէ ստորագրութեամբ և դրոշմամբ կնքոյ Հայրապետական Դիւանի։*

Ի 10 Փետրուարի 1900 ամի
Ի Ս. Էջմիածին։

Դիւանապետ՝ ԿՈՐԻՒՆ ՎԱՐԴԱՊԵՏ.

Թ. 151

**Տ. Կ.**

## ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

### ԹԱՐԳՄԱՆՉԻ ԿՈՂՄԻՑ.

---

Այս քարոզներն և հեղինակի անունը կարօտ չեն մեր յանձնարարութեան։ Անտարակոյս թէ հասարակ ժողովուրդը և թէ կրթուած դասակարգը հաւասարապէս պիտի հրահանգուին այսպիսի ընտիր ընթերցանութիւնից, էլ չենք ասում, թէ մեր հոգևորականութիւնը որչափ օգուտ կարող է քաղել այս կարգի օրինակից, ուր որ խոր հաւատքը, ժամանակակից լուսաւոր գիտութիւնը և ազդուապէս խօսելու հանճարը՝ այնպէս սերտ կերպով միացած արտափայլում են։

Քարոզները փոխադրուած են ռուսերէն թարգմանութիւնից։ Ընթերցանութիւնը դիւրացնելու համար, շատ տեղերում ազատօրէն ենք թարգմանել. մինչև անգամ մի քանի ոտանաւոր մեր իսկ գրականութիւնից ենք յարմարեցրել։ Այլ և ուսումնասիրութիւնը աւելի բեղմնաւոր կացուցանելու համար, ծանօթութիւններում նշանակել ենք Ս. Գրքից վկայութիւնները, որ

բնագրում չկային նշանակած, և որոնք քիչ դըժ-
ուարութիւն չպատճառեցին մեզ, քանի որ հեղի-
նակը շատ անգամ շատ հեռուից է ակնարկում։
Թող ներուի մեզ, եթէ տեղ տեղ չենք ցոյց
տուել համապատասխան վկայութիւնը։

Վկայութեանց ամբողջական տները բառացի
առաջ ենք բերել 1895 թ. Կոստանդնուպոլսում
հրատարակած Աստուածաշունչ մատեանից, որ
տպագրուած է «համեմատութեամբ եբրայական
և յունական բնագրաց»։

Ի վերջոյ պարտք ենք համարում շնորհա-
կալութիւն յայտնել մեծապատիւ պ. Տիգրան
Աֆրիկեանցին, որ յօժար սրտով կամեցաւ նիւ-
թապէս օժանդակել այս քարոզների հրատարա-
կութեան։

Ս. Մ.

1900 թ. փետրուարի 8.
Վաղարշապատ.

## Ա.

# ՔՐԻՍՏՈՆԻ ՊԱՐՏՔԸ

> «Եւ կայէն ասէ. Չգիտեմ, միթէ պահպան իցեմ եղբօրն իմոյ»։
>
> Ծնն. Դ. 9.

Որչափ դիւրին և բնական է, որ օրհնենք և փառաբանենք քրիստոնէական եկեղեցւոյ վսեմութիւնն ու յաղթութիւնները։ Եկեղեցին մարդուն առնում է իւր գրկի մէջ, արդէն նորա մանկութեան հասակում։ Նորան օրհնում է մկրտութեան աւազանի մէջ, արժանացնում է հաղորդութեան. երբ որ փոքրիկ արարածը կեանքի շէմքի մէջ է դնում իւր ոտքը, եկեղեցին նորան յիշեցնում է նորա պարտականութիւնների ծանրութիւնը, զգուշացնում է ամէնին իրանց հանդիպելիք մեծամեծ վտանգներից։ Ամուսնական տաճարի առաջ երիտասարդ փեսային և մանկահասակ հարսին օրհնում է, բացատրելով նոցա միաւորութեան սրբազան խորհուրդը և հրաւիրելով, որ նոքա իրանց զաւակներին և ընդածիններին դաստիարակեն Աստուծոյ երկիւղով և հաւատով։ Եկեղեցին այցելում է հիւանդներին, զօտեպնդում է նոցա սիրտը իւր գթութեամբ, զօրացնում է աղօթքով, մխիթարում է վշտակրութեան և սիրելիներից զրկուելու ժամանակ, խնդում է խնդացողների հետ, տրտմում է տրտմողների հետ։ Եւ երբ որ գալիս է մահը, երբ որ մարդու երկրաւոր կենաց ընթացքը վախճան է առնում և Տէր Աստուածը նորան շնորհում է հան-

գիտ, եկեղեցին մխիթարում է կենդանի մնացածներին, իսկ հանգուցեալին իջեցնում է օրհնած հողի մէջ՝ յարութեան կատարեալ յուսով, թէ յաւիտենական կեանք պիտի վայելէ։—Այս պարտքերից մեծ մասը կատարում են՝ յատկապէս այդ արարողութիւնները կատարելու համար կոչուած՝ նորա պաշտօնեաները։

Սակայն երբէք եկեղեցու գործք չեն համարուել միայն լոկ ծիսակատարութիւնները։ Այլ աշխարհքի ընկերական, քաղաքական, մարդասիրական կեանքը իւր հսկայական յառաջադիմութիւններով՝ շատ կողմերից պարտական է նաև եկեղեցուն։ Սա ապացուցեց ապականուած և կործանուող աշխարհքին, թէ մարդս ազատ է, սա փրկեց սկզբնական քաղաքակրթութեան մնացորդները բարբարոսների բուռն արշաւանքների կործանարար հեղեղից, և մինչդեռ քրիստոնէութիւնը պապականութեան ներքոյ պիտի հաշէր և մաշուէր՝ նորոգուած եկեղեցին աւելի բարձր կոչման համար սթափեցրեց։ Խաւարի և անիշխանութեան երկար դարերում եկեղեցին սէր էր արծարծում դէպի մարդկային թշուառ մերժեալները։ Խտրութիւն չկար ցեղերի և ազգերի մէջ, եկեղեցին հովանի էր բոլոր մարդկանց, վասն զի Յիսուս Քրիստոս խաչուեցաւ բոլորի փոխարէն։ Եկեղեցին վահան է դառնում թէ՛ գերիների համար բանտերում, և թէ՛ սորուկ սուսեմարտների համար կրկէսներում։ Բարոյական օրինօք նա կատաղի պատերազմ էր վարում աւատականների բռնակալութեան և անգթութեան դէմ, Թէպէտ նիւթապէս թոյլ բայց հոգով անընկճելի գոլով՝ եկեղեցին աշխարհակալութեանց բրտութեան ժամանակներում քաղաքակրթիչ ազդեցութեան կենտրոն եղաւ և հզօր դրդիչ դարձաւ արուեստի, ուսման, դաստիարակութեան և բարեգործութեան համար։ Ներկայ ժամանակում շատերը անիրաւաբար արհամարհում են եկեղեցու գործերը, բայց

*Հազիւ թէ այնպիսի երկմտող մարդ գտնուի, որ պատ֊
կառանօք չխոնարհէ անոր անցեալ գործունէութեան
առաջ։ Այն ժամանակ եկեղեցին կատարել է իւր կո֊
չումը, բայց այժմ ևս իւր ջանքերը չպէտք է պակա֊
սին, թերևս աւելի բարձր պիտի հանդիսանան․ Սա֊
կայն խնդրեմ հասարակ դարձած սխալմունք չգործէք
և չկարծէք, իբր թէ «եկեղեցի» բառով ես ուզում եմ
«հոգևորականութիւն» յայտնել։ Ինչ որ եկեղեցու հա֊
մար ասացի, այն ասել եմ առ հասարակ քրիստոնէ֊
ութեան և մանաւորապէս քրիստոնեաների մասին, թէ
հոգևորականների և թէ աշխարհականների մասին։ Իմ
կարծիքով աւելի վտանգաւոր բան չկայ եկեղեցու հա֊
մար, այսինքն ձեր բոլոր քրիստոնեաների, Յիսուս Քը֊
րիստոսի հաւատքը դաւանող ամբողջ մարդկութեան
համար, քան այն գաղափարը, իբր թէ «եկեղեցի» բա֊
ռով պէտք է հոգևորականութիւն հասկանալ, իբր թէ
եկեղեցու բոլոր գործը պէտք է կատարուի միմիայն
մարդկանց մի դասակարգի ձեռքով, իսկ միւսները ձեռ֊
քերը ծալած պիտի մնան։*

*Մինչև որ չմերժենք այս մոլար գաղափարը, մեր
յառաջադիմութիւնն ու ստոյգ յաղթութիւնները ան֊
հնարին կլինին․ ես այսպէս եմ կարծում, թէ երբ որ
իւրաքանչիւր քրիստոնէի մէջ զարթնի հասարակաց ա֊
ղէտի համար իւր անձնական պատասխանատուութեան
գիտակցութիւնը, այն ժամանակ ժողովուրդը կը փրկուի
կարօտից, իսկ ամբողջ աշխարհքը՝ բարոյական ու մտա֊
ւոր այլասեռութիւնից․ Միայն քրիստոնէական եկե֊
ղեցին կարող է բարւոքել աշխարհքը, իսկ քրիստոնէա֊
կան եկեղեցին—դուք էք, եկեղեցու առողջ և հիւանդ
անդամներդ, Քրիստոսի կենդանի որթի պտղաբեր և
փչացած ոստերդ, Նորա հոգևոր շինութեան ընտիր և
անպիտան քարերդ։ Ձեզանից ամէն մէկի վերայ պարտք
կայ անդուլ ջանքերով բարւոքել աշխարհքը, ուր մա֊*

ածն որ խօսեցի։ Եկեղեցին տկարանում է, անոր խորհուրդները անկատար են մնում, բարեպաշտութիւնը չի կիրագործվում, լոյսը թուլանում է, եթէ ձեզանից իւրաքանչիւրը եկեղեցու գործը իւր անձի գործ չի համարում, եթէ Աստուծու պարգևած տաղանդները բոլոր չափով կարողութեան չէք գործածում նորա ցուցած ուղղութեամբ։ Դուք—ոչ միայն հոգևորականներդ, այլ բոլոր ճշմարիտ քրիստոնեաներդ, դուք և ձեր զաւակները Աստուծու օրհնեալներ էք, այսինքն դուք ամէնքդ, որ այս տեղ ներկայ էք, իւրաքանչիւրն առանձնապէս և բոլորդ ի միասին, եթէ ի հոգւէ փոքր ինչ հաւատարիմ էք ձեր կոչման և պաշտօնին։ «Այլ դուք ազգ էք ընտիր, թագաւորական քահանայութիւն, ազգ սուրբ, ժողովուրդ սեպհական, որպէս զի ցուցանիցէք զառաքինութիւնս այնորիկ, որ զձեզ ի խաւարէն կոչեաց յիւր սքանչելի լոյսն»: 1)

Մի՛ կարծէք, թէ ես այդ խօսքերով ուզում եմ գէթ մի նշանախեցի չափ նուազեցնել հոգևորականութեան իսկական նշանակութիւնը։ Շատ և մեծ են նորա պարտականութիւնները. գործում պահանջվում են այդ դասին պատկանող մարդկանց բոլոր ջանքը, դոցա բոլոր իմաստութիւնը, դոցա և մեր աղօթքներու բարեխօսութիւնը։ Ես չեմ ուրանում դոցա նշանակութիւնը, այլ առաւելապէս ուզում եմ ձեր սրտի մէջ զարթեցնել ձեր անձնական պատասխանատուութեան գիտակցութիւնը։ Մեր քահանաներիս մէջ, որ կոչուած ենք Յիսուսի Քրիստոսի սպասաւոր լինելու, ոչ ոք չի գտնուի, որ սրտի խորքում չզգայ իւր անկատարելութիւնները. քահանաներից ամէն մէկը ամօթով և վշտացած զգում է, որ ինքը անարժան ծառայ է Աստուծոյ։ Սակայն ինձ այնպէս է թւում, որ եթէ գործին

1) Ա. Պետ. Բ. 9:

նայենք ոչ թէ անհատական տեսակէտից, այլ ընդհանուր առմամբ, այն ժամանակ ամբողջ դարը այնքան էլ յուսահատ վիճակի մէջ չի երևայ, և մենք կարող ենք գոհանալ Աստծուց։

Ես չգիտեմ աւելի բեղմնաւոր հաստատութիւն, աւելի հզօր գործիք յօգուտ առաքինութեան և կրօնասիրութեան, քան եկեղեցու մէջ հաստատուած ծըխական հոգաբարձութիւնը: Մեր մայր եկեղեցու չուրջը շատ ծուխեր կան, ուր բազմաթիւ մարդիկ ապրում են ոչ միայն սարսափելի աղքատութեան մէջ ընկղմած, այլև, աւա՜ղ, արբեցութեան, մոլութեան, յանցաւորութեան ճանկերի մէջ բռնուած։

Դոցա մէջ կը գտնուին այնպիսի ոճրագործներ, որոնք ցածութեան և նենգութեան չափ ու սահման բնաւ չեն ճանաչում։ Արդ անուրանալի իրողութիւն է, որ միայն հոգևորականութիւնն է գործում գէթ հոգեչահութեամբ յօգուտ այդպիսի թշուառութեան ուստերց և դստերց, յօգուտ այդ ամբոխների, որոնք կորստեան մատնուած են։ Եւ ամէնից աղքատ ծուխերի մէջ կատարվում է եկեղեցու գործը իւր բոլոր մասերով, մինչդեռ միւս հոգսերի գործերը շատ անգամ գրեթէ բոլորովին թափուր են մնում։ Ես ճանաչում եմ բազմամարդ փողոցներ, ուր որ ծաղկում են աղքատութեան և արբեցութեան, անառակութեան և յանցագործութեան փոխադրիչներն ու բազմապատկիչները։ Ոչ պետութեան, ոչ բարեգործութեան, ոչ ընկերվարութեան, ոչ զանազան կրօնական աղանդների քաժնին չեն վերաբերում դոցա մասին հոգացողութիւնը, և միայն եկեղեցին շատ ու քիչ ճգնում է, որ այդպիսի փողոցներում ապրող մարդկանց մարմինը կազդուրուի և հոգին վսեմանայ: Միւսները պերճախօսում են, ճամարտակում են, մեղադրութիւններ են թափում, —իսկ եկեղեցին միայն կարօտութեան, արհամարհու-

թեան, կատաղի հալածանաց ներքոյ՝ լուռ կատարում է իւր հանապազօրեայ աննշշուկ գործը, շատ անգամ առանց որ և իցէ արտաքին օգնութեան։

Հաւատացած եմ, որ անգլիական եկեղեցու գործը անգին է, նոյն իսկ կարգապահութեան և բարոյականութեան տեսակէտից։ Մի՞թէ քի՞չ բան է, որ մի քանի ծուխերում չկայ ոչ մի աղտոտ փողոց, ոչ մի խուլ անկիւն, ոչ մի աղքատիկ սենեակ, ուր որ այցելելիս չլինի քահանան կամ նորա տնօրինութեամբ գործող անձը։ Դուք գիտէք, որ քաղաքիս բնակութիւնը տարեցտարի բազմանում է եօթանասուն հազար հոգով, թէ միշտ այգանալու հետ արեգակը լոյս է շնորհում տասը հազար նորածին մանուկին, որոնք նախընթաց օրը գոյութիւն չեն ունեցել, թէ իւրաքանչիւր դարից յետոյ չորս միլիոն կերակուր պահանջող բերաններ են աւելանում։ Բնակչութիւնը առաւելապէս քաղաքներում է բազմանում, ուստի և քաղաքների խնամակալութիւնը աւելի դժուարէ, քան ուրիշ տեղերում։ Միայն ծխական հոգաբարձութեան լայն ծաւալումը կարողանում է զուգընթացութեամբ ձեռք կարկառել այնքան ստուար աճելութեան։ 1880-ին մի ծուխ բաղկացած էր երեք հարիւր բնակիչներից, որոնք ապրում էին կանաչ դաշտերում, գրեթէ բացօթեայ։ Այնտեղ կարգուեցաւ մի երիտասարդ քահանայ, տարեկան երկու հարիւր ֆունտ ռոճկով, ուր չկար ոչ եկեղեցի, ոչ աւանդատուն և ոչ դրամական մայրադումար։ Վեց տարուայ միջոցում բնակչութիւնը երեք հարիւրից հասաւ մինչև վեց հազար հոգի, մեծ մասով աստանդական աղքատներից, տարէցտարի շարունակելով միշտ մի քանի հարիւր աճեցնել իւր թուի վերայ։ Երևի շուտով այդ համայնքը մօտ քսան հազար ծխական կունենայ։ Հազիւ գործակատարի ռոճիկ ստացող քահանան այդքան ժամանակում հիմնեց առաքելութեան բնա-

կարան, ժամանակաւոր եկեղեցի, բարձրագոյն ուսումնարան պատանիների համար և տարրական դպրոց փոքրր տղաների համար, ուր որ սովորում են հինգ հարիւր մանուկ։ Այդ վեց տարուայ ընթացքում եօթ հարիւր մանուկ արձակեց նա իւր կիրակնօրեայ վարժատաններից, չորս հազար ֆունտ հանգանակեց եկեղեցու շինութեան համար, ուր ինքն էլ անձամբ վճարում էր իւր հետ աշխատող մշակներին՝ տարէնը ոչ նուազ, քան հազար ֆունտ։ Այդ ծխի քահանան օրինակ կարող է համարուել, թէ ինչպէս ծխական հոգաբարձութեան գործը բարգաւաճում է այն հազարաւոր մարդկանց ձեռքով, որոնց որ մենք հազիւ թէ նշմարում ենք։ Ես կարծում եմ, թէ երբ որ բացուէին մարդկանց նեղ սըրտերը, մենք միայն այդ սքանչելի օրը կիմանանք հոգեւորականութեան մեծագործ նշանակութիւնը ժողովըրդեան ՛այն մեծամեծ պէտքերը հոգալու համար, որոնք անտարակոյս բիւր անգամ աւելի են, քան եկեղեցական սուղ և չնչին եկամուտները, որոնց շուրջը ագահ բազէները այնչափ աղաղակով և թևեր թափ տալով պտտում են։

Բայց այսօր ես կ՛ուզէի ձեր սրտի մէջ ազդել, թէ այդ մեծ գործը չպէտք է յանձնուի միայն անհատական անձնաւորութիւնների ջանքերին։ Չեմ կարող շողոքորթել և բացարձակ ասում եմ, թէ աշխարհական մարդկանցից շատը (կամ լաւ է ասել մեծագոյն մասը) կատարեալ անփութութեամբ է վերաբերում հոգևորականութեան հոգսերին ու նեղութիւններին, և շատ անգամ թողնում է, որ դա խոր չքաւորութեան մէջ և ուժից վեր պարտաւորութիւնների ծանրութեան տակ՝ տառապէ և մաքառէ։ Իսկ եթէ այնու ամենայնիւ դարձեալ մի քանի անհատներ կարողանում են այնքան խոշոր բարիքներ գործելու, հապա ինչ մեծագործութիւններ չէին կատարուի, եթէ իւրաքանչիւր

քրիստոնեայ՝ այր և կին՝ զգար իւր պարտքն ու պատասխանատուութիւնը այս հասարակաց հոյակապ գործի մէջ։

Որքան ես գիտեմ, երբորդ դարուց սկսուեցաւ հետզհետէ տարածուել այն սխալ գաղափարը, թէ քահանաները ոչ թէ հովիւ են, ոչ թէ աւետարանի քարոզիչ են, ոչ թէ ուսուցիչ են և Աստուծոյ սպասաւոր, ինչպէս որ իրօք իրանց սեպուհ պարտականութիւնն է, այլ իբր թէ դոքա մարդկանց մէջ կազմում են մի գերբնական զատուցեալ դաս, մի կատարեալ կաստա, որի պաշտօնն է մերձեցնել մարդկութեան մնացած մասը Աստծուն, և որ պարտաւորութիւն պիտի ունենայ միւսների սեփական բարեպաշտութեան պարտքերը յանձն առնելու և ինքը միայն ուրիշի փոխարէն կատարելու։ Այս գաղափարի հետեւութիւններից մէկն այն եղաւ, որ աշխարհականները հրաժարուեցան իրանց յատուկ և անկապտելի սրբազան առանձնաշնորհութիւններից և ի վերուստ իրանց շնորհած ազատութիւնից, կամ ուրիշ խօսքով՝ բարոյապէս մի ստորակարգի դերի դարձան։ Միւս հետեւանքն այն համոզումն է, թէ երկու տեսակ բարոյականութիւն կայ. մինը հոգեւորականների համար, միւսը աշխարհականների համար,— և թէ վերջինները կարող են առաջինների միջնորդութեամբ ստանալ իրանց պարտականութիւններից արձակում և մեղքերի թողութիւն։ Ուստի հոգեւորականութեան վերայ այնպիսի պարտքեր դրուեցան, որ պէտք է կրէին եկեղեցու բոլոր անդամները իրանք անձամբ։ Այժմ ամէնքը թուլասրտութեամբ իրանց շուրջը մէկին փնտռում են և քահանայութեան հետ բացականչում են.

Ո՞վ է մեր տեղը մեր մեղաց համար.
Արտասուք թափում աչքէն յորդառատ։

Ես չեմ կամենում հոգեւորականութեան մասին վիճաբանել. Ես փափագում եմ միայն յայտնել ձեզ

իմ դաւանանքը, իմ սրտի միտքը և այն արդարացնել ձեր առաջ։

Ի դիմաց այն ծանրակշիռ խնդիրների, որ մեր ազգի առաջ դրուած են, և այն վտանգների, որ ամէն կողմից մեզ շրջապատում են, եկեղեցու և համայն աշխարհքի միակ յոյսն է ճշմարտութիւն տարածելը. Միայն ճշմարտութեամբ կը պահպանուի քաղաքակրթութիւնը, որ գնալով աւելի քայքայվում է, քանի որ բնակիչների թիւը սկսում է անհամեմատ կերպով աճել. միայն ճշմարտութիւնը կարող է թուլացնել մոլութիւնների թունաւորութեան ծաւալական զօրութիւնը և առաջն առնել սպառնացող յեղափոխութեան ու կորստեան դէմ։ Եւ եկեղեցի ասելով, ես չեմ հասկանում միայն հոգևորականութիւնը, այլ հաւատացեալների համայն ժողովը։ Այն ծանրակշիռ և միշտ աւելի բարդուող խնդիրը պէտք է լինի ոչ թէ մասնաւորի՝ այլ ընդհանուրի գործ, ամենայն մարդու գործ, և ոչ թէ կղերականի՝ այլ ընդհանուր քրիստոնէութեան գործ։ Այն պէտք է լինի ամէնի գործ, և չէ թէ միայն մի քանիսների, այն և ոչ միայն քահանաների, այլ բոլոր հաւատարիմ քրիստոնեաների գործ: Մեծահանդէս Արմաքեդոնեան պատերազմի օրը, [1]) որ շուտ կսկսուի (եթէ տակաւին չսկսուած համարենք), յաղթութիւնը կախուած է ոչ թէ հատ հատ մի քանի անձնաւորութիւնների քաջութիւնից, այլ Աստուծոյ մեծ բանակի և համայն զինուորութեան գօտէպնդ շըղթայութիւնից, սրտերի համաձայնութիւնից, ձեռքերի զօրութիւնից, իւրաքանչիւր զինուորի մտաց յափշտակութիւնից, անձնազոհ հաւատարմութիւնից, այսինքն ձեր միջի իւրաքանչիւրից, ով որ քրիստոնեայ կոչուելու արժանաւորութիւն ունի։

---

1) Յայտ. ԺԶ. 16:

Ահա ես կուզենայի ձեզ տեսնել հէնց այդպիսի վիճակի մէջ։ Այս տեղ ժողոված արանց և կանանց մէջ ոչ ոք չկայ, որ իւր համապատասխան գործ չգտնէր ի փառս Աստուծոյ և յօգուտ մարդկութեան։ Այս գործը անձամբ միայն ձեզ չի վերաբերում, և գործն այն չէ, որ եկամուտ կամ որոշ պաշտօն ստանաք, և ոչ ձեր ընտանիքին կամ ձերայինների շահերին է պատկանում այն, այլ վերաբերում է ձեր ծխին, ձեր ընկերին, Անգլիային, ամբողջ մարդկութեան, Աստուծոյ եկեղեցուն, այս տեղ և բոլոր աշխարհքում։ Ոհ ինչպէս փափագում եմ ձեր սիրտը ընդգացնել այն հաւատով, թէ ամբողջ աշխարհի բարեկեցութիւնը կախուած է մասամբ ձեզանից, առանձնաբար իւրաքանչիւր քրիստոնէից, այր կամ կին մարդուց, հոգեւորականից և աշխարհականից, ուրեմն ոչ միայն եպիսկոպոսի ձեռքով ձեռնադրածից, այլ ի վերուստ աներևոյթ կերպով կոչուածից, որ որպէս հաւատարիմ և անկեղծ որդի Աստուծոյ՝ արժանանում է Հոգւոյն Սրբոյ շնորհաց։

Այսօր ես ուզում եմ ցոյց տալ ձեր այդպիսի պարտականութիւններից մէկը, որի համար ամէնքդ կոչուած էք։ Այդ է, որ ձգտէք ժողովրդեան բարոյական աստիճանը հարթելու, որ ըստ չափու կարողութեան պգուշանաք հին մոլութիւնների տարածմանից և նորերի ծագմանից, որ միշտ արթնացնէք և զգաստացնէք ժողովրդեան խիղճը։ Ո՞վ պէտք է պատասխանատու լինի այն մեղքերի համար, որով անցեալ սերունդների կեանքը նսեմացել է և այժմ եւս բիւրաւոր մարդկանց կեանքն է պղտորվում․ Ե՛ւ դուք և՛ ես աղէտաւոր պատասխանատու կը դառնանք մեր ժամանակի մեղքերի համար, եթե չենք ճանաչի մեր պարտքը։ Միթէ չե՞նք տեսնում արբեցութեան պարհուրելի նշովքը, անլուր վշտերի և սարսափելի տանջանաց պատճառը։ Մի թէ

չկա՞յ հեշտասիրութեան սոսկալի և լայնատարած ապականութիւնը։ Հապա բազմաթիւ հնարներով կազմակերպած խարդախութի՞ւնը, ստութիւնը, զրպարտութիւնը։ Միթէ մեզ շրջապատող մթութեան մէջ նետեր չե՞ն սլանում և աղջամուղջի մէջ դևեր չե՞ն պտտում։ Իսկ երեկեան չարութի՞ւնը, նրբաշաւիղ անառակութեան և աշխարհային մեղանչութեանց նոր ձևերը, որոնք յանկարծ երևում են՝ գիշեր ժամանակ բացուած թունաւոր ծաղիկների պէս։ «Միթէ պահապա՞ն եղեմ եղբօրն իմոյ», կասէք դուք։ Միթէ մեր ցաւը հերի՞ք չէ, որ ընկերի ցաւն էլ քաշենք, կասէք դուք։ Սակայն այն ոգին, որ ձեզ ասեցնել է տալիս, թէ դուք ձեր եղբօր պահապանը չէք—Կայէնի ոգի է։ Այդ է նախանձի, հեշտութեան, ինքնասիրութեան ոգի։ Այդ ոգւով ենք վարվում ամենայն ժամանակ, երբ որ աւերակ դարձած բնակարանների համար թանկ վարձ ենք առնում, երբ որ մեր փողոցները լցնում ենք պոռնիկներով, երբ որ քարուքանդ ենք անում միլիոնաւոր մարդկանց բաղդը, երբ որ արբեցութեամբ գայթակղեցնելով նոցա՝ ամենուրեք թունաւորում ենք մարդկային խաղաղութիւնն ու սրբութիւնը,

Այս է ոգի աշխարհական ընկերութեան, և ոչ թէ եկեղեցու, մամոնայի, և ոչ թէ Աստուծոյ, շահի, և ոչ թէ Քրիստոսի։ Այո՛, դուք և ես, մենք ամէնքս պատասխանատու ենք լիովին և բազմապատիկ կերպով, մեր համայնքի մեղքերի համար, Ձեզ ու ձեզ հարցուցէք, ճրագի լուսով հետախուզեցէք ձեր սրտի խորքերը և այնպէս հարցուցէք. «Արդեօք չե՞մ նպաստել, ուղիղ կամ կողմնակի կերպով, այս բոլոր չարութեան, արդեօք ձեռնտու չեմ եղել կամ մատներիս արանքներով չե՞մ նայել, երբ որ այդ բաները կատարուել են իմ աչքի առաջ։ Արդեօք իմ ազգի կամ ամբողջ մարդկութեան անէծքի արժանի աղէտների մէջ չե՞մ մասնակ-

ցել, միշտ կամ դիպուածով, զուարճութեան, շահասիրութեան կամ նախանձի պատճառով։ Արդեօք այդ բանով չե՞մ սևացրել իմ խիղճը»։ Ձեր մէջ շա՞տ մարդ կը գտնուի, որ այսպէս, հանգիստ խղճով, ձեռքը սրտի վերայ դրած, ինքն իրան անպարտ համարէ։ Ո՞րքան մարդ կարող է ասել, թէ երբէք, ոչ կրաւորապէս, և ոչ ներգործաբար, ոչ երկտասարդութեան, և ոչ հասուն տարիքում բաժին չեն ունեցել այժմեան մեղքերից։ Իսկ եթէ դուք անմեղ ևս լինիք, արդեօք ձեզանից շատե՞րը, քահանայ կամ աշխարհական, հանդիսացել էք որպէս ճշմարիտ հայրենասէր, որպէս անկեղծ քրիստոնեայ և որպէս արդար մարդ, որ ամենայն դէպքում մոռանալով իւր հանգստութիւնն ու դիւրութիւնը, առաքինական զինուորութեան մէջ է մնում. արդեօք արդար կողմի պաշտպա՞ն էք հանդիսանում և ձեր ձայնը միացնո՞ւմ էք այն մեծ հոգևոր զօրութեան մէջ, որ աներկիւղ արտասանելով ճշմարտութեան և սիրոյ խօսքերը, կարողանում է համարձակ մաքառել ընկերութեան մեղքերի դէմ և թեթևացնել աշխարհի տանջանքները։

Սիրելիք, մենք միայն մի կողմից լուսաբանեցինք եկեղեցու պարտականութիւնները, որ ձգտում է իւր բոլոր անդամներով Աստուծոյ արքայութեան արժանանալ։ Այդ պարտականութիւնն է, որ եկեղեցու անդամը այլ ևս ոչ մի անսուրբ բանի չմերձենայ, այնպէս, որ եթէ իրանից հարցնէին, թէ «ընտրեցէք այսօր թէ զո՞ պաշտիցէք. զաստուածս հարցն ձերոց . . . թէ զաստուածս Ամովրհացւոցն . . .», ինքը բոլոր սրտով պատասխանէր՝ թէ «այլ ես և տուն իմ պաշտեմ զՏէր»։ 1) Ի՞նչ էի ուզում տպաւորել ձեր մտքի մէջ, երբ որ խօսում էի յատկապէս իւրաքանչիւրիդ պարտականու-

---

1) Յեսու. ԻԴ. 15.

թեան մասին: Ո՞ւմն է ասում Պետրոս առաքեալը. «Դուք թագաւորական քահանայութիւն». միթէ ժողովրդից ընտրած երեցներին և սարկաւագներին: Ո՛չ, նա այդպէս անուանում է Աստուծոյ տիեզերական եկեղեցու բոլոր քրիստոնեաներին. այդ նա ասում է նաև ձեզ: Անշուշտ կը գտնուէին անմիտ մարդիկ, որ կասէին. «Չէ, մենք քահանայ չենք. մենք ինչ ունենանք, այն կարող ենք գործել: Ի հարկէ աններելի է, եթէ քահանայի մէկը հայհոյէ, վիճակ կամ քուէ խաղայ, անառակ կեանք վարէ, ընկերի խաղաղութիւնը թունալից ստութիւններով դառնացնէ, ուրիշներին մնացող արուեստով ապրուստ ճարէ, անազնիւ վաստակով հարստանայ, ծոյլ կեանքին վարժուի, անգթաբար միայն իւր դիւրութիւնը փնտռէ. իսկ մե՜նք ... մեր բանը ուրիշ է. մենք լոկ աշխարհական ենք, և մենք մեր անձը սուրբի տեղ չենք էլ դնում և չենք խառնվում կրօնական ու բարոյական խնդիրների մէջ»:

Ով, Տէր Աստուած. դուք հոգի չունի՞ք: Միթէ մահը ձեզ երբէք չի՞ հասնիլ: Միթէ Աստծու պատուէրները չէ՞ք լսել, թէ ինչ պարտ էք գործելու և ինչ՝ ոչ: Միթէ դուք անասունների պէս պիտի անշնչանաք և Աստուծոյ դատաստանի առաջ չէ՞ք կոչուի: Միթէ դուք աւելի չէ՞ք, քան խոզը, որ երկրի վերայ ապրում է միայն հեշտութեան և ագահութեան աղմով լցնելու իւր ստամոքսը: Ես կարծում եմ, ձեզանից միայն սակաւները կարող են այդչափ պիղծ գաղափարներով ապրել: Նոյն իսկ անհաւատները գիտեն, որ շատ ու քիչ դուք էլ մասնակից էք՝ խաւարի դէմ վարած՝ Աստուածային լուսոյ պատերազմին: Բայց ձեզանից շատերը համոզված են մեռած, երբ որ կարդացում են ուրիշների վրէն թողնել մարդու թիւնը անհամբերութեան դէմ, որ վաղ թէ ուշ կարող է ազգեր կործանել: Ձեր մէջ շատ մարդ կը գտնուի, որ այս տեղ, Աստուծոյ

տաճարում, ձեռքը սրտին դրած, Աստուծոյ առաջ
կարողանայ սուրբ սրտով խոստովանել. «Ես ոչ միայն
ինքս զգուշացել եմ անառակութիւններից, ոչ միայն
աշխատել եմ իմ օրինակով այդ բաների դէմ կենալ,
այլ այդպիսի կեանքը նախատել եմ, անարգել եմ որ-
պէս մարդ, որպէս քաղաքացի, որպէս քրիստոնեայ,
աշխատել եմ չարութեան բարգաւաճումը դադարեց-
նել: Մոլութեան դէմ մաքառել եմ, իմ մարմնական և
բարոյական կենաց բոլոր ջղերով»: Եւ այդ մաքառու-
մըն է հէնց այն գործը, որի համար Աստուած ձեզ կո-
չել է: Հերիք չէ, որ միայն անձնական երանութեան
մասին հոգաք և հանդիստ երգէք, թէ

Ես մնացի Տիրոջ կամքին հնազանդ,
Աղօթելով տիւ եւ գիշեր ջերմեռանդ.

Այո՛ այս քիչ է, եթէ, այսպիսի կեանքը միայն
անձին է վերաբերում: Մարդս ապրում և մեռնում է
ոչ միայն իւր անձի համար: Մեզանից ոչ ոք ազատ չէ
այն ընդհանուր գործից, որի համար որ Նոր կտակարա-
նը ամէնուս կոչել է: Դուք պէտք է պատերազմէք սա-
տանայի գործքերի դէմ, և սրտով ու արդեամբ բարձ-
րացնէք մարդկութեան բարոյական մակերևոյթը: Իս-
րայէլը տեսաւ, որ ինքն էլ մասն ու բաժին է ունեցել
Աքարի 1) կորստեան մէջ. դուք էլ ձեր բաժինը կը գըտ-
նէք Անգլիայի ամօթի մէջ. Ընդհանուրի խայտառա-
կութիւնը և ձեր խայտառակութիւնն է: Ո՛հ, եթէ այս
տեղից այն նորոգուած գիտակցութեամբ դուրս գը-
նայք, թէ դուք Աստուծոյ փառաց համար դեռ ևս ոչ-
ինչ չէք արել, բայց կամք ունիք այսուհետև անձնա-
զոհութեամբ մասնակցել Աստուծոյ մեծ պատերազմին:
Կենաց հեղեղի ի՜նչ լուսապայծառ ալիքով կը ողողուէր
մեր այս մեռնող աշխարհը: Միթէ մենք այսպիսի

---

1) Յես. է.

հեղեղի կարօտ չե՞նք։ Ո՛րչափ կոշտ պէտք է լինի մարդու սիրտը, որչափ կոպիտ պէտք է լինի նորա խիղճը, եթէ նա գոհ է իրերի արդի վիճակից։ Եթէ Լոնդոնի կամ ամբողջ Անգլիայի բոլոր եկեղեցիները ժամ եկողներով լցուած լինին (իսկ նոցանից շատերը գրեթէ միշտ դատարկ են մնում), դարձեալ ահագին քանակութեամբ մարդիկ կը մնային ժամից դուրս, մէջը տեղ չգտնելով։ Եթէ եկեղեցի յաճախելու մասին վիճակագրական տեղեկութիւնները ուղիղ են, ապա տասը մարդուց միայն մէկը կիրակի օր յաճախում է Աստուծոյ տաճարը,—ուրիշ խօսքով, քրիստոնեայ ազգի քրիստոնէական մայրաքաղաքի ամբողջ երեք միլիոն ժողովուրդը՝ չի կատարում կրօնասիրութեան ամենահասարակ պատուէրը։ Այն թիւը աւելի ևս կը նուազանայ, եթէ մենք ի հաշիւ առնենք միայն ս. հաղորդութեան մատչողների թիւը։ Թուով անհամեմատ աւելի են այնպիսի մարդիկ, որ մի օրում իրանց հարստութիւնն են շռայլում, գողութիւններով տներ են դատարկում, հազարաւոր խանութներում հոգով կորչում են, օղի վաճառելով են հարստանում, քան Աստծու տաճարի մէջ Աստծուն աղօթողները։ Մ՛իթէ ուրեմն զարմանա՞նք, եթէ սանդարամետը շուայտութեան և արբեցութեան ցեխն ու ապականութիւնը անդադար դուրս է թափում իւր գարշելի լճի ափերքը։ Մենք եպիսկոպոսներ ենք ուղարկում Աֆրիկէի կենտրոնական խորքերը, որ այն տեղ մարտիրոսական մահով նահատակուին, մինչդեռ մեր տների հէնց շէմքում դեռ ևս շատ բան կայ կատարելու։ Դո՛ւք, դուք ամէնքդ մասնակից էք չարութեան այս համերաշխ գործի մէջ։ Դուք չէք կարողանայ ձեր հոգուց սրբել այն բծերը, որ ուրիշների մեղքերից մնացած հետքեր են։ Ձեզանից ամէն մէկից աներևոյթ և աննշմար կերպով շուրջ ամենայն կողմը ձգվում և տարածվում են սարդի ոստայնի թելերը, որ

*անթուելի աղէտներ են բերում։ Իսկ եթէ ձեր թշնամական զգացմունքը որ և է բանի դէմ՝ այսպէս մահացու հարուած կարող է դառնալ իւր ազդեցութեամբ նաև ապագայ դարում, նաև միւս կիսագնդում, եթէ ձեր ներքին անպիտանութիւնը կարող է կորստեան մատնել տակաւին չծնուած սերունդները, եթէ ձեր դատարկ խօսքերը, յոռի վարմունքը այնպիսի արդիւնք կարող է առաջ բերել, որ ձեզ իսկ կը զարհուրեցնէ, —հապա, փառք Ամենակալին, նոյնպէս ազդել կարող է նաև ձեր բարի գործը. անշուշտ բարութիւնը կարող է ամփոփել հանդերձ հագնել և աշխարհքին օրհնութիւն բերող հրեշտակ դառնալ։ Ո՞հ, եթէ ձեզանից իւրաքանչիւրը կարողանար զգալ, թէ որքան մեծ է իւր պատասխանատուութիւնը մեր առօրեական կենաց հասարակաց չարիքի համար, թէ որչափ կարևոր է մեր անձնական ջանքը հասարակաց բարիքի համար, մենք այն ժամանակ կը տեսնէինք հին մարգարէութեան իրագործութիւնը, այն ժամանակ կը կատարուի Աստուծոյ խոստումը, որ ասել է. «Հեղից զհոգի իմ ի վերայ ամենայն մարմնոյ և մարգարէասցին ուստերք ձեր և դստերք ձեր. և ծերք ձեր երազովք երազեսցին, և երիտասարդք ձեր տեսիլս տեսցեն», և Լոնդոնը, և Անգլիական, և ամբողջ աշխարհը կարգի և կը փրկուի, ինչպէս որ խոստացել է Տէր Աստուածը։ 1)*

1) Յովէլ. բ. 28.

Բ.

# ՀԱՍԱՐԱԿԱՑ ԱՂԷՏՆԵՐ

*«Երանի որ խորհի զաղքատն եւ զտնանկն»։*
**Սաղ. Խ. 2։**

*Վերջին շաբաթուայ դէպքերը հարկաւ մտածել են տալիս ներկայ աղէտի մասին և խնդիր են ծագեցնում, թէ հարստութեան պաշտօնն ինչ է աղքատութեան վերաբերութեամբ։ Ամենայն դարում աղքատ և հարուստ մարդկանց բաղդը հակապատկեր է ներկայացրել, բայց հարաւային և արևելեան աշխարհներում աղքատութիւնն այնպէս սոսկալի չէ, քան մեր երկրում։ Դըժբախտաբար Անգլիայում կեանքը աւելի և աւելի կենտրոնանում է քաղաքներում, իսկ հակադրութիւնը հէնց այդ տեղերում աւելի խոշորութեամբ է երևում և աղքատութիւնը կատաղեցնում ու կուրացնում է ամբոխին, որ կարծում է, թէ բախտի անարդարութեան զոհ է դարձել, իսկ այդպիսի կարծիքը նշան է ընկերական անկման, սպառնացող կործանման։ Ի՞նչ էր հին Հռոմի կործանման պատճառներից մէկը։ Ի՞նչ էր ֆրանսիական յեղափոխութեան պատճառը,—անլուր չքաւորութեան իրական ծանրութիւնը՝ միացած անհոգ փարթամութեան խնդալից ցուցամոլութեան հետ։*

*Մի օր Լուդովիկոս ԺԵ. որսում էր անտառում, հեռու Վերսայլի ապականեալ պալատից։ Նորան հանդիպեց քուրջերով ծածկուած շինականը, որ մէջքին կրում էր դագաղ։ «Ի՞նչ հիւանդութիւնից է մեռել հանգուցեալդ», հարցրեց արքան։ «Սովից», պատասխանեց հպատակը. իսկ արքան երեսը շրջելով՝ խթանեց իւր ձին։*

Երբ որ Ֆուլոնից հարցուցին, թէ ինչո՞վ պիտի ապ-
րի ժողովուրդը, որ այնպէս ծանրաբեռնած է անտանե-
լի հարկերով, նա բրտութեամբ պատասխանեց. «Թող
խոտ ուտի»: Եւ ահա ամբոխը կատաղութիւնից գա-
զանացաւ, բռնեց նորան Փարիզի փողոցներում, ցցեց
նորա գլուխը նիզակի վերայ, և խլացուցիչ աղաղակ-
ներով լցրեց նորա բերանը խոտով.

Ի՞նչ է պատմութիւնը, եթէ ոչ անցեալ փորձա-
ռութեան ցոլացումն ի զգուշութիւն ներկայ ժամա-
նակի:

Այժմ պէտք է ոչ միայն քրիստոնեան, այլ ամե-
նայն հայրենասէր, ամենայն ընկերասէր մարդ՝ յանձա-
խակի և լուրջ կերպով մտածէ իւր պարտաւորութեան
մասին աղքատների վերաբերութեամբ: Հարկ չկայ եր-
կարաբանել, թէ ներկայ աղէտք որչափ աւելի սաստ-
կութեամբ է տարածուած, քան նախկինները. մեր
կարեկցութեան համար թող բաւական լինի արդէն
անոր սոսկ գոյութիւնը, և քրիստոնէի համար աւելի
սարսափելի տեսարան չի լինի, քան սովից մեռնող
ժողովրդեան շուրջ՝ անփոյթ կերպով հարստութեան վայ-
ելումը: Այսպիսի բարդ կեանք ունեցող ընկերութեան
մէջ, ինչպէս որ մերն է, ամենաչնչին պատճառներ սովի
դուռն են՝ բաց անում. բաւական է որ նորաձևութիւ-
նը փոխուի, նոր հարկ նշանակուի, պատահական գիւտ
երևայ, առևտուրը ուրիշ ընթացք ստանայ և այլն, և
այս ամէնը հազարաւոր մարդկանց կենաց վերայ խոր
ներգործութիւն կ՚ունենայ: Առաջիկայ կիրակի օրը
Հայդպարկում հաւաքուելիք այն ժողովրդեան թիւը,
որ ապրուստ չունի և աշխատելու գործ չի գտնում,
թերևս չափազանցութեամբ մեծացնեն, կամ կարելի է
թէ նոցանից շատերը վաստակից զրկուել են իրանց
անշնորհութեան կամ վարքի վատութեան պատճառով,
բայց կասկած չկայ, որ քաղաքում թշուառ մարդիկ

կան, որոնք իրօք բան, գործ, վաստակ են փնտռում, բայց չեն գտնում, չեն ստանում։

Լսեցէ՛ք, թէ մի պարսաւագիր ինչ բառերով է նկարագրում անգործ մնացողի վիճակը։ «Անգործ մնալ նշանակում է քիչ քիչ վաճառել կամ գրաւ դնել սենեակի այն չնչին կահ կարասիքը, որով մարդու օճախ, տուն տեղ է հիմնվում, նշանակում է ոտքերը մաշել վաստակ ճարելու համար, այն և յուսաբեկ, անօթութիւնից թուլացած մարմնով։ Ձեր աչքով տեսնում էք, որ ձեր կինը ստնդեան պակասութիւնից դալկանում է, զաւակներին դպրոց է ուղարկում առանց նախաճաշի, գիտէք, որ քանի աւելի լղարանում, մաշւում, քանի աւելի պատռտած շորեր հագնէք, այնքան աւելի քիչ կը բացուի բախտը, որ մի պարապմունք գտնէք։ Ամբողջ օր երկար ու ձիգ փողոցները զուր չափչփելուց յետոյ, յոգնած և թուլացած, վերադառնում էք տունը և լսում էք ձեր սիրելիների լացը քաղցածութիւնից։ Մըրսած, սոված դուք գայթակղվում էք և սկսում էք մըտածել, թէ միթէ գողութիւնը յանցանք է, եթէ կարող էք փրկել ձեր ընտանիքը սովամահից։ Լոկ այն մտածմունքը, թէ ձեր մահով ձեր աղջկերքը կստիպուէին աւելացնել կորած կանանց բանակը, պատում է ձեզ անձնասպանութիւն գործելուց։ Գիտենալ թէ կործանվում ես, անձամբ մեղաւոր չլինելով այդպիսի եղկելի վիճակից համար, — ահա թէ ինչ է նշանակում աշխատանք չունենալը»։

Մի համարէք, թէ չափազանցութիւն է այս պատկերը։ Ես դարձնում եմ ձեր ուշքը, ամբողջ ազգի ուշքը այդ իրողութեան վերայ և հարցնում եմ, ի՞նչ անենք, ինչպէ՞ս օգնենք այսպիսի թշուառութեան։ Տեսնենք, թէ ազգերն ու հասարակութեան զանազան դասերը ինչպէս են վերաբերել այդ բանին։ Ամենավատագոյն դէպքում երբեմն արհամարհել են և ան-

տարբեր են գտնուել, փակել են աչքերը և ուշադրու-
թիւն չեն դարձրել թշուառութեան վերայ։ Այս բո-
լորը հնարաւոր է, բայց երկար տևել չի կարող։ Պա-
տահում է, որ մարդիկ ահագին հարստութիւն են հա-
ւաքում, կեղեքելով աղքատներին և օգտուելով նոցա
աշխատութիւնից, իրանց շրջապատում են ամէն տե-
սակ ճոխութիւններով, տարէնը տասներկու ամիս ըն-
կըղմում են անհոգ, ունգութ, անձնապաշտական զը-
ւարճութիւններում։ Նոքա քարացած սրտով տեսնում
են իրանց շուրջը աղքատների բազմութեան մշտական
աճումը, իրանց ձեռնտուութիւններով քաշքշում են
գինի, թոյն, պոռնկութիւն և ամէն տեսակ գրգռիչ
նիւթեր վաճառողներին, մինչև որ հասարակութիւնը
լուծուի և Մեռեալ ծովի նաւաբեկութեան աւերակ-
ներին նմանի։ Այսպէս էր 1750 թուին Փրանսիայում.
Ժողովուրդը օրէցօր դառնում էր աւելի թշուառ, ա-
ւելի ապականուած, աւելի դաժան և խստասիրտ, ա-
ւելի դժգոհ, մինչև որ խուլ հեծեծանքն ու տրտունջը
հեղեղի և փոթորկի պէս պայթեց։ Ընկերական խըն-
դիրների նկատմամբ անփութութիւնը, արհամարհանքը
աններելի կերպով ձեռքեր լուանալը—մեծ անխելքու-
թիւն և նսեմ վարմունք է ազգի և վարիչների կողմից։

Միւս եղանակն է լաւ չխորհած միջոցների շտապ
շտապ գործածութիւնը, որ սարսափի երարանցութիւ-
նից է ծագում։ Այսպիսի միջոցներով աւելի սաստկա-
նում է աղէտը, ինչպէս որ Էտէլրէդի վարմունքն է ցոյց
տալիս, որ վերջ ի վերջոյ փրկանք պիտի վճարէր իրան
վերայ յարձակուող դանիացիներին, որոնց որ ինքը բախ-
տաւորեցնել էր ճգնում։

Ամենավատթար և լոկ միայն ժամանակաւոր մի-
ջոց է դառնում նպաստների անխտիր բաշխումը։ Այդ-
քանով չարիքն աւելի ճարակ է ստանում, օգնելով ա-
ւելի խաբեբայ խարդախներին, և չկարենալով նպաս-

տել իսկապէս կարօտեալներին։ Նպաստ բաժանողը՝ ողորմութիւն խնդրողի իսկական վիճակը չիմանալով՝ փորձուած մուրացկանի կեղծ ճչերի ու սուտ պատմութիւնների զոհ է դառնում, և իւր դրամով աւելի խաբեբայութիւն է քաջալերում։ Այս բանը ողորմածութիւն չէ, այլ ինքնախաբութիւն է, և կրկնակի նզովք է դառնում—այն է թէ տուողի համար և թէ ստացողի համար։ Խիստ վնասակար դասակարգ են կազմում այն մարդիկ, որոնք ողորմութիւն ստանալով՝ խրախուսվում են իրանց նախկին վիճակը շարունակելու, որով պատուհաս են դառնում հասարակութեան համար։ Լոնդոնի յանցաւորները, փորձուած գողերն ու աւազակները հազարաւոր անպաշտպան ընտանիքների մէջ իրանց պղծութիւններով ահ ու դող տարածողները, ամբարիշտները, անառակները, արբեցողները, փողոցների անկիւններում խմբուողները, պարտէզներ մաշողները և անմեղներին զրպարտողները, վայրագ անզգամները, որ անպաշտպան աղջիկների վերայ յարձակվում են և անօգնական կանանց ձեռքից քսակներ են պոկում,—սոքա ամէնքը վայրաքարշ, գիշակեր թռչուններ են, դէպի որոնց ամենայն ինքն իրան յարգող հասարակութիւն՝ պէտք է անողոք արդարութեամբ վերաբերի։ Հապա ողջ առողջ դատարկաշրջիկները, օգնութեան խնդրագիր շարադրողները, սուտ հաշմութիւններով և փախցրած երեխաներով խարդախ մուրացկանները—հազիւ թէ նուազ վնասակար և նուազ ապականուած լինին։ Այսպիսի անձինքներին ողորմութիւն տալով, դուք ոչ թէ ողորմութիւն էք անում, այլ վնաս էք բերում. «Խորհել զաղքատն»—մեծ, օրհնաբեր գործ է, բայց պատահական ողորմութիւն շռայլել անարժան արբեցող մարդկանց—անխոհեմութիւն և անմտութիւն է։

Նոյնպէս չար ազդեցութիւն են գործում և աւելի

լայն չափով՝ վատ կազմակերպած օգնութեան դրամարկղները: Ինչպէս որ վկայում են տեղեակ մարդասէրները, Լոնդոնի յայտնի թաղերի աղքատները կատարելապէս փչացել են, իրանց վերայ անխորհուրդ կերպով վատնած օժանդակութիւնների պատճառով: Աստուած օրհնում է միայն իմաստուն և բարեսէր ձեռքի նուէրները: Դրամների խոհեմ բաշխումը՝ խիստ դժուար գործ է: Աղքատները նոյնպէս չեն դարմանվում այնպիսի տնտեսական օրէնքների միջամտութեամբ, որոնք ծագում են մի կողմի բռնի սպառնալիքներից և միւս կողմի թոյլ զիջողութիւնից: Թող օրէնսդրութիւնը կատարէ, ինչ որ կարող է, բայց ոչ այնպէս, որ մի կողմից թողնէ աշխատաւոր մշակ դասակարգին աղքատանալու, միւս կողմից աւելորդ հարկերով ծանրաբեռնէ այնպիսիներին, որոնք բռնութիւն գործողներից պակաս չեն տանջվում, բայց նեղութիւնը քաշում են լուռ կերպով և համբերութեամբ: Ես զօր օր. բոլորովին հակառակ եմ ձրի ուսման: Աղքատից պահանջած կոպէկները՝ հարիւրից իննսունևինը դէպքերում առանց դժուարանալու են վճարվում: Միթէ այն մարդը, որ իր պատասխանատուութեան ներքոյ ընտանիք ունի, չէ՞ կարող վճարել իր զաւակի ուսման համար շաբաթը այնքան, որքան որ իրան նստում է իր մի գաւաթ գարեջուրը: Միթէ արդարութիւն է, որ մեր հարկերի բեռան վերայ երկու միլիոն էլ աւելանայ, լոկ միայն այն խորհրդով, որ մարդիկ դադարեն վճարել այն դրամի փոքրագոյն մասը, ինչ որ նոքա արդէն ծախսում են թութունի և «ջինի» համար: Թող ուսումնարան չվճարէ իրօք անկարողը, բայց վճար պահանջեցէք, եթէ անփութութիւնից և արբեցութիւնից է ծագում դրամ զլանալը: Նմանապէս աւելորդ եմ համարում, որ բոլոր մանուկները հասարակութեան հաշուով կերակրուին: Այդպիսի միջոցը յաջողութիւն

չունեցաւ հին Հռոմում։ Ի սէր Աստուծոյ, եթէ այդ հարկաւոր է անել, թող որ ծուխերի մասնաւոր բարեգործութեամբ կատարուի. ապա թէ ոչ, եթէ տէրութեան հաշուով կերակրենք, մի կողմից աղքատների վերայ հարկեր կածեն, միւս կողմից տան վարձը կը բարձրանայ։ Տէրութիւնը լաւ ծառայութիւն չի մատուցանի, եթէ ծնողներին սովորեցնէ, որ թէ նոքա իրանց մանուկներին պարտաւոր չեն պահպանել։ Ապա ես կարծում եմ դարձեալ, թէ հէնց որ մշակները գործ խնդրեն, իսկոյն պէտք չէ նոցա համար այնպիսի գործ ստեղծել, որ ոչ ոք ոքին պիտանի չի լինի։ Այս հնարն էլ չյաջողուեցաւ արդի Ֆրանսիայում։ Այդ միայն ժամանակաւոր հնար է, որով ժողովուրդը աւելի եւս հրապոյր է ստանում թողնել գիւղը և վազել գալ արդէն լըցուած քաղաքները, և ուրեմն հէնց այն չարիքն է մեծանում, որ պէտք է դարմանուէր։ Ինչ որ իրօք կարևոր է, արդարութիւն է, իմաստութիւն է, բարի է, ինչ որ իրօք օգնել կարող է (ձրի ուսման, ձրի ճաշի, գործ գտնելու նկատմամբ),—այն ամէնը կարելի է անել և իրօք կատարվում է գրեթէ ամէն ծխերում մասնաւոր կերպով և այնպիսի մարդկանց ձեռքով, որոնք որ սովոր են գործ չինել առանց թմբկահարութեան։ Անգլիկանեան եկեղեցու իւրաքանչիւր ծուխը, ուր հոգևորականները ու աշխարհականները իրանց պարտականութիւնները կատարում են, կարող է մշտական կամ բացառիկ թշուառութեան դէմ մաքառելու մարմին դառնալ։ Թէ հոգևորականների և թէ աշխարհականների համար այդ ասպարիզում շատ գործ կը գտնուի։ Յեղափոխական, ընկերվարական, համայնական վայրենամիտ երազութիւնները, դրամատէրին ոչնչացնելու կամ վախեցնելու ձգտումը, սեպհականութեան կապտումը, քաղաքների հանգստութեան խանգարումը—ամենավատթար միջոցներ են ցաւը բժշկելու համար։

Այդ բոլոր բաները վերջի վերջոյ նշանակում են կողոպտութիւն, անբուժելի աղքատացում, անդարմանելի կորուստ, որ ծանրանում է ոչ միայն հարուստների վերայ, այլ և ամբողջ Անգլիայի վերայ, ամբողջ ազգի վերայ, ուրեմն և նոյն իսկ նրանց աղքատների վերայ: Մանաւանդ թշուառութիւնը, ընդհանուր աղէտը կամ ժամանակաւոր շփոթութիւնը կատարեալ կործանում դարձնելու համար՝ լաւագոյն միջոցն այն կը լինի, որ դասակարգը դասակարգի դէմ զինենք, տգէտներին, ոճրագործներին և ծոյլերին սովորեցնենք սեփականութեան վերայ նայելու ատելութեան և ագահութեան աչքով, սխալ գաղափար նստեցնել նոցա գլխում, իբր թէ նոքա անիրաւութեամբ զրկվում են սեփականութիւնից, և դրդել նոցա, որ նոքա անօգուտ՝ բայց իրանց համար վնասակար փորձ փորձեն ուրիշի սեպհականութիւնները բռնի տիրանալու: Ընկերավարները բան ու գործ են չինել խօսել «հարուստների արհամարհական սրտով ողորմութեան» մասին: Համարձակվում եմ պնդել, թէ ճշմարիտ գթասէր հարստի ողորմութեան մէջ՝ բնաւ արհամարհական զգացմունք չի խառնուած. Պէտք է ոչնչացնել, և ոչ թէ աճեցնել անօգուտ, հակաքրիստոնէական դառնութիւնը մարդկանց յարաբերութիւնների մէջ: Մենք կուզենայինք, որ թէ ամբոխը և թէ միւս դասակարգերը հաւասարապէս հասկանային, թէ հասարակութեան զանազան դասերը կարող են միատեսակ շահեր ունենալ, թէ իւրաքանչիւրն իւր տեղում կարող է երջանիկ լինիլ, թէ նոքա չեն կարող ապրել մէկն առանց միւսի և ուրեմն մարդկային և Աստուածային օրէնքների համաձայն՝ պէտք է միասին աշխատեն և միմեանց օգնեն:

Արդ բացասական կողմից անցնենք դրական կողմին: Եթէ միայն չարիք ենք տեսնում մեր քննած աղէտները դարմանելու միջոցների մէջ, այն է անփոյթ

անհոգութեան մէջ, ողորմութեան անխտիր կերպով քաշխման մէջ, սոսկումից առաջացած կարգադրութիւնների մէջ, ընկերական յեղափոխութեան մէջ,— միթէ մենք հանգիստ պիտի նստենք, ձեռքերը ծալած, և ոչինչ չանենք։ Քաւ լիցի։ Գործունէութեան ահագին ասպարէզ է բացվում իւրաքանչիւր մարդկային էակի համար, ով որ ունի մտածող գլուխ, ջերմ սիրտ, օգնութիւն կարկառելու ձեռք։ Անգլիական ազգին անկեղծութեամբ բարիք ցանկացողները, բոլոր կուսակցութիւնների ներկայացուցիչները պէտք է միանան, որ գործով ապացուցանեն, թէ աղէտը դարմանելու համար հարկաւոր է արմատախիլ անել անգործութեան և աղքատութեան պատճառները։ Լաւ հայրենասէր և խոհական բարեգործը նա է, ով որ ոչնչացնում է պատճառները, և ոչ թէ նա, ով որ հետևանքների հետ է քաշքշվում։ Լաւագոյն է հիւանդութեան առաջն առնել, քան ցաւը փոքր ինչ թեթևացնել և ներս ձգել աւելի խորը։ Ապա ուրեմն մենք պէտք է յիշատակենք այն տխուր իրողութիւնը, թէ բացի անպարտ թշուառութիւնից, որ մեր կարեկցութեանն է արժանանում և ստիպում է մեզ այն ամոքելու համար ամէն միջոցներ գործ դնելու, լինում է (և Աստուած գիտէ, թէ ինչպէս յաճախակի) նաև այնպիսի թշուառութիւն, որ ինքը մարդը իւր գլխին է կապում իւր ծուլութեան և անառակութեան պատճառով։ Հարկաւոր է այս մասին խօսել։ Գիտեմ, որ իմ ասածները մի քանիսների համար ախորժելի չեն լինի, բայց ճշմարտութիւնը ե՞րբ է եղել քաղցր։ Եթէ մենք պարտաւոր ենք խօսել մեծատունների մեղքերի և մոլութիւնների մասին, մենք չպէտք է լռենք աղքատների մեղքերի և մոլութիւնների մասին, և թէպէտ ներողամտութեամբ՝ սակայն ամենայն ճշմարտութեամբ պիտի խօսենք։ Երեք պատճառ է նպաստում աղքատութեան տարածման·

խնայողութիւն անելու սովորութիւն չունենալը, շատ վաղ ամուսնանալը և ամենից աւելի՝ արբեցութիւնը։

Խօսենք նախ և առաջ խնայողութեան բացակայութեան մասին։

Աղքատ քահանան, աղքատ պաշտօնեան, աղքատ գործակատարը սովորաբար խնայող են։ Նոքա իրանց զրկում են շատ բաներից, ապրում են կարողութեան համեմատ, իրանց չնչին ռոճիկից մի բան յետ են ձգում. ամառը չեն մոռանում, թէ ձմեռ ևս կայ, արեգակի ճառագայթի տաքութիւնը վայելելիս՝ գիտեն, որ անձրեւ էլ կարող է գայ։ Բայց այդպէս չեն վարվում աղքատ մշակներից շատերը։ Երբ որ նոքա լաւ վարձ են ստանում, մեծ մասամբ բոլոր ստացածը այնպէս են վատնում, որ անգործութեան ժամանակ դրամ չեն ունենում։ Նոքա չեն ուզում հասկանալ, թէ չափազանցութիւնն ու շռայլութիւնը, որ այնպէս նախատում են հարուստ դասի մէջ, նոյնչափ հնարաւոր ու անգոսնելի է նաև աղքատ դասի մէջ, և թէ օղիի և գարեջրի համար դրամ սպառելը՝ պակաս յանցաւորութիւն չէ, քան նոյնը գոհարեղէնների վրայ վատնելը։

Աղքատութեան երկրորդ պատճառն է—ժամանակից վաղ ամուսնութիւնը։ Բարձր և միջին դասում չէ ընդունուած, որ երիտասարդը ամուսնանայ առանց կին պահպանելու համար բաւական կարողութիւն ունենալու, այն ևս առաջ քան քսանևինը կամ երեսուն տարեկան հասակի մէջ մտնելու։ Իսկ ընդհակառակ Լոնդոնի ամենաղքատ խաւերում ամուսնանում են առաւելապէս տասնևութ և տասնևինը տարեկան պատանիներն ու աղջիկները։ Եւ դոքա շատ անգամ ամուսնանում են միայն այնքան առ ձեռն դրամ ունենալով, որքան որ պահանջվում է փոքր աղքատիկ

սենեակի մի ամսուայ վարձը վճարելու համար։ Ուստի և, ինչպէս որ վիճակագրական տեղեկութիւնները վկայում են, ժողովրդեան թիւը աւելի արագ է աճում աղտոտ կենդրոններում, քան համեմատաբար ունևոր արուարձաններում: Այսպիսի ամուսնութեանց անխուսափելի հետևանք են լինում թուլակազմ, հիւանդոտ, աղտոտութեան մէջ թաւալող թշուառ մանուկներ, որոնց համար որ հարաւային ժողովուրդը զարհուրելի խօսք է հնարել, թէ դոքա «ոչ թէ ծնվում են, այլ անէծքով դատապարտվում են կեանք մաշելու»։ Կասկած չկայ, թէ տնանկութիւնը միշտ կաճի և չքաւորութիւնը միշտ կընդարձակուի, մինչև որ աղքատը և հարուստը իմանան, թէ չպէտք է ամուսնանալ թեթևամտութեամբ, շտապելով կամ անասունների պէս վավաշութեան և հեշտասիրութեան գերի դառնալով, այլ պատկառելով, խոհեմութեամբ, զգուշութեամբ, համեստութեամբ, Աստուծոյ երկիւղով։

Երրորդ պատճառը կամ թշուառութեան օձաթոյն պատճառների մէջ բուն Անհարոնեան օձը—արբեցութիւնն է։ Անցեալ տարի բարեգործներից մէկը հաղորդեց, թէ 2900 նպաստներից, որ ինքը բաշխել էր „Mansion House“ դրամարկղից, հարկաւոր համարուեցաւ 2850-ը տալ արբեցութիւնից աղքատացածներին: Մի վիճակագրող հաշուել է (աւելի նուազեցնելով թիւը, քան չափազանցացնելով), թէ Անգլիայի մշակ դասերը գինու վերայ տարեկան ծախսում են երեսունուվեց միլիոն (ֆունտ)։ Այն գումարը, որ կարող էր մեր ամբողջ երկիրը աղքատութիւնից փրկել, ծախսվում է աւելորդութեան վերայ։ Այս բանը ինձ ամենևին չէ զարմացնում, քանի որ մեր փողոցները, օրէնքի թոյլտուութեամբ, զարդարուած են ջին վաճառող խանութներով և ուրիշ գայթակղեցուցիչ որոգայթներով, իսկ օրէնսդրութիւնը սառն անզգայութեամբ լռում է այն

աղաղակը, որ մատնացոյց է անում ժողովրդեան կո-
րըստի գլխաւոր պատճառը։ Ինչո՞ւ չենք ուզում հա-
լածել այս անէծքի պատուհասը։ Եկէք ուրեմն թողնենք,
որ մեր վահանակների վերայ միայն գիշակեր գազաններ
մնան դրոշմած, և ոչ թէ այն շուշաններն ևս, որոնք
այնտեղ զուր զարդարուած են։

Նախ չմոռանանք, որ այս կողմից ոչ ոք չի կա-
րողանայ մշակ դասերին օգնել, եթէ նոքա իրանք ան-
ձամբ այդպիսի ջանքեր չգործեն։ Հէնց որ մի ազգի
մէջ սկսուի անփութութիւն, չափաւորութեան անար-
գութիւն, կիսատ ու վատ գործ կատարելու սովորու-
թիւն, անհոգութիւն— այլ ևս երկրային ոչ մի զօրու-
թիւն չի կարողանայ պաշտպանել դորան աղէտներից։
Մշակ դասերը բարձրաձայն բողոքում են, թէ մեր նա-
ւերը լցուել են օտարազգի նաւաստիներով, առևտու-
րը նեղվում է արտասահմանի մրցութիւնից։ Հապա
ինչ անենք, եթէ օտարազգի նաւաստիները աւելի քիչ
են խմում և աւելի հաւատարմութեան են արժանա-
նում, քան անգլիականները, եթէ օտարազգի մշակ-
ներն աւելի ջանասէր և աւելի հմուտ են, քան մերոնք։
Աղմուկ հանող գոչիւններով, ծոյլ մարդկանց ցանկու-
թիւններով, ստոր արարածների հրամաններով կեանքը
կենդանութիւն չի ստանում միայն ջանասէրների ձեռ-
քի և իմաստունների գիտութիւնը բարեկեցութիւն են
հաստատում։ Այն մարդը, որ կարողանայ ոչնչացնել
արբեցութեան նզովքը, հարկաւ միլիոնական տարեկան
եկամուտներ չի ստանայ, և ոչ պետութիւնը նորան
կը բարձրացնէ ազնուականութեան աստիճանին։ Ընդ-
հակառակ նա կը վաստակէ մենաշնորհութիւն սիրող-
ների թշնամութիւնը և այն մարդկերանց ատելութիւ-
նը, որոնք մարդկութեան կորստից շահ ունին։
Բայց նա թշուառութիւնը թուլացնելով, անշուշտ ա-
ւելի բարիք գործած կը լինի, քան եթէ չինէր տասը

*մայր եկեղեցի. հիւանդութեան առաջն առնելը աւելի բարիք է, քան հիւանդանոցներին առատաձեռնութեամբ օժանդակելը, և առաքինութիւն կենդանացնելն աւելի լաւ է, քան բանտեր շինելը։*

*Այս մենք կարող ենք իմաստուն հաստատութիւններին օգնել մեր ձեռնտուութիւններով։ Փառք Աստուծոյ, այդպիսի հաստատութիւններ շատ ունինք։ Բարիք անելու օրհնած հնարաւորութիւնը—մեր ձեռքին է։ Մենք կարող ենք օգնել մարդկանց, որ բարի, զգաստ, ջանասէր, աշխատաւոր դառնան, առողջ, մաքուր սիրտ ունենան, լուրջ և ինքն իրանց յարգող մարդիկ լինին, կարող ենք բարքերը լաւացնելու աշխատել, մերովսանն պահպանել հիւանդանոցների լաւ կազմութիւնը։ Անձնազոհութեամբ և եռանդով որ և է օգնութիւն հասուցանել այնպիսին, որոնք անկեղծ սրտով ցանկանում են լաւանալ և իրօք կարօտ են ուրիշի օժանդակութեան,—ահա դարմանելու միջոցը։*

*Վերջապէս մեզանից իւրաքանչիւրը մի որ և է ծխին է պատկանում, իսկ ես միշտ աւելի համոզվում եմ, թէ ծուխը որպէս հասարակական միութիւն՝ կարող է աղքատութեան դէմ պատերազմել աւելի լաւ։ Ինչպէս Լոնդոնի և միւս փողոցներում, իմ ծուխի մի քանի փողոցների մէջ էլ աղքատներ են բնակվում, բայց այստեղ հիմնարկութիւններ կան տառապող տնանկներին օգնութեան ձեռք կարկառելու համար։ Ես կատարելապէս համոզուած եմ, որ ծխականներիս օգնութեամբ կը կարողանանք առաջիկայ ձմեռուայ օրերում չքաւորութիւնից փրկել բոլորին, ով որ իրօք չունենալուց է տանջվում, և ոչ թէ զոր օր. արբեցութիւնից։ Եկէք օգնենք, ինչպէս որ միշտ արել ենք, առատաձեռնութեամբ, եցէ թէ եկող ձմեռուայ մասին տարածուած սև սև գուշակութիւնները՝ այդ հնարով չափազանցուցած հանդիսանան։ Եթէ իւրաքանչիւրն իւր տների առաջ*

աւելէ, Նոր Երուսաղէմի փողոցները մաքուր կը լինին։

Ուրեմն մենք ամէնքս մեր ձեռքը բաւական միջոց ունինք աղէտի պատճառների դէմ մաքառելու համար, եթէ օգնենք ամենայն լաւ և բարի հաստատութեան և անձնկուն կերպով կատարենք մեր անձնական պարտքը։ Ծիծաղելի է յուսետեսութիւնից ջլատուիլ և ամբողջ հասարակութեան վիճակի մասին յուսահատուիլ։ Այդ նշան է միայն հաւատոյ պակասութեան։ Մենք շատ շուտ կը հալածենք թշուառութեան բոլոր արհաւիրքները, եթէ հաւատարիմ մնանք անցեալ կիրակի այս տեղ յայտնած սկզբունքներին, եթէ ձեզանից իւրաքանչիւրը, այր կամ կին, խոստովանէր այն պարզ ճշմարտութիւնը, թէ դուք էք կազմում Եկեղեցի, թէ այս բոլոր պարտականութիւնները ոչ միայն հոգևորականութեան վերայ են դրուած, այլ և ձեզ վերայ, թէ դուք իրաւունք չունիք՝ Աստծուց ձեզ տրուած՝ ձեր պատասխանատուութիւնը ուրիշների վերայ ձգել, —մի խօսքով, եթէ քրիստոնեաները իսկապէս քրիստոնեայ դառնային և զգային, գործէին ու ապրէին քրիստոնէի պէս։ Լոնդոնում այնքան հարստութիւն կայ, որ այժմեանից տասնապատիկ աւելի աղքատութիւնը կարող էր մեղմացնել։ Հենց այս օրերս ինչ տեսանք։ Ծախվում էր մի մեծ գործատուն գարեջրի, որի գինը նշանակուած էր վեց միլիոն։ Հեշտ է ասել—վեց միլիոն։ Այդքան դրամով կարելի է խոհեմ գործածութեամբ հազարաւոր տնանկներին փրկել յուսահատութիւնից։ Իսկ ինչ եղաւ վախճանը։ Ոչ թէ վեց միլիոն, այլ հարիւր քսան և վեց միլիոն պատրաստ դրամ գտնուեցաւ այն շահաբեր ձեռնարկութեան տէր դառնալու համար։ Հարիւր քսան և վեց միլիոն, այն եւս առևտրի անկման և ժողովրդեան նեղութեան ժամանակ, որոնց մասին որ այնչափ խօսվում է։ Հաճագործելու համար դրամը միշտ իսկոյն գտնվում է։ Հա-

ժխուրատուր [illegible]ները գրեթէ քաղցած են մնում, իսկ աշխատութիւն[illegible]ող մշակները յեղափոխութեան մասին են պերճախօսում։ Այո, մեր օրերի հարուստ մարդկանց պատասխանատուութիւնը շատ ծանր է։ Նոցանից ոմանք արդէն իրանց առատաձեռնութիւններով յայտնի են, իսկ միւսների մասին կարելի է Յակոբ առաքեալի խօսքով ասել. «Արդ այսուհետև, մեծատունք, լացէք և ողբացէք ի վերայ թշուառութեանցն, որ գալոց են ի վերայ ձեր։ Զի մեծութիւնք ձեր յոչինչ է, և հանդերձք ձեր՝ կերակուր ցեցոյ»: 1)

Այսպէս է մերկացնում առաքեալը անձնապաշտութիւնն ու ագահութիւնը։ Հարստութիւնը պատուաբեր է և շատ բարիք կարող է տալ, եթէ տէրերը այն պարգևը գործ են ածում բարւոք կերպով և ագահութեան գերի չեն դառնում։ Բայց այդպէս չեն չարամիտ, ինքնասէր, անգութ, հեշտասէր մեծատունները։ Յիշեցէք թէ ինչ է ասում Աստուած նոյն իսկ Փրկչական ձայնով. «Որ ունիցի զկեանս ինչ աշխարհիս, և տեսանիցէ զեղբայր իւր կարօտեալ իւիք, և փակիցէ զգութս իւր առ ի նմանէ, զիա՞րդ սէրն Աստուծոյ ի նմա իցէ բնակեալ»։ 2)

1) Ե. 1։
2) Ա. Յով. Գ. 17։

## Գ.

# Ո՞Վ ՊԷՏՔ Է ԵՊԻՍԿՈՊՈՍ ԼԻՆԻ

*«Զի պարտ է եպիսկոպոսին անարատ լինել. որպէս եւ Աստուծոյ տնտեսի»։*

Առ Տիտ. Ա. 7.

Մեզ այսօր հրաւէր են կարդում, որ մեր լուման տանք Վեկֆիլդի թեմ հիմնելու համար նշանակուած դրամարկղի մէջ։ Գիտեմ, որ շատերին այդ խնդիրը բնաւ չի հետաքրքրում. ոմանք առհասարակ եպիսկոպոսների կարիք չեն տեսնում, միւսները կարծում են, թէ ներկայ նեղութիւնների ժամանակ հարկ չկայ այդպիսի խնդիրներ յարուցանելու։

Ես կարծում եմ, թէ երբէք չպէտք է թուլանալ առաքինութիւնից. կեղծ ու պատիր խօսքեր անվնասաբան չեն և պէտք է, ինչպէս ժողովուրդն ասում է, կծիկի տուտը գանել։ Կը փորձեմ այդ բանը։ Նախ կը պատասխանեմ նոցա, որոնք ասում են, թէ այժմ ժամանակ չէ, որ նոր թեմեր կազմուին։ Միթէ հարկ կա՞յ յիշեցնելու, թէ մեր ազգի համար ամօթ է ժողովրդեան աղէտների անունով՝ քօղարկել գլացող ձեռքը (ինչպէս որ այդ անում են այստեղ ներկայ եղողներից շատերը)։ Ինքը մեր Տէր Յիսուս Քրիստոսն ասել է, թէ «աղքատս յամենայն ժամ ընդ ձեզ ունիք»։[1]

Երբ որ շնորհակալ Մարիամը նորա խոնջացած ոտքերը թանկագին իւղով օծեց, այն ժամանակ Յուդան, և ոչ թէ Յիսուսը, յանդիմանեց, թէ այդ նար-

---

1) Յով. ԺԲ. 8:

դեան ազնիւ իւղը կարելի էր Թանգ գնով վաճառել և դրամը բաժանել աղքատներին։ Իսկ Յիսուս ընդ. հակառակը ըստ արժանւոյն գովեց կնոջ վարմունքը։

Այն մարդիկ, որ միշտ գլանում են բարի գործելուց, պատճառելով թէ, աւելի լաւ գործք կայ կատարելու, առհասարակ այն կարգիցն են, որոնք իրանց սրտի խորքերում պատճառներ են փնտռում մերժելու համար։

Առատաձեռնութեան և ընկերական ոգու հին-պատուական առաքինութիւնը՝ արագ արագ անյայտանում է Լոնդոնից։ Մարդիկ աւելի հակվում են ճոխութեան և ցուցամոլութեան, քան այնպիսի գործերին նեցուկ դառնալու, որի համար ապագայ սերունդները կօրհնէին նոցա:

Կամ մի թէ կարծում էք, թէ մեր խնդիրը կատարելով՝ ողորմածութեան աղբիւրը պիտի ցամաքի, և ոչ թէ առաւել յորդանայ։ Փորձը ապացուցել է, որ նոր բեմի հիմնադրութեամբ միշտ հաւաքուել են այնպիսի գումարներ, որ ուրիշ դէպքերում յոյս չկայ գումարելու։ Եւ վերջապէս տղայ—մարդութիւն բանեցնենք և չթողնենք, որ այժմեան կոչուած «հանգամանքերի ճնշող լուծը» մեզ սխալեցնէ և անփութութեան ու կեղծաւորութեան վարժեցնէ։ Ճշմարիտ է, շատերի եկամուտները ցամաքել են, չքաւորութիւնից շատեր գործ չեն գտնում։ Այս ամէնը տխուր երևոյթ է, բայց ես պնդում եմ, որ այնուամենայնիւ Անգլիան զարմանալի կերպով խիստ հարուստ է նաև հէնց այս րոպէիս։ Մեր տուած ողորմածութեան, չնչին գրօշները իմ աչքում միշտ ապացոյց են եղել մեր ճղճիմ ժլատութեան, և ոչ թէ մեծանձնութեան։ Այդ քանը լոկ կաթիլներ փոշիներ են այն հեղեղուող հարստութեան, որ թափվում է մեր երկրի սնդուկների մէջ։

Անցեալ անգամ ասացի, թէ գործատուն գնելու

համար գտնուեցաւ հարիւր քառն միլիոնից աւելի։ Աւա՜ղ, մի՞թէ քաղի գործի համար այդքան գումար կը գտնուէ՞ր։ Մի՞թէ ուրեմն անենք, թէ մենք աղքատ ենք, ինչպէս որ ասում են։ Հապա այն հանգամանքը, որ վերջին տասը տարուայ մէջ անգլիացիները զանազան եղանակներով կարողացել են յետ ձգել հազար միլիոն ֆունտ։ Ուրիշ խօսքով, այդքան ժամանակում մենք մեր կղզիներում այնքան դրամ ենք տնտեսել, որ կարող էինք մի մի ֆունտ ընծայել ամբողջ մարդկային ցեղի ամէն մէկ անդամին։ Միթէ այս բանը ազգային թշուառութեան է նմանում։ Մենք և մեր հայրենակիցներն ուրեմն տարէնը հարիւր միլիոն յետ ենք ձգում —մի ահագին գումար, որ դժուար պատկերացնելու և աւելի ևս դժուար համարելու գումար է։ Մինչդեռ համարձակութիւն ունինք խօսելու, իբր թէ անգլիական եկեղեցու անդամները—այսինքն անգլիական ազգի մեծագոյն մասը—այնչափ աղքատ է, որ իւր համար մի առաջնորդարան կառուցանելու կարողութիւն չունի։

«Ազգային աղքատութի՜ւն»։ Այո՛, բայց թշուառագոյն աղքատութիւնն է ոչ թէ դրամ չունենալը, այլ կամքի յօժարութեան, բարի ցանկութեան բացակայութիւնը։ Եւ այդ բանը բղխում է ոչ թէ աղէտներից, այլ միշտ աճող և ստուարացող ընչաքաղցութիւնից, որի որոգայթի մէջ, վախենում եմ, թէ մեր հասարակութեան բարձր և միջին դասակարգը բռնվում է։ Մի ամսագրի առաջին երեսում կարդում ենք, «Դրամ վաստակելը հասարակութեան ամենայն անդամի կենաց մէջ առաջին խնդիրն է»։ Միթէ այս բանը ճշմարի՞տ է։ Միթէ Անգլիայի ազգային նշանաբանը կարո՞ղ է դառնալ Գիդդի գրեթէ անարգական խորհուրդը Փարիզի յուզուած քաղաքացուհուն. «Ցի՛կին, հարստացէք»։ Միթէ մենք արձակ համարձակ մամոնան պի-

տի պաշտենք։ Միթէ մենք միայն ոսկի կռատունք, պի-տի յետ ձգենք, մեզ և մեր որդւոց համար դումար-ներ պէտք դնենք և ոչինչ բաժին չհանենք ժողովրդեան և եկեղեցու համար։ Միթէ ամբողջ ազգը սկսեց նը-մանիլ այն մարդուն, որ, Բունեանի աւելով, միշտ գետնից աղբ էր հաւաքում և երբեմն աչքը դէպի եր-կինք չէր վերացնում։

Ա՜հ, բարձրանանք ժլատութեան մակերևոյթից, խորտակենք, թէ երբեմն աւելի լաւ է, որ գումարները յատկացնենք ողորմածութեան համար, թէ սիրոյ պը-տուղը աւելի լաւագոյն վարձք է, քան դրամական տո-կոսները, թէ աղքատականհանդերձ թևազարդ կեանքը, որ իւր շուրջը բարիքներ է տարածում, լաւագոյն և օրհնաբեր է, քան անձնապաշտական փարթամութեան, իւր տունը մեծացնելու, և առհասարակ ունայնասի-րութեան մէջ պճնող կեանքը։

Ուրեմն մէկդի ձգենք Անգլիայի աղքատութեան մասին սխալ գաղափարը։ Ասացէք, թէ Անգլիան ժլատ է, գձուձ է, ցած է, բայց չասէք թէ աղքատ է։ Եթէ Աթէնքի ոգին ունենար՝ Անգլիան կարող էր մէկի տեղ յիսուն չէնք՝ ամէն տեսակ շէնքեր կանգնեցնել առանց աւելորդ խօսակցութեան։ Մեր դիզուած հարստու-թիւններով ամենայն քաղաք կարող է շքեղանալ և զար-դարուիլ, ամենայն սիրտ կարող է ուրախ լինել։ Ջուր կայ պարտէզը զովացնելու, բայց փակուած է պողպա-տէ սրտերի մէջ, և չկայ մի խիզախ Մովսէս, չկայ մի հզօր գաւազան, որ հարուածէ վէմը և այն տեղից հոսեց-նէ կենդանարար աղբիւրը։ Վերստին զարթեցնենք Անգլիայի մէջ հայրենասիրութեան և առատաձեռնու-թեան ոգին, և այլ ևս չենք լսի ժողովրդեան նեղու-թիւնների մասին խօսքը, էլ չենք լսի կեղծ խօսքեր, որ ձգնում են այդպիսի երևակայական նեղութիւններով արդարացնել բարեգործութեան ցամաքելը և մեծանձ-նութեան մեռելութիւնը։

Այժմ դառնանք երկրորդ առարկութեան։ Ասում են, որ թէև և բաւական դրամ կայ, այն հարկաւոր է գործ ածել միայն խեղացի և արժանաւոր նպատակների համար. Միթէ Վիկֆիլդեան կամ մի ուրիշ բեմի հիմնադրութիւնը այդպիսի գործ չէ՞։ Կամ միթէ թեմի խնդիրը կենսական խնդիր չէ՞ մեզ համար։ Պատասխանում եմ, «անշուշտ, կենսական է». և իսկոյն կը բացատրեմ, թէ ինչու եմ այդպէս խօսում։

Եթէ այժմեան եպիսկոպոսները նման լինէին առաջուաններին, ես կը պատասխանէի «ոչ»։ Անցեալներում պատահել են ծոյլ, նանրազբաղ, աչառու եպիսկոպոսներ, որ եկեղեցու եկամուտներից մեծ հարստութիւն են հաւաքել անձի և իրանց ազգականների համար։ Նոքա իրանց մերձաւորների համար անգործ պաշտօններ են ստեղծել և նոցա վարժեցրել են թոշակակերութեան, տարէնը մի քարոզ են խօսել և մի անգամ են հաղորդել, շատ դանդաղ են շրջել թեմի եկեղեցիները այցելելու համար։ Այդպիսի եպիսկոպոսները երևելի էին իրանց ճոխութեամբ և արտաքին փայլով, խծբիծ հոգսերով, միշտ քառաձի կառքի մէջ էին նստում. Հպարտութեամբ փքուած, նոքա ստիքանում և պարսպատանում էին անձամբ, մուտք չտալու իրանց հօտին։ Եթէ այսօրուայ եպիսկոպոսները նմանէին հազարաւոր առաջուայ եպիսկոպոսներին, որպիսիք նոյն իսկ անցեալ դարում ևս պատահել են, ես մատի ծայրով չէի շարժի, յօգուտ նոցա չէի խօսի։ Անշուշտ այն եպիսկոպոսը, որ իւր պաշտօնի բարձրութիւնից ան-փութութեան, ունայնութեան և ագահութեան օրինակ է տալիս, լիովին արժանի է այն թունալից համեմատութեան, որով Կառիմերը այդպիսիներին դասում է չար հրեշտակների կարգը, նորա ասելով, հինգ բանսարկուն է Անգլիայի ամենաջանասէր առաջնորդը. վասն զի նա երբէք իւր թեմից չի հեռանում և եր—

քէք չի խոտորվում իւր չար գործից։ Միլտոնը սաստիկ շանթեր է թափել այդպիսի եպիսկոպոսների վերայ։

Բայց փառք Աստուծոյ, այժմեան եպիսկոպոսները, մեծ մասով, նման չեն այն առաջուաններին, այն տգէտ և կոյր տեսուչներին, որոնց վերայ Միլտոնի կարծիքով, Յիսուս Քրիստոսը պէտք է նայէր այնպէս զայրացած աչքով, որի նմանը մի անգամ Գէեզիի երեսը շանթահարեց, բորոտելով «իբրև զձիւն»։ 1)

Տասնուիններորդ դարու եպիսկոպոսը հարկաւ խիստ զբաղուած և անփոփոխ սովորութեան վարժուած մարդ է։ Նա գրեթէ ամենայն օր հարկադրվում է քարոզ կարդալ, հարիւրաւոր նամակ գրել, պաշտօնների կարգումը ստորագրել, խորհուրդներում նախագահել, ընկերութիւններ կազմել, շատ դժուարակնճիռ գործերում մասնակցել։ Նա պէտք է հրաժարուի հանգստութիւնից, ազատ ժամանակ չունենալ. խստասիրտ քննադատութիւնը հասնում է նաև նորա համեստ աթոռին և ճրագով է լուսաւորում նորա ամէն մի սև քիծը։

Երբ որ Լաուսը Կէնտերբէրիի եպիսկոպոս կարգուեցաւ, Ստրաֆֆորդը նորան շատ բախտաւոր օրեր մաղթեց, Լաուսը պատասխանեց. «Մեծապէս շնորհակալ եմ ձեր բարեմաղթութիւնների համար, բայց հաւատացէք, միլո՛րդ, որ ես ոչ մէկի և ոչ միւսի յոյս չունիմ։ Երկար տարիների յոյս չունիմ, որովհետև ես արդէն ծեր եմ և շատ վշտեր եմ ունեցել, և ոչ էլ բախտաւոր օրերի, որովհետև սրտիս ցանկացած բարիքները չեն կարող իրագործուել։ Կարիքները բազմաթիւ են, իսկ ես զօրութիւն չունիմ»։ Արդի եպիսկոպոսներից շատերը կարող էին նոյնը կրկնել։

1) Դ. Թագ. Ե. 20—27։

ուրիշ տեղ գրեթէ չի ծաղկում, բայց եթէ միայնա-չի ստորանում,—պէտք է եպիսկոպոսի յատկանիշը լինի։

Ոչ պակաս հարկաւոր է նաև կատարեալ անձնա-զոհութիւնը։ Եթէ համեստութիւնը գտնելի է եպիս-կոպոսների մէջ, ոչ պակաս գտնելիք է նաև ազնուու-թիւնը։ Այն եպիսկոպոսը, որ իւր եկեղեցու եկամուտ-ները գործ է ածում իւր ազգականներին հարստացնե-լու համար, մեղանչում է իւր աստիճանի հիմնական պարտաւորութեան դէմ։ Երկոտասաներորդ դարում ապրող Լինկոլնի եպիսկոպոսի եղբայրը տրտունջ էր յայտնում, որ դարձեալ երկրագործ է մնում։ «Եղբայր», ասաց եպիսկոպոսը, երբ որ եզդ սատկի, ե՛կ, որ ուրիշ եզ տամ քեզ, եթէ գութանիդ մէջ պակաս բան լինի, ես պատրաստ եմ վճարել ծախքը, որ կարգի բերել տաս. Ես քեզ երկրագործ եմ տեսել, և դու միշտ պէտք է երկրագործ մնաս»։ Թեմի եկամուտները պէտք է թե-մի համար էլ ծախսել։ Կան դրութիւններ, ուր որ աղ-քատ լինելը պատուաբեր է։ Երբ որ Զարէն եպիսկո-պոսին մահուան մահճում ասացին, թէ իւր սնտուկում մնացել է միայն երեսուն ֆունտ ստերլին, նա ժպիտը երեսին պատասխանեց, «Այդքանը բաւական է, որ վը-ճարեմ դէպի երկինք ուղևորութեանս համար»։ Մատ-թէու Պարկէր եպիսկոպոսը իւր նշանաբան ընտրեց հե-տևեալ բառերը, որ փորագրել տուեց նաև կնիքներում և նկարել տուեց կառքի վերայ. «Աշխարհքն ու բոլոր խնդութիւնները անցաւոր են», որպէս զի միշտ յիշէ իւր խախուտ դրութեան անհաստատութիւնը և անա-փառութեան ու փայլերի կեղծութիւնը։

Խոնարհութիւն, անձնազոհութիւն—սոցա վերայ մի յատկութիւն ևս կաւելացնեմ, որ դարձեալ հարկա-ւոր է եպիսկոպոսին, այն է սրտի պարզութիւն։ Ոչ փառ-քը, ոչ հարստութիւնը և ոչ դիրքը մարդուն չեն մե-ծացնիլ։ Այս բոլորի հետ շատ անգամ մարդու խակա-

կան արժանաւորութիւնը բնաւ շաղկապուած չի լինում։

Մանկութեան ժամանակս մի եպիսկոպոսի տան մէջ տեսել եմ իւր նախորդների մէկի գերեզմանից հանած դամբանական տախտակը։ Երբէք չեմ մոռանում տախտակի մակագրութիւնը, «Պա՛ց, անցորդ։ Ծպտելով տես, թէ եպիսկոպոսի պալատն ինչ է եղել։ Գերեզման է այն պալատը, ուր որ ամէնքը պիտի հանգստանան»։

Լաւագոյն եպիսկոպոսներից ոմանք ապրել են խրճիթներում, առաքելական աղքատութեան մէջ, սակաւ կերակրով, ինչպէս զոր օր. Հիպպոնեան եպիսկոպոս երանելի Օգոստինոսը։ «Չեմ ուզում ձեր տուած թանկագին հանդերձները», ասում էր նա իւր ժողովրդեան, այդ բաները չեն վայելում եպիսկոպոսի համեստութեան։ Երբ որ ինձ մեծագին հագուստներ են տալիս, սիրտս ասում է, որ այն վաճառեմ, որպէս զի աղքատներին օգնեմ»։ Քրիստոնէութեան առաջին դարում եպիսկոպոսի առաջին պարտքն էր հրաժարուել ամէն տեսակ երկրաւոր ստացուածներից։ Չորրորդ դարու հեթանոս պատմագիրը այդ բանի համար նոցա գովում է, մի և նոյն ժամանակ վայրացած խօսելով իւր ժամանակի պերճամոլ և ունայնասէր առաջնորդների մասին։

Այս եպիսկոպոսը պէտք է լինի իւր աքիասրտութեամբ անդրդուելի։ Ժամանակաւոր ժողովրդականութիւն արհամարհել՝ նորա գլխաւոր յատկութիւններից մէկը պիտի լինի։ Նա պէտք է պատրաստ լինի ամենայն բոպէ ճշմարտութիւն խօսելու և սատանայէն խայտառակելու։ Հալածութեանց դարերի լաւագոյն եպիսկոպոսներ անխոցելի էին, որովհետև աշխարհը և աշխարհային շահերը ունայն բաներ էին համարում, և բնաւ փոյթ չունէին, թէ մարդիկ ինչ պիտի խօսէին— իրանց մասին։

Երբ որ քրիստոնեաներին հալածող Վալէնտ կայսրը պատուիրեց իւր կուսակալին, որ գնայ և Ս. Բարսեղ մեծին ասասէ, վերջինս բացէ ի բաց մերժեց նորա բոլոր պահանջածները։ Կուսակալը նստած տեղից թռաւ և գոչեց. «Միթէ չե՞ս վախենում իմ մեծազօրութիւնից»։ — «Վախենալու ինչ ունեմ», ընդ միջեց Բարսեղը։ «Ցարքունիս գրաւումն, պատիժ, տանջանք, մահ», պատասխանեց կուսակալը։ «Աւելի ոչինչ», ասաց Բարսեղը։ «Ով որ ինձ պէս միայն մի քանի գրքեր և հին չորեր ունի ոչինչ չունի գրաւելու համար։ Ասում ես, պատի՞ժ։ Ինչ պատիժ կարող է լինել ինձ համար, երբ որ Աստուած ամենուրեք է։ Տանջանքնե՞ր — այդ բաները միայն րոպէական ցաւ կարող են պատճառել ինձ, իսկ մահը օրհնութիւն է ինձ համար, որովհետև կարագացնէ ըղձացածս և որ առաջ կառաջնորդէ ինձ նորա գահի առաջ կանգնելու, Որին սիրում եմ և Որին ծառայում եմ։ — Ոչ ոք այդպէս չի խօսել ինձ հետ», ասաց կուսակալը։ «Երևի այն պատճառով, որ դու տակաւին չես հանդիպել իսկական եպիսկոպոսի», պատասխանեց Բարսեղը։

Կարելի է ձեզանից ոմանք կարծում են, թէ այժմ կարիք չունին եպիսկոպոսներն այդպիսի քաջութեան։ Այո, այժմ թագաւորներն ու կառավարիչները չեն նեղացնում եպիսկոպոսներին, բայց ես կուզենայի, որ նոքա ամէնքը համարձակ լինին և անկաշառելի քաջութիւն ունենան, որպէս զի կարողանան դիմանալ աշխարհքի ստութեան, ճշմարտութիւն խօսել սուտ կուսակիցներին, մաքառել հասարակաց կարծիքի ագիտութեան դէմ, անտարբեր դիւրաստաց ժողովրդականութեան փաղաքշիչ քաղցրութիւնը, անձամբ զգալ Յիսուս Քրիստոսի ասածը թէ, «Երանի ձեզ, յորժամ նախատիցեն զձեզ և հալածեսցեն և ասիցեն զամե-

ճշմարտութիւնն ասէր։ Ինչ գեղեցիկ բան կլինէր, եթէ անգլիկանեան եկեղեցու հոգևորականութիւնն ու եպիսկոպոսները՝ փոխանակ անփոյթ մնալու՝ մարդարէական ձայնով բարբառէին և մարդկանց մէջ թըմրած խիղճը զարթեցնէին այն ժամանակներում, երբ որ ստրուկները վաճառվում էին, ոգելից խմիչքների օրէնքն էր հաստատվում, ամերիկացիք ազատութեան համար ոտքի էին կանգնում, գործարաններում անիրաւութիւններ էին գործվում և ուրիշ դէպքերում։ Նոր հրատարակուած «Լորդ Շէֆտսբերիի կեանք» գիրքը պարզ ցոյց է տալիս, թէ նոքա ինչ կարող էին անել, բայց աւա՜ղ չարեցին։ Անգլիական պատմութեան մէջ տխուր յիշատակ կարձանագրուի, թէ նոքա չեն օգնել այդ մարդասէր— հերոսին։ «Թերահաւատները ինձ օգնում են, իսկ հոգևորականները հակառակում են», ասում էր, Լորդ Շէֆտսբերին։ Նա գուշակում էր, որ որբերի համար դպրոց բանալու խնդրի մէջ՝ գրեթէ միայն մի եպիսկոպոս պիտի պաշտպանէ իրան, բայց և այնպէս խօսեց իրեն յատուկ ազնուութեամբ, «Եթէ իմ վարմունքը հակառակում է տիրող եկեղեցու կանոններին, ես աւելի կգերադասէի անոր ծոցից մերժուած լինել, քան անտէր թողնել տառապանքների, անհաւատութեան մէջ ապրող այս թշուառ մանուկներին»։—«Կարելի է թէ ես սխալվում եմ, ասում է նա, բայց չարիքներից մեծ մասը մեր հոգևոր հայրերի բարոյական վիճակին եմ վերագրում», և նա մատնացոյց է անում այն իրողութիւնը, թէ երբ որ առաջարկուեցաւ եկեղեցական օրէնքը (Worship Act), «որ այնպէս կարևոր էր հեթանոսացած ժողովրդեան ահագին բազմութեան համար, լորդերի խորհրդարանում այդպիսի պարզ կարգադրութեան դէմ խօսեցին ինը եպիսկոպոսներ»։ Շատ տարի առաջ «Exatiner» լրագիրը ասել է լորդ Շէֆտսբերիի համար, «եթէ այս մարդը շարունակէ այդպէս

վարուել—ամէնի երեսին ճշմարտութիւնն ասելով—Նա շուտով ամենաատելի մարդ կը դառնայ Անգլիայում։ «Մենք ուրախ կլինէինք, եթէ այդ դէպքում այն ժամանակուայ անգլիական եպիսկոպոսներից մէկը ատելի դառնալու առիթ տար։ «Ու եղիջիք ատեցեալք յամենեցունց վասն անուան իմոյ», ասաց մեր Տէր Յիսուս Քրիստոսը։ 1)

Դառնանք այն դարերին, երբ որ ծաղկել է փարթամասիրութիւնը։ Կարդացէք Ս. Ոսկեբերանի քարոզները և տեսէք, թէ նա ինչպէս անդադար մաքառել է շռայլ, անմիտ, յանդուգն արտաքին փայլի դէմ։ Այս մաքառումը նորան թանգ է նստել. նա զրկուեցաւ իւր տնից, թեմից, հանգստութիւնից, կեանքից։ Մի եպիսկոպոսին կը վիճակուէր բորբոքած ատելութիւն և վայրագ ամբաստանութիւն կրել, բայց նա կմեռնէր այդ սրբի պէս հանգիստ սրտով, թէ կատարել է իւր պարտքը, թողնելով բարի անուն այսպիսի գոհացողական վերջին բառերով. «Փառք Աստուծոյ վասն ամենայնի»։

Հիմա վեր առնենք այն դէպքը, երբ որ ինքը եկեղեցին մերկացաւ իւր պատուականութիւնից, յափշտակուեցաւ աղանդներով կամ մատնուեցաւ նախապաշարման, մոռացաւ այն վէմը, ինչից որ կռփուած էր և այն աղբիւրը, որից որ կեանքէր առել, անձնատուր եղած ձևապաշտութեան կորցրեց ազատութիւնը։ Ո՞վքեր պարտականէին խորտակել և ջնջել աղանդների ու նորաձևութեան ազդեցութիւնը և պահպանել աւետարանական վարդապետութիւնը իւր ամենայն մաքրութեամբ, եթէ ոչ եպիսկոպոսները: Հէնց այս գործը կատարեց Աթանասը։ Նորան իզուր աքսորում, մատնում, բամբասում, «հալածում էին, որպէս թէ կաքաւին սարերում», ի զուր.

1) Ղուկ. ԻԱ. 17։

Պօտոմակեցին, Ցուլիանոս և Վաղէնս կայսրները չան-թահարում էին նորան, ի դուր ուրացող — առաջնորդ-ները և նորա վարդապետները բամբասում էին նորան, — նա հաստատ քայլով բռնել էր ճշմարտութեան դրօ-շակը։ «Հռիմինիի ժողովից յետոյ», ասում է ս. Ցերո-նիմոսը, ամբողջ աշխարհն ակամայ կերպով արիոսական հանդիսացաւ»։ Իսկ Աթանասը քաջութիւն ունեցաւ աշխարհի դէմ գնալու։ Միթէ ճշմարիտ եպիսկոպոսնե-րի համար այժմ գործ չի՞ գտնւի։ Նոքա պէտք է հա-ւատարիմ մնան թերահաւատների մէջ, չկաշառւեն շողոքորթութիւնից, չվախենան այնպիսիներից, որոնք սուտակասպաս լրագիրների, անոնց թերահաւատութիւննե-րի և նենգութիւնների գերի են, և ընդ հակառակ պաշտ-պան են Ցիսուս Քրիստոսի, ազատ, անպաճոյճ, յաւի-տենական Աւետարանը։

Ահա թէ ինչու մենք այսօր ձեզանից փնտրում ենք Վեսթֆիլդի թեմը հիմնելու համար դրամ։ Բանն այն է, որ մենք պէտք ունինք ոչ թէ նոր առաջնորդական պա-լատի, այլ հզօր, սրտապինդ մարդկանց, որ նման լի-նեն աւելի մարգարէներին, քան արտաքին ծէս կա-տարող քահանաներին, կարօտ ենք այնպիսի մարդկանց, որ իրանց սրտի մէջ բորբոքուած լինի առ Աստուած սիրոյ հուրը։ Մեզ հարկաւոր են եպիսկոպոսներ, որ գործ սիրեն, ոչ թէ թափորներ, որ Աստուծոյ ամբողջ եկեղեցին պաշտեն, ոչ թէ նորա մի մասը, և որ աւե-լի ուշք դարձնեն ճշմարտութեան, քան աւանդութիւն-ների վերայ, սիրոյ, քան կանոնների վերայ։ Մեզ հար-կաւոր են եպիսկոպոսներ, որոնք սաստել կարող են յանդուգն հարուստներին այն դէպքերում, երբոր նո-քա անիրաւութեամբ են վարվում, որոնց մէջ պաշտ-պանութիւն կարող են գտնել նեղեալներն ու անմեղ-ները, եպիսկոպոսներ, որոնք ոչ թէ համայնքի հետ են գնում, այլ բաւական զօրութիւն ունեն կռուելու փո-

*թորկած հեղեղի դէմ, որոնք ոչ թէ դայթակղվում են փորձիչների մեղրածոր խօսքերից, այլ միշտ գերադասում են ճշմարտութեան լեռնային օդը և անէծքների արդարութիւնը, մեզ հարկաւոր են մարդիկ, որոնց դէմ կը թշնամանան, ըստ մեծի ողորմութեան Աստուծոյ, միայն ցած ու վատթարները։ Աստուծոյ եկեղեցին աւելի կը հարստանայ, և ազգն էլ աւելի կը լաւանայ, եթէ մենք այդպիսի եպիսկոպոսներ ունենանք։ Այդ մարդիկ կը յարգուին, բայց ոչ իրանց հանդերձների, թագերի, տիտղոսների, եկամուտների կամ պալատների պատճառով։ Դոքա բարձրագոյն պատուի կարժանանան Աստուծոյ աչքում, եթէ կարողանան արհամարհել հարստութեան գայթակղութիւնները, չվախենալ կուսակցութիւնների կատաղութիւնից, նախատել յանցաւորութեան լպրշութիւնը, թոյլերի կողմը բռնել ընդէմ հզօրների, թեթևացնել բռնած ծանրութիւնը և ազատել նեղեալներին։ Այսպիսի եպիսկոպոսները դեռ ևս կարող են փրկել, անգլիական եկեղեցին վտանգից և անշէջ պահպանել եկեղեցու լաւագոյն ժամանակների ոսկեձոյլ աշտանակի լոյսը, ապա թէ ոչ նա, որ աւելի ողորմութիւն է սիրում, քան զոհը, և որոյ համար ամենալաւ ծառայութիւն է սիրել Աստծուն և ընկերին, կը խլէ մեզանից աշտանակը և իսպառ կը հանգցնէ ճրագը։*

## Դ.

# ՔՐԻՍՏՈՍԻ ԾՆՈՒՆԴԸ

*«Եկայք երթիցուք մինչեւ ցԲեթղեհէմ,*
*եւ տեսցուք զինչ է բանս այս որ եղեւ»:*
Ղուկ. Բ. 15.

Սիրելիք, եթէ կարծէք, թէ կարճ քարոզը Քրիստոսի ծննդեան տօնին չի պատշաճի, հապա ուրիշ ինչ քարոզ շահաւէտ կարող է դառնալ այս օրուայ համար, քանի որ ոչ մի բառով չի յայտնուի այն սքանչելի մեծութիւնը, թէ Աստուած մարդ դարձաւ և թէ մարդը կարող է աստուածանման դառնալ: Մի քանի աստուածաբաններ իրանց նեղ հայեացքով մարդեղութեան խորհուրդը կապել են միայն մեղանչութեան կամ պատուիրանազանցութեան հետ: Բայց աւելի ճիշդ է հին Հայրապետների գաղափարը, որոնք մարմնառութիւնը մարդու ստեղծման օրինակ են համարել և այդ բանով բացատրել են համայն գոյութեան խորհուրդը: Նոքա մարմնառութեան մէջ տեսնում էին կենաց, բնութեան և տիեզերքի անեղ առեղծուածի լուծումը. հաւատոյ աչքով թափանցել են աւելի մեծագոյն խորհուրդների խորութիւնների մէջ, քան ինչ որ նշմարվում է երկրի տաղտուկ մակերևութի վերայ, տեսել են յուսոյ կայծեր, որոնք փայլում են մեր պարտականութիւնների և զուարճութիւնների ձանձրալի հանապազորդութեան մէջ: Այս տեսակէտով հասկանալի է դառնում, թէ իրօք մեծամեծ զօրութիւնները միշտ գործում են ունայն և անափառ ձգտումների հետ կից ընդ կից, թէ թշուառ մարդկանց չարչարանքները ներկայացնում են այն կենաց փոքրիկ փլատակներ, որով ապրել է Յիսուս Քր-

ծոյ առաջ այդպիսի մարդկային փոքր մեծութեան մանըր փառաւորութիւնները՝ ոչինչ բաներ են: Ամենայն ժամանակների և աշխարհների Տէրը մեզ մօտ իջաւ լռութեան և մթութեան մէջ, որպէս նորածին փոքր մանուկ, գիւղական խոնարհ իջևանի մսուրի մէջ: Ուրեմն ամենայն ոք, որ կամենում է գէթ փոքր ինչ հասկանալ Ծննդեան խորհուրդն ու ճշմարիտ ուրախութիւնը, թող մեկդի թողնէ գոռոզամտութիւնը, ունայնամիտ հանդիսաւորութիւնն ու իմաստակութիւնը, և այս խոնարհ օրօրոցին մերձենայ անարատ միամտութեամբ, մանկական սրտով: Ծննդեան օրը հրաւիրում եմ ձեզ գալ այն խոնարհութեան հանդերձով, որ հագին ունէր Ինքը մեր Փրկիչը: Դուք ամէնքդ զգում էք կեանքի փորձութիւնները, կեանքի գաղտնիքը, կամենում էք ոչնչացնել այս տանջութիւնները, բժշկել այս մեղքերը. դուք ուզում էք շատ ու քիչ բան հասկանալ այս կամ հանդերձեալ կեանքից: Արդ դուք կարող էք հասնել նպատակին, եթէ գիտէք ձեր Փրկչի վարքը, մերձենալով Նորա խաչի մօտ, հրեշտակի հետ ի մասին նստելով Նորա ամայացած գերեզմանի եզերքին: Արծուաչեայ հաւատքով գնացէք զկնի Նորա և դուք կը տեսնէք երկնքի դռները բաց, իսկ Յիսուս Քրիստոսին կանգնած Հայր Աստծու՜ աջ կողմը: Եկէ՛ք մի երկու րոպէ մնանք Բեթղեհէմում Քրիստոսի խանձարուրի մօտ, և տեսնենք, թէ ինչ կարող ենք ուսանել այն տեղ:

Ձեզանից ոմանք աղքատ են: Հապա գիտէ՞ք, թէ Ծննդեան խորհրդի մտածմունքով ինչ անճառելի ցնծութիւն պիտի ծագի ձեր սրտում: Ձեր Տէրը նոյնպէս աղքատ էր, ինչպէս որ դուք էք, ինչպէս ձեզանից շատերը: Ձեր մանուկներին սիրեցէք և պաշտեցէք, որովհետև Նա էլ աղքատ մանուկ է եղել: Թոյլ ունեցէք, որ դոքա էլ Նորա պէս հեզ, սուրբ և ոչ անձնապաշտ լինին: Նա էլ քաղցած է եղել, Նա էլ մրսել է, ինչպէս

որ ձեզ է պատահում։ Չկարծէք թէ ձեր սենեակները, կտուրի տակ կամ նկուղի մէջ, աւելի անյարմար են, քան Բեթղեհէմի մսուրքը, կամ թէ ձեր աշխատութիւնը աւելի խոնարհ է, քան Նորա աշակերտութիւնը Նազարէթի հիւսնի խանութում․ Լուսահրաշ երկինքը բացուեցաւ աղքատ, խոնարհ, տգէտ մարդկանց առաջ, այն աղքատ հովիւների առաջ, որ դաշտում հօտ էին պահպանում։ Նախ դոքա արժանացան տեսնել սուրբ Մանուկը խանձարուրում։ Կարո՞ղ էք Նորա հետ ընթանալ մի սրտով և մի մտքով։ Աղաչում եմ ձեզ, ի սէր Աստուծոյ, մի՛ մոռացնէք Ծննդեան օրերը արբեցութեամբ, ձեր կրքերին յագուրդ տալով, անպգամութեամբ, ինչպէս որ անում են շատ և շատ քրիստոնեաներ։ Թո՛ղ Քրիստոսի խանձարուրը սովորեցնէ ձեզ յարգել ձեր անձը, պատուել այն ազնիւ բնութիւնը, որ Նա ձեզ պարգևել է և որ Ինքն էլ ընդունեց ձեր փրկութեան համար։ Նա եկել է, որ օրհնէ աղքատութիւնը, ոչ այն պատճառով, իբր թէ աղքատութիւնն ինքն ըստ ինքեան աւելի սրբազան է, քան հարստութիւնը, այլ որովհետև մարդկանցից շատերին աղքատութիւն է վիճակուած։ Եւ որպէս զի աղքատի սրտի մէջ յոյս հաստատէ, Նա՝ հարուստ գոլով՝ աղքատ դարձաւ։[1] Դուք էլ ուրեմն ձեր աղքատութիւնը պէտք է կրէք համբերութեամբ և համեստութեամբ․ Դուք ձեր խաղաղ աղջամուղջի մէջ պէտք է սպասէք տակաւին աներևոյթ արշալուսին, որ իւր գալուստը աւետում է թռչունների քաղցր երգերով լուսաբացից առաջ, կամ որ մոխրամած արևելքում նշմարելի է դառնում առաջին վարդակարմիր ճառագայթներով։

Միւսները հարուստ էք։ Դուք էլ մերձեցէք մըտուրքին, որովհետև հարուստները գտնուել են թէ՛ Նո-

1) Բ. Կորն. Ը. 9։

րայ խանձարուրի և թէ՛ Նորա գերեզմանի մօտ՝ Հեռա-ւոր երկրներից եկել էին երեք արևելեան թագաւորները, ինչպէս որ մոգերին անուանում են: Նորա եկած մե-ծաւորներին վայել ընծաներով, որ բերել էին խոնար-հութեամբ, անտրտունջ, ոչ որպէս հարկ կամ տուր-քանք, այլ սրտի լիառատ բերկրութեամբ: Իրանց գան-ձեր պատարագ հանեցին ոսկի, կնդրուկ և զմուռս. ոսկին՝ թագաւորի համար, կնդրուկը կամ խունկը՝ Աս-տուծոյ համար: Սակայն բերած ամէն ընծաներից ա-ռաւել նշանաւոր էր արժանաւոր կենաց ոսկին, սուրբ սրտով երկրպագութեան կնդրուկը և կարեկցող հոգւոյ արտմութեան զմուռսը, որ և մենք կարող ենք և պար-տաւոր ենք ընծայ բերել: Նոքա կարող էին՝ ագահ անձ-նապաշտութիւնից դրդուած՝ ոսկին ու թանգ գանձե-րը պահել իրանց անձի համար, իրանց զուարճութեան համար, իրանց փարթամութիւնը աւելացնելու համար, իրանց ուստերց և դստերց հարստութիւնն աճեցնելու համար: Հարկաւ, Նոքա կարող էին այդպէս վարուել, բայց միթէ չէք խոստովանում, որ իրանց գանձը Տէր Աստծու խանձարուրին պատարագելով և իրանց նուէր-ների այնպէս անմահացնելով, Նոքա աւելի բախ-տաւոր սեպհեցին իրանց անձը: Դուք էլ կարող էք այ-օր ձեր ընծաները բերել Նորա մսուրքը: Ձեր փոքր եղ-բայրներից մէկին տալով՝ դուք տալիս էք Նորան:[1] Այն դրամը, որ այս օր գանձանակը ձգէք, կը պաշտ-պանէ ձիւների վերայ քայլող փոքրիկ ոտքերը, կը տաք-ցանէ դողդողած փոքրիկ անդամները, քաղցածին կը տայ հաց, մերկին՝ հագուստ: Ձեր առատաձեռնու-թեան նուէրները բոցավառ կը ճառագայթեն խեղճ օ-ճախներում և կը լուսաւորեն աղքատներին: Թշուառ մա-նուկների կեանքը կը փայլեցնեն բարիքի աստղերը և կու-

1) Մատթ. ԻԵ, 40.

յիմարութեան ոտքի կոխան արինք։ Միթէ այդ դրամը կո-
րուստ կը համարէք։ Միթէ աւելի բախտաւո՞ր կը լինէք,
եթէ դրամը պահէք ձեր գրպանում, քան եթէ յանուն
Յիսուս մանկան գանձէք, որով կարծես թէ՞ որդիական
հանդերձ հագած և երկնագոյն թեւեր առած՝ իրօք կօշ-
նէք այնպիսիններին, որոնց համար որ խաչեցաւ և թա-
ղեցաւ Քրիստոսը։ Ահ, սիրելի հարուստներ, այս օր
Բեթղեհէմեան մսուրքում չոքած, արդեօք չէ՞ք իմանում
արդէն այն ճշմարտութիւնը, որ վաղ թէ ուշ մահուան
սոսկալի ժամին յանկարծ պիտի զգաք, թէ միայն Յի-
սուս Քրիստոս կարող է պարգեւել մեզ երկնաւոր կեանք,
բայց թէ կեանքը միայն այս աշխարհում չի վերջանայ
և թէ մահուամբ՝ ամենայն ինչ չի մեռնի։

Բացի աղքատներից և հարուստներից, ձեր մէջ
կան նաև վշտացածներ։ Դուք էլ առաջ եկէք Քրիստո-
սի խանձարուրին, որին որ դուք աւելի կարօտ էք, քան
միւսները։ Տրտմա՞ծ էք դուք։ Ո՛հ, Նա էլ տրտմած էր,
«մինչև ի մահ» տրտում էր Նորա ոգին և ասաց․ «Հայր
իմ, եթէ հնար է, անցցէ բաժակս այս յինէն»։ 1) Նա
ամէն տեսակ վշտեր է կրել․ միայնութիւն, մարմնա-
կան չարչարանք, բարոյական յուզումն, մարդկանց
անգթութիւն և ցածութիւն, մինչև իսկ խաչելու-
թիւն։ Այս չքնաղ, քնքոյշ մանուկի վերայ, Որ խան-
ձարուրի մէջ փաթաթուած այս օր մեր առջևն է, ար-
դէն ծփռած է խաչի ստուերը․ Նորա արեան վերջա-
լոյսը փայլում է նաև Նորա ոսկեճաճանչ արշալոյսի
վերայ։ Չարչարանքներով նուիրագործած՝ Նա կարող է
ամէնքիս սովորեցնել, թէ վշտի մէջ ինչպէս գտնենք
մխիթարութիւն, զօրութիւն և վեհութիւն։ Աւա՜ղ, սի-
րելիք․ գիտեմ, որ ձեզանից ոմանք այս Ծննդեան տօ-
նին իրանց տան մէջ դատարկ տեղեր կը տեսնեն, էլ

---

1) Մատթ․ ԻԶ․ 39։

չեն գտնի սիրելիներին, որ անցեալ տարի կենդանի էին։ Գիտեմ և սիրտս մորմոքում է ձեզ համար. բայց մի՛ մոռանաք, թէ Որդւոյն Աստուծոյ մարդեղութեան ուրախութիւնը հետը բերում է նաև յարութեան ուրախութիւն, և թէ չկայ ոչ մի փոքրագոյն երկրաւոր ուրախութիւն որ խոստում և աւետիս չլինի նաև երկնային յաւիտենական ուրախութեան։ Մեր ուղևորութեան և ձեր սիրեցեալների ուղևորութեան վախճանը՝ այս տեղ չէ։ Մարդկային կենաց մէջ ժամանակներ կան, երբ որ փչում է հողմ, գալիս է անձրև, շրջապատում է ցուրտ ու բուք, իսկ երբեմն և փայլում է արեգակ, երգում են թռչուններ, և ամենայն ինչ մայիսի պայծառութիւն է հանդիսացնում. սակայն երկու դէպքումն էլ մենք միշտ առաջ ենք սլանում և մեր ուղեւորութեան կէտ նպատակը բնաւ չի փոխվում։ Միթէ երբ որ ծունր էք դնում սուրբ մանկան խանձարուրի առաջ, ձեզ չե՞ն մխիթարում այս բառերը, թէ «Եկայք առ իս, ամենայն վաստակեալք և բեռնաւորք, և ես հանգուցից զձեզ»: 1)

Բայց դուք, և՛ աղքատներդ, և՛ հարուստներդ, և՛ վշտացածներդ, դուք ամէնքդ մեղանչական էք, ուստի ձեր ականջին ախորժ կը հնչի հրեշտակների ձայնը, թէ «Փառք ի բարձունս Աստուծոյ, և յերկիր խաղաղութիւն, ի մարդիկ հաճութիւն»: 2) Եթէ գիտէք, թէ Աստուած ինչպէս ատում է մեղքը, մի և նոյն ժամանակ տեսնում էք, թէ Նա ինչպէս է արգահատում և սիրում մեղաւորին։ Մերձենանք Նորա օրօրանին ուսանենք այդ խրատը։ Երբ և էցէ ունայնաձեռն դարձրե՞լ է Նա Իրան դիմող մեղաւորին։ Նորա մօտ եկաւ հրէաներին և հեթանոսներին հաւասարապէս ատելի

1) Մատ. ԺԱ. 28:

2) Ղուկ. Բ. 14:

մաքսաւորը, և Քրիստոս Իւր բազմաբեղուն սիրով կեն-
դանացրեց այդ ամէնից ծաղրած և խեղճ մարդուն։
Թշուառ անառակ կանայք արտասուած գալիս էին Նո-
րա մօտ, և Նա չէր մերժում նոցա, այլ բժշկում էր
նոցա նախատինքը։ Շնութեան ըմբռնած կինը հերար-
ձակ, երեսանկեալ, լալով, ընկած էր Նորա առաջ տա-
ճարի յատակին, և Նա նոյն իսկ դորան ասաց. «Եւ ոչ
ես դատապարտեմ զքեզ, երթ, յայսմ հետէ մի՛ մեղան-
չեր»։ [1]) Ո՛հ, եթէ այս տեղ կան մարդիկ, որոնք իրանց
արդար են համարում և ուրիշներին անարգում են,
որոնք ամբարտաւանութեան բորբոքումը անմեղու-
թեան ծաղիկ են համարում, եթէ նոքա այս խանձա-
րուրի առաջ չեն կարողանում հասկանալ Քրիստոսի
Աւետարանի ազատական ոգին և անպայման սրբու-
թիւնը, — աղաչում եմ ձեզ, թող որ գէթ այս օր դոքա
քրիստոնեաներից փոքր ինչ զատուին։ Եթէ օգնելու
շնորհք չունիք, գէթ մի՛ խափանէք երկնքի բաց դռնե-
րը։ Աստուծոյ արքայութիւնը ձեզ չի պատկանում—
բանալիքը այս տեղ է, այս սուրբ Մանկան խանձարու-
րի մէջ։

Թող այս խանձարուրին մերձենան բորոտները,
մերժեալները, վշտացեալները արտասուալից այտե-
րով, մեղաւորները բեկեալ սրտով, անհնազանդ պա-
տանիները անզուսպ կրքերով, տառապող աղքատները,
գայթակղած հարուստները։ Թող դոքա չոքեն և ազատ
խմեն Սիլովամի մեղմ հոսող Ջրից, լուանան իրանց ցա-
ւագար և զարհուրած հոգին երկնային երջանկութեան
ոսկի հեղեղի մէջ, կանգնեն երկնային անարատ լուսոյ
կենդրոնի մէջ, Թող այդ բոլոր մարդիկ փախչեն միտքը
շփոթող մոլորութիւններից, մարմինը մաշող հեշտու-
թիւններից, հոգին ապականող մեղքերից, և միմիանց

---

1) Յովհ. Ը. 11։

*շնորհաւորեն ու ցանկան Ծննդեան տօնի երջանկու-թիւն, որ ես էլ ձեզ ամենիդ ի սրտէ մաղթում եմ։ Ե-կէ՛ք ամէնքս մեծ ու փոքրը, հարուստ ու աղքատը, յանցաւորն ու վշտացածը, ամէնքս՝ հաւասարապէս մեղաւորներս և հաւասարապէս փրկութեան յուսա-ցողներս՝ եղբայրների պէս կանգնենք Մանուկ-Արքայի խանձարուրի մօտ, որ տեսնենք լոյս Նորա լուսոյ մէջ, որ այս տեղից մեկնենք իմաստնացած, սրբացած, բեր-կրեացած և յուսով ու արիութեամբ լցուած։ «Արի՛, լուսաւորեա՛ց, Երուսաղէմ, զի հասեալ է լոյս քո, և փառք Տեառն ի վերայ քո ծագեցին։ Զի ահա խաւար ծածկեսցէ զերկիր և մառախուղ զհեթանոսս. բայց ի քեզ Տէր յայտնեսցի, և փառք Նորա ի քեզ երևեսցին»։* [1]

---

1) Ես. Կ. 1, 2։

## Է.

## ՄԱՐԳՈՑ ԸՆԿՈՒՄՆ

Աւետարանի ընթերցուածքից մենք այսօր իմա-
նում ենք մեր Տէր Յիսուսի փորձութիւնը անապա-
տում. իսկ թղթերից և առակներից, թէ հաւատուրաց
հոգին ինչ պատուհաս է պատրաստում իւր համար։
Չարերը աշխատում են մոռանալ այդ խրատը. Սուրբ
գրոց զարմանալի պարզութիւնը զարհուրեցնում է նո-
ցա և զայրացնում։ Նոքա ի հարկէ չեն ուզում արգե-
լել, որ մարգարէները խօսին, այլ ցանկանում են, որ
մատուցած բարոյական խրատը այնպէս մեղմացած լի-
նի, որ այնուհետև իրանք չդժուարան իրանց գործերը
մի կերպով արդարացնել։ Բայց նոքա բարկանում են,
երբ որ Ս. գիրքը սրտի բազմաթիւ մութը անկիւնների
քողը բաց է անում և խորշերը լուսաւորում է աչքեր
կուրացնող անտանելի փայլատակմամբ։ Եթէ մենք ոյժ
ունենայինք, ի հարկէ մենք էլ կաշխատէինք մոռանալ
կամ մանաւանդ իսպառ ջնջել Ս. գրքի տխրագոյն յի-
շատակութիւններից մի քանիսը, բայց եկեղեցին այլա-
պէս է վարվում։ Եկեղեցին համարում է, որ մարդկային
արատները այնչափ զարհուրելի են, այնչափ տարա-
ծուած և կործանաբեր են, որ անհնարին է անուշադիր
թողնել անոնք. Իմանալով, որ կուգայ ժամանակ, երբ
որ ամենայն հոգի պիտի գնայ և մերկանայ այն Աչքի
առաջ, Որի համար նոյն իսկ ջինջ երկինքը անբիծ չէ։
Եկեղեցին աշխատեց լուսաւորել խաւարը, պատառե-
լով ինքնախաբէութեան վարագոյրը և հոգու մէջ բոր-
բոքելով ամօթի ու պատկառանքի կրակը։ Տեսնելով
մեղքի մէջ թաթախուած աշխարհը, յիշելով այն բաղ-

մաթիւ եզերերգութիւնները՝ որ կատարուել և կատարվում են օրըազան և հասարակ պատմութեան նեղ ըեմի վերայ, եկեղեցին զգուշացնում է խոնարհութիւնից դէպի բարձրութիւն գնացողներին, որ չլինի թէ վայր ընկնեն, և ուսուցանում է մեզ առաջնորդուել ոչ թէ ընկերական կեանքի նսեմ օրինակներով, այլ այն գրքի մէջ գրուածներով, որ միշտ բաց է Աստուծոյ աթոռի առաջ: Հարցուցէք ձեր սրտին, եթէ կամենում էք իմանալ, թէ արդեօք ուղի՞ղ է դատում այդ գիրքը, և պատասխանն առնելիս ականջ դրէք ոչ թէ այն բանին, ինչ որ ձեզ կը թելադրէ ձեր ճարտարամիտ խելքը, այլ արթնացած և նոյն իսկ պարհուրած խղճմտանքին, որ սոսկալի մեղադրութեամբ դատապարտում է, ձեզ, թէ «Դու ես այդ ողորմելի մարդը»:

Թէպէտ մեր մէջ այնպիսի մարդիկ կան, որ անկեղծ սրտով միշտ աշխատել են խղճի համեմատ վարուիլ, բայց և այնպէս ամէնքս բաւական առիթներ կունենանք մեր կուրծքը ծեծելու և մաքսաւորի պէս ասելու. «Աստուած, քաւեա́ զիս զմեղաւորս»: 1) Աւստի եկեղեցու օրինակին հետևելով, ես այսօր կը խօսիմ մեղքի և փորձութեան մասին. Թերևս այսպիսի մտածութիւններ անհաճոյ լինին, բայց աւելորդ չեն կարող լինիլ: Ամբողջ Ս. գիրքը՝ պատմութիւնը՝ կեանքի ամենատեսակ փորձը՝ բազմաթիւ կենսագրութիւնները ցոյց են տալիս, որ մեղքը միշտ խաւարեցրել է մեծամասնութեան կեանքը: Իմ ունկնդիրներից շատերի մէջ կան այնպիսիք, որ (թերևս երկար փորձերի տառապութիւնից յետոյ) հանգստանում են խաղաղութեամբ և Աստուծոյ լուսով. բայց կան և այնպիսիք, որոնք տակաւին շրջապատուած են երեկոյեան աղջամուղջով, կամ աւաղ՝ կարելի է նաև՝ խոր գիշերի մէջ են: Ես առաւելապէս մի բանից եմ վախենում, չլինի թէ իմ

1) Ղուկ. ԺԸ. 13:

բառերը այնքան թոյլ լինին, որ չկարողանան մուտք և տեղ գտնել ձեր սրտի մէջ։ Այս պատճառով, աղաչում եմ, մի պատէք ձեր սրտերը այնպիսի անթափանցելի զրահով, որ համոզման սլաքը չկարողանայ մէջը մխուել։ Յիշեցէք, որ մենք կանգնած ենք Աստուծոյ առաջ։ Որչափ որ թոյլ և անարժան լինին մարդու շրթունքները, բայց և այնպէս անոնք կարող են մարգարէական խօսք արտասանել. Մեր ժամը յանկարծ կարող է հասնել. Միշտ պէտք է պատրաստ լինինք։ Ո՞վ գիտէ թէ հենց այս վայրկեանին ձեզանից ու՞մ համար արդէն բացվում է յաւիտենականութեան դուռը. Իսկ ձեր առաջ կանգնածը՝ կարելի է թէ այս ժամին առաքուած է նոյն իսկ Տէր Աստծուց, որ այսպիսի բաներ խօսէ։ Տէրը միշտ կարող է աներևութապէս առաքել Իւր սերովբէին, որ Տէր Աստծու սեղանի հրաշեկ կայծակով ոգևոր է կակազող շրթունքները։ 1)

Մի զարմանաք, եղբարք, եթէ ես առաջ կբերեմ հնագոյն բնագիրներից մէկը, որ գտնվում է Ս. գրքի առաջին էջերում։ Ցաւալի է որ Աստուածաշնչի բառերը, որ մեր երջանկութեան են վերաբերում, այն հրաշալի բառերը, որ երաժշտութեան են նմանում, լայն ասպարէզ են բաց արել աղանդական բանակռիւների համար։ Ցաւալի է, որ երկրորդական նշանակութիւն ունեցող և բնաւ հոգևոր կամ բարոյական կեանքին չվերաբերող զանազան խնդիրներ՝ քրիստոնեաների մէջ վէճեր են յարուցանում, և պատճառ են դառնում միմեանց բանադրելու համար. ցաւալի է, որ այսքան ձեռքեր պատառում են Փրկչի հանդերձները։ Մինչև որ Ս. գրքի հոգւով չապրենք, չենք կարող հասկանալ անոր իմաստը. Մեր անգթութեան, անիմաստութեան, մեր փարիսեցութեան պատիժը կրելով, շատերին սա-

1) Ես. Զ. 5—7։

Նրատուք է լինում արգելեալ պտուղի անուշահոտու-
թեան և կարծեցեալ պատուականութեան: Այսպիսի
սկիզբը միայն մի վախճան կարող է ունենալ: Ով որ
ծաղիկը քաղում է անդունդի ծայրին, պէտք է պատ-
րաստուի մէջը ընկնելու: Մեղանչել ցանկացողին Աս-
տուած թողնում է մեղանչելու: 1) Երբեմն մտածու-
թիւնը պայծառ պատկերացում է դառնում, պայծառ
երեւակայութիւնը—ջերմ ցանկութիւն, ջերմ տենչը—
կիրակատար դիտաւորութիւն և խորհուրդ, խորհուրդը
աւարտվում է արագ, անխոհեմ գործով: Կայծակի ա-
րագութեամբ Եւայի համար հասաւ սոսկալի տագնա-
պը, փորձութեան այն զարհուրելի վայրկեանը, երբ որ
մեր կեանքն ու մահը կախուած են լինում մազից:

Այն ժամանակ մարդը վճռական քայլ անելու
համար կարօտ է Ս. Հոգու օգնութեան, իսկ մենք շատ
անգամ Եւայի պէս շփոթուած ենք լինում, թուլացած
և կիսով չափ յուսահատ դրութեան մէջ, որովհետև
մեղքին երկար ժամանակ ընտելացել էինք: Չար ժամին
Եւան արագութեամբ մեկնեց իւր ձեռքը և կատարուե-
ցաւ ախտալի վարմունքը, որի հետեւանքներն ու նշանա-
կութիւնը մինչև ժամանակների վախճանը անթուելի և
անչափելի են: Փակուած սահանքի դուռը այժմ բա-
ցուել է. մոլար մտքի աննշան բղխումը (հետզհետէ մե-
ծանալով և լայնանալով՝ դարձել է գետ, որի համար
արգելքներ չկան, որի ալիքների մէջ կարելի է լողալ,
բայց որը այնուհետև անծայր և անեզր է: Մի կնոջ
յանցաւոր ցանկութիւնը աստատկացաւ մինչև ամբողջ

---

1) Մի՛ ոք ի փորձութեան իցէ, ասիցէ թէ յԱստուծոյ
փորձիմ. զի Աստուած անփորձ է չարեաց, փորձէ նա և ոչ զոք:
Իւրաքանչիւր ոք փորձի առ ի յիւրոցն ցանկութեանց ձգեալ և
պատրեալ: Ապա այնուհետև ցանկութիւնն յղացեալ՝ զմեղս ծնա-
նի, և մեղքն կատարեալ՝ զմահ ծնանին: (Յակ. Ա. 13 - 15):

աշխարհի անուղղելի տպականութիւն։ Այնուհետև մարդկութեան գլխին մէկ մէկու յետևից թափվում են դատապարտութեան նզովքներ, կայծակի կրկնուած ոռոտումների պէս այնքան ժամանակ, մինչև որ երկնքի սահանքները չեն բացվում, խոր ջրերը ափերից չեն դուրս գալիս, և աշխարհը չի ողողվում ամէն կողմից ծփացող ալիքների մէջ։ Առաջ մենք կարդում ենք մեղսագործութեան պատմութիւնը, ապա ջրհեղեղի պատմութիւնը։

Լուսաբացին հոգու մէջ
Կաթեց մեղքի մի կաթիլ.
Աւա՜ղ, մինչև երեկոյ
Համայն աշխարհ հեղեղեց։

Այս բանից մենք ոչինչ սովորելու բան չունինք։ Միթէ ձեր կենաց մէջ նմանը չի՞ պատահում։ Միթէ ամէն մի անօրէնութեան ժամանակ մի և նոյն ընթացքը չի՞ կրկնվում։ Յիշեցէք ձեր անցեալ մեղքերը և խոստովանեցէք, արդեօք այն փորձանքը, որով յաղթուեցաւ Եւան, չէ՞ր կարող զգուշութեան օրինակ դառնալ ձեզ համար անցեալում, բայց կարելի է նաև այժմ։ Դուք էլ ունեցել էք անմեղութեան և անգիտութեան դրախտ, որ ազատ էր փորձանքներից։ Ձեր երջանիկ մանկութեան ժամանակ ամէն մի հողմի շրշիւնի մէջ լսել էք Աստուծոյ ձայնը, և շատ անգամ ուրախացել էք հրեշտակների լուսեղէն երևոյթներից։ Բայց գրեթէ ձեր մօրքի հէնց բացման հետ՝ սկսուեցաւ մաքառումը ընդդէմ չարութեան, իսկ այդ մաքառման ժամանակ մանկական անմեղութիւնը ցօղի պէս ցնդուեցաւ հոգուց։ Սկսուեցաւ կամապաշտութիւնը։ Փիղիքապէս դուք զօրացաք, իսկ բարոյապէս թուլացաք։ Երկմտութեան ձայնը շշնջում էր, «Արդարև ասա՞ց Աստուած»․ քմքոտութեան և գիտակցական ձայնը աղաղակելով գոչում էր ձեզ, թէ «լինիցիք իբրև աստուածս»։ Բայց մարդ-

կային հոգին այնքան սիրելի է Աստծուն, որ Նա չի թողնում առանց դողալու և յուսահատութեան առաջին անգամ ճանապարհից խոտորելու։ Նա իւր առատ գթութեամբ պարապել և ցանկապատել է մեր առաջին մեղանչութիւնները։

Կարելի է դուք էլ այս բանը զգում էք, թերևս վտանգի և տոսկման բնազդական երկիւղը պատում է ձեզ, ձեր շրթունքներից դուրս է թռչում յանկարծական վախեցած ճիչը, կարելի է դուք յիշում էք Աստուծոյ որ և է սաստը, կամ այն լուսազուարթ և սուրբ աղօթքը, որ երբեմն ձեր մօր հետ ի միասին դէպի վեր էք առաքել, կամ Նա և կարելի է Փրկչի սիրոյն էք անձկանում։ Վերջապէս ինչ կլինի, դուք այդ ժամանակ թէպէտ յանցանք չէք գործում, բայց մտածմունքներից չէք վախենում, այդ համարում էք անվնաս, և անզգուշաբար—ընտելանում էք չարութեան։

Բայց այն մարդու մէջ, որի խեղճը լցուել է երկբայուոր բաներով, էլ տեղ չի մնում Աստուծոյ համար։ Դորա կորուստը անխուսափելի է։ Մեղքը միշտ աւելի գեղեցիկ և հրապուրիչ է դառնում։ Ս. Հոգու առաջնորդութիւնից խոտորուած և մոլեալ սիրտը, յանցաւոր խորհուրդներով դիւթած մարդը՝ խաղաղական ճանապարհը թողնում է և հեռանում է անապատ, ուր միայն հոգևոր արհաւիրքներ են իշխում։ Նա պէտք է պատրաստ լինի, թէ այն տեղ կը հանդիպի ամեհի գազաններին, թէ Ցանտալոսի անապակ ծարաւով կը տանջուի. Անապատի կիզիչ աւազներից պատրանօք հիւսած զառանցանքն ու խաբուսիկ փայլը անդադար կը մոլեցնէ նորան, հրապոյրը կը քաշէ դէպի անդունդը, մինչև որ այդ ամէնը չքուի և ոչնչանայ՝ նորա շլացած աչքը բացուելուց յետոյ։ Շատ նուազ դէպքերում, այն և միայն Աստուծոյ յատուկ ողորմութեամբ, յանցաւոր մտքերը երբեմն մնում են լոկ իբրև մտքեր։

Բայց այդ մտքերը օձի ձու են, որոնցից իժեր դուրս կու գան։ Եւ մեզ վերայ, ինչպէս Եւայի վերայ, փորձանքը գալիս է յարմար վարկեանին «վագրի կատաղի ոստիւններով», և մենք կորչում ենք։ Մենք ընկնում ենք և ափսոսում ենք մեր անձը, որ անկումը յանկարծակի հասաւ. բայց այդպէս չէ, այլ մեր անկումը մեր նախընթաց ամբողջ կենաց արդիւնք էր։ Անկումը անխուսափելի է այն մարդու համար, որ իւր սիրտը վաճառել է չար զօրութիւններին։ Իսկ այնուհետև կրկնվում է հասարակ պատմութիւնը։ Սկզբում երկչոտ մեղքը՝ ապա անամօթանում է, և վերջապէս՝ ապահով է կործում ինքն իրան ամենայն վտանգներից։ Նախ ասում ենք «միայն այս անգամ», ապա համոզուած վերջացնում ենք, թէ «այս բանի մէջ բնաւ վատ բան չենք տեսնում»։ Կարմիր ծաղիկը թունաւոր պտուղ է տալիս։ Հրապոյրը վերջանում է ժխտմամբ, ժխտումը— անզգայութեամբ, անզգայութիւնը՝ որովհետև չի ապաշխարում՝ կնքում է յաւիտենական մահուամբ։ Ո՛հ, եթէ մեր մէջ կան ուղիղ ճանապարհից շեղուածներ, թող ժամանակին լսեն իրանց զգուշացնող ձայնին։ Սուտ ճանապարհը միայն մի վախճան ունի. արդարև անոր վերայ շատ սերունդներ արագ քայլերով ընթացել են, բայց մի մարդ չի գտնուի, որ խուլ գերեզմանական հառաչանքներով չվկայէր թէ այս է այն ճանապարհը, որի համար որ ասուած է, թէ «անդ եղիցի լալ և կրճել ատամանց»։ 1)

Եղբարք, ասածների ընդհանուր եզրակացութիւնը պարզ է և խիստ խրատական։ Նախ հարկաւոր է (աւա՜ղ, որ միշտ մոռանում ենք և առ ոչինչ ենք դընում) մշտական արթնութիւն, կատարեալ զգաստութիւն։ Մեզանից լաւագոյներն անգամ միշտ վտանգի

---

1) Ղուկ. ժԳ. 28։

մէջ են իրանց մարդկային բնութեամբ, մեղքերի մէջ տղմացած բազմաթիւ սերունդների ժառանգութեամբ և անթիւ հրապուրիչ փորձութիւնների պատճառով։ Բայց ամենամեծ վտանգ է սպառնում ձեզ, երիտասարդներ։ Մինչև իսկ հին բազմամեայ զինուորը չպէտք է վայր դնէ այս աշխարհում իւր սպառազինութիւններից ոչ մի մասը, որովհետև պատերազմական ծառայութեան մէջ հանգիստ չկայ։ Եթէ ամենալաւ քըրիստոնեան անգամ, որի քաջութիւնը փորձուած է բազմաթիւ կռիւներում, որի յոյսը միշտ զօրացել է շատ անգամ չարութիւնն յաղթելով, — եթէ այդպիսի մարդն անգամ զգում է, որ իւր ձեռքից բաց չպէտք է մեկուսի դնէ վահանը, արդեօք կարո՞ղ էք դուք կռուի հէնց սկզբում, երբ որ շրջապատուած էք ձեզանից աւելի զօրաւոր և փորձուած թշնամիներով, երբ որ չար բանսարկուի հրեղէն սլաքներ առատութեամբ թափվում են ձեր շուրջը, — կարո՞ղ էք դուք մերկանալ ձեր զրահից և չլուցած լապտերներով ու չգօտևորած մէջքով ձեր անձը մատնել ծուլութեան կամ քնին։ Մի առ ժամանակ ձեզ այնպէս կը թուի, իբր թէ այդ բանը հնարաւոր է։

Եթէ դուք երիտասարդութեան ժամանակ շրջապատուած էք հայրական հարստութեամբ, եթէ կարող էք ապրել գոռոզամիտ անգործութեան մէջ, ձեր հոգևոր «ես»—ի թշնամիները համարձակ կարող են ձեզ հետ աւելորդ պատերազմելուց հրաժարուել, այն յուսով, որ դուք անշուշտ ինքներդ ձեր խորխորատը կը փորէք։ Արթուն եղէք, եթէ ուզում էք փրկուել նոցանից։ Յիշեցէք այն ահեղ խօսքը, որով Աստուած Կայէնին դիմեց, երբ որ տեսաւ, որ նա առաջին անգամ ըմբռնուել է մռայլ և չարաթոյն ոխակալութեամբ. «Ո՞չ ապաքէն եթէ բարւոք գործես, եղիցի ընդունելի,

և եթէ բարւոք ոչ գործեսցես, մեղք կան առ դուրս» 1)։

Նաև ձեր որտի չէմքում, ինչպէս և առաջին մար-դասպանի «առ դուրս», մեղք կայ ծածուկ պահուած գիշատիչ գազանի պէս, սակայն «առ քեզ լիցի ցան-կութիւն նորա, իսկ դու տիրեսցես նմա» 2)։ Դու ես տէր այդ բազմագլուխ հրէշի, այդ կոյր վայրագ գա-զանի, այն ամէն բանի, ինչ որ քո մէջ վատութիւն է և կարող ես ոտի տակ կոխել նորան։ Իսկ եթէ նորան չտիրանաս, եթէ նորան պարարտացնես ի կորուստ ան-ձին, այն ժամանակ նա կը յարձակուի քեզ վերայ հր-քացայտ աչքերով, որոտաձայն մռունչով, և այն ժա-մանակ թող Աստուած փրկէ քեզ։ Կարելի է թէ դու ազատուիս նորա ամենակուլ կատաղութիւնից, բայց, մարգարէ—շինականի խօսքը գործածելով, այնպէս «Զոր օրինակ թէ կարասցէ թափել հովիւ ի բերանոյ առիւ-ծու աքեացս երկուս կամ բլթակ մի ունկան» 3)։ Ինչ որ բերանից կը կարողանաս թափել, այն կը լինի և քո բաժինը։

Երկրորդ՝ խորհուրդ եմ տալիս զգուշանալ և խիստ ներողամիտ չլինել մեղանչութեան յաճախութիւնների դէմ։ Կարասի արձագանգի պէս մի՛ կրկնէք անսրբու-թեան և անհաւատութեան հարցմունքը, «արդարև ա-սա՞ց Աստուած»։ Հասարակութեան մէջ տեսնում ենք շատ երևոյթներ, որոնք նշան են, թէ մարդիկ առ հա-սարակ որչափ թեթև աչքով են նայում ծանր մեղքերի վերայ, ինչպէս ներում և տանում են այն ամէնը։ Ինչ որ ատելի է Աստծուն, ինչ որ կազմում է մարդկային կենաց անէծք, ինչ որ ի խաչ հանել է տուել Աստու-ծոյ Որդուն՝ այդ ամէնը հիմա դարձել է հանաքի և

1) Ծնն. Դ. 7։
2) Ծնն. Դ. 7։
3) Ամովս, Գ. 12։

կծու ակնարկութիւնների նիւթ: Վատթար գործերը չար մտքերի արդիւնք են, և մարդիկ այլևս չեն ամաչում մեղքեր գործել և ունայնութիւնից խորշել, եթէ մեղանչութիւնը հրապարակաւ չի ապացուցուած կամ յանցանքը չի բացուած:

Ամենայն օր լավում է անհաւատութեան այս յանդուգն վարդապետութիւնը, և անոր հետևողները աւելի անամօթ և համարձակ են հանդիսանում: Եթէ ձեռնթափ լինինք, ապականութեան հեղեղը կը ցեխոտէ ոչ միայն ամբողջ գրականութիւնը, այլ ողողելով ամենուրեք մուտք կը գտնէ: Մարդիկ էլ չեն ամաչէ պաշտպանել անհաւատութիւնը, չեն կարմրի, երբ որ գժոխքի դուռը գրախտի պէս կը զարդարեն, կամ իրանց խայտառակութիւնը կը պաշտպանեն բերանի փրփուրով: Նոքա մինչև անգամ չեն զգայ իրանց յանցաւորութիւնը և ցածութիւնը, երբ որ ցեխով կը շաղախեն արժանաւորի մաքուր անունը և դափնեայ պսակը: Հաւատացէք, որ այն ազգը, որի մէջ կան Պաւղոս առաքեալի կոչուած «անզգայեալք» [1]) այսինքն որոնց յայտնի է Աստուծոյ գիտութիւնը, բայց ճշմարտութիւնը անիրաւութեամբ ունին, որոնք անզգամութեամբ էլ չեն զգում այն, ինչ որ առաջ զգացել են կամ ինչպէս որ մեր թարգմանութիւնն է ասում. «որք զանձանց իւրեանց զյոյսն հատին», նոքա կորստեան ճանապարհին են: Իրանց ներշնչած թունաւոր գոլորշիներով, դոքա արբենում են, հպարտութեամբ են ուռճանում: Աստուծոյ և մարդկանց առաջ, զուարթնոց պայծառ դէմքերի առաջ—դոքա բորոտեալներ են և չեն գնում առանձնանալու, մերկ են և չեն ամաչում իրանց մերկութիւնից:

Մի ասէք, թէ այսպիսի խօսքերը բարեկրթութեան

---

1) Եփ. Դ. 19:

հակառակ են, թէ այսպիսի հայեացքները փիլիսոփայական չեն, կամ ընդդէմ են խելացի աշխարհական մարդկանց հայեացքներին, թէ հանճարները այլապէս են մտածել: Բայց ես չեմ խօսում որպէս աշխարհական մարդ, և ոչ որպէս փիլիսոփայ կոչուածները, և ոչ այնպէս, ինչպէս որ հանճարները երգել են՝ մինչև որ յուսահատութեան և զղջման օրեր չհասան: Ես խօսում եմ, ինչպէս որ պատուիրել է այն Աստուածը, որին որ ծառայում եմ, ինչպէս որ խօսել են Նորա մարգարէները, առաքեալներն ու մարտիրոսները, ինչպէս որ խօսել են նոյն իսկ հեթանոսներից լաւագոյններն ու իմաստնագոյնները, որոնց ասածն կարող էին անշուշտ ամաչեցնել քրիստոնեայ կոչուածներից շատերին, եթէ տակաւին կարմրելու ընդունակութիւն չեն կորցրել: Իսկ ես ասում եմ. Վա՜յ այն մարդուն, որ համարձակւում է իւր ոչնչական անզօրութիւնը բարձր դասել, քան բարոյական օրէնքի աստուածային հզօրութիւնը, թող լինի նա յամառ պատանի, փիլիսոփայ յօրջորջուած, փառքով պսակուած հանճար, կամ յաջողութիւն վայելող աշխարհամարդ: Մի՛ խաբուիք. խախտել այդ օրէնքը—վտանգաւոր է, մերժել նոյնը—այնպիսի ոճրագործութիւնն է, որ անպատիժ չի մնայ: Սինայ լերան ամպն ու հուրը դեռ ևս ծխվում է մարդկան և ազգաց պատմութեան մէջ, և այն տեղի սարսափելի փայլատակումները լուսաւորում են, գալիս են նոր սովորութիւններ, կրօնները ծագում են և անյայտանում, իսկ բարոյական օրէնքը ընդ միշտ դրուած է յաւիտենական տախտակների վերայ: Վաղ թէ ուշ մենք հատուցումն կըստանանք իւրաքանչիւր սուտ խօսքի և անարդարութեան փոխարէն, շուայտութեան և սնափառութեան փոխարէն: Միայն արդարութիւնն ու ճշմարտութիւնը հաստատ կու մնան, անիրաւութիւնն ու ստութիւնը կարող են երկար ժամանակ տևել,

բայց դատաստանի օրը վերջապէս պիտի հասնի ամենայն բանի համար։

Երրորդ՝ այս է մնում ինձ ասելու, որ եթէ դուք ցանկանում էք ուղիղ հասկանալ պատուիրանազանցութեան պատմութիւնը, զգուշացէք այն տեսութիւնից, իբր թէ երիտասարդութեան մեղքը այնպէս ծանր չի համարուի, ինչպէս չափահասի մեղքը։ Զգուշացէք այն տեսութիւնից, որ գայթակղեցնելով ձեզ քաջալերում է, թէ «երիտասարդութեան ժամանակ պէտք է գժութիւններ անէք և խենդանաք»։ Միթէ դուք կարծում էք, թէ հասակը կարող է արդարացնել Աստուծոյ օրէնք խախտելու ձգտումը, թէ ոչինչ վնաս չի լինի, եթէ ձեր Արարչին սպասել տաք, մինչև որ դուք խելքի գաք և ուշք ու միտքը հաւաքէք։ Դուք Աստծուն զլանում և մերժում էք ձեր ներկան, որ ձեզ է պատկանում, իսկ տալիս էք ապագան, որ դուք տակաւին չունինք։ Դուք երիտասարդութեան ժամանակ վատնում էք այն պատուական պարգևները և անգին դէպքերը, որոնք ձեր հասուն տիոց գանձ և զարդ պիտի դառնային։

Բայց Աստուած ե՞րբ շնորհեց կատարեալ ներում ձեր երիտասարդութեան օրերի մեղքերին։ Միթէ Նա ասե՞լ է ձեզ, թէ դուք ձեր լաւագոյն տարիքը կարող էք զոհել չար զօրութիւններին և պատուականագոյն գանձը այնպէս ցրուել, որ խոզերը կոխոտեն։ Երբէք աշխարհային անմտութիւնը չի հնարել աւելի սուտ, աւելի վտանգաւոր, յիմար տեսութիւն։ Բոլոր պատմական իրողութիւնները, բոլոր բնութեան օրէնքները, բոլոր Ս. գրոց պատուէրները ստութեան կնիք են դըրոշմում այդ մոլութեան վերայ։ Այդ այնչափ ճշմարիտ է, որչափ եթէ թունաւորենք աղբիւրը և յուսայինք, իբր թէ գետը մաքուր պիտի մնայ։ Այս այնչափ ճշմարիտ է, որչափ եթէ Սրբութեանց Սրբութիւնը ան-

կարգութեան և խաղաղաւէտութեան տեղի դարձնուի և այնուհետև համարուի, իբր թէ պղծած վայրը այնու ամենայնիւ կը լցուի նինկի անուշահոտութեամբ և դարձեալ կը վկայէ Աստուծոյ ներկայութիւնը։ Այո նոյն է, եթէ Ջարդուի Աստուծոյ այգու ցանկապատը, վարազներին ազատութիւն տրուի, որ մէջը մտնեն և ամենայն ինչ ոտնատակ անեն, և ապա անկատոյց մընանք, թէ խաղողի ծիրանի ողկոյզները չեն վնասուի։ Ո՛չ, եղբայրք իմ, ամենայն ոք հնձում է, ինչ որ ցանել է։

Բայց մարդիկ միթէ երբէք չե՞ն փրկուիլ։ Միայն ինչպէս ինչպիսի գնով. դառնապէս իմանալով, որ «կրքերի սաստկութիւնը նշան է բանականութեան թուլութեան», և թէ նոքա այդ կռւում աւելի թուլացրեցին իրանց բանականութիւնը և զօրացրեցին կրքերը։ Նոքա փրկուել են այնպէս, ինչպէս որ կրակից ազատում են դեռ ևս մոխիր չդարձած, բայց և այնպէս արդէն խանձուած ցախը։ Այո՛, նոքա փրկուել են, բայց փրկուել են տագնապով և զայրուցքով, փրկուել են կրակի խանձուածով սրտում, բազմաթիւ անբուժելի վէրքերով։ Հարցուցէք նոցանից, և նոքա ձեզ կը պատմեն, թէ «երիտասարդութեան մեղքերը նոցա վերայ ընդմիշտ ծանրացել են։ Այդ մեղքերի պտուղը երևացել է նոցա խոնջացած կեանքի մէջ, մաքերը անօգուտ կերպով մաշելու մէջ, ոյժերը ընդունայն թուլացնելու մէջ»։ Ապա մեղքերի ներգործութիւնը երևում է նոցա յիշողութեան մէջ, որ տրտմութիւնների և պղծումների հանդիսարան է դառնում, նոցա բարոյական զգացման կոպտութիւնների մէջ մարմնական զօրութեան նուաղման մէջ։ Նոքա կարող էին դարձեալ պատմել, թէ ինչ անտանելի զգացմունք է այն վիճակը, երբ որ մարդ հասունութեան չէմքում կանգնած է տխուր անցեալի դառն գիտակցութեամբ. թէ որչափ խոր ցաւ է գիտենալ, թէ սիրտը երբէք չի խաղաղուի, մինչև որ

չջնջուի այն ամէնը, ինչ որ գրողն արդէն անջնջելի մնայլ տառերով գրել է, իսկ այս բանը անհնարին է։ Այս բոլորը թշուառ մտածութեան մտքեր են, որոնց նմանը մարդկային հոգու մէջ քիչ են պատահում։ Նոքա արդար և փրկուել են, բայց քանիսը մնացել են տակաւին չփրկուած։

«Դուք տեսնում էք, ասաց հին փիլիսոփան, միայն այն մարդկերանց հագուստը, որոնք նաւաբեկութիւնից փրկուել են։ Իսկ ո՞ւր են միւսների յիշատակները, որոնք անհուն անհամար թւով թաղուել են մրրկայոյզ ալիքներում»։

Սիրելիք, յարգեցէք ձեր անձը, յարգելով Տէր Աստծու վսեմ, գթառատ պատուէրները։ Եթէ մինչև իսկ քրիստոնէութիւնը չլինէր, եթէ մարդս այլ առաջնորդութիւն չունենար, քան պապերի մնացած աւանդութեան լոկ մի աղօտ պսպղանքը կամ խաւարի մէջ մնացած բանականութեան մարող ջահը, այն ժամանակ ևս նորա մէջ պիտի գտնուէր գէթ այնքան բընական ազնուութիւն, այնքան անկեղծ խղճահարութիւն և ամօթ, որ նա պատրաստ գտնուէր միշտ անարգանօք մերժել իւր բարի բնազդումների բարձր անդրանկութեան վաճառումը՝ ի սէր մի չնչին ոսպնաթանի, ինչ որ կարող է ստանալ մեղքից։ Իրականութեան մէջ այսպիսի զգացմունքերը շատերին օգնել են։

Բայց դուք եղբայրք հեթանոս չէք, այլ քրիստոնեայ էք։ Դուք—Քրիստոսի եղբայր էք։ Աստուծոյ որդի էք։ Նորա պատկերի և նմանութեան վեհափառութիւնը ցոլում է ձեր մէջ։ Նորա խաչի նշանը դրոշմած է ձեր ճակատի վերայ։ Ձեր մարմինը—Նորա սուրբ տաճարն է, ձեր սիրտը—Նորա սեղանն է, որի վերայ Նա վառեց Իւր սիրոյ հուրը։ Դուք լսում էք Նորա բանը, հաղորդութեամբ ընդունում էք Նորա Ս. պարգևները, Նորա բարձր հրաւէրը հրաւիրում է լինել ձեզ

սուրբ և մաքուր, Աստծու մօտ ձեր որդեգրութեան փառքը, այն անչափ թանգ գինը, որ վճարուել է ձեր փրկութեան համար, ընծայութեան և սրբութեան խորհուրդը—այս ամենով դուք ընտրեալների կարգումն էք դասվում։

Արդեօք այնպիսի վսեմ, աղնուական, աստուածային բան կա՞յ, որի համար որ դուք կոչուած չլինէք և որի համար որ դուք պիտանի չլինէ՞ք, Եւ միթէ դուք յօժարակամ անձնատո՛ւր կլինէք մեղքի պղծութեան։ Յարգեցէք ձեր անձը՝ վասն զի դուք աւելի բարձր էք, քան կարծում էք։ Երբ որ դուք խուրհում էք սրբերի մասին կամ մտքում միանում էք արդար հոգիների հետ, կամ աւելի ևս բարձրանալով՝ համարձակվում էք նայել Հայր Աստծուն, որ ձեզ ստեղծել է, որ Ս. Հոգուն, որ լոյս է հեղում ձեր սրտի մէջ, Նորան որ Աստուծոյ աթոռի առաջ բարեխօսում է ձեզ համար,— այն ժամանակ որչափ վրդովեցուցիչ և զզուելի է թուում ձեզ այն փիլիսոփայութիւնը, որ ծաղրում է մեղքը և առ ոչինչ է համարում, որչափ վայրագ է զգայամէտ աշխարհականների տեսութիւնը, որոնք ձեզ խորհուրդ են տալիս թողնել ճշմարտութեան լոյսը, որպէս զի ձեր ստամոքսը պարարէք խոզի պէս։ Աշխատենք, որ մեր կեանքը արժանի լինի Նորա սրբազան անուան, որ մեզ կոչում է ընտրեալների կարգը դասուելու։ Այս կեանքում մենք չենք կարող լիովին արժանի լինել, այլ ըստ մեծի ողորմութեան Աստուծոյ, մենք այդպէս կը լինենք այնտեղ, ուր չի կարող մտնել չարութիւնը։ Ով որ մեզ սիրում է, Ով որ Իւր արեամբ վճարեց մեր փրկութիւնը, Նա մեր մեղաւոր հոգին կը զարդարէ Իւր արդարութեան սպիտակ հանդերձներով և մեր անունները կը յէշէ Իւր Հօր և հրեշտակների առաջ։

## Ձ.

## ՀՈԳԵԿԱՆ ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ԿՈՐՈՒՍՏ·

«Յորում աւուր ուտիցես ի նմանէ մահու մեռանիցիս» 1)։ Այսպիսի բառերով մարդն առաջին նախազգուշութիւն ստացաւ Աստծուց, առաջին արգելք և սաստումն, թէ ինչ պիտի լինի առաջին և ուժեղ պատիժը։ Սակայն հազիւ թէ այդ բառերն արտասանող ձայնը լռեց,—իսկոյն պատուէրը խախտուեցաւ, որի հետևանքը բնականաբար պիտի լինէր սպառնացած պատիժը։ Մի և նոյն փառաւոր և նուաստացնող դաս կրկնուեցաւ նաև Մովսէսի պատմութեան մէջ։ Քարէ տախտակները, որոնց վերայ Ինքը Աստուածը գրել էր, աւելի շուտ խորտակուեցան, քան վերան գծագրած օրէնքները յայտնի եղան։ Սասանուած լեռների վերայ տակաւին ծխում էր հուրը, երևում էր թանձր ամպը, որ ծածկում էր Աստուծոյ ներկայութիւնը, իսկ ժողովուրդը «Նստաւ յուտել և յըմպել, և յարեան ի խաղալ» 2)։

Ահա՛, միշտ այսպէս է լինում մարդկային պատմութեան մէջ։ Նորա բոլոր խորհուրդները առ չարն են ուղղուած և եթէ մարդը օրէնքի խստութեամբ դատուի, էլ ոչ ոք չպիտի կարողանայ արդարանալ։ Թերահաւատութիւնը — մարդկային աղէտների գլխաւոր պատճառն է։ Աստուած աշխատում է

---

1) Ծննդ. Գ. 4—5։

2) Ել. ԼԲ. 6։

օրտերը դրաւել երկու նշանաւոր շարժիչներով—սիրով և ահով։ Սակայն մեղքն ու կամապաշտութիւնը հրապուրում են մեզ, և մենք նախ երկմտում ենք ապա դադարում ենք հաւատալ, վերջապէս մոռանում ենք, կամ մտքից խպառ հանում ենք. մոռանում ենք համարձակ և գիտութեամբ, մինչև որ մոռացումը դառնում է բաց աչքով կուրութիւն, յանցաւոր կուրութիւն։ Եթէ հնարաւոր է այդպիսի մոռացութիւնից զթափուել և ուշքի գալ, եթէ մահուան, դատաստանի, յաւիտենականութեան մասին մտածութիւնները կարող են մարդուն փոքր ինչ զգուշացնել այդ մոլար ճանապարհից, որ արագ արագ դէպի կորուստ է տանում,—հապա այս օր մենք մեզ մի վայրկեան քննենք և խոնարհ սրտով տեսնենք, թէ արդեօք չե՞նք ընթանում մեղքի շաւղով, և թէ ուր կարող է հասցնել մեզ այս ճանապարհը։ Անցեալ կիրակի, խօսելով Ադամի պատուիրանազանցութեան մասին, մենք տեսանք մեղքի սկիզբը և աշխատեցինք օգուտ քաղել այն դասից։ Այժմ խօսենք մեղքի հետեւանքների մասին, անոր անդառնալի պտուղի մասին։ Այս դէպքումն էլ մեզ կօգնէ արդելեալ պտուղի պատմութիւնը իւր բոլոր ճշմարտութեամբ։ Այդ պատմութիւնը մեզ, քրիստոնեաներիս, տալիս է աստուածային անխուսափելի դատ, ինչպէս էլ որ ուզենան նոյնը մեկնել քննադատները և ուսումնականները։ Պատմութիւնն այնքան վսեմ է, որ էլ ոչ մի բան չի կարող բարձրացնել անոր նշանակութիւնն ու խորութիւնը։ Բայց որպէս զի այդ խրատը հասկանալի լինի, նախ պէտք է խոնարհութիւն ունենալ, վասն զի մեր մտաւոր և հոգևոր հպարտութեան համար այդպիսի խրատը տխուր և դառն է, ձանձրալի և տհաճելի է, խոցոտիչ և վիրաւորական է։

Եղբարք, ես չէի ընտրի այդ պատմութիւնը, եթէ իմ ցանկութիւնը լինէր ձեզ զուարճացնել կամ շողո-

քորթել, եթէ մտածէի ձեր, և առհասարակ մարդկա-
յին դատաստանի մասին։ Ինձ հետաքրքրում է առա-
ւելապէս այս դասի օգուտն ու ճշմարտութիւնը. և
ես պարզ տեսնում եմ անոր ճշմարտութիւնը, որով-
հետև թէ՛ Ս. Գրքի մէջ (առաջին երեսից մինչև վեր-
ջինը) թէ բնութեան մէջ, թէ՛ ֆիզիքական կենաց
պահանջների մէջ, թէ՛ պատմութեան մէջ, և թէ՛ հո-
գու շարժումների մէջ տեսնում ենք, որ մեղքն ու
պատիժը միշտ սերտ կապուած են, անընդհատ շղթա-
յով։ Այս եզրակացութիւնը կարելի է հանել Աստծու
յայտնութիւնից՝ անյայտների մասին, և մարգարէու-
թիւնից՝ գալոցների մասին։ Մարդիկ այս իրողութիւնը
դիւրաւ մոռանում են, որովհետև խրատ և նախա-
զգուշութիւն չեն սիրում։ Բայց ես կարծում եմ, որ
նախազգուշութիւնն անհրաժեշտ է, քանի որ իրողու-
թեան հանդէպ մենք չենք լսում Աստուծոյ ձայ-
նին և անուշադիր ենք թողնում դժուարակիր բարո-
յական կանոնները։ Կայծակի որոտումները շատ անգամ
ցնցում են անհոգ ուղևորին, որ իւր գլխին փայլող
փայլատակումը չի նկատում։

Ուրեմն հեզ սրտով և պարտուպատշաճ պատ-
կառանօք, շարունակենք պատմութեան այն տեղից,
ուր որ կանգ առանք անցեալ կիրակի։ Արգելած
պտուղը ճաշակուել է, չարութեան գիտութիւնը
ստացուել է։ Փորձիչի սուտութիւնը, մի առ ժամանակ
կարող էր ճշմարտութիւն երևալ Եւային, որ սքանչա-
ցել էր ունայնասիրութիւններից (ինչպէս որ բանաս-
տեղծը*) դորան նկարագրում է, և ինչպէս որ միշտ

---

*) «Ցայնժամ պահու ողջոյն զքաղցեալ էր Եղիայ զհաղապակաւն:
Եւ որպէս քուէր նմա արդեամբ կամ ի կարծիս եւ էր առ
կարի իմն ցանկութեան զհեռուրեանն, չէր նորա Դեւայ ցայնժամ
յայլ պտուղ զայնպիսի խաղորդութեան: Եւ կարծիք իսկ ի-

պատահում է մեղանչութեան առաջին տպաւորու-
թիւնից յետոյ, երբ որ ինքնահաւան ժպրհութիւնը
ըմբռնում է մարդուն)։ Որքեցան կամապաշտութեան
քաղցրութիւնից, անհնազանդութեան ուրախութիւ-
նից, պղտորուած երևակայութիւնից, ըմբոստութեան
բռնկումից, չգիտենալով, որ այս ամէնը մահ է,—նա
ոչ միայն ինքը կերաւ, այլ աղէտալի արագութեամբ
փորձիչի ձեռքի տակ ինքը եւս փորձիչ դառնալով՝ «ետ
առն իւրում ընդ իւր, և կերաւ»։ Եւ այն ինչ անցաւ
կարճատև յափշտակութեան տենդային ներգործու-
թիւնը, «և կացան աչք երկոցունց, և գիտացին զի
մերկ էին» [1])։

Այս խօսքը նման է զանգակի առաջին զարկին,
որ տուժում է հոգու բաժնուիլը մարմնից։ Այդ ձայնը
արդէն տարածվում է տատանած օդի մէջ, սարսու-
ազդելով բոլոր լսողների վերայ, այն ինչ միւս զար-
կերը, մինը քան զմիւս աւելի ուժգնութեամբ կրկնում
են, սոսկալի, տխուր և միակերպ եղանակով, թէ
մեղքից յետոյ գալիս է մահը։ Ադամ և Եւան լսում
են Տէր Աստծու գնալու ձայնը դրախտի մէջ, և
թագնուեցան ծառերի մէջ։ Ամաչելուց յետոյ գալիս
է երկիւղը, խոստովանութիւնը, փոխադարձ մեղա-
դրութիւնը։ Ապա թափվում է անէծքը, այր մարդու
համար—աշխատութիւն երեսի քրտինքով, արտմու-
թիւն, փուշ և տատասկով ծածկուած երկիր. կնոջ
համար — ստորադրութիւն և տանջանքներով երկունք.
երկուսի համար — դրախտի և կենաց ծառի պտղի եր-
ջանկութեան կորուստ և մարմնով հող դառնալը, և

---

ռուամն աստուածանայոյ չէին հեռի ի մեաց
եուրա: Եվեր անձրաքաբար, եւ ոչ գիտաց յանձին զմահ ի հա-
չակէլ անդ»: Միլտոն:

1) Ծնն. Գ. 6, 7:

այս էր մահը, որ կարող է վերջանալ յաւիտենական մահով։ Հոգւոյ մեծութիւնը մթնացած է չարութեան գիտութեամբ, անոր լոյսը աւելի և աւելի նսեմանում է գերեզմանից վեր շնչող ապականուած գոլորշիների մէջ, ուր որ մարդու համար ոչ Աստուած կայ, ոչ յոյս։

Առաջին մարդկանց կեանքի շարունակութեան մասին ոչինչ չի խօսում Ս. Գիրքը, որ գրուած է ոչ թէ մեր դատարկ հետաքրքրութեանը բաւականութիւն տալու համար, այլ մեր յաւիտենական փրկութեան համար։ Յանցանքից յետոյ Եւայի անունը Ս. Գրքում միայն երկու անգամ է պատահում։ Մեզ յայտնի չէ, թէ նոքա այնուհետև արդեօք աւելի ցած էին գլորվում, ինչպէս որ շատ մեղաւորներին պատահում է, թէ նոցա զգաստացնում էր գթութեան և ողորմութեան յոյսը, որ նոցա ականջին աւետեց առաջին մարգարէութիւնը, և այն հաւատը, թէ կնոջ սերմը պիտի խորտակէ օձի գլուխը։ Նոցա մնացած կեանքից Ս. Գրքում գտնում ենք միայն մի տեսարան, որ կարծես թէ դիտմամբ յիշատակուած է այն սխալ գաղափարը փարատելու, իբր թէ Աստուած մահ սպառնալով ենթադրում էր միայն մարմնական մահ։ Այն սոսկալի երևոյթը, որ առաջին անգամ նոցա կեանքում յայտնուեցաւ, կարծես թէ իրանց կրած կորստի հետևանքներից միայն մի օրինակ էր։ Նոցա գլխին յաղթական մահը իւր մանգաղն արդէն շողշողացրեց, առ ժամանակ հարուածը երկարաձգելով։

Այս ճիւաղի մասին հարկաւ նոքա արդէն պէտք է փոքր ինչ գաղափար ունենային։ Մարդուց շատ առաջ նախաժամանակեայ հրէշները իրար պատառոտել են։ Ընթացս շատ դարերի աշխարհքը եղել է կռուի և կոտորածի, ջարդի և վիրաւորութեան տեսարաններ։ Բնագէտները հաւատացնում են, թէ

«բազմազանութեամբ, գեղեցկութեամբ, կազմութեամբ, սրութեամբ, զօրութեամբ, ներգործութեամբ ոչ մի զինուորական զրահաւորութիւն չի կարող համեմատուել քաղաքացած աշխարհի մահաբեր գործիքների հետ»: Անտարակոյս մեր նախածնողներին շատ լաւ յայտնի էր քայքայման երեւոյթը և զարհուրում էին այդպիսի տեսարաններից: Այդ բանի օրինակ էին և՛ ծաղկի գեղեցկութիւնը, թառամութիւնը և՛ տերեւների չորանալը. Նոքա իրանց աչքով տեսնում էին, թէ նեխութեան առաջին նշանի հետ ինչ պզտելի կերպարանք էր ստանում գազանի փայլուն մորթը կամ թռչունի գեղեցիկ փետուրը, բայց նոքա դեռ եւս չէին տեսել այն տեսարաններից մէկը, որ ամենաքաջ սիրտն անգամ թուլացնում է, ազդելով անտանելի անզօրութեան և անճարութեան գիտակցութիւն: Նոքա տակաւին չէին տեսել, թէ ինչպէս մեր ամենասիրելին՝ խաղաղութեան և երջանկութեան համար ամենաթանկագին էակը՝ ինչպէս անդառնալի կերպով հեռանում է մեզանից անյայտ աշխարհը: Նոքա չէին տեսել, թէ ինչպէս մարդկային հրաշագեղ դէմքը գունատվում և ցամաքում է մահուան այլանդակութեամբ, իսկ չքնաղ, սիրելի հայեացքը քիչ քիչ հանգչում է: Յանկայն նոքա ի՛նչպէս տեսան և իմացան մահը:

Նոցա մեղանչութեան հետեւութիւնները անցում էին բացի սաստկութեամբ, և նոքա լսեցին եղբայրասպանութեան բողոքող ձայնը: Միթէ այս անշունչ դիակը—ա՞յն զաւակն է, որ այնպէս սիրելի էր: Այո՛, ապշած, անճար, զարհուրած կանգնած էին այն մարմնի կշտին, որից որ հոգին հեռացել էր: Սիրտը պատառող ճչերը, հօր արտմութեան բռնկումը, մօր արցունքը, որ թափվում էին որդու ճակատի վերայ, այնչափ ազդեցութիւն էին գործում սպանուածի վերայ, ինչպէս

և այն ցուրտ գետնի վերայ, ուր որ նա փռուած էր։ Նորա գեղեցկութիւնից և քնքշութիւնից ոչինչ չէր մնացել, բացի այն բանից, որ արդէն որպէս հող՝ հողին պիտի դառնուր։ Բայց այս դեռ բոլորը չէր։ Այս բնական մահը, որչափ էլ որ սոսկալի, անհարկաւ նուաստացուցիչ էր,—լոկ միայն նմանութիւն էր միւս՝ աւելի վատթար մահուան։

Ո՞ւր փախաւ մարդասպանը։ Փախստական երերեալ և տատանեալ ճակատին Աստուծոյ նշան դրած Կայէնը՝ Նորա երեսից հեռացաւ, թաղնուեցաւ։ Ահա այն սոսկալի պատկերը, որով սկսվում է Աստուծոյ յայտնութիւնը մարդուն։ Առաջին մարդիկ աքսորուած են Եդեմից. Նոցա անդրանիկը—փախստական է, երկրորդ որդին—սպանուած կոհ է. Աստծուն պարկեշտ սրտով պաշտողը մեռած է, իսկ սպանողը մեռնում է աւելի սարսափելի մահով,—ահա թէ ի՜նչ տուեցիր, սոսկալի արգելեա՛լ պտուղ։ Այո՛, «յորում աւուր ուտիցես ի նմանէ, մահու մեռանիցիս»։

Ուրեմն, պատգամը կատարուեցաւ։ Այն կատարվում է այժմ ևս։ Եղբարք, մենք ապրում ենք մահու աշխարհի մէջ։ Նոյն իսկ բնութիւնը կարծես թէ անիծուած է և չարչարվում ու տանջվում է իւր երկունքի ժամանակ։ Բնութիւնը իւր պատուհաններն ունի—սով, իւր բարկութեան և սոսկման երևոյթներ—երկրաշարժեր ու խաւարումներ։ Ունի փոթորկից առաջ անհեղասաստ լռութեան րոպէներ, իսկ հրաբուխները այն կրակի սոսկալի ապացոյցներն են, որ ներսն է ծածկուած։ Երկրի մակերևութի վերայ թափուած են աշնան տերևներից աւելի խիտ խիտ մեր ցեղի փտող մարմինները։

Ո՞ւր են այն մեծ ազգերը, որ կառուցել են բուրգեր և բաբելական տաճարներ։ Ո՞ւր է Եմաթի թա-

*դաւորը, և Արփաթի թագաւորը*[1]*։ Դոցա յիշատակն անգամ անյայտացել է իրանց հետ ի միասին։ Ինչպէս ասել են. «մեր երկիրը մեռեալների մեծ քաղաք է, որ անդադար նորանոր գերեզմանների փողոցներ է քացանում»։ Ինչպէս անցեալում ապրողները, այնպէս և մենք—խոտ ենք հնձող մանգաղի համար։ Մենք էլ մերձենում ենք այն լռութեան, որով լռել են միլիոնաւորները։ Մահը մեզ համար շատ հասարակ երևոյթ է, բայց և այնպէս այդ բանին երբէք չենք ընտելանում այն չափով, որ էլ սոսկալի չերևայ։ Մեռեալները մեզ բաց չեն արել իրանց զարհուրելի գաղտնիքը, և երեկուայ մեռած երեխան աւելի գիտէ, քան ապրող հազար միլիոն մարդիկ։ Բայց այդպիսի մահը աւելի փոքրագոյն, աւելի պակաս զարհուրելի մասն է երկրորդ՝ հոգևոր մահուան, որի մասին Աստուած զգուշացրել էր, թէ «յորում աւուր ուտիցես ի նմանէ, մահու մեռանիցիս»։*

*1. Հոգևոր մահուան էութիւնը քննելիս, ես կը խնդրեմ ձեզանից, որ ուշադրութիւն դարձնէք երեք պայմանի վերայ։ Նախ իմանանք և սովորենք, որ մահը անխուսափելի է։ Վաղօրօք սովորենք, թէ սուտ է խօսում փարձիչը, երբ որ յանդգնութեամբ խաբում է, թէ «Ոչ եթէ մահու մեռանիցիք»։ Ո՜հ ինչպէս յաճախակի մինչև այս օր մեղաւորը այդ խօսքը շշնջում է իւր սրտում, որ երբէք մարդկային փորձառութեան ոչ մի դէպքում չի ճշմարտացել։ Եթէ մարդն ուզում է իւր մեղքի մէջ մնալ, թող այն էլ գիտենայ, որ այսպէս կամ այնպէս պիտի տուժէ, որ մեղքը նորան կը գտնէ, որ նորա ճանապարհը չարչարանքի ճանապարհ կը լինի, և ինքը երբէք հանգիստ չի ունենայ։*

*Զարմանալի է, թէ մեղքը ինչ զանազան վրէժ-*

---

[1]. Ես. ԼԶ. 19, Դ. Թ. ԺԹ. 13։

ցոյցը, որ բաց անէ ոճիրը և վրէժխնդիր լինի։ Հներն էլ այս բանը իմացել են. Նոցա առասպելներում ասուած է, թէ չարագործներին տանջող գիցուհիները արճճէ ոտքերով են դանդաղում, բայց հարուածում են երկաթէ ձեռքերով, թէ աստուածների աղացքը ուշ է աղում, բայց խիստ բարակ փոշի է դարձնում։ Էպիկիւդի որդու Գլաւկոսի պատմութիւնը, Իբիկոսի կռունկները, Տուլուզեան ոսկու, կամ այն մարդու մասին առակը, թէ ծիծեռնակի բոյնը ոտքի տակ կոխոտեց միայն այն պատճառով, որ իւր ականջում լսուեցաւ. իբր թէ նոքա աղաղակում էին «հայրասպան»,—մի և նոյն վարդապետութիւնն են լուսաբանում, որ մեզ խրատում է, թէ «ոչինչ է ի ծածուկ որ ոչ յայտնեսցի, և գաղտնի որ ոչ ծանիցի»[1]։

Մինչև անգամ հեթանոսները մեզ նոյնն են ուսուցանում։ Ուրեմն, մի՛ կարծէք, եղբարք, թէ դուք կարող էք ազատուել պատժից, եթէ անհոգ և անտառուած կեանք վարէք՝ ուտելով, խմելով և մեղանչելով։ Եթէ մեր նախածնողները անպատիժ չմնացին, դուք էլ չէք ազատուիր։ Աստուած չի աչառում, նա խտրութիւն չի դնում մարդկանց մէջ։ Եղէք դուք մանկահասակ, հզօր, ուրախ, տաղանդաւոր և մեծահռչակ, բայց եթէ դուք մոռացել էք Աստծուն, եթէ անձնատուր էք եղել մարմնին կամ սատանային, դուք զերծ չէք մնայ անողոք հետևանքներից։ Աստծու կապարճը լի է զանազան սուր սլաքներով. և եթէ դուք մեղքի մէջ էք ապրում, հաւատացած եղէք, որ Աստուծոյ աղեղը ձեր դէմ լարուած է, հէնց այնպէս իմացէք, իբր թէ դուք այդ բանը ձեր աչքով էք տեսնում. կարելի է թէ սլաքն արդէն հնչում է օդի մէջ և անոր հասուցած վէրքը կրակի պէս կայրէ ձեր հոգին։

---

1) Մատ. Ժ. 26:

2. Այս պատիժը ոչ միայն անխուսափելի է, այլ և բնական է։ Այդ բանը ոչ անակնկալ հրաշք է, ոչ յանկարծական երևոյթ է, ոչ պատահական է և ոչ բացառիկ դէպքերում է կատարւում, այլ շատ սովորական եղելութիւն է, տակաւ առ տակաւ պատրաստուելով անվրիպելի կերպով և ստուգապէս իրականանալով։

Որչափ որ տարօրինակ թուին երբեմնակի յանկարծական և անակնկալ հատուցումները, որ մարդիկ վերին զօրութեանց քմահաճոյ միջամտութեան են վերագրում, ատոնք հարկաւ փառաւոր ստուգութիւններ են, թէ այն հատուցումը մշտնջենական օրէնքի պտուղ է։ Մեղաւորը կարող է խուսափել արտաքին հետևանքներից. բայց նա չի կարողանայ բնական հետևանքներից զերծ մնալ։

Դուք մեղք գործեցիք, և ոչ մի հրաշք չի պատժում ձեզ. մառախուղը չի լցվում սպառնական դևերով, ձեր պատերի վերայ չեն երևում բոցեղէն տառեր, բայց և այնպէս օրէնքը անխուսափելի կերպով սկսում է գործել, և Աստուծոյ լոյսը համբերութեամբ և անաչառութեամբ մերկացնում է իւրաքանչիւր գործ ըստ արժանեաց, որով մինը արդարանում է, միւսը մեղադրվում է։ «Յաւուր յորում ուտիցես ի նմանէ, մահու մեռանիցիս»։ Հներից ոմանք թերահաւատում էին, վասն զի կայծակը՝ ինչպէս թւում էր՝ անխտիր հարուածում է թէ՛ անմեղին և թէ՛ մեղաւորին. բայց Աստուած կայծակի հարուածներով չի պատժում։ Նա թողնում է, որ մեղաւորը և նոյն իսկ զղջացած մեղաւորը՝ վայելէ իւր մեղքի բնական հետևանքները։ Դեռ երկար ժամանակ անցնելուց յետոյ, ինչ որ մարդը մեղանչել էր, մեղքը նորանից չի հեռանում, չի պոկ գալիս. մարդու վարմունքը դեռ էլի շարունակվում և նորան հալածում է, երբ

որ նա արդէն զղջացել և վաղուց ամաչում է. նա ժառանգում է մեղքի հետևանքները, որոնք երբէք իրանից չեն բաժանվում։

Տեսէք արտը, երբ որ հողմից ծփում և խոնարհում է, ինչ անթիւ հասկեր կան վերան, մինչդեռ այս անհամար հասկերից իւրաքանչիւրը բռնել է մի մի սերմից, որ սերմանողը ցանել է։ Այդպէս է և խղճահարութիւնը, ամօթը, լքութիւնը, յուսահատութիւնը, կորուստը որ շատերի կեանքն է կազմում։

«Բնութիւնը, ասում է մէկը, գործում է զարմանալի միակերպութեամբ. նա խիստ է ճակատագրի պէս, ինքնիշխան է բռնաւորի պէս, անգութ մահուան պէս. նա անմատչելի ընդարձակածաւալ է գովեստի համար, խիստ անողոք է աղաչանքի համար. ականջ չունի՝ որ աղօթք լսէ, սիրտ չունի՝ որ կարեկցէ, ձեռք չունի՝ օգնութիւն կարկառելու համար»։ Ով որ այս խօսքերը գրել է, Աստծուն չէր հաւատում, բայց ինչ որ նա բնութիւն է կոչում — Աստծու օրէնքների գումարութիւնն է, որ բարոյական աշխարհում այն նշանակութիւն ունի, ինչ որ ֆիզիքական աշխարհում ունի ձգողական օրէնքը։

Այդ օրէնքները գթառիրութեամբ կարգուած և ստեղծուած են մեր զգուշութեան և փրկութեան համար։ Երկնքի ամէն մի սև ամպի մէջ, երկրի ամէն մի գերեզմանի մէջ, մարդկութեան զգաստացող խղճի ամէն մի երևոյթի մէջ՝ անոնք անսխալ կերպով քարոզում են մեզ, թէ մեղքի պատիժը մահ է։

3. Ս. Գրքի այս առաջին գլուխներից մենք տեսնում ենք, որ հատուցումը ոչ միայն անխուսափելի է, ոչ միայն «մեծ օրէնքի մշտական հոսանքին» է ենթարկուած՝ պատճառի և հետևանքի յաջորդութեամբ, այլ և համեմատ է գործած մեղքին և ի յայտ է գալիս մեղանչողի սրտի համար ամենաանհաճոյ ձևով։

Եւան ցանկացաւ գիտենալ չարութիւնը, և ամօթով մնաց, երբ որ իմացաւ: Դէմքի առաջուայ մաքուր, գեղեցիկ անմեղութեան կարմրութիւնը՝ փոխուեցաւ ամօթի այրող գոյնի: Առաջ նոքա մերկ էին և չէին ամաչում այս բանից. այժմ նոցա աչքը բացուեցաւ, և իմացան իրանց մերկութիւնը:

Նոքա կասկածեցին Աստուծոյ սիրոյ մասին, իսկ այժմ էլ չեն համարձակվում նորա երեսին նայելու: Ինչպէս միշտ նորա բարկութիւնն էլ համապատասխանեց նոցա գործած մեղքին: Հէնց այն մեղքերը, որոնք վիրաւորիչ են նորա մեծութեան համար, նա ընտրում է որպէս գործիք իւր վրէժխնդրութեան համար:

Մենք շատ անգամ տեսնում ենք մեղքի և տանջանքի զարհուրելի նոյնութիւնը—Աստուծոյ դատաստանի պարզ օրինակներով: Անգութ թագաւորը, որի սեղանի տակ փշրանքներ են ուտում ձեռք ու ոտքը կտրած թագաւորները, ինքն էլ խեղանդամ է դառնում. իրանց անձը իմաստուն համարող մարդիկ՝ խելագարվում են. յաղթողներից ամենամեծամիտը՝ ամենատխուր մոլութեան զոհ է դառնում, զգայարանքների տարօրինակ պատրանքով՝ քամու ջաղացների հետ է կռվում և օդային ամրոցներում է ապրում, մարդասպանի, գայթակղիչի, և մոլորեցուցչի տանը երևում են շուայտութեան և արեան կատաղի դիցուհիներ: Այս են մեղքի ֆիզիքական և բարոյական երևոյթները, որ ծածուկ չեն մնում «և՛ նախանձողի յուզումներում, և՛ ահաբեկուածի երկիւղներում, և՛ ծուլի յապաղութեան մէջ, և՛ ամբարշտի ամօթի մէջ»:

Իսկ երբ որ Աստուած այդպէս է պատժում մարդուն, նա ուրեմն խիստ բարկացած է նորա վերայ: Երբ որ սատանէն չի բարկանում, նա մարդու գլխին թափում է պատուհաս կամ հիւանդութիւն,

*բայց աւելի վնաս է, երբ որ նա նորանից Իւր երեսը խիստ դարձնում է, նա ամբարիշտին թողնում է վարուիլ իւր ուզածին պէս և օգտուիլ իւր խելքի քէրմանքներից։ Եթէ հիւանդը փախչել է ուզում, թող փախչի։ Ցանկացող քաղաքները թող կորչին մեղքերի կրակոտ բոցի մէջ։ Ամբարիշտները ամբարիշտ են մնում, անառակները՝ անառակ։*

*Թէ ինչպէս Աստուծոյ բարկութիւնը թափուեցաւ ծակաչք իսրայելացիների վերայ, ահա այդ բանի նկարագրութիւնը. «Եւ տացէ ձեզ Տէր միս ուտելոյ, և կերիջիք միս։ Ոչ զմի օր ուտիցէք, և ոչ զերկուս, և ոչ զհինգ օր, և ոչ զտասն, և ոչ զքսան օր. այլ զամսօրեայ աւուրս ուտիցէք, մինչև ելանիցէ ընդ ռնգունս ձեր, և եղիցի ձեզ ի դառնութիւն»*[1]։

*Սրբի մատենագիրներից մէկը պատմում է մի թագուհու մասին, որ իւր սիրեկանին նամակ է գրել, թէ իւր ամուսնուն սպանել է. և մատենագիրն աւելացնում է, թէ այդպիսի կինը անշուշտ գրելուց յետոյ՝ անկողին կը մտնէր, որ անմեղ մանուկի պէս հանգիստ քնի։ Խղճահարութիւնը միայն այն մարդու քունն է կտրում, որ կամ առաջին անգամ է գնում յանցանքի ճանապարհով, կամ այն ժամանակ, երբ որ քաղցրութիւնն արդէն ճաշակուած ունենալով, իսկ յանցանքից նրան բաժին է մնում միայն կորստեան դառնութիւնը։ Այս՝ դէպքում կատաղի գիշատիչները կէս գիշերին նստում են անկողնու սնարին։ Իսկ չարութեան ուղին, մեծ մասամբ, մնում է նոյն և անխոտոր. երբ որ մարդը ընտրում է իւր շաւիղը, իրան էլ ոչ ոք չի արգելի, որ մինչև իւր վախճանը շարունակ այդ շաւղի մէջ մնայ։*

*Այսպէս է մեղքի ներգործութիւնը մահկանա-*

---

1) Թիւ. ԺԱ. 18—20:

ցուներիս վերայ, և հէնց այս վիճակը Ս. Գիրքը առանց փոխաբերութեան, առանց կատակ անելու, կոչում է մահ։ Ցիրաւի հէնց այս է մահը։ Մահը մեր մէջ է, երբ որ մեր մէջ էլ չկայ սուրբ սիրտ, երբ որ ընդհակառակը մենք աւելի զգում ենք դէպի մեր անձը գարշութեան տխուր զգացմունքը, երբ որ գայթակղուած կամքը մեզ բաժանում է մեր կորուսած անմեղութեան երկնքից. մենք մեր մէջ մահ ենք զգում, երբ որ—որպէս «մի տխուր նաւի բեկոր ամայի եղերքի մօտ»—վեր ու վայր ենք տատանվում մեղքի ամէն մի ծփանքի հետ։

Մեր յանցագործ անհաբեկութեան մէջ երկինքը մեզ թւում է բարկացած, իսկ «երկիրը գիւրաբեկ ապակուց շինած»։ Մենք ամէն բան գործում ենք զզուանքով, և յուսահատվում ենք աշխարհի մէջ չգտնելով ոչ գեղեցկութիւն և ոչ ազնուութիւն։

Միթէ մա՞հ չէ այն, եթէ մեր էութեան ամենայնիւ մասով տանջվում ենք մեղքի ամօթալի լծից, հալվում ծախիչ կրակի մէջ, առանց մէջը պտուելու, զգում ենք խաչի ծանրութիւնը, առանց խաղաղուելու և հանգստանալու։

Աւելի վատթար է, երբ որ մենք մեր գարշութիւնն իմանալով կարծես թէ մի և նոյն ժամանակ լսում ենք Տէր Աստծու ոտքի ձայնը դրախտի ծառերի մէջ և զգում ենք, որ Նա—մեր Բարեկամը, Հայրը, Արարիչը, Փրկիչը—Իւր երեսը դարձրել է մեզանից, թողնելով մեզ մռայլ խաւարի մէջ կամ ճարակող կրակի մէջ։ Մենք այս վիճակը կարող ենք կոչել մահ կենաց մէջ կամ կեանք մահու մէջ, սակայն խստակրօն Ս. գիրքը ուղղակի մահ է կոչում այդ բանը։

Երբ որ մարդու մէջ մեռել է բարութիւնը, յոյսը, երբ որ առ Աստուած սիրոյ հուրը սպառուել է իւր սրտի տաճարի մէջ, նա կարող է կենդանի հա-

մարուխը՝ բայց իրօք մեռած է։ Լոկ միայն մարմնի-
մասին մտածութիւնը մահ է, աշխարհի անապատ
ամայութեան մէջ կորցնել Աստուծոյ յիշատակը՝ նոյն-
պէս մահ է։ Որպէսզի այս բանը աւելի պարզ, աւելի
համոզեցուցիչ կերպով ապացուցանուի, Սողոմոնը
երիտասարդի ձեռքից բռնած, կարծես թէ նորան
պտտեցնում է մեղաց տան մէջ, ուր որ նստած՝ սի-
րում է նա խնջոյքի ուրախութիւնները վայելել։ Շըր-
ջապատողների վերայ մատնացոյց անելով, նա ասում
է մանկահասակին, թէ թէպէտ այս մարդիկ ժիր և
երիտասարդ են, ձեռքերում գինու բաժակներ են
բռնել, ճակատը զարդարած ունին ծաղկի պսակներով,
շրթունքներից վայրագ ծիծաղ են բռնկեցնում. բայց
իրանք անշնչացած են և շուայտում են դժոխքի ան-
դունդների մէջ։ Ո՜հ, եթէ այստեղ էլ գտնվում էք
այդպիսի մեռածներ (դոքա ի հարկէ ամենահպարտ,
արհամարհող, ինքնահաւան մարդիկ կը լինին), և նըս-
տած էք անզգայ սրտով՝ միայն ծաղր անելու համար,
այդ կը նշանակի, թէ չենք երկնչում «վասն վտանգին,
որի վերայ կայ», 1) թէ ամենայն բան ստութիւն ենք
կարծում, թէ ծերանում ենք այնքան ապականուած
սրտով, որ սրտի տակաւին չմաշուած մասը չի իմա-
նում, թէ միւս մասն արդէն չկայ, վերջապէս կը
նշանակի. թէ անարժան ենք Աստուծոյ նոյն իսկ բար-
կութեան։ Այս ժամերը, սիրելիք, երբ որ մենք աշ-
խատում ենք քննել մեր սիրտը և հոգեշինութեամբ
խրատուիլ, մեր նպատակը այն պէտք է լինի, որ չըն-
կղմենք մահաբեր քնի մէջ։ Եթէ այստեղ կայ մէկը,
որ այդչափ ցած է ընկել—նորան զարթեցնել չի կարող
մարդը։ Միայն Աստուած կարող է մեծամեծ տան-
ջանքներ տալով զգաստացնել նորա հոգին։ Այս է

---

1) Ա. Կոր. է. 6:

դորա միակ յոյսը, քանի որ Աստուծոյ առաւատաբու-
ւէրը անօգուտ անցաւ իրա համար։ Բայց ի՞նչ է այն
մարդու վիճակը, որի փրկութեան համար ուրիշ ոչինչ
հնարաւորութիւն չի մնում. բայց եթէ լիակատար
կործանումն երկրի վերայ։ Ով գիտէ, արդեօք գէթ
այս բանից կը խրատուի՞ նա։ Արդեօք այսպիսի ծայ-
րայեղութիւնները կը փրկե՞ն նորան մահուանից։ Բայց
աւա՜ղ, միթէ պատիժը չի՞ կատաղեցնի մարդուն, աւելի
անզգեղջ չի՞ դարձնի, յուսահատութեան դուռը չի՞
հասցնի։ Երանելի Օգոստինոսն ասում է. «Աստուած
թողութիւն է խոստացել զղջացողին, բայց ոչ ոքի
զղջումն չի խոստացել, ով որ մեղանչում է»։ Ո՛հ,
ինչպէս ամէնքս կարող էինք Սաղմոսերգուի հետ կրկնել.
«Լոյս տուր Տէր աչաց իմոց, զի մի՛ երբէք ննջեցից
ի մահ» 1)։

Կարելի է, եղբարք, դուք այն յուսով էք, թէ
շտապելու հարկ չկայ և թէ միշտ ժամանակ կը գտնուի
հոգու հետ հաշիւը տեսնելու համար։ Բայց ժամանակը
հաւատարիմ չէ և չի կարող լինել։ Դուք կարծում
էք, թէ զղջալ կարելի է մահուան մահճին մէջ։ Բայց
դուք երբ և իցէ գտնուե՞լ էք մեռանողի անկողնու
մօտ։ Ձեր վախճանն էլ այնպէս շուտ յանկարծակի
կարող է գալ, ինչպէս ուրիշներինը։ Դուք էլ պառ-
կած կը լինիք տանջանքների և յուսահատութեան մէջ,
պղտորուած և մէկը միւսին շփոթող մտածմունքներով,
որոնք ի զուր աստանդական են լինում անցեալ մե-
ղանչութեանց անապատում, ահ ու դողի մէջ ծփա-
ցող, մռայլ հոգով, երկրաւոր հոգսերի մէջ ծանրացած
սրտով, անհասկանալի բառեր արտասանող և պա-
պանձուած լեզուով։ Դուք կարծում էք, թէ այս
մասին մարդը զղջա՞լ կարող է, կամ ու և է նշանա-

1) Սաղ. ԺԲ. 4։

կութիւն. պիտի ունենայ այդպիսի զղջումը: Իսկ եթէ ոչ, ուրեմն ինչ որ լինելու է, այն էլ կը լինի: Չեմ հասկանում թէ ինչու մարդիկ այնպիսի թեթեւամտութեամբ են նայում իրանց ապագայի վերայ. ո՞ր անդէց է այդչափ համարձակութիւնը:

Չեմ ուզում խօսել այն վիճակի մասին, որ մեզ համար ծածկուած է մահու անթափանցելի վարագոյրով. չեմ ուզում խօսել այս խնդրին վերաբերեալ զանազան կարծիքների մասին, այլ կը յիշեմ միայն այն անվրդով և յանդուգն անփութութիւնը, որով բիւրաւոր մեղաւորներ իրանց վախճանին են սպասում: Մեր ժամանակում առանց տատանելու ընդունում են, թէ մեղքը հանդերձեալ կեանքում հետեւանքներ չունի և խելագար են համարում այն մարդուն, որ հաւատում է, թէ մահը կորստաբեր է մեղաւոր, չզղջացած, խռովուած հոգու համար: Բայց կեանքի մէջ ես տեսնում եմ անընդհատութեան խիստ օրէնքը, գալոց իրերի Աստծու մէջ՝ հաւատում եմ, թէ տեսնում եմ ներկայ իրերի Աստծուն: Ես տեսնում եմ, որ մեղքերը ծագում են հոգուց, և թէ հոգւոյ մեղանչականութիւնը չի կարող ոչնչանալ այն մարմնի քանդմամբ, որ միայն կեղև է հոգու համար: Երբ ես Ս. Գրքի մէջ կարդում եմ չմեռանող որդնի, կատարեալն խաւարի, անշէջ հրոյ մասին 1), ես հարցնում եմ, ո՞վ է արտասանել այս բառերը և նկարագրել մեղանչող հոգու տանջալի անձանձութիւնը: Արդեօք Սինայի՞ վերայ արտասանուեցան սրանք՝ որոնք դեռ որոտի ճայթիւնների մէջ՝ արձագանքը անդադարում տանէ ու բերէ Աստուծոյ ձայնը: Արդեօք այն խօսքերով հրէից մարգարէները աղաղակեցի՞ն տեղացին իւրեանց քարոզելիս մեղադրութիւններն և անկում գալուստը արտայայտելու համարում: Ո՛չ-

1) Մարկ. Թ. 42, 43, 47:

զարմանալին այն է, որ այդ սաստը արտասանել է Նա, Ով որ մեզ համար խաչուել է, Նա, Ով որ մեզ ասել է, թէ Իւր հայրը հոգս է քաշում երկնային թռչունների մասին, Նա, Ով որ կամենում է, որ ոչ ոք չկորչի, այլ ամէնքը զղջան: Ո՜հ, արդար դատաստանի ձայնը աւելի ևս սոսկալի է այն պատճառով, որ յաւիտենական Սիրոյ շրթունքներից է լսվում: Հապա էլ ո՞ր տեղից պիտի ունենանք անպատիժ մնալու յոյսը: Միթէ մենք աւելի արդա՞ր ենք մեր Փրկչից: Միթէ մենք աւելի քնքոյշ սրտո՞վ ենք սիրում ընկերին, աւելի փո՞յթ ունինք մեր ընկերների հոգու մասին, քան Նա: Ինչ սոսկալի բան է մտածել անգամ, թէ աւելի լաւ կը լինէր, եթէ ոմանք չծնուէին, եթէ այն մարդկերանցից շատերը, որոնք հեռացել են կապոյտ երկնքից, խաղացել են կանաչ մարգերի վերայ, որոնք երբեմն մանուկ են եղել իրանց գեղեցիկ անմեղութեան ամենայն սրբութեամբ, որոնց իրանց սպիտակափայլ թաթիկները բարձրացուցել են, աղօթք մրմնջելով առ երկնային Հայրը,—եթէ շատերը, ասում ենք, աշխարհի լոյսը տեսած չլինէին, այդ աւելի լաւ կլինէր. ո՜հ, ինչ զարհուրելի միտք է: Բայց Քրիստոս ասել է այդ խօսքը 1): Եւ իրօք, ի՞նչու համար քաղաքական օրէնքը ներկայի մէջ հատուցում ունենալով, ապագայի նկատմամբ անմտութիւն են հռչակվում նորագոյն աստուածաբանների կողմից: Միթէ այստեղ, երկրի վերայ, չկա՞յ դժոխք, որ այնչափ վստահութեամբ ժխտում ենք ապագայ կեանքից: Մենք տեսնում ենք, որ բարկութիւնն ու զարշումն, հատուցումն ու յուսահատութիւնը պատուհաս է դառնում ամենայն մարդու հոգու համար, որ չարութիւն է գործում, տեսնում ենք որ աստուածաշնչի

---

1) Մատ. ԻԶ. 24, Մարկ. ԺԴ. 21:

բոլոր գլքերը՝ Բաղդասար արքայի պալատի որմի պէս՝ այրվում են պատժի սպառնալիքներով, տեսնում ենք, որ Աստուած այնպէս պարզօրէն յայտնեց Իւր բարկութիւնը մեղքի դէմ, իբրև թէ Նա այդ բանը դրոշմէր արեգակի վերայ և աստղերով գրէր գիշերային երկնքի վերայ։ Երբ որ այս բանը տեսնում եմ, ես առանց քաշուելու ասում եմ. այս յանդուգն անփութութիւնը հանդերձեալ կենաց մասին, այս միշտ և միշտ աճող անտարբերութիւնը ապագայ պատժի մասին, այս նենգաւոր և վախից ճարահատեալ փիլիսոփայութիւնը, թւում է ինձ մոլորութիւն մտքի և անմտութիւն կամքի։ Ա՜հ, աւելի լաւ է, որ մեղաւոր հոգին ահ ու դողի մէջ ընկնի աշնան տերևի պէս, քան այսպէս յանդուգն մտածէ, իբր թէ ինքն աւելի լաւ գիտէ Աստծուց, կամ տեսնելով որ Ս. Գիրքը բարկութիւն է սպառնում նորա վարած կենաց եղանակի դէմ, նա սխալ կերպով յուսադրուի, իբր թէ այդ բանը գթասրտութիւն է և ոչ թէ վրէժխնդրութիւն, ուստի և վայրենի ձիու պէս շարունակէ կատաղութեամբ առնակոխ անել ամենայն ինչ, առանց աջ ու ձախ նայելու։

Ապա ուրեմն, զարթի՛ր, քնած մարդ. վե՛ր կաց մեռելներից, և Աստուած քեզ լոյս կուտայ։ Մի՛ ասէք սիրելիք, թէ այս բոլորը լոկ միայն կոչումն է ահի ստորնագոյն թելադրութիւններին, իսկ դուք այնքան խելօք էք, այնքան ուսեալ էք, այնքան զարգացած էք և լաւ գիտէք փիլիսոփայութիւնը, որ ամօթ էք համարում երկիւղի ազդեցութեամբ բան գործելու։ Աստուած ասաց. «Մի լինիր իմաստուն յաչս անձին քո, այլ երկիր ի Տեառնէ» 1)։ Այսպէս է զգուշացնում Տէրը, իսկ մենք չենք կարող արհամար-

1) Առկ Գ. 7։

ճել Նորան, Որ այսպէս զգուշացնում է: Բայց Աս-
տուած այսպէս խիստ է խօսում, միայն սիրելով մեզ:
Նա հաստատեց անզերծանելի մահուան օրէնք, վասն
զի սիրում է մեզ, վասն զի բարեմիտ է դէպի մեզ,
վասն զի մարդկային հոգու կորուստը այնչափ սար-
սափելի է, որ մենք չենք կարողանում հասկանալ,
իսկ շարժում է Նորա անհուն գթասիրութիւնը: Ուստի
և Նա կամենում է փրկել մեզ, մինչև իսկ հրով: Ոչ
եթէ Նա է դատապարտում, կորցնում կամ անիծում
հոգին. հոգին ինքն իրան կորցնում է և դատապար-
տութեան է մատնում: Ոչ եթէ Նա է խստանում մեր
դէմ, այլ մենք ենք խստանում Նորա դէմ. ոչ եթէ
Նա է զրկում Իւր ողորմութիւնից, այլ մենք ենք կոր-
ցնում ողորմութեան շնորհքը: Ուստի և, որպէս զի
չմերժուինք Նորա երեսից, Որ մեր կեանքն է, Նա
սովորեցնում է մեզ, թէ մեղքը մահ է, ինչպէս որ
բնութիւնը ցոյց է տալիս մեզ, որ հուրը կարող է մեզ
այրել, իսկ ջրի մէջ կարող ենք խեղդուել: Մեր յիշած
օրէնքների խորհուրդն այն է, որ նախազգուշացնեն
մեզ, թէ մարմնական անեծք և աչքի ցանկութիւնք և
կենաց հպարտութիւնք—անգութ անօրէններ են, և
թէ անոնց հնազանդուելով՝ մենք կորուստ ենք պատ-
րաստում մեզ. մեղքը ինքնախաբութիւն է, հոգւոյ
անօգուտ վատնումն է, մեր ազնիւ, գեղեցիկ, օրհ-
նեալ բնութեան փոխանակութիւն է այն բանով, ինչ
որ մեր կործանումը պիտի լինի: Այս նախազգուշու-
թիւնները նման են այն սիրող հօր ձայնին որ տալիս
է իւր մոլորեալ որդուն, թէ վատնած հարստութիւնն
ու ապականեալ կեանքը՝ կը վերջանայ տխուր աղքատով
և խոզերի կեանքով: Եւ մահուան փոխարէն Նա առա-
ջարկում է մեզ յաւիտենական կեանք: Մեր ամէն մի
կամաւոր մեղքը հեռացնում է մեզ յաւիտենականու-
թիւնից. առանց զղջման անցուցած ամէն մի տարին

աւելի դժուարացնում է, որ բարի վախճանին հաս-
նինք։ Բայց քանի որ մենք կենդանի ենք, քանի որ
հրաւէրի ձայն ենք լսում, քանի որ ստանում ենք Աս-
տուծոյ ողորմութեան ապացոյցներ,—դռները տակա-
ւին չեն փակուած, և մենք կարող ենք մտնել նեղ
ճանապարհով։ Այդ տեղ է մահուանից փրկութիւնը.
այդ ամպերում տեսնում ենք ծիածանի ցոլացումն,
որ աւելի պայծառ է, քան ինչ որ տեսան Տապանից
դուրս եկած մարդիկ։ Նոյին խոստացուեցաւ, թէ
իւր սերմը պիտի ջախջախէ օձի գլուխը, որ Նա լաւ
չհասկացաւ, թէ ինչ է նշանակում։ Իսկ մենք գիտենք,
որ Քրիստոսը ոտի տակ կոխեց մեղքն ու սատանային։
Նոյի հեռաւոր յուսոյ աստղը՝ մեզ համար փայլեց
ճշմարտութեան Արեւելքում։ Սակայն մեզ շրջապա-
տող մթութիւնից կարող ենք Նորա լոյսը մտնել—մի-
այն հաւատով և աղօթքով, միայն զղջման, մեղաց
խոստովանութեան և ինքնանուաստութեան դժուար
ճանապարհով։ Եթէ մեղանչողի զղջումը ամբողջ կենաց
պտուղ չէ, այլ րոպէական է,—այն ոչինչ է։ Իսկ կա-
տարեալ զղջումը բարերարութիւն է և կը վարձա-
տրուի յաւիտենական կեանքով։ Եւ այլ կեանք չկայ
ու չպիտի լինի։ Այդպիսի կեանքով ապրող մարդը՝
այլ ևս չի զգում ո՛չ սով և ո՛չ ծարաւութիւն. Նա
խմում է կենդանի ջրից, ճաշակում է երկնային հացից։
Նորա առաջ է Աստուծոյ երեսի լոյսը, որտեղից
բղխում է Նորա Հոգւոյ սրբազնագոյն ներգործու-
թիւնը։ Այս է միակ երջանկութիւն, որ բաց է մեր
առաջ։ Առանց այդ երջանկութեան՝ մեր երկրաւոր
կեանքը, թերևս և մեր անմահութիւնը, կը լինի լոկ
միայն տխուր անյաջողութիւն, անլոյս անէծք։ Որպէս
զի այս չպատահի, Քրիստոս մեռաւ մեզ համար և
Իւր մահուամբ կոխեց օձի գլուխը։ Ինչպէս էլ որ
եղած լինինք առաջները, ինչպէս էլ որ վատ լինինք

այժմ, դեռ դարձեալ կարող ենք մատչել Ամենասիրեցեալի առաջ։ Եւ այդպիսի խոնարհ զղջմամբ կարող ենք այն աղբիւրը փնտռել, որ մեղքից և անսրբութիւնից լուացուելու համար է բղխում. մենք կարող ենք վեր կենալ և գնալ առ Աստուած մեր, Որոյ դէմ յանձախակի և այնչափ ծանր մեղանչել ենք, գնալ մեծագոյն խնքնադատութեամբ, և Նա կարող է մեզ վստահութիւն պարգևել, թէ մենք լուացած սրբացած արդարացած ենք յանուն Յիսուսի Քրիստոսի և Հոգւոյն Տեառն։

Է.

## ԳՆԱՑԷՔ ԶԿՆԻ ՔՐԻՍՏՈՍԻ*)

«Եկ զկնի իմ, և թոյլ տուր մեռելոցն թաղել զմեռեալս իւրեանց» 1)։ Այս էր մեր Տէր Յիսուսի պատասխանը Իւր աշակերտներից մէկին, ինչպէս ասում է հին աւանդութիւնը (Կղեմ. Աղեք.) Փիլիպպոս առաքեալին, որ նախ քան Նորան հետևելու, ուզեց թաղել իւր հօրը։ Եւ տարակոյս չկայ, թէ այս հրամանի նշանակութիւնը ինչ պիտի լինէր։ «Դու ապրում ես մարմնական և հոգեկան մահուան աշխարհում. դու կոչուած ես կենաց արքայութեան մէջ՝ թոյլ տուր հոգւով մեռեալներին, որ մարմնով մեռեալները թաղեն։ Իսկ դու եկ զկնի իմ»։

Ո՞վքեր էին հոգւով մեռեալները մեր Տէր Յիսուս Քրիստոսի ժամանակ։ Հասարակութեան ստորին խաւում կային վտանգաւոր կարգի մարդիկ—մեղաւորներ և անառակ կանայք, անհաւատարիմ ծառաներ և գժգոհ մշակներ, անգութ և կոպիտ զինւորներ, ցած կաշառակեր—մաքսաւորներ։ Ահա Քրիստոսը աշխատում է դոցա շրջանի մէջ, որ և Նորան ընդունեցին ջերմ սիրով և շնորհակալութեամբ, երկիւղածութեամբ, զղջմամբ և արտասուելով։ Աւելի անտար-

---

*) Խօսուել է ուսանողների առաջ:

1) Մատ. Ը. 22:

քերութեամբ և կուրութեամբ վերաբերեցին Նորան՝ հասարակութեան բարձր դասակարգերը։ Դոքա իրանց անձը համարում էին միւս բոլորից բարձր, և իրանց արտաքին լաւութիւնը ցոյց էին տալիս կեղծաւորութեան և փքած հպարտութեան սուտ փայլով։ Դոցա մէջն էին թեթևամիտ, կուշտ ուտող սադուկեցիք, որ չէին հաւատում ոչ հրեշտակ և ոչ հոգի. զգոյշ հերովդիականներ, որոնց ջանքն ու փոյթը միայն իրանց հանգստութիւնն ու յաջողութիւնն էր, ուղղադաւան համարուող դպիրներ, որ ամենայն նախանձախնդրութեամբ պաշտպանում էին օրէնքի տառը, խոր տգիտութեան մէջ մնալով բուն իմաստի մասին։ Էին այստեղ նաև պերճասիրաբար ու ինքնահաւան քահանաներ և ղևտացիներ, որ սառնասիրտ կերպով վիրաւորեալներին թողնում էին տագնապի մէջ, ուխտադրուժ և անձնապաշտ փարիսեցիներ, որ իրանց բոլոր հեղինակութեամբ պահպանում էին խեղաթիւրուած աւանդութիւնը, որ պատրաստ էին շահուելու և՛ ժողովրդեան տգիտութիւնից, և՛ տիրող իշխանութիւնից, որպէսզի ոտնակոխ անեն ճշմարտութիւնը և ճշմարտութիւն պաշտողներին։ Ահա մեռեալների այս ժողովից մեր Տէր Յիսուսը կոչեց Իւր աշակերտներին, և Իւր հրաւէրը հնչում է մինչև այսօր։

Մեր ժամանակը, նման այն ժամանակին, երբ որ երկրի վերայ ապրում էր Յիսուս, նոյնպէս զարդարուած է արտաքին, ձևապաշտ կրօնասիրութեամբ. և ով որ ուզում է Քրիստոսին հետևել, պէտք է նմանապէս թոյլ տայ «մեռելոյն թաղել զմեռեալս իւրեանց»։ Քրիստոնէութիւնը եղել է բարձր, վսեմ հերոսական կրօն։ Բայց որքան սակաւ վեհութիւն և հերոսականութիւն կայ մեզ շրջապատող հասարակութեան մէջ, աւա՜ղ, որքան սակաւ է նոյն իսկ մեր սեպհական սրտում։ «Եկ, շունչ, ի չորից հողմոց, և

փչեա ի մեռեալս յայտոսիկ և կեցցեն» [1]: Փոխանակ
քարձր բարոյականութեան՝ մենք տեսնում ենք զգու-
շաւոր, աշխարհական հնարիմացութիւն՝ փոխանակ
քաջաբեր քրիստոնէական աղքատութեան—հարստա-
նալու ծարաւի անմիտ կատաղի մրցութեան: Քրիս-
տոնէական պզտոր անձնուրացութեան տեղ բռնել է
աւելի և աւելի տարածուող և քնքշացնող շռայլու-
թիւնը, Փոխանակ պատուական քրիստոնէական ազ-
նուութեան, փոխանակ Աստուածահաճոյ կենաց՝
ակոսել է ցածութիւնն ու թուլութիւնը, որոնք յիշե-
ցնում են օձի համար ասած դատավճիռը, «ի վերայ
որովայնի քո գնասցես, և հող կերիցես զամենայն
աւուրս կենաց քոց»: Ափսո՜ս, մեզ շրջապատում են
անուամբ միայն քրիստոնեաներ: Քրիստոնէութեան
այն մեծ զօրութիւնը, որ ներգործում էր հասարա-
կութեանց սրտի վերայ, այժմ ունի միայն պայմանա-
ւոր նշանակութիւն: Եւ եթէ ճշմարիտ հաւատոյ յա-
քութիւնը առաջ չբերէ հաւատացեալների աւելի ազ-
նուական եռանդ, նորնոր բարեբեր ջանքեր, ապա
ուրեմն դարձեալ պէտք է բարբառէ ազգերը սասա-
նեցնող ձայն, մաքառման կոչող ձայն: Այդ ձայնը
չպէտք է նմանուի քնքոյշ շշուկի, այլ պէտք է յի-
շեցնէ հրեշտակապետի փող և Աստուծոյ ահեղութիւն.
«թոյլ տուր մեռելոցն թաղել զմեռեալս իւրեանց»:

Ա. Ո՞ւր պէտք է գնանք Քրիստոսի յետև: Ըստ
հոգւոյ, և ոչ թէ ըստ գրի, մենք պէտք է այն ճանա-
պարհով գնանք, որով նա է ընթացել երկրի վերայ:
Այդ էր ինքնուրացութեան, աղքատութեան ճանա-
պարհը. Քրիստոս չունէր ապաստարանք, նորան անար-
գեցին ցածահոգիները, արհամարհեցին հպարտները:
Ձենք ծածկում, այդ ճանապարհի վերայ վարդ չէ

---

1) Եզ. Լէ. 9:

ցանած։ Այդ է դժուարակիր, բայց երջանկութեան տանող ճանապարհ։ Այդ ճանապարհով են գնացել ամենավսեմ, ամենաազնիւ մարդիկ, որոնք յաւիտենականութիւնը տեսնում էին ոչ միայն հանդերձելում, այլ կարծես թէ աներևոյթ կերպով իրագործուած նաև ներկայում։ Սակայն որքան բազմաթիւ են, որքան բազմածաւալած են մանկանացուներուս աշխարհային պահանջները, շահերը, կեղծ առարկութիւնները։ Եւ որպիսի տենդային հապճեպով ամէնքը հետամուտ են այդ բաներին։ Ի՞նչպիսի մշտական հոգսեր են ծնանում անոնք։ Մինչդեռ պատուէրը շատ պարզ է։ Մենք չենք կարող Աստուծոյ ծառայել և մամոնային։ Եւ թէ միայն խօսքով չենք հետևում Քրիստոսի վարդապետութեան մենք պէտք է անտարբեր լինինք դէպի աշխարհ և անոր շահերը, պէտք է գոհանանք աղքատութեան և հալածանաց երանութեամբ այն դէպքում, ուր որ այդպիսի բախտ է վիճակուած մեզ։ Քրիստոս կարճ որոտացող խօսքերով և ապա լուռ յանդիմանութեամբ դատապարտեց դիւրասաստ հարստութիւնը և ապիկուրեան ներողամտութիւնը դէպի անձը, որ մենք բնաւ վատ բան չենք համարում։ Նա նկարագրեց այն մեծատան մռայլ պատկերը, որ առաջ սովոր էր ծիրանի և բեհեզ հագնիլ և հանապազ ուրախ լինել, բայց յետոյ տեղափոխուել էր դժոխքը ուր նա չկարողացաւ զովացուցանել իւր լեզուն և պապակվում էր դժոխքի տապից [1]։ Միթէ երկնային ամենակարող Թագաւորը այսպէս վարվում է այն պատճառով, որ զլանում է ու և է քաղցրութիւն վայելել տալու այնպիսի չնչին հիւլէներին, ինչպէս որ մենք ենք։ Ո՛չ, նա գիտէ, որ անմիտների յաջողութիւնը կորստաբեր է, որ մարմնական կուշտ ու կուշտ

---

[1] Ղուկ. ԺԶ. 19։

փարթամութիւնը, խոտորուած մտքի ուրախութիւն-
ները չեն երջանկացնում, այլ միայն ապականում են
սիրտը, որ անընդունակ է դառնում հասկանալ Աս-
տուծոյ սրբութիւնը և կատարել Նորա գործը։ Եթէ
Քրիստոսի խրատները կարօտ լինէին հաստատութեան,
մենք կարող ենք այն գտնել բազմաթիւ դէպքերում։
Պատմութեան իւրաքանչիւր էջը լի է յուսախաբ թա-
գաւորների և աշխարհամարդերի տրտունջներով։ «Ու-
նայնութիւն ունայնութեան, ամենայն ինչ ունայնու-
թիւն է» — բացականչում է խոնջացած Սողոմոնը։
«Հանգիստ, յաղթական և փայլուն թագաւորութեանս
յիսուն տարիներից՝ միայն երկու շաբաթը կոչում եմ
անպղտոր, իսկապէս բախտաւոր», գրում էր Աբդու-
րահմանը։ «Ես տեսայ զրազբաղութեան և զուարճու-
թեան անմիտ շրջանը և հեռացայ այդ բանից», ասաց
պերճախօս, գեղեցիկ Բոլինբրոկը. «Ես ճաշակեցի աշ-
խարհի բոլոր քաղցրութիւնները և չեմ ափսոսում, որ
այն ամէնը կորուսի»։ «Աշխարհում այնպիսի բան
չկայ, ի սէր որոյ արժենար ապրել», հառաչելով
ասում է մեր ժամանակի մեծագոյն մարդը, Լոնդոնի
փողոցներով անցնելիս։ Եւ իրօք, այս ճշմարիտ է եր-
կրաւոր հրապոյրների նկատմամբ. Աստուած մարդուն
հոգի է տուել, որ չի կարող գոհ մնալ այսպիսի մանր
բաներից։ Բայց այդ խօսքերը անարատ են քրիստո-
նէական կենաց նկատմամբ։ Անթիւ անհամար բաներ
կան, ի սէր որոց արժէ ապրել։ Ազնուութիւնն ու
ճշմարտութիւնը, բարձր նպատակներ, սիրով առա-
տաբուխ սիրտը, — այս բոլորը քաղցրացնում է
կենաց դառն բաժակը։ Բախտը կարող է մեզնից
թռչիլ, զուարճութիւնը ձանձրացնել մեզ կամ անհա-
սանելի դառնալ, բարեկամը կարող է դաւաճանել,
փառքը անփառութիւն դառնալ, բայց Աստծուն ծա-
ռայելու հնարաւորութիւնը երբէք չի ոչնչանայ, և

ու Աստուած սէրը երբէք չի մերժում:

Եթէ ուրեմն մենք ուզում ենք Քրիստոսին հետեւել, պէտք է մեզանից բոլոր երկրաւոր ստոր ցանկութիւնները թափ տանք, որպէս աւելորդ թող մանկանացիներիս վերայ: Այս է վարդապետել մեզ Քրիստոս և այդպէս էլ արել Ինքը: Դուք երևի ուշադրութիւն էք դարձրել, եղբարք, այն հանգամանքի վերայ, որ Նորա երկրաւոր կեանց միայն վերջին երեք տարիների մասին շատ ու քիչ տեղեկութիւն ունինք, իսկ Նորա մանկութիւնից սկսած մինչև կատարեալ հասունութիւնը, այսինքն այն ժամանակից սկսած, երբ որ Նորան տեսնում ենք երկոտասանամեայ հասակով տաճարի մէջ քարոզելիս, մինչև այն ժամանակը, երբ որ Նա մկրտուեցաւ Յովհաննէս Կարապետի ձեռքով, մեր բոլոր տեղեկութիւնները Նորա մասին ընդ ամէնը միայն մի բառ է, որ թէպէտ և մեկնիչները փորձել են դուրս ձգել, բայց և այնպէս Մարկոսի Աւետարանի մէջ մնացել է: Այդ բառը, որով յոյս է սփռվում Նորա կեանքի շրջապատող մթութեան մէջ,—է «հիւսն» *): Ցիրաւի, հիւսն է: Այո՛, մի աղքատ Գալիլիացի շինականի տունը, ուր անշուշտ ոչ աւելի քան միայն մի սենեակ կար, որի ամբողջ կահկարասիքը ոչ այլ ինչ էր, բայց եթէ կապերտ, մի քանի կաւէ ամաններ, ներկուած տախտակի սնտուկ—ասում ենք, այս տունն էր Տէր Աստծու՝ Որդւոյ Մարդոյ բնակարանը, երբ որ Նա ապրում էր երկրի վերայ: Նա իւր խոնարհ արհեստով ապրուստ էր վաստակում Իւր և Իւր Մօր համար: Ցընթացս երեսուն ամաց Նա, անյայտ մնալով, հիւս-

---

*) Մարկ. Զ. 3. փոխանակ «Ո՞չ սա է մանուկ հիւսանն եւ որդի Մարեմայ»—շատերի ընթերցուածը այսպէս է. «Ո՞չ սա է հիւսնն, որդի Մարեմայ»:

նութիւն էր անում մի ամենաատելի գիւղի խանու-
թում, մի ատելի գաւառում, որ մի ատելի և յաղ-
թուած երկրի մասն էր կազմում։ Ահա աստուածային
խոնարհութեան օրինակ։ Մենք կամապաշտ ենք, մե-
ծամիտ ենք, միշտ հոգսերի մէջ ենք. մենք սնոտի
ենք, զարդարվում ենք, ապրում և շարժվում ենք
անհուն ոչնչական կեանքով։ Այսպէս չէր ապրում Նա,
Որոյ օրինակին որ մենք պարտաւոր ենք հետևելու։
Նորա համար բաւական էր հիւսան խանութը։ Կրծող
փառասիրութիւնը չէր յուզում Նորա անդորր հոգին.
վայրագ կատաղութիւնը չէր պատառում Նորա ար-
դարասէր սիրտը։ Թէ՛ յետոյ Իւր փառաւորութեան
ժամանակ, և թէ՛ աւա՜ղ Իւր խոնարհութեան վիճա-
կում, Նորա հոգին միշտ այնտեղ էր, ուր մեզ հրա-
ւիրում է։ Երբ որ աշխարհի թագաւորութիւններն ու
փառքը Նորա ոտքի առաջ էին անապատում, Նա
այն անտուն և անպատսպար աղքատը, մերժեց Իւր
հայացքներին անարժան այդպիսի փորձութիւնը։ Հէնց
մի և նոյն ժամանակներում ապրում էր մի մարդ, որին
սատանան այդ բոլորը տուել էր, մի միահեծան բռնա-
կալ, աստուածացուցած, անմատչելի կայսր, որ ինչպէս
նկարագրում է Գեբբոն պատմագիրը, «միանգամայն
և՛ քուրմ էր, և՛ անաստուած, և՛ աստուած էր»։
Նա ձանձրացել և զզուել էր երկրի կառավարութեան
հոգսերից, թողեց այդ բաներն ու հեռացաւ աշխար-
հից՝ ամենագեղեցիկ կղզիներից մէկը։ Այն տեղ, բիւ-
րեղեայ ծովի ջրերով ողողուող կղզու քարայրերի մէջ
շրջապատեց իւր անձը ամենայն հնարաւոր պերճու-
թիւններով և փարթամութեամբ, Կիրկէի բաժակից
խմեց այն բոլոր քաղցրութիւնները, ինչ որ կարող է
ստեղծել փչացած երևակայութիւնը։ Իսկ յետո՞յ։ Թող
պատասխանէ Պլինիոս պատմագիրը—«Նա մարդկանցից
ամենամռայլն էր» (tristissimus, ut constat hominum)։

Ահա թէ ինքը անձամբ ինչ է գրում իւր շողոքորթող ծերակուտին. «Թող աստուածներն ու աստուածուհիներն ինձ պատուհասեն աւելի վատթարագոյն մահուամբ, քան ինչ որ ես կրում եմ ամենայն օր...»։ «Ուրեմն, ասում է Տակիտոսը, ոչ հարստութիւնը, և ոչ միայնակութիւնը նորան չփրկեցին մեղքերով լլ-կուած հոգու յուսահատութիւնից»։

Եթէ մենք հանդիսատես ենք, թէ մեր ապականեալ մեծ քաղաքների բնակիչներից մեծ մասը ինչպէս հպարտութեամբ, զուարճութիւններին հետամուտ լինելով, մամոնային պաշտելով են ապրում, թէ դոքա ինչ բաների են ձգտում և ինչեր են սիրում,—մենք իրաւունք ունենք պնդելու թէ, դոքա իրանց կենաց օրինակ են համարում ոչ թէ խաչեցեալը, այլ հռովմայեցոց կայսրը։ Ամենայն ոք դոցա կը համարէ հետևող Տիբերիոսի և ոչ թէ Քրիստոսի։ Ո՛հ եթէ շատ լինէին այնպիսի մարդիկ, որ արդար գործի համար անտրտունջ սրտով զոհէին այն բանը, ինչ որ հասարակաց անունով «շահ» է կոչվում, և այդպէս ազնիւ օրինակ տային ընկերներին։ Եթէ մարդիկ գտնուէին, բացարձակ կերպով հարստութիւնից հրաժարուող և սէր ճշմարտութեան, ազատութեան, խղճի։ Եթէ շատ լինէին Թովմաս Ակուինացու աղօթքը կրկնող մարդիկ, թէ «Տուր ինձ, Տէր Աստուած, սրտի այնպիսի ազնուութիւն, որ անմատչելի դառնայ երկրաւոր հակումներին». մարդիկ, որ հարստութիւնը արհամարհէին Ս. Էդմոնդի պէս, որ միշտ իւր դրամը պատուհանի վերայ էր թողնում հողի հետ խառնած, ասելով. «Մոխիրը մոխրին, հողը հողին»։ Առաջուայ դարերում աւելի էին պատահում այսպիսի օրինակներ։ Եթէ աշխարհում չկայ աւելի բարձր, լաւագոյն, ազնուագոյն, խելացի առաքինութիւն, քան մեր մամոնայապաշտութիւնը, հապա ոչ միայն սուտ է Ս. Գիրքը,

այլ ժամանակ է, որ ասենք, թէ «պատուհանք բացանւ յերկնից, և շարժեցին հիմունք երկրի» [1]։

Բ. Ուրեմն զկնի Քրիստոսի գնալու համար նախւ հարկաւոր է անձնազոհութիւն ունենալ, ապա յանձնւ առնել աշխատութիւն։ Այս բանում էլ Նորա վարքը մեզ օրինակ պիտի լինի։ Եթէ մենք ինքներս այդ բանը չնկատէինք, Իւր խօսքերը կատարելապէս հաստատում են Նորա կենաց խորհուրդը։ Էլ տարակոյս չկայ, թէ ինչ նշանակութիւն ունին երկու որդոց, այգու մշաւ կաց, անհաւատարիմ ծառայի առակները և անպտուղ ծառերի խիստ դատապարտութիւնը։ Դրախտի մէջ առաջին օրէնքն էր «աշխատութիւն»։ Թէպէտ այւ նուհետև աշխատութիւնը, իբրև պատիժ ծանր լուծ դարձաւ, սակայն հնազանդ հոգու համար՝ պատուաւ ւոր և բարեբար գործ է դառնում։ «Այս է, ասում է Ոսկէբերանը, դառնաբեր սլաք, որ առաքում է Աստուծոյ քնքոյշ ձեռքը»։ Բայց աշխատութիւնը պէտք է յարգել ինչպէս հարկն է։ Մարդս պէտք է աշխատէ Աստուծոյ այգու մէջ և Աստուծոյ համար։ Հազարաւ ւոր մարդիկ աշխատում են ուրկի պէս, ակամայ կարծես թէ կեանքի մեքենական սովորութիւնը կաւ տարելով։ Նոքա աշխատում են ոչ թէ պարտականոււ թեան զգացումից թելադրուած, ոչ թէ ի փառս Աստուծոյ, ոչ թէ յօգուտ մարդկանց, այլ անձնական չնչին շահերի համար։ Այս տեսակ աշխատութիւնը շատ բանով բարձր չէ ծուլութիւնից. եթէ այդպիսի աշխատութիւնը չի փչացնում մարդուն, բայց անւ շուշտ ցամաքեցնում է սիրտը։ Աստուած այդպիսի աշխատութիւն չի օրհնում, ուստի և յաճախակի ամւ բողջ կենաց աշխատութիւնը անհետք կորչում է։ Նոյնւ իսկ յաջողութեան ժամանակ չի բերում երջանկոււ

---

[1]. Ես. ԻԴ. 18։

թիւն և ապագայ բարօրութեան յոյս: Իսկ միւս կող-
մից մեծագոյն երջանկութիւն բերող այլ ճանապարհ
չկայ, բայց եթէ բարձր խորհուրդներ ունենալ և ամե-
նայն սրտով ընծայել անձը Աստուծոյ ծառայութեան:
Այսպիսի աշխատութեան նուիրած մարդը, կանխաւ
պէտք է գիտենայ, թէ երբէք այնքան չի ապրի, որ
իւր աշխատութեան պտուղները տեսնէ: Նորան վի-
ճակուած է անարգանք, ծածուկ ատելութիւն և մըշ-
տական ընդդիմութիւն: Նորան սպասում է երկրաւոր
բոլոր առաւելութիւնների կորուստ, մշտական ան-
հանգստութիւն և հոգսեր: Բայց եթէ հաւատում է
Աստծուն, եթէ գէթ փոքր ինչ աշխատում է հետևել
Քրիստոսի օրինակին,—նա զուրկ չի լինի ներքին մը-
խիթարութիւնից, որ աւելի բարձր և քաղցր է, քան
բախտաւորութիւնը. Նա ժամանակ չի ունենայ այլ
մտածմանց համար. ամենայն օր այնպէս կաշխատէ,
կարծես թէ յաւիտեանս ապրելու յոյս ունի, և կապ-
րի՝ ամենայն րոպէ պատրաստ գտնուելով մեռնելու
համար: Կէնտէրբերիի Էտմունդն՝ ասում է, թէ երբ
որ բախտաւոր խոնջացածը երեկոյեան քուն է մըտ-
նում, Տէր Աստծու հրեշտակները բերում են նորան
օրհնութիւն և փակում են նորա հոգսերով լի սիրտը:
Օրուայ նեղութիւնը վերջացել է, հնչվում է երեկո-
յեան երգ. աշխատութիւնը կատարուել է, հանգիստը
սպասում է նորան երկնային ապարանքում, և Աս-
տուած իւր սիրեցեալին առաքում է նինջ:

Արդ այսպիսի կենաց համար կոչվում էք և դուք,
և երանի ձեզ, եթէ այժմէն իսկ հետևէք այդ կոչման:
Ուսման մէջ անցուցած ձեր կենաց պայծառ տարիները
կարող են խիստ բարեբար լինել ձեզ համար: Այդ ժա-
մանակ դուք կարող էք ստանալ գիտութիւն, զգաց-
մանց ազնուութիւն, ինքնիշխանութիւն մանաւանդ
կարող էք իմանալ մեր Տէր Յիսուս Քրիստոսի ողոր-

մութիւնն ու վարդապետութիւնը։ Այդ տարիքը արագ կանցնի, բայց ներքին խաղաղութեան անսպառ աղբիւրը՝ երկար ժամանակ կը պահուի ձեր մէջ, և օրպիսանի կը լինի ձեզ մանաւանդ այն տարիքներում, երբ որ աւելի տաժանելի և մեծապէս պատասխանատու կեանք կը վարէք։ Բայց միւս կողմից, չլինի թէ այդ տարիները «մարախի կերած» տարիներ 1) դառնան, ծանրաբեռնած պարտքերով, ուշք ու միտք կորցրած կեանքով, խենդութիւններով և անհոգութեամբ անցուցած, տարիներ, երբ որ երիտասարդութիւնը սկզբով տալիս է սատանային իւր երախայրիք պտուղները, տարիներ, երբ որ և՛ ծուլութիւնը, և՛ սուտ ամօթը, և՛ անմիտ երկիւղը, և՛ նոյն իսկ զուարճութիւնները—մահուան սերմեր են պատրաստում։

Իսկ որովհետև մեր կենաց երէկեան օրերը ծնանում են բազմաթիւ «վաղուի» օրեր, միշտ երկիւղ կարելի է ունենալ, թէ օրհնութեան փոխանակ անէծք բերող տարիքը՝ վատթար կենաց պատճառ կը դառնայ։ Իւր էութեամբ համալսարանի կոչումն է զարգացնել այնպիսի մտաւոր տոկութիւն, որ ուղղուած լինի Աստուծոյ փառաւորութեան և մարդկային օգտին։ Արդ ով որ իւր բանականութեան զարգացումը անփոյթ է թողնում, կրկնակի մեղք է գործում։ Կեանքը խաղ և զուարճալիք չէ, և անոր մէջ կան այնպիսի վսեմ հանգամանքներ, ինչպէս են մեղք և հոգի։

Ձեզանից ով որ համալսարանը դարձնում է զուարճութեան տեղի, ով որ բարձր նպատակները զոհում է մարմնական վարժութիւններին, նա ապրում է անարժան իւր անձին, անարժան այն բարձր հասարակութեան, որին որ ինքը պատկանում է, անարժան քրիստոնէական կոչման բարձր պահանջներին։ Անցան-

1) Յովէլ, Ա. 4. եւ շարունակութիւն:

այն օրերը, երբ որ Չէնտլմէնը կարող էր ազէտ լինել․ով որ ձգտում է միայն մարմնական մեցութիւններում հաշակ ստանալ, թափուր է լաւագոյն ազնուութեան փառաւորութիւնից։ Ցամենայն դէպս մի քանի տարի անցնելուց յետոյ՝ նորա ոյժերը կը թուլանան, իսկ այնուհետեւ նաև խալաղ կոչնչանան։ Թող այդպիսին խորհէ, արդեօք զկնի Քրիստոսի է գնում, կամ իրան չի՞ վերաբերում հանգիստաւոր նախազգուշութիւնը, թէ «ով որ ուշք ու միտք չի հաւաքում,—մեռեալների հասարակութեան մէջ է մնում»։

Գ. Դուք աւելի լաւ գիտէք, եղբարք, արդեօք ձեր մէջ կան այնպիսիք, որոնք կարօտ են այդպիսի նախազգուշութեան։ Մի՞թէ հարկաւո՞ր է աւելացնել, որ Քրիստոսից անձնուրացութեան և աշխատութեան օրինակ առնելու ցանկացողը՝ պէտք է մտաց յափշտակութիւն եւս ունենայ, պէտք է մկրտուած լինի Սուրբ Հոգով և հրով։ Այս դէպքումն էլ նա պէտք է մեռեալներին թողնէ, որ թաղեն իրանց մեռեալներին։ Աշխարհային մեռեալները չեն սիրում յափշտակութիւն։ «Գլխաւոր բանն է քիչ փոյթ ու եռանդ, քիչ ջերմութիւն», ասում է խելօք, խոհեմանք, յաջողութեան հասած պետական մարդը, Տալէյրանը։ Իսկ Սուրբ առաքեալ Պաւղոսն ասում է «Հոգւով եռացէք», ասենք, թէ ջերմ եղէք հոգով 1)։ Այդ բառը ասել է ոչ թէ ցուցասէր Ատտիկեցին, և ոչ թէ երկայն պարեգօտ փարիսեցին։ Այո՜ այն խօսքերից մէկն է, որ նման են որոտման։ Երբէք աշխարհը այնչափ կարօտ չի եղել յափշտակութեան, քան այժմ։ Այն անարգուած է, բայց միայն այն կը փրկէ աշխարհը։

Այժմեան դարը լի է թերահաւատութեամբ, դատարկութեամբ, լըրութեամբ, բայց այս ամէնը

---

1) Հռ. ԺԲ. 11, Գաղ. ԺԸ. 28։

անկման խուկական նշաններ են։ Իսկ անկման ժամանակներում պէտք չեն մեղրածոր, քնաբեր ձայներ, քաղաքավարական դեղեր, շողոքորթական բառեր։ Այլ հարկաւոր է կենդանի եռանդ, բուռն կերպով յառաջ մղող՝ և ոչ թէ լճացող՝ ոգևորութիւն։

«Մարգարէ» յայտնող եբրայեցերէն բառը այնպիսի արմատից է ծագում, որ նշանակում է «կրակի վերայ ջրի պէս եռալ»։ Ժողովուրդը ճշմարիտ մարգարէին այն նշանով է որոշում և ճանաչում սուտ մարգարէների մէջ, որ նորա ողջակէզի վերայ երկնից հուր է ընկնում, իսկ սոցա ողջակէզի վերայ՝ ոչ[1])։ Հեթանոսներն էլ կարծում էին, թէ իրանց պատգամախօսները տեսանող են և աստուածային զօրութիւն են զգեցած։

Այս բոլորը տարօրինակ է մեզ համար, բայց տարօրինակ չէր Ս. առաք. Պաւղոսի համար, որ (ինքն էլ չգիտէր, արդեօք մարմնով թէ ոչ) յափշտակուեցաւ մինչև երրորդ երկինքը[2])։ Այսպիսի կրօնական ոգանչացումը ոչ ոքին տարօրինակ չի թուել, ով որ իւր ամբողջ էութեամբ միշտ Տէր Աստծու խորհուրդներով է ապրել։ Եւ այսպիսիք սակաւաթիւ չեն։

Մենք այժմ խղճում ենք այդ անկիրթ վայրենի մարդկանց, որոնք բայց և այնպէս լցուած են եղել երկնային հրով և աներևոյթ մատներով զարկած քնարի պէս ձայն են հնչել։ Բայց մենք ապահով կարող ենք լինել, որ հոգևոր ալեկոծութեան մրրիկները այժմ էլ չեն յուզում մեր կրօնական կենաց սառուցեալ մակերևոյթի վերայ։

Սակայն հովացնող փոթորիկը որչափ աւելի լաւ է, քան փտած ճահճի կանգնած ջուրը։

---

1) Գ. Թագ. ԺԸ. 16. եւ շար.

2) Բ. Կորն. ԺԲ. 1. եւ շար.

«Սքանչացող» անունը այժմ ծաղրական է դարձել։ Մարդիկ առ հասարակ այնպէս են վարվում, որ կարծես թէ հասարակաց պարտեզումն են և չեն համարձակվում կարմիր աղւեսի խճով ծածկած շաւիղներից աւելի աջ կամ ահեակ խոտորուիլ։ Մեր արդի ուղղութիւնը, ինչպէս որ սրամտութեամբ նկատել է ժամանակակիցներից մէկը՝ «այն է, որ աշխատում ենք բարիք գործելու ոտոտիկ մղումները հովացնել և սրտի առաքինութիւնները արտաքին պատշաճութեան փոխարկել»։ Բայց առանց յափշտակութեան աշխարհը վաղուց կը դառնար այնպիսի ամայի անապատ, «ուր որ խլուրդի փորփրած գետնի կոյտերը մի մի սար կերևային, իսկ փշատունկը՝ մեծաշուք ծառ»։ Ոչ մի մեծագործութիւն, ոչ մի կարևոր եղելութիւն չի կարող կատարուիլ առանց յափշտակութեան։ Այդպիսի ներքին եռանդով է ոգևորվում Յովհաննէս Մկրտիչը, որ աներկիւղ կանգնում է բռնաւոր մողապաշտանի և անառակ թագուհու առաջ։ Նոյն եռանդով էին շնչուած մարգարէների և առաքեալների խօսքերը, որ մինչև այս օր ևս պահպանել են իրանց երկնային կրակը։ Այն շնորհն եղաւ մարտիրոսների և քարոզիչների զօրավիգն, և մահակերպարան ստրուկը դարձեալ նոյն ուժով յաղթութիւն տարաւ վայրագ բանակների և հեթանոս կայսրների վերայ, որովհետև «տկարն Աստուծոյ զօրագոյն է քան զմարդիկ» 1)։

Ի՞նչը ոգևորեց Որիգենէսին, եթէ ոչ յափշտակութիւնը, երբ որ չորեքտասանամեայ հասակում ուզեց ստանալ մարտիրոսական պսակ, — կամ Աթանասմեծին, երբ որ Նիկիայի ժողովում վեր կացաւ, որ բորբոքուած եռանդով յանդիմանէ մեծ հերետիկոսին։

---

1) Ա. Կորն. Ա. 25:

Մեր առաջ անցնում է յափշտակուածների շարք․ ահա Լուտէրը, որ գնում է Վորմսի ժողովը, ուր նորան սպառնում է քահանաների բարկութիւնը և իշխանների սպառնալիքը, և որ ասում է, եթէ քաղաքի տանիքների իւրաքանչիւր կղմինդրի վերայ մի մի սատանայ նստած լինի, դարձեալ կերթայ այնտեղ․ ահա Միլտոնը, որ իւր մաքուր մանկութեան օրերում զեղխութեան վերայ նայում էր այնպիսի աչքով «որի շանթով Գէեզին բորոտեցաւ, իսկ Սիմոն մոգը— անիծուեցաւ»․ ահա Վայտֆիլդ, որ «ամբողջ կէս դարու ծիծաղների տակ» պտտում էր պանդոկներն ու տօնավաճառները, որպէս զի ոէր առ աստուած քարոզէ անառակ կանանց և ապականուած սրիկայ մարդկանց։ Յիշենք և Հենրի Մարտինային, որ ըստ հասարակաց կարծեաց՝ անմտաբար թողնելով Կէմբրիջի փառքերը, գնաց անյաջող քարոզութիւններ անելու հեթանոսներին և ամենամեծ խոշտանգների մէջ մահ գտնելու։ Այս մարդիկ բարձր էին կեցած հասարակ քրիստոնէութեան մեռեալ և բթամիտ մակերևոյթից, իրանց չլսուած բարութեամբ և մոլեռանդ հաւատով։ Նոքա նմանում էին այն հրաբուխներից մէկին — Օրիզաբային կամ Չիմբորազոյին — որոնց փառահեղ դագաթը օդային․ ովկեանի խաղաղ սփիւռների մէջ է։ Այդ սարի ծխող պսակը ասես թէ փարոս լինի, որ ամայի ալեծուփ ծովի մէջ նաւորդներին լուսաւորում է շատ հեռու։

Երբ որ մեր ստորաքարշ զուարճութիւնները վերջանան, մեր աղքատիկ տնտեսութիւնները ցնդուեն, մեր տղայական պարծանքները մոռացուին կամ յիշելու ժամանակ միայն ժպիտ յարուցանեն, և երբ որ մենք հեռու քաշուած լինենք այն մեծ ամբոխի մէջ, որ թերևս սիրել է Աստծուն փոքր ինչ, սակայն մամոնային՝ ևս աւելի, — այն ժամանակ յիշատակած

*մարդիկ, որ միշտ արհամարուել են, մերժուել են,
այն «հաւատարիմները թէ և ոչ հռչակուածները» այն
հասարակ, սովորական անյայտ մնացած մարդիկ, որոնց
բերանով օրհնուիլ կը ցանկային նոյն իսկ եպիսկոպոս-
ները, կը կոչուեն թագաւորներից և յաղթողներից,
քահանաներից և ուսուցիչներից առաջ՝ ներկայա-
նալու Փրկչին, որ Իրան գործակիցներ ընտրեց ոչ թէ
փարիսեցիների և դպիրների միջից, այլ նորոգուած
ազգերի հնձով վարձատրեց ձկնորս Պետրոսի ջերմե-
ռանդութիւնը և Պաւղոսի ու Յովհաննիսի անհուն
սէրը,*

*Դուք և եթէ կամենում էք Փրկչին հետևել,
պէտք է նոյնպիսի սիրով հակուիք։ Իսկ եթէ կամե-
նում էք միայն ուտել և խմել, արծաթ դիզել, յաջո-
ղութիւն ունենալ, արդէն կոխոտած դիւրին և հանգիստ
ճանապարհով ընթանալ, պաշտելով աշխարհի բոլոր
կուռքերը, երբէք չմերկացնելով աշխարհի կեղծաւո-
րութիւնը, մի խօսքով եթէ կամենում էք ապրել այն-
պէս, իբր թէ դուք ձեզ էք պատկանում և Քրիստոս
ձեզ չի փրկել Իւր արեամբ,—դուք կը մնաք մեռեալ-
ների դասում։ Դուք կարող էք վարել պատշաճից
կեանք, բայց ոչ ազնիւ կեանք։ Ձեր հոգու մէջ դուք
կը գերադասէք Աստուծուց աւելի մամոնան, մեծ գոր-
ծերի անյաջողութիւններից աւելի սուտ յաջողութիւն-
ները։ Ձեզ համար չէ այն լուսաւոր գիտութեան ճա-
ճանչը, այն առատաբուխ օրհնութիւնը, որ վիճակուած
է մոլորեալ հոգի փրկողներին։ Դուք չէք կարող սիրել
այն բարիքը, որ հալածվում է, ատել այն չարիքը, որ
յաղթութիւն է վայելում։ Ձեզ մնում են թեթևա-
միտ, դատարկ, անարժան զբօսանքներ, ձանձրացած,
դժգոհ հոգեկան տրամադրութիւն, դուք անազնիւ
կը լինիք դէպի ուրիշները, և դժբախտ ձեր իսկ ան-
ձից։ Ձեր շուրջը կը կատարուին մեծամեծ սխրագոր-*

ծութիւններ, իսկ դուք մէջը անմասն կլինիք․ ձեր չուրջը կը լսուին բարձր և վսեմ մտքեր, բայց ձեր պղտորած խղճի և ապատաւորած սրտի մէջ անոնք արձագանք չեն գտնի։ Ձեր առաջ աստուածային թափորով կանցնեն ազնիւ, առաքինի, մեծ, իմաստուն մարդիկ, սակայն դուք նոյն թուում չէք դասուի։

Վերջ ի վերջոյ, ձեզ վրայ գունդ գունդ կը թափուին անօգուտ և անզեղջ կենաց սուացնող հոգսեր։ Ձեր հոգին յագուրդից և խոնջութիւնից կը ծերանայ աւելի վաղ, քան թէ մազերով ալեւորուիք։ Կարելի է թէ դուք հասնիք յաջողութեան, ունենաք պատիւներ, հարստութիւն, բայց և այնպէս մեռած կը լինիք։ Արդէն պատանեկութեան օրերից ձեր ճանապարհը կը ցանուի սպառուած ու ծախուած կրքերի մոխրով, բայց յամենայն դէպս դուք միշտ ծանրութիւն կը զգաք ձեր սրտի յափրանքից և պարապութիւնից։

Իսկ հիմա տեսնենք, թէ ի՞նչ կը լինի ձեր վարձքը, եթէ երթաք զկնի Քրիստոսի։ Բաց անենք մեր աչքերը և համոզուենք, որ քրիստոնէութիւնը աշխարհի՝ հեռատես խոհեմութիւն չունի, երբէք յուսահատութիւնից և վշտից չի ազատում։ Ձեր ծառայութիւնը ընդունելի չի լինի, եթէ վարձատրութեան մասին էք մտածում։ Դուք պէտք է սիրէք պատերազմ և ոչ թէ յաղթութիւն, աշխատութիւն և ոչ թէ յաջողութիւն։

Դուք պէտք է գիտենաք, որ կը կորչիք տակաւին թշնամու ձեռքից չառնուած խրամի մէջ, և միշտ պատրաստ պիտի լինիք «ձեր կտրած սուրը յանձնելու խոնարհութեամբ և քաջ սրտով յաղթող բախտին»։ Դուք չէք ստանայ աշխարհային վարձ, դուք չէք ունենայ ոչ պալատ, ոչ կառք, ոչ մարմարեայ արձան։ Այս բոլորը կարող էք ձեռք բերել «անյագ եսասիրութեամբ, աշխարհավարութեամբ, խստասրտութեամբ»։ Իսկ ձեր վեհագոյն վարձքը կը լինի։

արիւնաթաթախ ոտքեր, վշտակիր ճակատ, այն եւ ճաճանչազարդ, փոխանակ պսակով ծածկուած: Այսպիսի մարդը կարող է դժբախտ լինել, ինչպէս որ եղել են գրեթէ բոլոր մարգարէները, որ ապրել են աշխարհի ատելութեան և անգութ թշնամութեան մէջ,—բայց և այնպէս նա կամաւ տագնապի մէջ կը մղուի և օրհնուած կզգայ իւր անձը: Նա ի խորոց սրտէ ամենայն օր կը գոհանայ Աստծուց, որ այդպիսի բարձր չարչարանքների համար արժան է համարուել: Նա այդ չարչարանքը աշխարհի ոչ մի բարութեան հետ չի փոխի: «Երանի իցէ այնոցիկ, որք տրտմեցանն» 1), աշխարհի խոպանացած անապատում նոցա կերակուրը կը լինի Տէր Աստուծոյ դրախտից քաղած մանանան:

Այս օրինակներին հետևելը աւելի հեշտ է, սիրելիք, այս յարկի տակ, ուր որ ոչ միայն ամենայն օր խօսում են Քրիստոսի մասին, այլ և որ տեղից որ շատ մարդիկ դուրս են գնացել և արդեամբ աշխատել են Նորա հետքերով ընթանալու: Դուք արժանացել էք ոչ թէ մի հասարակ տան մէջ ապրելու, այլ մի վայրում, որոյ վերայ սաւառնում է անմահ և իմաստուն մարդկանց հոգիք: Մարտիրոսները աղօթել են այս մատուռներում, այս տեղից ելած սուրբերը ապրել են վանքերում: Նոցա արժանաւոր դէմքերը պատերից այժմ նայում են մեզ վերայ:

Պէմբրոկեան գաւթում *) ճեմում էր Րայդլին՝ յունարէն Աւետարանը ձեռքին, և անգիր սերտում էր թղթերը: Այս տեղ, Կայիուսի կոլէջում, Երեմիա Տայլորը հեզութեամբ սովորում էր այն կրակոտ և միևնոյն ժամանակ քաղցր պերճախօսութիւնը, որ յի-

1) Յովբ. ԺԳ. 18:

*) Համալսարանի զանազան կոլէջների անուններ:

չեցնում է քնարերգութեան անոյշ երգ։ Տեառն մերոյ կոլէջում Միլտոնը իւր ջահիլ և տաք սիրտը լցնում էր ատելութեամբ դէպի ամենայն ցածութիւն։ Ս. երրորդութեան կոլէջի գաւիթներում Գէկոնը, Նիւտոնը և Րէյն իմացան, թէ «եթէ մենք երեսի քրտինքով կատարենք Աստուծոյ գործը, Նա մեզ հաղորդակից կանէ Իւր յայտնութեան» (լորդ Բէկոնի աղօթքը)։

Ապրինք այս մեծամեծ մարդկանց արժանի կերպով։ Մենք էլ ձգտենք որ դասուենք այն մարդկանց կարգում, որոնք իրանց վերայ իջած Աստուծոյ Հոգւոյ շնորհով՝ եղել են Աստուծոյ որդի և մարգարէ։ Սոքա այն փարոսներն են, որ ծագող ճշմարտութեան արեգակի ճառագայթները սերունդէ սերունդ ստացել և ցոլացրել են։ Լաւ բան է դիտել դոցա փայլը, բայց աւելի լաւ է հայեացքը դարձնել դոցա ծագման աղբիւրին։

Ուրեմն եկէք այժմ երթանք զկնի Քրիստոսի յօժար սրտով, կամաւ, ջերմ եռանդով, փոյթ չէ թէ մեզ ինչ է սպասում, արդեօք գովեստ թէ պարսաւ, յաջողութիւն թէ անյաջողութիւն, խաղաղութիւն թէ չարչարանք, — գնանք զկնի Նորա, որպէս զի յետոյ տեսնենք Նորա երեսը և միշտ այնտեղ լինինք, ուր որ Նա է։

## Ը.

# ՅԱՐՈՒԹԻՒՆ ՔՐԻՍՏՈՍԻ.

*«Զի եւ ինքեանք իսկ արարածքն ազատեսցին ի ծառայութենէ ապականութեան յազատութիւն»։ Հռ. Ը. 21։*

«Գիտեմ զի զՅիսուս խաչեցեալն խնդրէք. չէ աստ, քանզի յարեաւ, որպէս ասացն» 1)։ Այսպիսի քաղցր բառեր արտասանեցին հրեշտակները, դառնալով այն հաւատարիմ, սիրող կանանց, որոնք ամէնից երկար մնացին Յիսուսի Խաչի մօտ և ամէնից աւելի վաղ եկան Նորա գերեզմանը։ Այսպէս են խօսել հրեշտակային քնքոյշ ձայները, և 1800 տարի անցնելուց յետոյ ևս կրկին հնչում են, որպէս աստուածային արձագանգ խնդութեան և յուսոյ։ Մեզ հաւատացածներիս և ծերերիս համար Քրիստոսի Յարութեան յիշատակը այնչափ բերկրական է, որչափ որ մանկութեան ուրախութիւն է պատճառում Ծնունդ աւետող զանգակի քաղցրաբարբառ ղողանջիւնը։

Մանուկների համար յատուկ նշանակութիւն ունին այն տօնախմբութիւնները, որոնք յիշատակում են Յիսուսի սուրբ մանկութիւնը, որ օրհնուել է Աստծուց և մարդկանցից։ Յարութեան տօնը աւելի յարմարում

1) Մատ. ԻԸ. 5:

է մեզ, որ Նորա դառն բաժակի մի քանի կաթիլ խմել ենք և Նորա մկրտութիւնը հրով ենք կրել։ Քանի որ ծերութիւնը առաջ է գալիս, ըստ այնմ տօնի ազդած յոյսերը աւելի և աւելի նշանակութիւն են ստանում մեզ համար։ Մենք յիշում ենք, թէ մեր Տէրը մեռել է, թէ մենք էլ շուտով մեռնելու ենք, թէ Նա «մահուամբ զմահ կոխեաց», որպէս զի չարչարող էակների հեծծանքները ամոքէ և սփոփէ, և ազատէ մեզ ջախջախուած թշնամու երկիւղից։

Ասում են, թէ ամենավայրենի ցեղերը մահուան մշտական երկիւղով են ապրում։ Իրանց ամբողջ կենաց մէջ նոքա միայն այն են մտածում, որ փախուստ տան մահուանից։ Մահուան մտածութիւնը թունաւորում է նոցա ուրախութիւնը։ Որպէս ահեղ ճիւաղ մահը միշտ կանգնած է նոցա աչքի առաջ, նոյն իսկ հանգիստ և խաղաղ ժամերում։ Նոքա վախենում են ոչ թէ ճգնաժամի տանջանքներից (թէպէտ այս էլ սոսկալի է), այլ մահուան գաղտնիքից, որ Աստծուց յետոյ ամենից աւելի անթափանցելի գաղտնիք է, վասն զի «մահը հոգու վերջին խարիսխը կտրելով՝ տանում է նորան մշանջենականութեան անեզր ծովը»։ Ահա թէ ինչ է նշանակում նոցա համար այն «անլեզու, անխօս սոսկումը, որի դէմ տկարանում է մարդկային համայն արիութիւնը»։ Եւ միթէ զարմանալի՞ է նոցա երկիւղը։ Ո՛չ ապաքէն նոքա գաղափար չունին հանդերձեալ կենաց մասին, իսկ ի՞նչ է կեանք առանց այդպիսի գաղափարի։ Որչափ չնչին և անօգուտ է այդպիսի կեանքը, որչափ ձանձրալի և անյոյս է։ Այդպիսի կեանքը մի ճանապարհորդութիւն է առանց նպատակի դռներին որ ոչ մի տեղ չեն տանում, նաւէ, որ աւապատները բաց է արել՝ միայն անծանօթ ծովի խորութիւնների մէջ, կործանելու համար։

Լրջմտութեամբ նայեցէք կեանքի վերայ, և կը

տեսնէք․ որ փոփոխական է, կարճատև է, տխուր է։ Նախ ուրախ, անհոգ երիտասարդութիւն, որի գեղեց-կութիւնն ու փայլը՝ սակայն շատ շուտ ոչնչանում է․ ապա — պատահականութիւններ, փոփոխութիւններ, կորուստներ, չկատարուած ըղձեր, կորած յոյսեր, խաբուած փառասիրութիւններ, որ աւելի դառն են լինում, երբ որ մեր երազները կատարվում են, քան թէ անկատար մնային, այնուհետև գոյութեան մա-քառումն, ընտանեկան հոգսեր, դաւաճանած բարե-կամութիւն, խանգարուած առողջութիւն, ընդունա-կութիւնների նսեմութիւն՝ անխուսափելի ծերութեան հետ ի միասին։

Իսկ այսպիսի մրրիկների րոպէական դադարման նուագներումն էլ՝ կարծես թէ տեսիլքներով ու ճի-ւաղներով լցուող տան մէջ լսում ենք, որ միջանցքի հեռաւորութիւնից ինչ որ սարսափելի քայլեր են մերձենում, մահուան քայլեր, որ աւելի և աւելի սաստկաձայն են հնչում, քանի որ մահն աւելի է մերձենում։

Եւ այս բոլորը այնքան կարճ է տևում, որ մեր մանր դիտաւորութիւնները անդադար ընդհատվում և կտրատվում են ոստայնանկի ձեռքի թելի պէս․ մեր չնչին երկերը մեզանից երկար են ապրում և հասնում են սերունդներին, որոնց յայտնի չի լինում նոյն իսկ մեր անունը։ Եւ բոլորն ա՞յս է։ Մեր գոյութեան ամ-բողջ շրջանը ա՞յս է եղել։ Միթէ ա՞յստեղ պէտք է վերջանանք։ Միթէ աշխարհք եկել ենք միայն այն խորհրդով, որ ամբոխի մէջ՝ աջ ու ձախ հրելով և ծանրապէս ոգորելով՝ մեր ճանապարհը բանանք, վա-յելենք փոքրաթիւ խաբուսիկ զուարճութիւնների քաղցրութիւնը, և ապա հեռանանք։ Վա՜յ մարդու գլխին, եթէ այս լինէր ամէնը և աւելի ոչինչ երկրի վերայ։

Ի՛նչ աղէտալի բան կը լինէր մահը, եթէ այնուհետև յարութիւն ի մեռելոց չլինէր։ Ինչպէս սրտաբեկ պիտի լինէինք այդ բանից։ Եթէ Քրիստոս չիցէ յարուցեալ, ընդունայն է քարոզութիւնն մեր, ընդունայն են և հաւատքն ձեր [1]։ Թող մենք սուտ վկայ լինինք Աստուծոյ, իսկ դուք տակաւին ձեր նախկին մեղքերից չփրկուած (այս ամէնը ինքնին սարսափելի է բայց ուշադրութիւն դարձրեցէք Առաքեալի խօսքի սրտաճմլիկ շարունակութեան վերայ) «Նոյնպէս և որ ննջեցինն ի Քրիստոս, կորեա՛ն»։ Կորեա՛ն, ի՛նչ խոր տրտմութիւն, ի՛նչ անճառելի յուսահատութիւն է լսվում այս անլուր բառով։ Հարկաւ ձեզանից շատերդ երիտասարդ էք, և մեզ պէս պէտք չէք ունեցել մահուան մահճի մօտ կանգնած լինել։ Բայց ամէնքդ կարող էք դէթ զգացմամբ հասկանալ, թէ ի՛նչ կլինէր մեր վիճակը այդ րոպէին, եթէ մենք չհաւատայինք և չգիտենայինք, թէ Քրիստոս յարուցեալ է։

Ահա անկողնում պառկած է այն մարդը, որին մենք սիրում էինք ամենայն սրտով, որ այնպէս թանկ էր մեզ համար։ Նա ազնիւ էր բարի էր։ Այն սակաւագիւտ մարդկանցից էր, որ մեզ սիրել են։ Մեզ համար պատրաստ էր նա ամենայն զոհաբերութիւն յանձն առնելու։ Քաջութեամբ և հեզութեամբ տանում էր նա բախտի բոլոր հարուածները։ Նորա կարճատև կենաց մթութեան մէջ քիչ ճառագայթներ լուսաւորեցին, թէպէտ այդ կեանքը գեղեցիկ էր և դրոշմած էր բարութեամբ և արդարութեամբ։ Եւ ահա ամենայն ինչ վերջացաւ։ Փայլուն աչքերը խաւարեցին և ապակի դարձան։ Քնքոյշ երեսը գունատուեց և սառեց։ Արի և բարի սիրտը էլ չի բաբախում։ Նա այս կեանքին այլ ևս հաղորդակից չէ։

---

1) Ա. Կոր. ժե. 14։

Կար ժամանակ երբ որ նա, հեռուից մեզ նկատելիս կը թռչէր տեղից և կը վազէր դէպի մեզ։ Իսկ այժմ նա պառկած է և չի լսում մեր ողբոյ ձայնը։ Մեր ջերմ արտասուքը չի հասնում այն հոգուն, որի լոյսը նորա մէջ հանգել է։ Եթէ չկայ յարութիւն ի-մեռելոց, ապա նա մեզնից գնացել է մոռացութեան մռայլ աշխարհը։ Ինչ որ նորա մէջ ազնուագոյն էր, այն ամէնը կորել է, ինչպէս կը կորչի և այն ամէնը, ինչ որ կայ մեր մէջ և մեր մերձաւորների մէջ։ Ի՞նչպէս անտանելի պիտի լինէր այս կորուստը մեզ համար, եթէ չկարծէինք, թէ նա յարութեան կառնէ։ Տրտմութիւնը մեզ էլ գերեզման կը տանէր։

Ձեզանից շատերդ կարդացել էք մի յայտնի տեսիլքի նկարագրութիւնը։ Այդ տեսիլքը տեսնող մարդուն պատկերացաւ եօթնաստուն կամարներով մի կամուրջ, որ կապում էր մի ահագին, մեծակոհակ հեղեղատի ափերը։ Ոգին ասաց նորան. «Տեսած կամուրջդ մարդկային կեանք է. լաւ նայիր վերան»։ Սկսեցի մտիկ տալ, շարունակում է նա, և տեսայ, որ անցորդներից շատերը թափընդափ կամրջի տակ էին կորչում և ընկնում էին հեղեղի ալիքների մէջ։ Իսկ երբ որ ի մօտոյ նայեցի, տեսայ կամրջի մէջ հազար տեսակ ծածուկ որոգայթներ։ Հէնց որ անցորդները անոնց վերայ ոտք էին կոխում, գլորվում էին ջուրը և խոլոյն ծփանքների մէջ անյայտանում էին։ Սիրտս խիստ տխրեց, տեսնելով որ շատերը ուրախութեան ժամանակ անակնկալ կերպով կորչում էին։ Փրկութեան համար նոքա ամէն բանից բռնում էին, ինչ որ իրանց հանդիպում էր։ Շատերը վազում իրանց հրապուրող փայլուն փամփուշտների յետևից։ Եւ այն ինչ իրանց թւում էր, թէ արդէն հասել են նպատակին, շատերի ոտքը սայթաքվում էր, և նոքա չքվում էին յորձանքի մէջ։ «Ո՜հ, ասացի, զուր է ստեղծուած

մարդը. Նորա վիճակն է միայն Թշուառութիւն և մահ-
ապրելու ժամանակ նա չարչարվում է, և վերջը մա-
հուան կուլ է գնում»:

Երևակայեցէք, թէ ինչ սարսափելի կեանք կլինէր
աշխարհում, եթէ մեզ չզօրացնէր ի մեռելոց յարու-
թեան հաւատքը: Այս տեսակ մտածութիւններ շատ
եմ ունեցել, երբ որ մի գերեզմանատան լեռան գլխից
նայել եմ իմ առաջ սփռուած գերեզմանի տեսարանի
վերայ, բայց երբէք այն աստիճան խիստ տպաւորու-
թիւն չեմ ստացել, քան երկու օր առաջ: Իմ մտած-
մունքները նման էին մի գեղեցիկ՝ թէև տխուր մեղե-
դու, որ այժմ ի զուր աշխատում եմ մտաբերել:

Այն հանդարտ ամառային երեկոներից մէկն էր,
որոնց խաղաղական գեղեցկութեան համար, որ այն-
պէս հանդստացնել գիտէ հոգսերով լի սիրտը, ան-
շուշտ պէտք է միշտ գոհանանք Աստծուց: Արեգակը
մայր էր մտնում ոչ թէ ջերմագոյն ծիրանի հոյակա-
պութեան մէջ, այլ ամպամած, մեղմ լուսով, որ
հեղվում էր կանաչ դաշտերի վերայ: Ներքևից, «Սրի-
կէր» խաղալու մարգագետնից, երեկոյեան թեթև հովը
հասցնում էր ականջիս ցնծութեան ծիծաղի աղաղակն
ու բռնկումը: Բնական է, որ մահուան մտածմունքից
շատ հեռու էին անմեղ ուրախութեան անձնատուր
եղած մասնակցողները:

Բայց այդպէս չէր իմ հոգու վիճակը: Նոր լսել
էի մէկի մահը, որ երեք տարի առաջ մանուկ հասա-
կում մտել էր այս յարկի տակ: Իմ շուրջը թաղուած
էին մեռեալներ, որոնց ականջին չէր հասնի ծիծաղը:
Ոտքերիս տակ, շատ մօտ թաղուած էր այն հոգու
աճիւնը, որ քիչ ժամանակ առաջ ձեր մէջն էր: Եր-
կու տարի առաջ, յիշում եմ, որ նա, խեղճը այս
տարեկան տօնախմբութեամբ, անհամբերութեամբ
սպասում էր: Նա ոչ միայն ուրախներից ամենաու-

քախն էր, բայց իմ առաջին ուշադրութիւնը գրաւեց իւր անսպառ, վարակիչ խնդութեամբ։ Ես ի՞նչ կը մտածէի այն ժամանակ, թէ այնպէս շուտ կը տեսնեմ նորա գերեզմանի վրայ աճող ծաղիկները։ Այո՛, տխուր է այն մտածմունքը՝ թէ մարդկային կենաց լուսաւոր ընթացքը այլ վախճան չունի, բայց եթէ մահուան մռայլ ծովի անդունդը։ Բայց ես արդէն յիշեցի, թէ այս ենթադրութիւնը սխալ է. մարմնի համար կայ յարութիւն, իսկ հոգու համար՝ անմահութիւն։

Մահը և որդը միշտ յաղթութիւն չեն տանում. մահը և մեղքը անզօր են, որոնց Աստուած Իւր ոտքի տակ կոխեց, մեզ կեանք պարգևելու համար։ Նոյն՝ բայց աւելի փառաւոր՝ մարմնով, նոյն հոգով՝ բայց աւելի սքանչելի վեհութեամբ, կարող են ապրել նաև այն ժամանակ, երբ որ սահմանաւոր ժամանակը դադարի, կարող ենք ունենալ յաւիտենական կեանք (հաւատում ենք), մկրտուած կենդանի ջրով, մաքրուած բազմաթիւ բծերից Աստուծոյ գառան թանկագին արեամբ։ Եւ ես յիշեցի յայտնութեան հոյակապ, հրաշալի օրհներգութեան պէս զարմանալի բառեր, որ կարծես թէ քերոբէների ձայնով հնչում էին իմ ականջում. «ոչ ամենեքեան ննջեսցուք, այլ ամենեքեան նորոգեսցուք, յանկարծակի յական թօթափել ի փող յետին. քանզի փող հարկանի, և մեռեալք յարիցեն առանց ապականութեան, և մեք նորոգեսցուք։ Զի պարտ է ապականութեանս այսմիկ զգենուլ զանապականութիւն, և մահկանացուիս այսմիկ՝ զգենուլ զանմահութիւն» 1)։ Մենք լսել ենք, մենք կարդացել ենք այս բառերը մթախառն եկեղեցիներու մէջ, արտասուալի աչքերով։ Երբ որ յիշենք մեր սիրելիներին, որ քնած են մեզանից հեռու գիւղերում, գերեզ-

1) Ա. Կոր. ժե. 51—53:

մանատներում,—Հնդկաստանում, յիշենք նաև այս բառերը։

Մենք կարող ենք վերանալ այս աշխարհի աղմուկներից և ի խորոյ սրտէ աղաղակելով գոչել. «Ո՞ւր է, մահ, յաղթութիւն քո. ո՞ւր է դժոխք, խայթոց քո»[1]։ Այո՛, Քրիստոս յարեաւ։ Ո՛հ ինչպէս այս բառերը փոխում են մարդու կենաց ամբողջ խորհուրդը։ Մրրկից յետոյ արեգական լոյսը, որ թանչուններին քաջալերում է երգելու և կարկտով ջարդուած ծաղիկներին կենդանութիւն է տալիս, այնքան չի փոխում տեսարանը, որքան այս բառերը մարդկային կեանքն են փոխում։ Ուրիշ ոչ մի բան աւելի ստոյգ ապացոյց չէր կարող տալ մեզ, թէ մենք էլ յարութիւն կառնենք։ Այդպիսի հաւատք մեզ չէին կարող ազդել ո՛չ մանկութեան աղօտ յիշողութիւնները, և ո՛չ ազանչացման րոպէների շփոթ յոյսերը։

Հին ազգերի ներքին աղդմամբ գուշակութիւնները անմահութեան մասին, այնպիսի հանդիտութիւնները, որ մարդու մտքի մէջ ինքնին ծնանում են, երբ որ նա տեսնում է առաւօտեան արշալուսի կրկնութիւնը, գարնան նորոգումը, սերմի բսնելը, կամ երբ որ տեսնում է թիթեռ, բժժից դուրս է գալիս և փոքրիկ թևերով օդ է առնում ամառուայ արեգակի լուսի տակ,—այս բոլորը հարկաւ կարող է մի քանի ընտրեալների մէջ սաստիկ բաղձանք պարթուցանել, գաղափար յղացնել ինչ որ մի հեռաւոր հնարաւորութեան մասին, բայց չի կարող բոլոր խոնջացած և չարչարած մարդկային սերնդին տալ մշտական, աղնուացուցիչ համոզում, ճշմարիտ լոյս։ Իսկ Քրիստոս յարեաւ իրօք, ապա ուրեմն այժմ ունինք այն յոյսը, ունինք այն գաղափարը, որ մեզ խաղացնում է խռո-

---

[1] Ա. Կոր. ժե. 55։

վեալ բաղէներում, ունինք հաւատք, որ բարձրացնում է մեզ մինչև որդի Աստուծոյ լինելու մեծագոյն արտօնութիւնը։

Ի Քրիստոս ննջեցեալները չեն կորել։ Ահա, նայեցէք Փրկչի դատարկացեալ գերեզմանի վերայ, որ պահպանում են հրեշտակները։ Ձեզ համար նա խորտակեց բանտի շղթաները։ Մատի մի շօշափմամբ սատանեցրեց երկաթէ վանդակներն ու պղնձէ դռները։ Նա ոչնչացրեց յափշտակողի տունը և դուրս հանեց օձի խայթոցը. «չէ աստ, քանզի յարեաւ, որպէս ասաց»։ Բոլոր այս նեղ գերեզմաններում քնածները կը զարթնեն և յարութիւն կառնուն։ Մի՛ լար այրիացած կին, այն պատկերի մասին, որ անձինք պահես արտասուք, որովհետև դու նորան կտեսնես։ Մի՛ լար, հայր, քաջ որդւոյդ մասին, որ իւր արեամբ ներկել է մահուան դաշտը։ Մի՛ լար, որբ մանուկ, հանգուցեալ մօրդ մասին, որոյ ջերմ համբոյրը այլ ևս չես զգում ճակատիդ վերայ։

Ձեր մեռեալները կապրեն. հողի տակ թաղուածները յարութիւն կառնուն, նոքա բաց կանեն ծալած թևերը, փրկուած վեր կը կենան և կը թռչեն արեգակի լոյսի մէջ, իրանց թողոտած հանգերձներից թափտալով ապականութեան և մահուան աճիւնը։ Գետնից, գետից լայնասփիւռ ծովի կուտակուած ալիքներից վեր կելլեն նոքա հրեշտակի փողի ձայնով։ Բոլոր հանգուցեալները, և՛ խաղաղ գերեզմաններում, և՛ կռուի արիւնահեղ դաշտերում, և՛ դարափորներում ու բուրգերում, և՛ մարմարեայ արձանների տակ և՛ քարայրերում եղածները, մեծ և փոքրը, սուրբերը մարգարէները, առաքեալները, ամէն ժամանակի ու աշխարհների անթիւ անհամար մարտիրոսներն ու ինքնակոչ հերոսները, — ամէնքը. Գառան դրօշմը ճակատին՝ կազատուեն մահուան և դժոխքի իշխանութիւ-

նեց։ Ի՛նչ ահագին հունձք է։ Ինչպէս կը ջախջախուի և գարշապարի տակ և գետնի հետ կը հաւասարուի վերջին թշնամին։

Դարեր շարունակ մահը հարուածում էր Տէր Աստծու գեղեցիկ արարածները. Նա ձեռք էր բարձրացնում նոյն իսկ Աստուծոյ օծեալների վերայ և այնչափ անդիմադրելի էր թւում, որչափ և սոսկալի էր։ Այն ինչ որ միայն թագաւորն ու հզօր մարդիկ, այլ և բազմամարդ. փողոցի սովամահ եղած ամենաչնչին մուրացկանի հոգին, նոյնպէս և այն նորածին մանկան հոգին, որ հողմի շնչի պէս մի քանի հազար տարի առաջ անյայտացել էր՝ անզեղծ, լուսաւորուած և անմահացած կը փրկուի մահուան սառուցեալ ձեռքի զէնքից։

Ի՛նչ մեծ յոյս է։ Ի՛նչ փոփոխութիւն է կենաց մասին կարծիքի մէջ։ Երթանք համարձակ հոգւով և երջանիկ սրտով այս մռայլ հովտի ճանապարհով։ Թէպէտ ժայռերն այն տեղ ձգտում են իրանց ստուերը, և մէջը ահարկու ուրուական է երեւում, բայց և այնպէս ճանապարհի ծայրին մեզ համար յուսոյ դռներ կան — անմահութեան դռներ, որ տանում են երկնային դրախտը, ուր որ բսնում են կենաց ծառեր և բղխում են կենաց աղբիւրներ։ Այստեղ՝ աղօտ պարտասուցիչ, անհանգիստ կեանք, որ շատ անգամ վերջանում է ախուվախով, ոգորմամբ, հոգեվարքով, այն տեղ՝ հոգին բոլորովին նորոգվում է բարձրագոյն գոյութեան գիտակցութեամբ, և Ինքն Աստուած սրբում է մեր արտասուքը։ Ահա թէ ինչ է Քրիստոսի յոյսը, և թէ ինչով Քրիստոս մեզ՝ բոլոր յաղթութիւններից աւելի բարձր է դասում. քանի որ մենք ոչ միայն յաղթում ենք թշնամուն, այլ և սորա անէծքից մենք օրհնութիւն ենք հանում, սորա բանտից պսակ և անքոյթ ապաստան ենք ստանում։ «Ցանվում է ապականու-

թեամբ, աճում է անարատութեամբ, ցանվում է արհամարհութեամբ, աճում է փառաւորութեամբ, ցանվում է տկարութեամբ, աճում է զօրութեամբ. ցանվում է մարմին շնչաւոր, աճում է մարմին հոգևոր»։

Եղբարք սիրելիք, տօնելու օրեր են գալիս, երբ ամէն ինչ առօրեայ կենդանութիւն պիտի ստանայ։ Դուք կարելի է կարծէք, թէ կեանքը միայն զուարճութիւն և անգործութիւն պիտի լինի, իսկ ես կուզենայի ձեր ուշքը աւելի մեծ մտածմունքների կողմը դարձնել, ցոյց տալով կենաց աւելի փառաւորութիւնն ու անհեղ իրականութիւնը։

Անձնապաշտութիւնը ամենալաւ սանձ է անմեղ զուարճութեան համար և ամենապատուական գոհար, որ ձեզ պիտի պահպանէ յաջողութեան արբեցութիւնից։ Կարելի է թէ չկարողանամ ցոյց տալ, ինչպէս որ ցանկանում եմ, այս տեսակ ճշմարտութիւններից ծագող կարևոր խրատները։ Ես կաղաչեմ Ս. Հոգուն, որ Նա տպաւորէ նոյն իսկ քարացած սրտերում այն ճշմարտութիւնը, թէ ինչ վատ մոլութիւններ որ ունին այժմ ձեր մարմինն ու հոգին, նոյն ապականած մարմնով և նոյն ապականած հոգով՝ դուք հանդիսանաք Աստծու հրացայտ հայեացքին, եթէ վաղօրօք չմաքրուիք։

Ձեր բոլոր մեղքերը կը հատուցուին։ Դու խաբել ես միամիտներին, դու անգութ ես եղել ամաչկոտի դէմ, խանգարել ես ջանասէրների արդար գործը, գայթակղել և ապականել ես անմեղներին, ցաւացրել ես բարի մարդկանց։ Մտածիր, թէ ինչ կը լինի վիճակդ, երբ որ Աստծու ահեղ դատաստանին տեսնես այն մարդուն, որին որ կենդանութեանդ ժամանակ նեղացրել ես, և եթէ Նա մատնացոյց անէ քեզ և քեզանից այնքան տառապանքներ կրելուց յետոյ՝ այժմ ձայնը բարձրացնելով, ասէ. «Ես մեռայ մեղա-

ւոր հոգւով և առանց զղջալու, բայց միթէ պատու-հասից կազատուի՞ սա, որ իմ հոգուս մէջ առաջին անգամ ցանել է դժոխքի սերմեր»։

Հէնց այդպիսի հոգեսպանների համար ասել են սիրող շրթունքները հետևեալ բառերը, որով վկայվում է, թէ դոցա համար անմահութիւնը արդարև որ նզովք պիտի լինի. «Լաւ է նմա՝ եթէ չէր իսկ ծնեալ մարդն այն»[1)]։ Եղբարք արդեօք ի՞նչ կը պատահի դորան. ո՞վ գիտէ։ Անթափանցելի մթութեան վարագոյրը, անյայտ գաղտնիքի խորութիւնը ծածկում են մեզանից այդ բանը։ Թող ով որ ուզում է՝ ճշդութեամբ որոշէ պատուհասի ժամանակն ու ձևը, մարդկային թոյլ ձեռքերով խաղայ երկնային կայծակներով և դատա-պարտէ իրանից ուրիշ կարծիք ունեցողին։ Բայց ես երբէք չեմ պնդի այն բանը, որ չգիտեմ, և որ ոչ ոք գիտենալ չի կարող բացի այն փոքրագոյն բաներից, որ Աստուած մեզ յայտնել է։

Ես չգիտեմ ոչ պատժի ձևը, և ոչ անոր տևո-ղութիւնը։ Գիտեմ միայն, որ ուրիշ առիթներով էլ ասել եմ, թէ «Երկինքն ու դժոխքը շատ էլ հեռու չեն մեզանից։ Ատոնք ոչ ոսկի քաղաքներ են երկնքում, և ոչ կրակի լճեր են երկրի պորտում։ Ե՛ւ դրախտը, և՛ դժոխքը կան այժմ ևս. անոնք մեր մէջն են։ Մա-քուր, հանդարտ, սիրող ջերմ սիրտը—ահա երկինք։ Ցանցաւոր, վախկոտ, անշահ, փչացած, նախանձոտ, դժգոհ սիրտը—կատարեալ դժոխք է, և մինչև որ չմաքրուի, միշտ դժոխք էլ կմնայ, և թող չպարծե-նայ, թէ ինքը դժոխքից մի բանով պակաս է, որ իւր մէջ չկայ որդ և հուր։

Ցաւիտենականութիւնը հակադրութիւն է կազ-մում ոչ թէ ժամանակաւորի, այլ երևելի և տեսա-

---

1) Մարկ. ժԴ. 21։

նէլի աշխարհի: Յաւիտենականութիւնը ոչ թէ ժամանակի չափ կամ շրջան է, այլ պայման և հանգամանք, ոչ թէ ապագայ է, այլ մշտատևութիւն է, ոչ թէ որոշ վայր և տեղիք է, այլ վիճակ: Ապրենք միշտ այս բանը խորհելով, և այն ժամանակ մեր կեանքը չի լինի այնպէս դաժան, դատարկ, պղերգ, անօգուտ, ապարդիւն արատաւոր, ինչպէս որ շատ անգամ լինում է:

Յաւիտենականութիւնը մեր շուրջն է: Սուրբ և մաքուր, կենսինք, որովհետև գիտենք, որ ճանապարհից շեղուելով, անկարելի է ուղի վերադարձներով անցնել: Կատարեալ լինենք, որպէս զի ամօթից գետինը չըմտնենք, երբ որ տեսնենք, թէ մեր չարարարութեանց անարգուածը և մեր ցուրտ արհամարհութիւն կրողը՝ արժանանում է Աստուծոյ պատիւներին և ընդունելի է դառնում Աստուծոյ Գառան գրկում:

Խոնարհ լինենք, որ Աստուած չպատժէ մեր հըպարտութիւնը, և որ չվաստակենք նզովք: Եւ այն ժամանակ յաւիտենականութիւնը քիչ քիչ կը բացուէ մեզ համար: Սէր, բարութիւն, ճշմարտութիւն, որոնց վերայ որ բարոյապէս հիմնուած է աշխարհը, երևան կու գան մշուշի տակից, որոնք կուտակվում են մեր անձնապաշտութիւնից: Մենք կիմանանք, թէ այդ յատկութիւնները բնական են մեզ, թէ նոցա մէջ է ոյժ և զօրութիւն: Այն ժամանակ մեր կեանքը ազնիւ և երջանիկ կեանք կարող է լինել: Մենք կարող ենք ժպտելով նայել մահուան վերայ, որովհետև մենք կապրենք քրիստոնէութեան անձնահրաշալի ճշմարտութիւններից երկուսի լուսով, որք են՝ մարմնի յարութիւն և հոգու անմահութիւն:

Թ.

# ՀԱՄԲԱՐՁՈՒՄՆ

«Եւ ամպն կալաւ զնա յաչաց նոցա»։

Գործ. Ա. 9.

Եւ այդ ամպը մնաց մինչև այսօր։ Այն աչքերի համար, որոնք անձամբ տեսան, այդ ամպը մեղմ և պայծառ էր, ինչպէս որ մայր մտնող արեգական ճառագայթները կ մօտոյ տեսնողի համար է լինում, իսկ այժմեան աշխարհի աչքերի համար՝ այն թուում է տհագին, թուխպ և թանձր ամպ։ Անոր մթութիւնը տարածուել է համայն կապոյտ երկնքի վերայ, սևացրել է ցերեկուան լոյսը։ Անոր վերայ չի երևում ծիածան, որովհետև մի նշան է բարկութեան և արհաւիրքի, իսկ երբեմն անոր խորութիւնից կայծակնացայտ արտասուքներ են փայլում։ Ոչ թէ ժամանակաւոր ծուխը ծածկել է մեզանից Արդարութեան Արեգակ Քրիստոսին, այլ սև մառախուղը, որ թշուառ թերահաւատութեան պատճառով բարձրացրել է մոլորութեանց անդունդից։ Այդ մառախուղի գլխաւոր հիմքը մեղքն է, ապա հետը միանում են ամբարիշտ հպարտութիւնը, դաժանսրտա դիւութիւնը, անաստուած քննադատութիւնը և անհեթեթ յուսահատութիւնը։ Մենք այժմ այլ ևս չենք տեսնում, եթէ կատարեալ փայլով, այն սիրելի Երեսը, Որ տխրացած է մեր մեղքերի

պատճառով։ Այդ գէմքը էլ չի խորնարհեցնում Իւր գլուխը, որ լսէ մեր աղօթքը։ Նորա գթասրտութիւնը էլ չի հեղում Իւր ճառագայթները մեր կրած ամէնօրեայ թշուառութիւնների վերայ, ինչպէս որ Նա ամոքել է շատ մեռանող մարտիրոսներին։ Վասն զի այլ ևս այն գիտակցութիւն չենք ստանում, թէ վերջապէս հաւատացինք, ինչպէս որ այդ պատահեցաւ երկմտող առաքեալին։ Այլ վաղուց մարդիկ հարցնում են. «հապա ո՞ւր է Նորա ուխտած երկրորդ գալուստը»։ Հարիւրամեակներ և հազարամեակներ անցնում են մէկմէկու հետևից խոր լռութեամբ։

Ցգիտութեան, մոլորութեան և ոճիրների բազմաթիւ դարեր անցան, չլսուեցաւ երկնքի ձայնը։ Ոչ մի օր յայտնութիւն չհնչեց, որ զսպէր մոլորուող աղանդների պատերազմական աղաղակը և մոլեռանդութեան կռիւները։ Աշխարհը աւելի և աւելի գլորուեցաւ մինչև այն ցածութիւնը, ուր կեանքը նուիրած է լոկ գիւղատնտեսութեան և առուտուրի, և մարդիկ սովորեցին իրանց սրտում ասել. «չկայ Աստուած» կամ, «եթէ կայ, մեզանից այնքան հեռու է երկինքում, որ էլ հոգս չունի մեզ պէս մարդ կոչուած որդերի և հիւլէների մասին։ Մեր տառապանքի ողբը չի հասնում Նորա ականջին, մեր մեղանչանքները չի տեսնում Նա»։ Մարդիկ ցնորուել են և խելքը կորցրած՝ էլ չեն իմանում, թէ իրանց նման Մարդ—կատարեալը, որ մի և նոյն ժամանակ Աստուած—կատարեալ է, Այն անմահը, անեզրը սիրում է իրանց, որի Ձայնը լսուել է որոտումների մէջ և որի Ձեռքը կարող է բաց անել կենաց դռները իրանց առաջ։ Կորցնելով այս գիտակցութիւնը, մարդիկ կորցրեցին կենաց բոլոր ազնուութիւնը, լոյսը, վսեմութիւնը։ Գիշերային խաւարում բարերարի ներկայութեամբ չեն լուսաւորվում։ Հեզութեան ձայնը

Նոցա չի ասում սաստիկ հողմի ժամանակ. «Ես եմ, մի՛ երկնչիք»: 1) Ամպն կալաւ զՔրիստոս յաչաց նոցա: Ցէր Աստուած, արա՛ այնպէս, որ նոյնը մեզ հետ չըպատահի այս օր, երբ որ տօնում ենք Քո Համբարձումը: Թող փարատուին մեղքի և թերահաւատութեան սև ամպերը, որ Քեզ ծածկում են մեզանից: Թող, որ տեսնենք Քո երեսը և Քեզ տեսնելով Քեզ նման դառնանք:

Այո՛, մենք կարող ենք Նորան տեսնել. և այն ժամանակ մեր սրտերը կը լցուին ուրախութեամբ, ինչպէս որ ենջանկացան ս. առաքեալները, երբ որ լուսաշաւիղ հրեշտակները աւետեցին նոցա, թէ Նա կրկին գալու է: Այն ժամանակ ամպած երկինքը եօթը արեգակի լուսով կը լուսաւորուի: Աստուծոյ ձայնը, որ այժմ չի լսվում, կը լսուի ամէն մի շշուկի, հոգու ամէն մի շարժման մէջ: Այն ժամանակ մեզ ոչ ով չի յաղթի, ոչ ոքից չենք վախենայ: Եթէ Աստուած հաճի, որ փորձութիւններ կրենք, այս էլ մեզ չի վհատեցնի, որովհետև Ով որ մեռաւ և կենդանացաւ՝ Նա ինքն էլ շատ բաներ է կրել: Եթէ մարդու բացուած սրտի վերքերի վերայ նայելիս՝ մենք սոսկում ենք, որ արեգակի լուսից ծածկուած այս անկիւններում բուն դրած հրէշներից ոչ մէկը ծածուկ չի մնում Լուսոյ Հօրից, հապա հասարակութեան մեծամեծ մեղքերը, գաղտնի հիւանդութիւնները, յանցանքներն ու թշուառութիւնները, որ անդադար պատահում են այդ հասարակութիւնը կազմող բարոյապէս փչացած բիւրաւորների մէջ, միթէ մեզ չպէտք է յուսահատեցնեն և թերահաւատ դարձնեն: Բայց մխիթարուինք թէ հէնց նոյն բնութիւնը, որ մենք տեսնում ենք, որ ընդունակ է անհուն կերպով ապականուելու, այսինքն ձեր և իմ

1) Մատ. ԺԴ. 27:

ընութիւնը՝ փրկուել է արդարացել է, փառաւորուել է Մարդոյ Որդով, և հէնց այդպիսի ընութեամբ, բայց առանց մեղքերի, մարդկային, կատարեալ ընութեամբ, Նա մեր Քահանայապետ և ներկայացուցիչն է ընդ աջմէ Հօր: Ուրեմն, սիրելիք, իմացէք ամէնքդ, նաև ամենաջահելներդ, թէ Համբարձման օրը մեծ և փառաւոր տօնախմբութեան օր է: Բոլոր երգերը, ամբողջ աշխարհի համայն երաժշտութիւնը այնքան ույժ չունին, որ այդ բանը բարձրաձայն փառաւորեն: Հապա այսուհետև էլ ինչից պէտք է վախենանք. մեր միակ սարսափելի թշնամիներն էին մեղք, մահ և դժոխք: Եւ ահա նայեցէք. որչափ որ երկինքը երկրից հեռու է, այնչափ Աստուած հեռացրեց մեզանից մեղքը: Դժոխքից մեռեալները դուրս եկան, իսկ ինքը դժոխքը իւր դժոխապետի հետ՝ ձգուեցաւ հրաբորբոք լճի մէջ: Քրիստոս գարշապարով կոխեց Իւր բոլոր թշնամիներին և նոյն իսկ մահը: Այս տօնը գրաւական է մեր յաղթութեան, այսինք թէ ճշմարտութիւնը կը յաղթէ ստութեան, աստուածային սէրը՝ սատանայի թշնամութեան, սուրբը՝ իւր նեղչին, աստուածային փառքը՝ մարդկային փչութեան, հոգին՝ մարմնին Աստուծոյ բարձր զօրութիւնն ու ողորմութիւնը՝ մարդկային ապականած և տկարացած կամքին: Որքան հոգևոր երգերի մէջ օրհնաբանվում է, թէ մահուան արքայութիւնը ամայացել, և գերեզմանի վերայ վարդ է ծաղկում, այն ժամանակից, երբ որ Քրիստոսի դագաղը հողի մէջ իջեցրեցին: Տէր մեր Յիսուս Քրիստոս իւր ձեռքով յաւիտեանս խորտակեց մահը:

> «Այսօր զանմահ և զանապական մարմինն
> Տեառն՝ կանայքն որպէս մեռեալ խնկել
> խնդրէին. այլ հրեշտակին ձայնեալ ասէր,
> զի խնդրէք զկենդանին ընդ մեռեալս: Նա
> զթշնամին կապեաց և զդժոխս աւերեաց.

յարուցեալ ի մեռելոց Քրիստոս Աստուած պարգևէ ազգի մարդկան զմեծ ողորմու-թիւն »:

Համբերութեամբ լսեցէք, սիրելի եղբարք, կարճ և պարզ բառերով կաշխատեմ ցոյց տալ Քրիստոսի Համբարձման խրատները: Երանի թէ կարողանայինք, այն խրատներին հետևելով, փարատել ամպը, որ Նո-րան ծածկում է մեզանից:

Նախ միշտ մտածենք երկնքի մասին. «Համբար-ձէք, դրունք, զգլուխս ձեր ի վեր. ամբարձարուք, դրունք յաւիտենից, և մտցէ Թագաւոր փառաց»: 1) Ճշմարիտ է, Նա կը մտնի, սակայն ոչ թէ մինակ: Երբ որ աներևոյթ թափօրի մէջ զկնի Տէր Աստուծոյ փառքով մտան զօրութիւններ և հազարաւոր հրեշ-տակներ, յաւիտենից դռները այնուհետև չփակուե-ցան: Անոնք բաց են և այժմ, բաց են մեզ համար, մեր սերնդեան համար: Խմբերով մտնում են, և մինչև ժամանակների կատարածը շարունակ կը մտնեն փրկ-կուած հոգիները: Նա գնաց տեղ պատրաստելու Իւր սիրեցեալների համար: Նա ելաւ «ի բարձունս», որ-պէս զի պարգևներ բերէ մարդկան համար, միջնորդ-դառնայ, նոյն իսկ թշնամիների համար: Նա մտաւ իբրև մեծ Կարապետ Իւր ժողովրդեան, և մենք էլ պէտք է գնանք զկնի Նորա: Ուր որ գլուխն է, այն տեղ պիտի լինին և անդամները: Մեր հոգւոյ գանձը, մեր կեանքը, մեր սէրը պէտք է Նորա հետ լինի ընդ-աջմէ Աստուծոյ: Ո՛հ, որքան ժամանակ մեր սրտերը պէտք է կպած լինին աշխարհին, և այն տեղ սողա-կեն: Որքան ժամանակ պիտի տարուբերուին անոր ծփանքների վերայ առանց խաղաղուելու: Որքան ժա-մանակ պիտի ծածկուին անոր ստորաքարշ կենաց

1) Սաղ. ԻԴ. Է. Թ:

անիւնով և մեղքերի բծերով։ Մինթէ երբէք չեն բաց անի իրանց ծալած թևերը և չեն բարձրանայ, որ երկրի փոշին թափ տան բարոյական յարութեան սպիտակ հանդերձներից։ Մինթէ ընդ միշտ պիտի ցածութեան մէջ մնան՝ անձկութեան մէջ լինին և յաւիտեանս անյայտանան։ Ո՛չ լսենք այս ձայներին, որ ձայնում են երկնքի բարձրութիւնից և երկրի վերայ, որ գոչում է ամենայն արարած, լսվում է խղճի ձայնից, խոնջացածի հառաչանքից և գերեզմաններէ տակից։ Այս մի ազգարար աղաղակ է, թէ «համբարձէք զսիրտս ձեր»։ Եւ թող ամենայն ոք պատասխանէ «պատրաստ է սիրտ իմ յուսալ առ Աստուած»։

Երկրորդ խրատ, որ պէտք է հանենք այս տօնական յիշատակութիւնից, է պարտք և պարտաւորութիւն։ Թուղթ առ Եփեսացիս, որ կարելի է կոչել Թուղթ յաղագս Համբարձման, պարզ արտայայտում է այդ միտքը։ Կատարեցէք և ինքներդ կը նկատէք նոյնը։ Որովհետև Քրիստոս այնչափ ի վեր ելաւ, «ի վերոյ քան զամենայն երկինս», 1) մենք էլ բարձրացանք նորա հետ և կոչուած ենք լինել գթոտ և հեզ, համբերող, պէտք է շնորհենք միմեանց, պէտք է մերկանանք մեզնից հին մարդու կեանքը, խաբէութեան ցանկութեամբ ապականուած կեանքը, ի բաց մերժենք գողութիւնը, ստութիւնը, հայհոյութիւնը, դատարկաբանութիւնը, ամենայն տգեղ բան բերանից, զազրութիւն, խեղկատակութիւն և այն արատները, որ չպէտք է անուանուին անգամ, որովհետև այժմ պէտք է ապրենք սրբերի նորոգ կեանքով, Աստուծոյ լուսով լուսաւորուած 2)։ Ինչպէս տեսնում էք, այս բոլորը խիստ պարզ, նոյն իսկ ռամկական խրատներ

1) Եփ. Դ. 10։

2) Առ հասարակ Դ. և Ե. գլուխներ։

*են, բայց և այնպէս բարոյականութեան բարձր պա-
տուէրներ են։ Ձեզ հրաւիրում են ոչ թէ մարտիրոսա-
կան չարչարանքով, կամ թէ ճգնաւորի ողջի կեանքով
ապրելու։ Այլ ձեզ կոչում են հասարակ կենաց հա-
մար, որ հասարակ հանգամանքներ ունի։ Միայն թէ
չմոռանաք, որ սիրելի որդի էք Նորա, Ով որ ձեզ վե-
րայ նայում է Իւր աթոռի բարձրութիւնից։ Դուք
պէտք է զսպէք ձեզ գողութիւնից, հայհոյութիւնից,
երիտասարդական ցանկութիւնից, որովհետև ձեր Ա-
ռաջնորդ Քրիստոսը երկինք վերացաւ, իսկ «ամենայն
պոռնիկ կամ պիղծ կամ ագահ որ է կռապաշտ» 1)
ժառանգութիւն չունի Քրիստոսի և Աստուծոյ արքա-
յութեան մէջ. Միևնոյն պարզ անպաճոյճ խրատ ենք
գտնում այսօրուայ սաղմոսների մէջ. «Ո՞վ ելցէ ի
լեառն Տեառն, կամ ո՞վ կացցէ ՚ի տեղւոջ սրբութեան
Նորա»։ 2) Մի՞թէ հպարտ, անմատչելի, կեղծ բարե-
պաշտ, ժամանակաւորապէս բախտաւոր մարդիկ պի-
տի կենան այն տեղ։ Ո՛չ, այլ հասարակ մարդիկ, որոնք
Աստուծոյ ողորմութեամբ կամ իւրեանց համեստ ըն-
թացքով և մաքուր սրտով կատարում են իւրեանց
պարտքը, ուրեմն հեզ, արդար, որոց մէջ չարութիւն
չունեցող, չփչացած՝ մարդիկ։ Ո՞վ կը բարձրանայ Աս-
տուծոյ լեառը կամ ո՞վ կը կենայ Նորա սրբութեան
տեղը. «Որ սուրբ է ձեռօք և ամբիծ սրտիւ, որ ոչ
առ զնանրութիւնս յանձն իւր, և ոչ երդուաւ նեն-
գութեամբ» 3)։*

*Երրորդ՝ պէտք է խօսեմ երկիւղածութեան կամ
սրբազան երկիւղի մասին։ Սիրելի եղբարք, դուք ի՞նչ-
պէս էք ապրում։ Ի՞նչ տեսակ կեանք էք վարում։*

---

1) Եփ. Ե. 5:
2) ԻԴ. 3:
3) Սաղ. ԻԴ. 4:

Աւելի շուտ ի՛նչ էք մտածում, և ի՛նչ խօսում: Նա՛ է ուղղուած ձեր միտքը: Եթէ ձեր կեանքը արդարու-
թիւն է, ապա ուրեմն պատճառ չունիք երկիւղ կրե-
լու, վասն զի այնչափ վեր Համբարձեալը ձեզ պաշտ-
պանում է որպէս թէ սրով, հովանի է ձեզ, որպէս
աչքի բիբ, պահպանում է որպէս Աստուծոյ գանձ,
գրում է ձեր անունը կենաց Գրքի մէջ: Բայց երկնչե-
ցէք և սարսեցէք, եթէ անզգամութեամբ, Աստուծոյ
դէմ էք գնում, եթէ անձնատուր էք ձեր մարմնութիւ-
ններին արհամարհում էք հեզութիւնը ջանասիրութիւնը,
հաւատքը եթէ կուռքի պէս էք պաշտում հպարտու-
թիւնը, կրքերը, զուարճութիւնները, եթէ ոսկի և
չար զգայարանների ջատագով էք հանդիսանում յան-
դգնաբար:

Այո՛, երկնչեցէք և սարսեցէք: Թող անաս-
տուածները դողան աշունքի չորացած տերևի պէս:
Երկնչեցէք, որովհետև ձեր մեղքը հետամուտ կը լինի և
ձեզ կը գտնէ, որովհետև ձեր յաջողութեան արմատը
փտած է, ձեր զօրութիւնն ու գեղեցկութիւնը կը
կորցնէ իւր կենդանութիւնը և կանհետանայ: Երկնչե-
ցէք, որովհետև դուք գրգռել էք Աստծուն ձեր դէմ:
Երկնչեցէք այն աթոռից, որի վերայ բարձր քան միւս
բոլոր զօրութիւնները, թագաւորում է Նա, Որոյ
անուան դէրը ոչ ոք չգիտէ և Որի ձեռքով փակածը
ոչ ոք չի կարող բանալ [1]): Նա ձեզ վերայ նայում է,
Նորա բոցավառ հայեացքը թափանցում է ձեր հոգւոյ
ծածուկ տեղերը, և ամբարշտութիւնը անպատիժ չի
մնայ:

Սարսեցէք. մահը մերձ է, ապա նաև դատաս-
տանն ու յաւիտենականութիւնը: Ձեզ համար համ-
բարձեալ Փրկչի աթոռը աւելի զարհուրելի կլինի,

---

1) Յայտ. Դ. 17, Գ. 7:

քան Սինայի ծխոտ լեռները։ Ինչպէս որ համբարձաւ, Նմանապէս կիջնի Նա դատելու համար, և Նորա ամենակարող վրէժխնդրութիւնը որոտման պէս կը զարհուրեցնէ ապշած լռութիւնը։ Փախստական ամպերի վերայ նստած, ամենաճարակ հրով զինած, մի դէմքով որի առաջ կոչնչանան երկինքն ու երկիրը, Նա խարազանով կը խորտակէ թշնամիներին, որպէս կաւէ ամաններ։ Այն ժամանակ էլ ի՞նչ կօգտէ ձեզ ձեր աշխարհային փափկասիրութիւնը, բոլոր կեղծ հրապուրանքները, զուարճութեանց սրբութիւնները։ Մարսեցէք անզղջներ, խոր թաւալած մեղաւորներ, և դուք, որոնք այդպէսէք ուզում մնալ։ Ձեզ համար Տէր Աստծու Համբարձման մէջ աւելի բան չկայ, քան միայն բարկութիւն և դատապարտութիւն։

Զորորդ՝ ով որ ձեզանից սիրում է արդարութիւն և ողորմութիւն, ով որ Աստծոյ ճանապարհը խոնարհութեամբ գնալով՝ ըստ չափու կարողութեան աշխատում է լինել աւելի ճշմարիտ, սուրբ, բարի, կարող է Յիսուսի Համբարձման յիշատակութեան մէջ գտնել յոյս։ Համբարձումը մեզ համար գրաւական է այն թողութեան, որի համար որ մեռաւ Քրիստոս։ Դուք կարող էք շատ ցած ընկնել, միրտութեան ժամանակ հագած սպիտակ հանդերձներդ կարող էք խիստ աղտոտած ունենալ, բայց եւ այնպէս նաև մեծ յոյս ունենալ. «Թէպէտ և ննջեսջիք ի մէջ վիճակաց, բայց և այնպէս դուք էք որպէս թև աղաւնւոյ արծաթապատ, թիկնամէջք նորա ի գոյն ոսկւոյ» 1)։ Մենք կարող ենք յուսալ, որովհետև Քրիստոսը մեր բարեխօսն է։

Հրէից քահանայապետը, գեղեցիկ և մաքուր լուացած սպիտակ կտաւէ շապիկ հագած, խոյրը գլխին, տարին մի անգամ մտնում էր Սրբութեանց Սրբու-

1) Սաղ. կէ. 14։

թիւնը, խնկամանը ձեռքին, և ցանում էր զուարակի արիւնով Սրբութեանց Սրբութիւնը, բաց անելով նկարակերպ վարագոյրը: Երբ որ այնտեղից դուրս էր գալիս, որպէս զի ժողովուրդը օրհնէ, այն ժամանակ նորա վերայ տեսնում էր կապուտակից, ծիրանուց և կարմրից մանած հոյակապ պատմուճանը, քղանցքի շուրջանակը նռնաձև, իսկ մէջէմէջ ոսկի զանգակներ 1): Այս փառաւոր, խորհրդաւոր հանդէսը լոկ միայն հեռաւոր օրինակ և նշան էր այլ ազատութեան:

Իսկ մեծ Քահանայապետը անարատ կենաց փայլուն հանդերձներով, մեզ համար զոհելով Իւր իսկ արիւնը և իւր աղօթների խունկը, գնաց վերացաւ՝ կապուտակ աստղալից երկինքի միջով՝ Իւր յաւիտենական իշխանութեան աթոռը: Այդ ուրեմն, մենք կարող ենք յուսալ, թէ կը կոչուինք ահեղ դատաստանին: Այն տեղ շրջապատած է զմրուխտի պէս քնքշատեսիլ ծիածանով, և մենք ունինք բարեխօս: Խոնարհութեամբ, բայց աներկիւղ կարող ենք կանգնել այն տեղ, ուր նոյն իսկ քերովբէները ծածկում են իրանց երեսը. Նա մեզ հիւր է: Եւ մեզ հետ կը պատահի նոյնը, ինչ որ պատահեցաւ Յեսու մեծ քահանային, Զաքարիա մարգարէի տեսիլքում, 2) երբ որ կանգնած էր Աստուծոյ առաջ, իսկ սատանան աջ կողմը, որ հակառակ է նորան:

Միթէ Աստուած սիրողին Տէր Աստծու Համբարձումը չի՞ բերում խաղաղութիւն և յոյս, գիտենալով, որ բարեխօս ունինք, որ կարող ենք նորա հանդերձի քղանցքից բռնել, որպէս զի անվտանգ լինի մեր անձը, թէ Նա կարող է սրբել մեզ մեղքերից և Իւր

---

1) Ղեւտ. Դ. 6, 17, ԺԶ. 4. ԻԶ. 31. Եբր. ԻԲ. 31—34:

2) Զաք. Գ:

ոսկետակ հանդերձով՝ ծածկել մեր ամօթոյ մերկու-
թիւնը։ Ո՜վ իմ մանկահասակ եղբարք, եթէ դուք այս
մատուռից դուրս գալուց յետոյ, զուարճաբանու-
թիւններ անելով՝ մոռանաք այն ամէնը, ինչ որ ես
ձեզ քարոզեցի երկնքի պարտականութեան, երկիւղա-
ծութեան, յուսոյ մասին, ինչպէս որ ձեզպէսներին
միշտ պատահում է,—խնդրում եմ Նոյն իսկ փոքրա-
գոյններից, որ գէթ մի բան լաւ տպաւորէք մտքի
մէջ թէ Քրիստոս, ձեր Թագաւորը, ձեր Փրկիչը, ձեր
Քահանայապետը, որ ձեր բնութիւնն ընդունեց, որ
գիտէ ձեր փորձանքները, որ տրտմում է ձեր մեղքերի
համար, և կարդում է ձեր սրտերում—յաւիտեանս
կենդանի է։ Նա երկնքից սիրով և յուսով Նայում է
ձեզ վերայ, ձեզ հրաւիրում է դէպի Ինքը, ձեզ պաշտ-
պանում է խաբուսիկ աշխարհի մոլորեցուցիչ հրապու-
րանքներից, տպանող յուսահատութիւնից, կորստաբեր
անէծքից։ Նոյն իսկ այս վայրկեանին։ Նա սիրով և
վշտացած քննում է ձեր սրտի ծածուկ խորհուրդները։
Դուք կարծում էք, թէ կարո՞ղ էք այդ խորհուրդները
ծածկել, եթէ ամօթալի և մեղանչական են։ Ո՛չ, այն
ամպը, որ Նորան ծածկեց ձեզանից,—ամպ չէ Նորա
համար։ Դուք աղօթեցէք, որ այն չլինի ամպ և մեզ
համար, և ձեզ համար։ Այն ժամանակ ձեր կեանքը՝
Նոր կեանք կը լինի, լուսաւորած կը լինի երկնային
լուսով,

## Ժ.

# Ո՞Վ Է ՄԱՐԴԸ.

> «Ո՞վ է մարդ՝ զի յիշես Դու զնա, կամ որդի մարդոյ, թէ այց ինչ առնիցես Դու նմա»։
>
> Սաղ. Ը. Ե.

Անցեալ տարի ձմեռնից շատերը տեսան մեծ նկարչի պատկերը, որ պատկերացնում է Դաւիթ արքային՝ նստած իւր պալատի տանիքի վերայ ամառուան արեգական վերջին ճառագայթների ժամանակ։ Առաջուայ գեղեցիկ վարդագոյն դէմքը ծերացել է, վիշտը խոր նստել է երեսի վերայ, փայլուն խոպոպիկները ալեւորուել են, հոգսերը ճակատի վերայ կնճիռներ դրոշմել։ Թագը իւր գլխից հանել է իշխանութեան փառաւոր նշանը, որ անփոյթ կերպով ոտքերի առաջ է ձգել։ Փղշտացիներուն հարուած տուած ձեռքը յոգնած կռթնել է տանիքի որմի վերայ։ Հեռու երկինքի խոր կապուտակ խաղաղութեան մէջ թռչում են աղաւնիները։ Արքան տխրած աչքով հետեւում է նոցա, կարծես թէ ինքն իրան ասելով. Ո՜հ, եթէ աղաւնու թեւեր ունենայի, որ վեր թռչէի և հանգստանայի։

Կամ կարելի է թէ նորա յիշողութեան մէջ կենդանանում է իւր արատաւորած, մեղաւոր կեանքը և ոգևորուած մարգարէանում է։ «Թէպէտ և ննջեսջիք ի մէջ վիճակաց, թեւք աղաւնւոյ արծաթապատ, և թիկ-

նամէջք նորա ի գոյն ոսկւոյ» 1)։ Նման երեկային, բայց աւելի զուարթ յուսադրական հոգւով, Դաւիթը զար-ձեալ նստած էր իւր պալատի տանիքի վերայ։ Արե-գակն արդէն մայր էր մտել, և վերջին ճառագայթ-ները էլ չէին լուսաւորում ամրացած Երուսաղէմի որմի ժանիքները և շրջապատող լեռների ձիթենեաց մոխրագոյն ծառերը։ Հորիզոնի վերայ երեւեցան լու-սինը, ապա և այնչափ անհամար աստղեր, որ ամբողջ երկինքը ճրագներով լուսաւորուած է թւում։ Ինչ էր զգում Դաւիթը, այս վսեմ տեսարանին նայելիս։ Միթէ այնպէս ճնշուած էր զգում իւր անձը, ինչպէս որ այժմեան բանաստեղծը, որ տեսնելով աստղալից երկինքը, բացականչում է.

«Աներկիւղ, անգութ, անթիւ աչեր,
Ցուրտ քող արձակող. բայց այդ բոցը
Տապում, այրում է մարդու սիրտը,
Թէ, դու ոչինչ ես հէք արարած»։

Պատասխանը սաղմոսն է տալիս։ Ոգևորութեան հուրը Դաւիթի մէջ բռնկեց այսպիսի բորբոքած բառե-րով «Տէր Տէր մեր, զի՞ սքանչելի է անուն Քո յամե-նայն երկրի. համբարձաւ մեծ վայելչութիւն Քո ի վե-րայ քան զերկինս։ Յորժամ տեսից զերկինս, զգործս մատանց Քոց, զլուսին և զաստեղս զորս Դու հաս-տատեցեր. ո՞վ է մարդ՝ զի յիշես Դու զնա, կամ որդի մարդոյ, թէ այց ինչ արասցես Դու նմա» 2)։ Եւ իս-կոյն պատասխանը տալիս է. Ով է Նա՞, Նա մի էակ է, որ չպէտք է վախենայ անհունութիւնից, այլ ըմբռնէ անհնութիւնը իւր մեծ կոչմամբ, որ չպէտք է ճնշուի անբան արարածի անհեզ հոյակապութիւնից, այլ լինի վերան իշխան և թագաւոր։ Մարդուն վիճակուած է

1) Սաղ. Կէ. 14։
2) Սաղ. Ը.

ոչ թէ պաշտել երկնային լուսատու մարմինները, այլ չափել և իմանալ անոնց կարգն ու կազմութիւնը։ «Փոքր ինչ խոնարհ արարեր զնա քան զհրեշտակս Քո, փառօք և պատուով պսակեցեր զնա և կացուցեր զնա ի վերայ ամենայն ձեռակերտաց Քոց. զամենայն ինչ հնազանդ արարեր ի ներքոյ ոտից նորա»։

Դաւթի միւս սաղմոսը, որ գրուած է ոչ թէ հանդարտ խորհրդածութեան ժամերին, այլ յաղթութիւնից կշտացած րոպէներին բոլորովին այլ պատասխան է տալիս միևնոյն հարցմունքին. «Ո՞ է մարդ։ Մարդ նանրութեան նմանեաց, և աւուրք նորա որպէս հովանի անցին» 1)։ Այս բառերը աւելի նման են զղջացած, մեռանող մեղաւորի հառաչանքին, քան յաղթութիւն տարած արքայի երգին։ Ապա, կարծես թէ ցանկալով ազատուել ամենայն շրջապատող չարաթոյն թշնամիներից ու ամբարիշտներից, նա գոչում է, «Տէր, խոնարհեցո զերկինս և էջ, մերձեա ի լերինս՝ և ծխեսցին։ Փայլատակեա, զփայլատակունս Քո և խռովեա զնոսա, առաքեա զնետս Քո և ցրուեա զնոսա»։ Միևնոյնը պատահեցաւ, երբ որ Յոբը նոյն հարցմունքն արեց։

Ամբողջ Ս. Գիրքը լի է այսպէս ծայրայեղ հակապատկերներով։ Մարդկային բնութեան մէջ տեսնում ենք սարսափելի երկուութիւն. նա ստեղծուած է հողից, բայց ըստ նմանութեան Աստուծոյ. Ամենաբարձրեալի զաւակ է—բայց որդնի կերակուր։ Նա խմում է անօրէնութեան աղբիւրից, իսկ միևնոյն ժամանակ Ամենակարողը տալիս է նորան ոգևորութիւն և գիտութիւն. որդն և ոչնչութիւն—բայց միևնոյն ժամանակ լուսոյ զաւակներին հաւասար է։ Կամ հրեշտակի հովանու ներքոյ է կամ իւր սրտում նստած է օձ. Նա

---

1) Սաղ. ՃԽԳ. 3:

կարող է բարձրանալ մինչև երկնային բարձրութիւն-
ները և ընկնել դժոխքի անդունդները։

Միևնոյն հակադրութիւն է կրկնվում հին և նոր գրականութեան մէջ։ «Մարդս—երկրաւոր աստուած է», ասում է հռոմայեցի հռետորը։ «Մարդս ստուեր է, երազ է», ասում են յունաց ողբերգակները։ Մեծ Շէքսպիրն ասում է. «Ինչ բարդ արարած է—մարդս։ Ինչպէս ազնիւ է նրա միտքը։ Ինչպէս անհուն են նորա ընդունակութիւնները։ Ինչպէս արտայայտիչ են և զարմանալու արժանի են նորա ձևերն ու շարժումները։ Գործով նա նման է հրեշտակներին, հանճարով—Աստծուն»։ Բայց ահա միւսի դատը դատավճիռը. «Ինչ էլ ասէք չասէք, բայց մեր ցեղը մանր ու չնչին է»։

Մենք էլ տեսնում ենք տխուր հակասութիւնները. մի կողմից մարդու վեհութիւնն է մեզ ապշեցնում, միւս կողմից մենք կարմրում ենք նորա ապականութեան պատճառով։ Մենք տեսնում ենք, որ նա իւր գիտութիւններով իշխան է հանդիսանում, իւր նաւերի սպիտակ թևերի մէջ կապելով ըմբոստ հողմերը, իւր արծաթափայլ փարոսները վառելով ալիքներ ջարդող ժայռերի գագաթներին, որպէս զի ովկիանին լոյս տայ և առևտրական ճանապարհը բանուկ դարձնէ։ Այս իշխանը լծի տակ դրեց մահաբեր ելեկտրական լոյսը և դարձրեց իւր անվնաս ծառայ։ Նա այդ լուսով զօտևորեց երկրագունդը, հաղորդակցում է մրրկայոյզ ծովի տակով, հրամայեց ստրկացած շոգուն, որ մարդ և ապրանք կրէ՝ աւազային անապատների և երկաթի սարերի ճանապարհները հորդելով։

Այն ինչ մենք տեսնում ենք մի և նոյն մարդուն՝ վերջին անբան կենդանուց էլ վատթարացած, որով թափուր է մնում իւր ազնիւ ծագման փառքից։ Նա միակ արարած է, որ հակառակ է իւր Արարչի խորհուրդներին և որ աբատ է բերում նորա մեծութեան։

Նա ամէնից ցած է, որովհետև ամէնից աւելի մեղաւոր է, իսկ աւելի մեղաւոր է, որովհետև աւելի պատասխանատու է, քան Աստուծոյ միւս արարածները։ Նայելով ամբողջ արարչութեան հրաշալիքների վերայ, ուր որ նա կարգուած է տէր և թագաւոր, ապա և նորա վերայ, որ այդ բոլորի իշխան է հանդիսանում, մենք ճիշդ այն զգացում ենք ստանում, իբրև թէ բուրգերի մէջ մի զարդարանկար միջանցքից անցնէինք միւսը, մի մարմարեայ սենեակից մտնէինք միւսը, և վերջապէս այդ լաբիրինթոսի վերջին մութը սենեակում գտնէինք լոկ մի անբան արարածի մումիա, կամ մի անանուն և անյայտ թագաւորից մնացած լոկ մի բուռ հող և աճիւն։

Երբ մեր շուրջը նայում ենք, աւա՜ղ, որքան քիչ ենք տեսնում այնպիսի կեանք, որ արժանի լինի այն էակի մեծութեան և անմահութեան, որին որ Ինքը Տէր Աստուածը պսակեց պատուի պսակով։ Մեր կենաց մէջ քիչ է պատահում վեհութիւն, հերոսութիւն, արժանապատուութիւն, քիչ է և ողորմածութիւնը։ Մեր տեսածը միայն հասարակ, սովորական, պայմանաւոր հանգամանքներ են․ նպատակները մանր, շահերը մանր, սխալները մանր, անձնաւորութիւնները մանրացած, առաքինութիւնները հետզհետէ նուազող։ Եւ այս համայն ստոր մակերևոյթի վերայ իշխում են նոյնպէս մանր արատներ։ Այժմեան դարը խոշոր յանցաւորութիւնների ասպարէզ չէ։ Այս դարը մանր խարդախութիւնների դար է, այնքան երկչոտներ ունի, որ ձուլուած անհատականութիւններ չեն երևում, այնքան գձուձ է հաշիւներով, որ մտաց յափշտակութեան համար տեղիք չկայ։ Սպանութիւններ քիչ են, բայց շատ են նենգութիւններ․ գողութիւն քիչ է, բայց շատ է ժլատութիւն․ ճշմարիտ ողորմասիրութիւնը քիչ է, բայց շատ է մարդասիրութեան ցոյց․ քիչ է յայտնի ստութիւնը,

իսկ մանր խաբեբայութիւնների ջրհեղեղ է. քիչ է բա-
ցարձակ ստելութիւնը, շատ է գաղտնի բամբա-
սանքը: Վա՜յ մեզ, մեր գլխից պսակը ընկել է, որովհե-
տեւ մեղանչել ենք: Ո՜հ, մեզ հարկաւոր է անակնունելի
կայծակ, որ կիզէր այն չնչին շահերի շղթաները, որոնք
մեր հոգին ջլատում են. մեզ հարկաւոր է սրտմտող
մարգարէի բերան, աներկիւղ ձայնը, որ հանգստեան
քնից զարթեցնէ մեր մեղկացած բնութիւնը: Աւելի լաւ
կը լինի, եթէ Աստուծոյ ձեռքով սատանի ապակեայ
ծովը, ուր որ մենք այնպիսի զգուշութեամբ ման ենք
գալիս, և բորբոքուէր ստորերկրեայ կրակը. աւելի լաւ
է, եթէ բացուէին երկնային պատուհանները և ջրերի
սահանքները ահագին հեղեղումներով թափուէին. եթէ
Աստուած մեր մանր անփառութեանց շէնքը փշրէր և
հողի հետ հաւասարեցնէր, աւելի լաւ է, եթէ Նա
մեր խարիսխը արձակէր, որ մենք ձգել ենք այնպէս
պղտորուած ծովի մէջ, ուր որ վաղուց ևս չի ցոլա-
նում ջրերի վճիտ կապոյտը և Աստուծոյ պատկերը,
եթէ թափառել տար մեզ մոլի ալիքների վերայ և
կրել տար Իւր առաքած փոթորիկները, որպէս զի գէթ
այն լաւագոյն մասը երեւան գար, որ տակաւին մնացել
է մեր յուսահատ հոգու մէջ: Այո՛, աւելի լաւ է,
քան թողնուլ, որ այդ հոգիները կործանուին դատարկ
դիւրակեցութեան մէջ և իրանց շնորհած աստուածայ-
ին, արքական, վսեմ ձիրքերը մաշեն և գործ դնեն
դրամ վաստակելու և փչացնելու, նոյնը մեծամեծ
տոկոսներով շահեցնելու, գծծութեամբ ու օրերի անու-
նով ամբարները դիզելու և աշխարհը ամենից աւելի
գերագոյն բան համարելու համար:

Ահա այսպիսի հակապատկերներ են՝ մարդկային
ազնիւ ժառանգութեան հոյակապութիւնը և յաճա-
խակի ստոր կենցաղավարութիւնը: Այդ երկուսի միա-
ւորութիւնը գաղտնիք չէ: Մի կողմից մենք մարդու

վերայ նայում ենք, թէ ի՛նչ կարող է նա լինել, միւս կողմից՝ թէ ի՛նչ է նա իսկութեամբ։ Աւելի բարւոք և խելօքութիւն է, սիրելիք, եթէ մենք մտածենք առաւելապէս այն վեհութիւնը, որի՛ն որ մենք կարող էինք հասնել, քան մեր ներկայ անկման վիճակը մանր պրպտենք։ Աւելի լաւ է յիշել այն փայլուն ճանապարհը, ուր որ մենք կարող էինք հասնել, այն աստուածային սեղանը, որից վեր ծխող բոցը մեր հոգու մէջ է լուսաւորվում, քան մեր անձը ոչնչութիւն համարել, քան կարծել, թէ ուրիշ ոչինչ ենք, բայց եթէ անպէտ, կորած մարդ։ Աւելի լաւ է ոգևորուիլ, քան յուսահատուիլ։ Աւելի լաւ է Դաւթի համարձակութեամբ, աչքերը բարձրացնել աստղերով ծածկուած երկինքին և հաւատալ, թէ մարդոյ նմանութիւնը կարելի է գտնել նաև Ամենակալի աթոռի վերայ, քան թէ ցաւագար, յուսահատած Յոբի պէս համարել մեր անձը աստուածային հեգնութեան չնչին խաղալիկ և բռնաւոր հրամանի աւելի ստրուկ։ Ինչպէս որ են մեր խորհուրդները, այնպէս ենք և մենք։ Եթէ մեր մտքերը դարձրած են Քրիստոսի երանութեան և անմահութեան կողմը, մեզ համար յոյս կայ, թէ մենք երկնքում կը մտնենք սրտով և մտքով։ Օ, դուք ձեր մէջ յարգեցէք և բարգաւաճեցէք այն մտածութիւնը, թէ դուք աստուածային ծագում ունիք, թէ վսեմ վիճակ է ձեզ վիճակուած, որ անցնէք գերեզմանի և մահուան դռների միջով և հասնէք մինչև նորա աթոռը և աներկիւղ կանգնէք նորա առաջ։ Այս գիտակցութիւնը չի ծնանի ձեր մէջ հպարտութիւն, այլ ընդհակառակ այդ սխտը կը սպանէ և ինքնահաւանութիւնը կը դարձնէ աստուածային խոնարհութիւն, այդ գիտակցութեամբ հնարաւոր կը դառնայ սրտի մաքրութիւնը։ Կարդացէք ձեր հոգու հրովարտակների մէջ ձեր փառաւոր ծագման ապացոյցները, այն ժամա-

նակ նորա իրաւունքը կը բարձրանայ երկրաւոր չահե-րից վեր։ Դուք արքայորդիք, աներկիւղ պնդեցէք ձեր մեծատոհմութեան արտօնութիւնը, պնդեցէք, որ պաշտպանուիք ամէն տեսակ թուլութիւնից, ստորու-թիւնից, գայթակղութիւնից, մինչև որ ձեր կենաց մէջ դէթ փոքր ինչ ծագի այն լոյսը, որ երևում է Փրկչի օրինակում, և այնպէս ճառագայթէք, ինչպէս որ Մովսիսի երեսը փայլում էր աստուածային ճաճանչա-ւոր փայլով, երբ որ նա իջաւ ծխող լեռնից, ուր որ Հայր Աստծուն արժանացել էր տեսնելու։

Բայց կան մի քանի թշնամիներ, որ կարող են յարձակուել մեզ վերայ այժմ կամ յետոյ՝ մեր կենաց զանազան դէպքերում։

Առաջինը նոցա մէջ—հոգսեր են։

Մեր վանքերից մէկի մէջ կարելի է տեսնել առանց անուան և թուականի մի գերեզման, ուր դամբանական տախտակի վերայ փորագրուած է միայն մի բառ՝ miserimus—«ամենաթշուառ» և ուրիշ ոչինչ։ Մի մարդ իրա համար ընտրել է այս մակագրութիւնը, ոչ մի ուրիշ յիշատակ չթողնելով իւր մասին։ Այդ գիրը, կարծես թէ մի խուլ բողոք է երկնքի դէմ, մի լուռ տըր-տունջ է Աստուածային սիրոյ դէմ, այդ հանդարտ վանքի գաւթի մէջ։ Արեգական ճառագայթները անոր վերայ ընկնում են, մանկանց աշխոյժ ձայնը լսվում է շուրջը, անփոյթ անցորդները կանգ են առնում սոս-կալի տապանագրի առաջ։

Իսկ այդ անցորդներից քանի՛ մարդ կարող էր օգտուել այդ վերնագրից, որ մեր հոգսերով լի կենաց վախճանին խիստ և խիստ պատշաճում է, որովհետև այդպիսի կեանքը—չատերի հանապազօրեայ կեանք է։ Մինչև անգամ ուրախ Եպիկուրեանը, հռովմէական քնարերգուն երգել է, թէ «ցաւագար հոգսը բարձրա-ցել է պղնձէ ցռկանաւը և հեծնութեամբ նստել է

յաղթութիւններով պսակուած դիւցազնի յետեւ։

Բիւրաւոր ժամանակակիցներ պատմում են ձեզ իրանց հոգսերը, որ արեւի ծագմանից մինչեւ մայր մտնելը ամէն կողմից խռնուելով նոցա ներսում են եւ տառապեալների կրծքի վերայ ծանր նստում են հոգե-վարի ժամանակ։

Հոգսեր ապրուստի, առողջութեան, բարեկեցութեան, եկամուտի (ամէնից աւելի անհանգստացնողի) մասին, հոգսեր զաւակների, ընտանիքի մասին, ամենաչնչին հոգսեր, թէ արդեօք մեր վրայ մարդիկ ինչ են մտածում եւ խօսում, հոգսեր անցեալ տառապանքների, ներկայ տագնապների, ապագայ անորոշութեան մասին—բոլորն ի միասին մի անկերպարան խառնուրդ, մի աւէծուփ ծով այնպիսիների համար, որոնք որ այդ ճիւաղներին անձնատուր են լինում։

Հոգսերի պատճառով առողջ կեանքը լցվում է հիւանդութեան ուրուականներով, կեանքի անոյշ մեղեդիներից անոնք կազմում են խութնաձայներ, մարդու ճակատի վերայ նստեցնում են կնճիռներ։ Շատերի գլխից հոգսերը խլել են իշխանական թագ, որպէս զի փոխարէնը գնեն ստրկութեան անարգ նշան։ Անոնք քանի՜ մարդու կեանքը ցամաքեցրել են, քանիսի՜ մէջ պղտորել են պայծառ մտածմունքը, քանիսի՜ն խոտորեցրել են մաքուր վարքից, հաստատութիւնից, հաւատարմութիւնից, քաջութիւնից, մեծահոգութիւնից, ամենայն բանից, ինչ որ ազնուութեան հաւատք է կազմում։ Բայց մենք կարող ենք այս բոլորը մեզ վերադարձնել եւ կրկին ազատ մարդ դառնալ։ Հարկաւոր է միայն, որ հոգսերը մեզանից վանենք, քիչ կարեւորութիւն տանք երկրաւոր բաներին, սովորենք արհամարհել աչքի մէջ թոզ փչելը, որ մեզ միշտ նուաստացնում է։

Երկրաւոր հոգսերէ լճացած ճահիճները աւելի մեծագոյն անէծք են մարդու համար, քան վարակիչ ախտը, որով բռնվում է պաշարուած քաղաքը։

Ո՜հ, եթէ մենք ամէնքս կարողանայինք այդ սև մաղձը հանել մեր հոգուց։ Այն ժամանակ, եթէ հոգսերը այցելէին մեզ, մենք կարող էինք ապաւինել Նորան, որ ամէն մեր ցաւերի ծանրութիւնը Իւր վրայ է առել. և իւրաքանչիւր անգամ, երբ որ մեզ դժ-բախտութիւն վիճակուէր, մենք տխրած, բայց անձ-նավստահ կասէինք. «Մի անգամ էլ կը տանենք կե-նաց բեռը, իսկ ապա ինչ որ լինելու է, թող լինի»։

Եւ ինչո՞ւ հոգանք։ Ինչո՞ւ վշտանանք, երբ որ արեգակը փայլում է մեր գլխին։ Անցեալը, ապագան մեր ձեռքում չեն և անոնց հոգսը չենք ուզում ունե-նալ. միայն ներկան կարող ենք շատ թէ քիչ տնօրի-նել, իսկ եթէ այդ տեղ փորձանքներ հանդիպին— Աստուած մեզ ույժ կուտայ, որ դիմանանք։

Երկրորդ՝ մի ուրիշ թշնամի էլ, որից որ ձեզ զգուշացնել եմ ուզում, թշնամի, որ պակաս ձանձ-րալի չէ, քան հոգսը,—աշխարհական կեանքն է։

Աշխարհի կեանք ասելով՝ ես չեմ ակնարկում միայն ձիարշաւ, թատրոն, պարահանդէս։ Աշխարհա-կան եմ կոչում այն կեանքը, որ փոյթ ունի միայն ժամանակաւորի և անցողականի, և ոչ թէ յաւիտենա-կանի մասին։ Այս մեղքը գործում են ոչ միայն մաք-սաւորները, այլ շատ խորամանկ փարիսեցիները։ Խիստ մեծ վտանգ կայ այն կեանքի մէջ, որով ապրում են հազարաւոր մարդիկ։ Նոցա մտածմունքը միայն այն է, որ մի կերպ բաւական դրամ յետ ձգեն, որպէս զի վաղ թէ ուշ դրամագլուխ կազմեն և զաւակներին թողնեն։ Բացի հարստութիւն ունենալուց, նոքա ու-րիշ մտածելու բան չունին։ Նոցա համար հասարա-կաց շահերը այնքան օտար բան են, ինչպէս և մար-

դասիրութիւնը։ Նոքա զբաղուած են միայն իրանց անձնական յարմարութիւններով, դիւրութիւններով, շահերով, պատիւներով։

Ո՜հ, ինչ դատարկութիւն է տիրում այդպիսի կեանք վարող մարդու սրտի մէջ։ Ջահիլ սրտին վայել յափշտակութիւնը իսպառ ցնդվում է այդ տեղից։ Նորա ազատասիրութիւնը, վայելչականութիւնը, ազնուութիւնը, այն ամէն հրապուրիչ կողմերը, ինչ որ իւր մէջ եղել է, այն ամենայն անարուեստ պարզութիւնը, քնքշութիւնը, իւր գոյութեան ապետական մասը անյայտանում է և տեղը բռնում է հասարակ ինքնահաւանութիւնը։ Նա իւր թեթևամիտ կեանքով այնպիսի թշուառութիւններ է ստեղծում, որոնք, ինչպէս որ մէկը սուր կերպով նկատել է, «քիչ են բարկացնում, բայց աւելի սպանում են, որոնք արիւն են ծծում՝ առանց մի կաթիլ թափել տալու, և սիրտը մերկացնում են մինչև ոսկորները՝ առանց տանջուելու կամ խղճահարուելու»։

Ժանգն ու փտութիւնը ուտում են հոգու այն չնչին մասը, որ տակաւին ողջ է մնացել, իսկ անհոգի կեղծ քաղաքավարութեան թանձրութիւնը սփռուած է ամենօրեայ կենաց վերայ։ Մարդիկ սկսում են նմանիլ հին ժամանակի սկիւթացւոց այն իշխանի դիակին, որին փառաւոր կառքով պտտեցնում էին տնէտուն, որպէս զի հանգուցեալի բարեկամները փառաւոր խնջոյք կազմէյին նորա անշնչացած աչքերի առաջ։ Այս աշխարհի մարդիկ էլ հարուստ են, ի պատիւ դոցա խնջոյքներ են թնդում, դոքա ունենում են դիւրութիւններ, յաջողութիւններ, պատիւներ, — բայց դոքա մեռեալներ են։

Եղբարք սիրելիք, որքան էլ որ աղքատ և աննշան լինիմ, բայց, փառք Աստուծոյ, չեմ նախանձում ձեզանից ոչ աւելի հարուստին, և ոչ աւելի մեծատունին։

Հարստութիւնն ու մեծութիւնը կարող են լինել և՛
ըղձանչելի պարգև, և՛ աղէտալի անէծք։ Եթէ այդպիսի
բաներով պիտի սահմանափակէք ձեր կենաց հորիզոնը,
և կենաց ուրախութիւնը փնտռէք աշխարհի գայթակ-
ղիչ հեղեղատի մէջ, եթէ հարստութեան և մեծութեան
պատճառով դուք պիտի վարէք անգործ և նորաձի-
ութեան կեանք, փակուելով դատարկ զուարճու-
թեանց և անյագ գրգռութեանց նեղ շրջանում, միայն
հագուստի, կառքերի, ծառաների և այլ այսպիսի
մանր հոգսերի մէջ լինելով, — ես իմ կողմից աւելի
յօժար եմ՝ իմ քրտինքով աշխատող՝ յետին մշակ
քրիստոնեայ լինել, կամ փոթորկող ծովից չնչին ապ-
րուստ վաստակող՝ աղքատ և ոգեսպառ ձկնորս լի-
նել, որի մարմինը նաւակի հետ ի միասին խաղալիքի
պէս քարափին է դուրս ձգվում ալիքներով, քան թէ
ձեր տեղը լինել։

Այո՛, կարծում եմ, որ նոյն իսկ երկրաւոր կեան-
քում այսպէս աւելի բախտաւոր կը լինիմ ձեզա-
նից, որ ժամանակը վատնում էք ուտելու, խմելու,
հագնելու, որսալու, և ոչինչ չանելու մէջ։ Ես գոնէ
կունենայի պայծառ առողջ աչքեր, ուժեղ ձեռքեր,
համարձակ անկախութիւն, ազնիւ, անմեղ, աներկիւղ
ճակատ, մի օրհնեալ օջախ, որ չի ճնշվում անօգուտ
արտաքին արարողութիւններով, մի պարզ, իմաստա-
կանութիւններով և յափրանքով չփչացած՝ բայց ար-
դարութեան և խաղաղութեան աղբիւր եղած սիրտ։
Իսկ եթէ այս բաների վերայ աւելացնենք նաև յոյ-
սերը, որ ընդ միշտ աշխարհի կեանքից վերացել են։
Այդ բարիքներից փոքրագոյնը չէի տալ ձեր ամենա-
փայլուն թագի և ամենահրաշալի ամրոցի փոխարէն։

Ես ասացի, ինչպէս արդի վսեմախոհ մատենա-
գիրներից մէկը. «Առաջնորդեցէք ինձ, առաջնորդեցէք,
իմ յոյսեր։ Հաւատի եմ, որ դուք ճշմարիտ էք։

Փոյթ չէ, եթէ անկատար մնաք և մի առ մի ցրուէք, ցնդուէք և անյայտանաք, միայն թէ միշտ Նոր ձևերով պէսպիսանաք: Ես ձեր սուրբ պատրանքին պիտի հե-տևիմ, մինչև որ վերջապէս հասցնէք ինձ իմ երկնային Հօր ոտաց առաջ, ուր որ ձեզ ամէնքդ կը գտնեմ թևերը ծալած, գեղեցիկ զարդ կազմելով այն շափի-ղայի մթութեան մէջ, ուր որ կանգնած է Նորա ա-թոռը—մեր տունը»:

Երրորդ՝ ես թերի կատարած կլինիմ իմ պարտա-կանութիւնն առ ձեզ, եթէ կարճ խօսքով ձեզ չզգու-շացնէի ձեր անմահ բնութեան մի թշնամուց ևս, որ կարելի է թէ ամենաոխերիմն է և ամենամահացուն— այն է վատ կրքերից:

Հարկ չկայ, որ սահմանեմ, թէ ինչ են այդ բա-ները. այդպիսի մոլութիւններին անձնատուր լինել՝ նշանակում է յաղթող հանդիսացնել ձեր բնութեան ցած, աւելի ստորաքարշ, անասնական մասը. թողնել, որ այդ բանը կառավարէ հոգու սայլը, որու սայլա-պան է կարգուած բանականութիւնն ու խիղճը՝ Աստծուց:

Եղբարք սիրելիք, հոգսը կարող է քարշել մեզ դէպի գետինը, աշխարհի կեանքը կարող է կապել մեզ իւր «չաղ դմակին», իսկ հեշտասիրութիւնն աղտէն ստորացնում է մեր հոգին, կտրատում է մեր ազա-տութեան թևերը և ապականում է ցեխի պէս: Բայց հաւատացէք ինձ (խնդրեմ լաւ ականջ դրէք ասածիս), Աստուած այնպէս է անօրինել, որ մարդ երբէք չի դժուարանայ հէնց միայն իւր պարզ արիասրտութեամբ զսպել իւր մոլի կրքերը: Եթէ դուք մտքում պահէք մօր խրատները, եթէ խղճահարուելով և զզուելով երեսը դարձնէք աղտեղի խօսակցութիւնից, եթէ սար-սափէք այն յուսահատիչ մտածութիւնից, թէ դուք կարողէք ընկնել և ստորացնել ձեր մահկանացու մար-

մինը, որ Հոգայն սրբոյ տաճար պիտի լինի,—դուք դժուարութիւն չէք ունենայ մաքուր ամբիծ հոգով ապրելու, անցնելով երջանիկ մանկութիւնից ազնուական պատանեկութեան, պատանեկութիւնից՝ աստուածանման չափահասութեան:

Դուք ի հարկէ կարող էք այնպէս խաղաղ սրտով ապրել, որ չհալածուէք չար մտքերից, որ ձեր ականջին չհասնի գայթակղիչի թեւերի չարագուշակ թափթափը: Բայց չեմ ժխտում, թէ ով որ չի կարողացել ընդդիմանալ իւր մոլեկան կրքերի հետզհետէ աճման և զարգացման, շատ պիտի դժուարանայ իւր անմահական անմեղութեան կորուսած գանձը՝ վերստին ստանալ: Այս բանի համար հարկաւոր է մաքառման և արթնութեան մի՝ ամբողջ կեանք: Եւ եթէ դուք չէք ուզում կորչիլ այս և հանդերձեալ կենաց մէջ, դուք այլ ելք չունիք, բայց եթէ հանդէս դուրս գալ այդ պատերազմը պատերազմելու: Ուրեմն, յանուն Աստուծոյ, արիաբար եղէք. Աստուած, Փրկիչը և Սուրբ Հոգին ձեզ այդ գործում զօրաւիգն կը լինին, Աստուած չի զլանայ շնորհել Իւր ամենակարող զօրութիւնը՝ ձեր հոգին փրկելու համար: Ապա թէ ոչ, հոգին կը կորչի այն մեծատարածապ ճանապարհում, ուր որ շատ թշուառներ մանկական միամտութեամբ են մտնում գործում, այն ճանապարհում, որ տանում է դէպի դռները, որոնց ճակատին գրած է. «Էլ ոչ մի յոյս չունենաք, ներս եկողներդ» *):

Ուրեմն, ո՞վ է մարդ: Ճիշտ պատասխանն այս է, «Փոքր ինչ խոնարհ, քան փառքով և պատուով պսակած Աստուած».—և միթէ այս չէ՞ր Դաւթի մտքում

---

*) Դանթէի Դժոխքի դրան ճակատի վերնագիր: Հ. Ա. Ղազիկեանը այսպէս է թարգմանել. «Թողէք ամէն յոյս, դուք որ կը մտնէք»:

յղացած պատասխանը, երբ որ Նա նայում էր աստ-
ղերով լուսաւորած երկնքին։ 1000 տարի անցնելուց
յետոյ, մի և նոյն պատասխան, բայց աւելի վստահ,
աւելի բարձրաձայն, աւելի հանդիսաւոր կերպով և
անմահական բերկրութեամբ տրուեցաւ խոնարհ հո-
վիւներին, որոնք հօտեր էին պահպանում նոյնպէս
աստղերով ծածկուած երկնքի տակ։ Հրեշտակների
ձայնը աւետեց նոցա, թէ ծնուել է Աստուածամարդը։

Յիրաւի, եթէ դուք ուզում էք տեսնել մարդու
կատարելութիւնը, մարդու իդէալը—նայեցէք Նորա
վերայ։ Հոգսեր չէին խռովում Նորան, որովհետև
Գառը ի մանկութենէ ապրում էր Իւր Հօր սիրոյ կա-
նաչ արօտատեղիներում և հանդարտ ջրերի մօտ։
Աշխարհի կեանքը չէ ապականել Նորան, որովհետև Նա
արհամարհեց աշխարհի թագաւորութիւններն ու անոնց
փայլը, երբ անոնք Նորա ոտքի առաջն էին ընկած։
Կիրքը երբէք չի խռովել Նորան, որովհետև այդ ախտը
միայն ցած և անզուսպ հոգւոյ մէջ է բոյն դնում։ Եւ
թէպէտ Ինքը անձամբ փորձութիւններից չէր յաղթ-
վում, Նա տեսել է այդ չարիքը ուրիշների մէջ և ցա-
ւել է նոցա մասին աստուածային կարեկցութեամբ։
Հոգսերով վաստակեալներին և բեռնաւորեալներին
Նա ասում էր. «Եկայք առ իս և ես հանգուցից զձեզ»[1]),
իսկ աշխարհի սիրողներին—«Մի՛ գանձէք ձեզ զգանձս
յերկրի, ուր ցեց և ուտիճ ապականեն, և ուր գողք
ական հատանեն և գողանան։ Այլ գանձեցէք ձեզ
գանձս յերկինս, ուր ոչ ցեց և ուտիճ ապականեն, և
ոչ գողք ական հատանեն և գողանան»[2])։ Ընկած
փչացած, արատաւորած կնկան ասաց Նա. «Եւ ոչ ես
դատապարտեմ զքեզ, երթ յայսմ հետէ մի՛ մեղան-

---

1) Մատ. ԺԱ. 28:
2) » Զ. 19:

չեր» [1]): Նա բժշկում էր մեղքի և ամօթի հետքերը նոցա երեսի վերայ: Նա հալածում էր դևերին, որոնց հոգւոյն` ու ցանկութիւնները բոյն են դրել մարդկանց սրտերում:

Այս ուրեմն, թող Նա, մեր Տէրը, մեր Յոյսը, մեր Փրկիչը լինի մեզ իշխող, և ոչ թէ աշխարհը. թող Նա լինի մեզ օրինակ: Այն ժամանակ մենք կը հասնինք մեր կոչման բարձրութեան և երկրի վերայ արդար կեանք վարելուց յետոյ՝ կապրինք Աստուծոյ մօտ, որպէս հաղորդակից Նորա՝ փրկութեան և ժառանգորդ Նորա անմահութեան: Մեր արտասուքը կը սրբուի, մեր հոգու մեղքերի և վշտի հետքերը՝ կը դարմանուին, և մենք, որ հրեշտակներից խոնարհ չենք, այլ բարձր՝ քան նոցանից ոմանք, պսակուած անշիջանելի և անզեղծ ճաճանչով ու փառքով, կապրինք, յաղթելով մահը և ջախջախելով բանսարկու թշնամուն:

---

1. Յով. Ը. 11:

## ԺԱ.

# ԱՐԴԱՐՈՒԹԻՒՆԸ—ԱԶԳԵՐԻ ՈՅԺ Է. *)

Մենք այժմ իրար հանդիպել ենք այնպիսի վայր-կեանում, երբ որ Եւրոպայի պատերազմական դաշտը տակաւին չեն մաքրել ընկած մարդկիներից, երբ որ մեծ պետութիւնների սահմանները փոխուել են, թե-րեւս ընդ միշտ, երբ որ աշխարհի ամենահրահանգուած բանակի տէր և քաջ պատերազմող ազգը՝ մի յուսա-հատ կռուում կատարեալ պարտութիւն կրեց: Մինչև այժմ պատերազմի դաշտից դեռ ևս շարունակում են տեղեկութիւններ հասնել մեր խաղաղ տներում: Մենք անդադար մտածում ենք գերիների մասին, որոնց բախտը կախուած է այս կամ այն կողմի յաղթու-թիւնից. ապագայի համար ամէն տեսակ պատահա-կանութիւնների ենք ակնկալում:

Մեր արիւնը սառը մնալ չի կարող, երբ որ տեսնում ենք, որ 400,000 քաջեր մասնակցում են տի-տանական ոգորման մէջ: Ակամայ քաջալերական ձայն ենք հանում «արի եղէք, քաջ եղէք»: Եւ այժմ բա-նակում հաւաքուել ենք խաղաղ նպատակով, և այն խորը, որի վերայ որ մեն ենք գալիս, արիւնով չի թաթախուած, կարելի է թէ հէնց այս ամառուայն

---

*) Արտասանուած է կամաւոր զինուորների առաջ, Ուէմ-բլդոնի բանակում:

օրը կրակի ծուխը կախուած է երկու աւելի մեծագոյն բանակների գլխին և հենց այս խաղաղ զինուորական տօնահանդիսին՝ ուրիշ մարդկանց ականջում թնդում է ամբաժիգ հրետանու մռնչիւնը և կռուի չփոթը։

Ինչ զանազան զգացմունքներ և մտածմունքներ պէտք է յուզեն երկու բանակների մարդկանց սրտերը, եթէ նրանք ժողովել են աղօթելու, իւրաքանչիւրը իւր համար առանձնակի, ոմանք յաղթութեան տօնախմբութիւնից արբեցած, ոմանք ստորացած և յուսահատած։ Փառք Աստուծոյ, մենք չենք ենթարկուած ոչ յաղթութեան վտանգաւոր խնդութեան և ոչ էլ ամօթից տոչորուող յուսահատութեան։ Ամբողջ դարեր մեր ազգի գոյութիւնը չի վտանգուել, մեր ազգային դրօշակն անարգուած չի եղել, և թշնամին ոտք չէ դրել մեր անձեռնմխելի եզերքը։ Եւ թէպէտ այսօրուայ ժողովը պատերազմական ձև ունի, սակայն գումարուել է խաղաղութեան շահերի համար։ Մեր մտադրութիւնն ինքնապաշտպանութիւն է, և ոչ թէ յարձակումը, մենք չենք երազում աշխարհակալութիւններ անելու կամ ուրիշից երկիրներ խլելու։ Մենք լոկ միայն խաղաղ, աներկիւղ, հզօր, զինուորեալ մարդիկ ենք։

Սակայն վերջին օրերի լուրերը հարկադրում են, որ լուրջ և զգաստ աչքով նայենք երկրի ներկայ դրութեան վերայ։ Փառք Աստուծոյ, մենք պարզերես ենք և մեր անցեալի մէջ այնպիսի հանգամանքներ չկան, որ մեզ կարմրել տան։ Վեց տարի առաջ լսվում էին ինչ որ անորոշ սպառնալիքներ, անստոյգ լուր վտանգի մասին, մեր երկիրը արշաւելու մասին։ Արդեօք ճիշտ էին թէ սխալ այս լուրերը, բայց և այնպէս բորբոքեցին ազգասիրութեան բոցը, որ քնած էր թուլում ինքնասիրական շահերի մոխրի տակ։ Այդ բոցը այնքան սաստկացաւ, որ ոմանք կոչեցին անոտի

ջարդուրումն, խօլական ջարդուրանք։ Անգլիացիների անվեհեր քաջութիւնը արթնեց։ Ցիմարներն այդ շարժումը անուանեցին սնոտի մոլեգնութիւն, թեթեւամիտները ծիծաղեցին, այդ բանը համարելով պատրանք։ Աւելի իմաստուն պետական անձինք գովում էին այդ յափշտակութիւնը, իսկ ալեւորած զինուորները ցնծութեամբ ողջունում էին այդ երեւոյթը։ Եթէ այս յանկարծակի ջարդուրումը սնոտի ահաբեկութիւն էր, գէթ վաղանցուկ առկայծումն կամ անկարգ աղմուկ չէր, այլ լաւ հրահանգուած պատրաստութիւն էր, որ և ծանրակշիռ արդիւնք տուեց։

Հին ժամանակ եկեղեցու կշտին յարադալար կարմրածառը այնպէս էր տնկւում, որ մեր պապերը կարողանում էին, երբ ուզենային, Աստծուն նուիրած վայրում իրանց ազգային զէնքը կոփել։ Այսօր եւս մեր եկեղեցին, թէպէտ և մաս մաս քանդուած և ուրեմն նախկին ազնուական ազդուութեամբ խօսելու կերպը փոքր ինչ կորուսած, սակայն դեռ եւս ժողովրդեան սէրն ու յարգանքը վայելելով, առաջ եկաւ իւր օրհնութիւնը տալու այդ շարժման։

Այսպէս էր վեց տարի առաջ։ Այն, ինչ որ ժամանակաւոր մոլութիւն էր թւում, կայ և այժմ։ Եթէ այն յափշտակութիւնը, պարոնայք, առժամանակեայ լինէր, անարգութեան արժանի էր, բայց այն ծագում էր աւելի խոր և աւելի սրբազան շարժառիթներից, քան յանկարծական ահաբեկութիւնից։ Մենք չուզեցինք, որ մեր զաւակներին ժառանգութիւն թողնենք բիծ գրած անուն, կիսատ թողուցած առաքելութիւն, նսեմացած կամ անյայտացած փառք։ Ջանքը կատարուեցաւ, և Անգլիայի մայր մտնելու պատրաստ աստղը՝ ճառագայթեց նոր լուսով։

Մեր կամաւոր զինուորները, եթէ և մեզ չփրկեցին անիրաւ ոտնձգութիւններից, գէթ անշուշտ հար-

կադրեցին, որ յարգեն մեզ։ Նոքա անձնական վկայ հանդիսացան, թէ մենք (անգլիացիների մասին տարածուած հին բամբասութեան հակառակ) միմիայն շահերի հոգսերով չենք ապրում։ Նոքա ապացուցին, թէ թէպէտ և մենք կռուարար պատերազմողներ չենք, բայց երկչոտ ևս չենք, թէ մեր խաղաղասիրութիւնը այնչափ չէ, որ վախենայ պատերազմից, և ոչ լոկ միայն ոսկեզօծ քող է մեր հեշտասիրութիւնը, փչութիւնն ու բարոյական մահը ծածկելու համար։ Նոքա ապացուցին, թէ Անգլիայի զաւակներից նոյն իսկ ամենաաղքատը սերտ կապուած է իւր հայրենիքին, մինչև իսկ եթէ մի կտոր հող էլ չունենայ այն տեղ։ Եթէ այն շարժումը կարճատև լինէր, մենք շատ սոոր ընկած կը լինէինք։ Մենք ցոյց կուտայինք, թէ ընդունակ ենք միայն ջղաձգական ջանքեր երևեցնելու, թէ մեր կեղծ հայրենասիրութիւնը ազնուութիւն չունի և ուրեմն անզօր է, որ մեզ ստիպէ զոհել հայրենիքի համար մեր դրամը և մեր հանգստաւէտութիւնը, կամ Անգլիայի ապահովութեան նուիրել այն ժամերից մէկը, որ ընծայում ենք մամոնային և քաղցր քնին։

Այն օրհնաբեր հաստատութիւնը, որ պատերազմի սաղմը խաղաղութեան գրկի մէջ է պահում, չպէտք է անյայտանայ։ Այս մեծ բարիք է, որ մարդիկ, մանաւանդ հարստութեան յետևից վազողները, չեն թմբրում և շարունակ արթնում են ստորաքարշ մրափից։ Մեծ բարիք է, որ ազգային միութեան մտածութիւնը ազնուութեան կիրք է բորբոքում մեռած ինքնահաւան սրտերի մէջ։ Բարիք է, որ շահերի նոյնութեամբ՝ համերաշխ կերպով միանում են մեծատունն ու փոքրաւորը, հարուստն ու աղքատը, գիտունն ու տգէտը, ազնուականն ու մշակը, թէ նոքա ընդհանուր գործի ոգևորութեամբ՝ եղբօր պէս կողքը կողքի են կանգնած։

Անհուն բարիք է մեզ համար և զինուորների համար, որ հայրենիքի պաշտպանութիւնը դադարեց միայն սակաւների վտանգաւոր արհեստ լինելուց։ Մեր զինուորները կարող են քաղաքացի լինել, իսկ քաղաքացիները՝ զինուոր։ Ուրեմն կամաւորների հաստատութիւնը պատուար է միանգամայն և ժողովրդեան անիշխանութեան դէմ և բռնակալութեան մենաշնորհութեան դէմ։ Այս բանում տարաձայնութիւն չկայ և ամէնքը միանում են անգլիական ազատութիւնն ու փառքը պաշտպանելու համար։

Շատերի համար անհուն բարիք է այն հանգամանքը, որ տղայ մարդուն աւելի վայել այսպիսի զբաղմունքն ու վսեմագոյն մտածութիւնը՝ փառք ինչ շեղում է հոգսերով լի կեանքից և արծաթսիրութիւնից։ Այդպիսի նուագներում գոնա այլ ևս մամոնայի կառքին կապած ստրուկ չեն մնում։ Արհամարհելով դիւրաստաց հարստութեան իղձերը, որով մարդ բռնաւորի ստրուկ է դառնում, նոքա կարող են զգալի կերպով մասնակցել այնպիսի ծառայութեան, որ թէպէտև նիւթական կերպով չի վճարվում, բայց առատօրէն վարձատրվում է ամբողջ ազգի շնորհակալութեամբ։

Գործին նայենք ուղիղ դատողութեամբ. բացի բարիքից, այս ծառայութիւնը ծագում է քաղաքական անհրաժեշտութիւնից, նոյն իսկ այն դէպքում, եթէ Անգլիան ոչ մի ուրիշ կարիք և փոյթ չունենայ, բայց եթէ միայն պաշտպանուած լինելու։ Անգլիան այլ ևս ծովերի թագուհի չէ, և անոր նաւերի սպիտակ հետքը «այնպիսի փողոց չի կազմում, որ անմատչելի կացուցանէ թշնամու երթևեկութեան»։ Այժմ իւր ջրերում արդէն այնպիսի շոգենաւ է շարժվում, որի առաջ իւր նաւերից ոչ մէկը չի դիմանայ, իսկ միւս ազգերի բանակները այնպիսի հրացաններով են զինուած, որոնց առաջ անգլիական զինուորների հրացանները անպի-

տան են։ Միթէ անգլիայի փառքն ու իշխանութիւնը, իւր հոյակապ գերիշխանութեան հազարամեայ յոբելեանը, կախո՞ւմ պիտի ունենան նոր զրահաւոր շոգենաւերից և ասեղնաւոր հրացաններից։ Հենց այս էլ կը պատահէր, եթէ չունենայինք կամաւորներ։

Մի կարծէք, թէ մեր խօսքերով գէթ մի նշանախեցի չափ պէտք է պակասեցնենք մեր հաւատքը առ մեր քաջ բանակը։ Բազմաթիւ արիւնահեղ դաշտերում դա ապացուցել է իւր ժառանգական քաջութիւնը։ Այն մարդիկ, որ կռուել են Բալակլաւի և Ինկերմանի մօտ, որ արևակէզ Հնդկաստանում առաջ էին մղվում դէպի Լէկնով և Կաունփուր, ապացուցին, թէ ոչ միայն Վիտտորիայի և Վատերլօօի հերոսների զաւակներ են, այլ և Կրէսիի և Ազինկուրի յաղթութիւններ տանող քաջերի արժանաւոր ժառանգներ են։ Բայց արդեօք կարո՞ղ է մի բուռն 50,000 մարդ (որ պահանջած դէպքում շատ արագ և առանց դժուարութիւնների չի էլ հաւաքվում) դէմ դնի 500,000-ին, որ կարճ ժամանակում իջնել կարող է երկրիս ափերին։

Մեր ժամանակում, երբ որ քաղաքական հորիզոնը գրեթէ երբէք ազատ չի լինում կայծակնաբեր ամպերից, երբ որ պատերազմի մասին լուրերը, ինչպէս մէկմէկու հետևող ծովի ալիքներ, գլորվում են դէպի ափը, աղմկում են, պարկվում են և ցրվում, և մերթ մեզ քաշում են պատերազմելու, մերթ ամօթահար ահաբեկում են կամ վատթար անհանգըստութիւն են ծնանում,—անհնարին է ապրել մշտական խաղաղութեան երազներով։ Ո՛չ, անքոյթ լինելու համար, ոչ մի զգուշութիւն շատ չպիտի համարուի, իսկ մենք պարտաւոր ենք անքոյթ լինելու։ Անգլիան այս պարտաւորութիւնն ունի Աստուծոյ, աշխարհի և իւր առաջ։

Եթէ այն անհարկու պատերազմական զօրութեան հանդիպելիս,—որ ամենայն օր մեր դէմ կարող է շարժուել, միւս երկիրների նախանձի, բարկութեան կամ թշնամութեան պատճառով,—կարողանայինք վստահանալ միայն անքննելի հերոսութեան, աննկուն արիութեան, պարտաճանաչութեան, շրջապատող սարերի պէս անդրդուելի ազգասիրութեան, «հպարտ և գոռոզ ազգի ժառանգական դիւցազնութեան» վերայ,—մենք բոլորովին հանգիստ կլինէինք: Սակայն ինչ են նշանակում այս բոլոր առաքինութիւնները ռմբաձիգ զօրութեան անդիմադրելի պայթոցների առաջ. ի՞նչ բախտի կհանդիպէր մեր սակաւաթիւ զօրքը, եթէ 200,000 եղբայր-քաղաքացիների օգնութեան յոյս չունենար, որոնք միշտ պատրաստ պիտի լինեին վահան դառնալու ճգնաժամին:

Այո՛, սիրելիք, ձեզանից ամէն մէկը իւր մասն ու բաժին ունի Անգլիան փորձանքներից ազատող պահելուն մէջ: Սակայն հարցնում եմ ձեզանից. միթէ միայն այդքանով գո՞հ էք, որ Անգլիան անփորձ լինի: Իսկ անոր փառքը, մեծութիւնը, անոր ազդեցութիւնը միւս ազգերի հզօր բախտի վերայ—միթէ ձեզ համար աննշա՞ն բաներ են: Արդեօք այդ ամէնը ձեր աչքում անշօշափելի՞ բաներ են, պարզապէս ցնորքնե՞ր են, որ վայել և արժանի չեն այնպիսի գործնական մարդկանց, որոնք սովոր են միայն հարկերի, ապրանքների և հարստութեան մասին խօսելու. միթէ գո՞հ կը լինիք, եթէ լռէ Անգլիայի ձայնը, որ երբեմն դղրդում էր և ահագին նշանակութիւն ունէր միջազգային խորհրդածութիւններում:

Միթէ գո՞հ կը լինէք, եթէ մեր երկիրը միայն անձնատիրական նպատակների համար սուր հանէ կամ պատերազմում թողնէ, մինչդեռ առաջ իւր սուրը գործ էր ածում մեծանձնութեան դատը պաշտպանելու

համար։ Մեր փառքն այն է, որ չենք հանդուրժում և ատում ենք բռնակալութիւնն ու կամայականութիւնը։ Բայց միթէ մեր փառքը կաւելանայ, եթէ կորցնենք ազատականութեան նշոյլն անգամ, ազնիւ պատուասիրութեան հետքն անգամ։ Եթէ այդպէս է, Անգլիան արդարև կը հարստանայ, բայց իւր հաքբա-տութիւնը թշնամիներու շտեմարան կը դառնայ, իսկ իւր վայրագ անհաղորդութեամբ՝ որ և է դժուարութեան հանգամանքներում՝ կը պատրաստէ իւր կորուստը, որի համար հարկաւ ոչ ոք արտասուք չի թափի։

Ա՛հ, էլ մի աւետէք սնապարծութեամբ, թէ դուք ամենայն գնով կամենում էք վայելել խաղաղութիւնը։ Չմիջամխութեան և չմիջամտութեան տեսութիւնը, չեզոքութեան սկզբունքը՝ կարելի է թէ արդարութիւն է, արժանաւորութիւն է, անինքնասիրութիւն է, սակայն մի՛ ի չար գործ գնէք այդ բանը։ Ամաչեցէք և մի խայտառակուիք եւրոպական ազգերի առաջ, թէ դուք հարստանալու սնափառութիւնը աւելի էք գերադասում, քան թէ հնացած ցնորական յափշտակութիւնը, որ Անգլիայի պատիւը պաշտպանելու միշտ աւելի փոյթ է ունեցել։

Եթէ մենք կարող ենք պարծենալ, որ հեռու ենք մնում օտար ազգերի հակառակութիւններից, եթէ մեր անհագին կայսերութեան ասիական ու ափրիկեան զարգացող շահերը պահանջում են, որ Անգլիան իւր ազգեցութեամբ այլ ևս Եղիսաբէթի և Կրոմուելի Անգլիա չը լինի, բայց և այնպէս պէտք է հասկացնել ուրիշ ազգերին, թէ թերևս կարող է այն օրը լուսանալ, և շատ շուտ կը լուսանայ, երբ որ Անգլիան պատերազմի դաշտ դուրս կու գայ իւր փառաւոր ժամանակների անյողդողդ քաջութեամբ։ Մի թողնէք, որ Անգլիան անկարեկիր նայէ անօգնականների ջան-

քերէն և հալածութեան տառապանքներին։

Անգլիան պարծենում է, որ մինչդեռ Եւրոպայ-ում վեց միլիոն զինուոր կայ պէնքի կանգնած, ինքը, իւր լայնածաւալ երկիրներում, ունի ընդամէնը կէս միլիոն։ Սակայն արդար յառաջադիմութեան մէջ ևս նա պէտք է միւս աշխարհներից առաջ ընթանայ և չթողնէ այդ փառքը ուրիշին իւր պղերգութեամբ։ Նա չպէտք է մոռանայ իւր դրօշակի վերայ եղած առիւծի պատկերը և, լորդ Բէկոնի ասելով, չը լինի թէ Ցուդայի դրօշը՝ վերան կորիւն առիւծու նկարա-ծը, և Ցուդայի ստացած օրհնութիւնը, որ էր իշխա-նական գայիսոն և «ձեռք ի վերայ թիկանց թշնամեաց», մի գուցէ, ասում ենք, փոխէ Իսաքարի օրհնութեան հետ, որ աւելի անէծքի նման է, որովհետև սա, իւր ստացուածքներն ու հանգստութիւնը ապահովապէս պահելու համար, հնազանդուեցաւ ճակատագրին և եղաւ ծառայ *)։

Եթէ Անգլիայի քաղաքական նշանակութիւնը ան-խուսափելի կերպով թուլացել է իւր անգործութիւ-նից, մեր վարքով պէտք է ապացուցանենք, թէ այդ անգործութիւնը պարզ անձնապաշտութեան արգիւնք չէ և թէ այնպիսի օր կարող է գալ, երբ որ մենք մեր դէմ խիզախողներին զգացնել կը տանք, թէ Անգլիայի մեծագործ սիրտը և տիտանական եռանդը իւր առե-րեւոյթ քնից զարթնել գիտէ։ Մեծագոյն քանաստեղծը ասել է. «Ինձ երևում է հզօր ազգ, որ քաջի պէս քնից զարթնելով, թափ է տալիս իւր յաղթական խո-պոպիքը։ Դա նման է կալանաւորած արծուին, որ

---

*) «Իսաքար, էշ ուժեղ, հանգուցեալ ի մէջ գոմոյ. եւ-տեսեալ զհանգիստն զի գեղեցիկ էր, եւ զերկիրն զի պարարտ էր, եդ զուս իւր յաշխատել եւ եղեւ հարկատու ծառայ»:

Ծնն. ԽԹ. 15:

անվախ չեչտակի նայում է կեսօրեայ արեգակին, մինչ-դեռ իւր շուրջը լսվում է չփոթուած և վախկոտ թռչունների աղաղակը, որոնցից ոմանք մթութիւն են տիրում: Նոքա ամէնքը զարհուրել են արծուի սրտոտ հայեցուածքից»:

Սիրելիք, այս քառերի համար պէտք չէ ներո-ղամտութիւն խնդրել, որովհետև սոոնց խորհուրդն է զարթեցնել մեզ մեր վատթարագոյն և խիստ տարած-ուած արատից — խոր արմատացած անձնասիրութիւ-նից: Այդ խօսքերը հասկանալի են մանաւանդ այժմ և այն տեղում, ուր որ այս վայրկեանին գտնվում ենք: Աւելի խեղճ կեանք չկայ, քան որ անձը միայն իւր համար հոգս քաշէ:

Միթէ աւելի ողբալի և զզուելի բան կարող է լինել, քան այն, որ երկրագնդի մակերևութի վերայ ապրող հազար միլլիոն մարդկանցից մեծ մասը աշխա-տում է միայն իւր անձի համար, այս պարագայում մրջիւններից էլ պակաս առաքինի հանդիսանալով: Ցայ Աստուած, որ այնպիսի ուղղութիւնից Անգլիան միշտ զերծ լինի: Այդ բանը չի համապատասխանում քրիստոնէութեան ոգուն, որ մեզ ուսուցանում է, թէ ոչ մենք ինքներս, և ոչ մեր կեանքը մեզ չեն պատկանում: Որ դարձեալ ուսուցանում է լինել անդասիրտ, դիմացկուն, չծածկել Աստծու պարգևած ընդունակութիւնները խցերում կամ անապատի մէջ, այլ մոռանալով անձնական շահերը՝ հանդէս գալ և բարձրանալ մինչև եկեղեցու և ազգի շահերը, իսկ այնու նաև մինչև համայն աշխարհի շահերը:

Այն փիլիսոփան, որ չի հաւատում, թէ քրիս-տոնէութիւնը ճանաչում է ազգասիրութեան առաքի-նութիւնը, սխալ է ըմբռնում այդ վարդապետու-թիւնը: Քրիստոնէութիւնը ձևապաշտ բարոյախօսու-թեան տաղտուկ գրութիւն չէ, այլ կենդանի դրդիչ է,

*որ ամենայն զօրութեամբ արտայայտվում է նաև հայրենասիրութեան մէջ, ինչպէս և այլ առաքինութիւնների մէջ։ Իսկ հայրենասիրութիւնը երբեմն իշխանաբար պահանջում է պատերազմի զոհաբերութիւններ։ Չեմ հասկանում, թէ ինչպէս Ս. Գիրք կարդացողները և պաշտողները պնդում են, իբր թէ անմեղներին տանջելը և արեան հեղեղներ թափելը՝ աւելի պակաս չարութիւն է, քան թէ մեղքերով հոգի ունենալը։ Ո՞չ ապաքէն ամբողջ Ս. Գիրքը լցուած է սրի. և վահանի շառաչիւններով։ Այն տեղ անդադար պատահում են փոխ ընդ փոխ արդար բարկութիւնն ու որոտմութիւնը և խաղաղութիւնն ու սէրը։ Այն տեղ շատ գլուխներ յիշեցնում են կռուի աղաղակ և արիւնով ներկուած պատմուճաններ։*

*Ս. Գիրք կարդացողները և զօրութիւնը չհասկացողները չեն տեսնում, որ աւելի լաւ է «պատերազմ հազար կռիւներով, պատերազմ հազար գահեր խախտող» քան ապականուած, փտած և մամոնայ պաշտող խաղաղութիւն։ Այս այնպիսի բնազդական զգացում է, որ մեր բնութեան լաւագոյն կողմերից մէկն է, և որ քրիստոնէութիւնն էլ սրբագործում է, որովհետև մեր ազնուագոյն բնազդումներից մէկն է։ Քրիստոնէութիւնը ոչ փափկասուն կրօն է, և ոչ քուրմերի և կեղծ բարեպաշտների կանացի և մեղկ դրութիւն է։ Այդ կրօնը առաւելապէս արիասիրտ զինուորութեան կրօն է, և որովհետև արիասիրտ է, ապա ուրեմն աստուածային կրօն է։ Քաջութիւնը առաքինութիւն է։*

*Ուրեմն, և՛ քաջութիւնը, և՛ ասպետութիւնը, և ջերմ զգացմունքը, և՛ յափշտակութիւնը, և՛ համարձակութիւնը, և՛ միութեան ձգտումը, և՛ բորբոքած ատելութիւն ստութեան, անգթութեան, անիրաւութեան դէմ,—խիստ կարևոր տարրեր են վսեմ առաքինութեան։ Տարակոյս չկայ, որ մի վախկոտ,*

խեղճ, թուլամորթ, սողոսկող բնաւորութեամբ մարդ՝ երբէք չի լինի իսկական քրիստոնեայ։ Քրիստոնէութիւնը վախկոտութեան փարատիչ է. արհամարհութեան կնիք է դրոշմվում այն հոգու վերայ, որ իւր փառաւոր կեանքը աւելի լաւ բանի գործ չի դնում, բայց եթէ ագահութեամբ ինքն իրան շրջապատելու դժբաղդութիւններով, դիզելու և ամբարելու արդար և անարդար վաստակներ։ Ձեր ներկայութիւնն այս տեղ գրաւական է ձեր լաւագոյն օրերի և յոյս է մեր հայրենիքի համար։ Ասում են, թէ Անգլիայի օրերը անցել են, բայց ոչ այն պատճառով, որ թէ իւր մէջ ապականութիւնը բոյն է դրել, թէ իւր ժողովուրդը յանցաւոր է, թէ մերժեալներին չի խնամում։ Ասում են, թէ այս կորուստը այլ պատճառից է ծագում, և թէ ոչ ժողովրդեան գողութիւնները, ոչ ագահութիւնը, ոչ ծուլութիւնը այս բանում կարևորութիւն չունի։ Ակնարկած պատճառները ուրիշ կարգի բաներ են. ասում են, թէ Անգլիայի քարածուխը պիտի սպառուի, նախնական անտառները անդարձ անյայտացել են, և մարդու պահպանութեան և բախտաւորութեան համար պարգևած Արարչի պաշարը էլ չի նորոգվում։

Սիրելիք, կարելի է, թէ և ո՛չ հարիւր տարի լրացած՝ արդէն քարածուխ չունենանք։ Եթէ այդ պատահելու է, հապա եկէք այդ հարիւր տարին այնպէս գործ ածենք, որ մեր մեծութիւնը հաստատենք ուրիշ և աւելի լաւագոյն և պակաս վտանգաւոր հիմքի վերայ։ Մենք ի հարկէ կարող ենք տկարանալ և աղքատանալ, սակայն ոչ մի ազգ ուրիշ բանից չի կործանվում, բայց եթէ մեղքից։ Իսկ Անգլիայի ճըշմարիտ մեծութիւնը, կամ աւելի լաւ է ասել, անոր միակ մեծութիւնը—աւելի լաւագոյն բան է, քան քարածուխը։

Քարածուխը չի տալիս Անգլիային իսկական փառք

և ապագայի յոյս, թէպէտ նպաստում է անոր հարստութեան և զօրութեան։ Իւր զաւակների արդարասիրութեամբ, սրբութեամբ, ազնուութեամբ, պատուասիրութեամբ՝ Անգլիան և՛ կը փառաւորուի, և՛ տևողական կը լինի։ Եթէ իւր զինուորների և կամաւորների թիւը տասնապատիկ աւելի լինէր այժմեանից, այն ժամանակ ևս մեր թշնամիները մեզանից աւելի չէին վախենայ, քան ամեհի առիւծը տկար ոչխարների հօտից։ Գլխաւորը քաջասրտութիւնն է, որով մարդիկ ոգևորվում են, այն ևս եթէ վաղանցուկ չէ, այլ եթէ յարատև հերոսութեան դրոշմ ունի։

Եթէ դուք կամենում էք տեսնել ձեր հայրենիքի բախտը ցոյց տուող աստղը, փնտռեցէք ձեր եղբայրների և ձեր սեպհական սրտում։ Դուք, որպէս կամաւորներ, արտօնութիւն ունիք անմիջապէս ծառայելու մայրենի երկրին։ Շնորհակալ եղէք Աստծուց, ինչպէս որ ձեր երկիրը ի բոլոր սրտէ շնորհակալ է ձեզանից։ Բայց մի՛ մոռանաք, որ հնարներ կան հայրենիքին աւելի ևս բարձր ծառայութիւն մատուցանելու։

Ձեզանից մեծագոյն մասը կամ պատանիներ էք և կամ հասունութեան առաջին տարիքումն էք։ Ո՞հ, ինչ հրաշքներ կարող էիք գործել Անգլիայի համար։ Դուք ընդ առաջ էք եկել, որ օգնէք պաշտպանէք հայրենիքը և բարձրացնէք անոր փառքը։ Աստուած տայ, որ ամէն մէկդ հանդիսաւոր և ամենայն սրտով ուխտ ուխտէք հայրենիքը փրկելու և բարձրացնելու ոչ միայն ներկայ րոպէյում, ոչ միայն այդ եղանակով, ոչ միայն այն դէպքում, երբ որ կանգնած էք այս տեղ, համազգեստը հագած, զէնքը ձեռին։ Այլ յիշեցէք հայրենիքի փառքը նաև այն ժամանակ, երբ որ դառնաք ձեր խաղաղ գիւղերը կամ հեռու գաղութներում, կամ կղզիներում։

Դուք երկրին ծառայում էք բանակում, զինուո-

բական մաքրութեանց ժամանակ—և երկիրը շնորհակալ է ձեզանից. կանայք և օրիորդները ձեզ յարգում և օրհնում են։ Բայց դուք անհամեմատ աւելի օգտաւէտ կը լինիք հայրենիքին, եթէ ծառայէք անոր ոչ միայն հրապարակաւ, այլ և ձեր առանձնութեան մէջ, ոչ միայն մարմնով, այլ և կեանքի ամբողջութեամբ, պալատում կամ գործարանում, արուեստանոցում, մշակի խրճիթում, վաճառականի խանութում։ Արի եղէք ոչ միայն այս տեղ, այլ և ծածուկ փորձութեան ժամին, աներևոյթ մաքառման ժամանակ, երբ որ ձեր գործը տեսնում է միայն Տէր Աստծու անքուն աչքը։

Ձեզ վերայ մենք նայում ենք, իբրև մեր մէջ երևեցած նոր տեսակ ասպետականութեան վերայ. մենք յոյս ունինք, որ ձեր ամբիծ խիղճը, մաքուր ձեռքերը, ձեր անարատ և բարձր նպատակները, կօգնեն ձեզ, որ կարողանաք մեր գոյութեան կենսական ոյժերը մաքրել և պահպանել։ Իսկ եթէ ձեր ընկերութիւնը այնպիսի մարդկանցից է կազմուած, որ չգիտեն զսպել անձն ու կրքերը, եթէ ձեր արեան մէջ չկայ արդարասիրութիւն, ուշիմութիւն, ճշմարտութիւն և կուսութիւն, հապա ոչ ճարպիկութիւնը, ոչ բազմութեան թիւը նշանակութիւն չեն ունենայ։ Արդէն շատ ուշ կը լինի, եթէ հասնի այն ժամը, երբ որ ձեզ հրաւիրեն ոչ թէ այսօրուայ պէս տօնական զինահրահանգէն, այլ ահեղ կռուի սարսափելի դղորդէն, երբ որ ամէն կողմից սուլող գնդակի շառաչիւնը կը շարժէ ոչ թէ տօնախմբութեան ժպիտ, այլ իրօք կը պատճառէ սոսկալի մահացու վէրք, իսկ ձեր ոյժը կը փախչի ձեր ջլատուած ձեռքից, քաջութիւնը՝ սպառուած հոգուց, և ձեր սրտի մէջ, որ լցուած կը լինի հանգած մոլութեանց մոխրով և փչացած կը լինի երիտասարդութեան մեղքերով, չի գտնուի ոչ քաջութիւն և ոչ հերոսութիւն։ Ցաւում եմ, սիրելիք, որ այս անզգա-

մութիւններէ դէմ վարած կռուի մէջ եւ՝ դուք աշ-
խատում էք հաւատարիմ զինուոր մնալ։ Այն երգու-
թիւնը, որ վեց տարուայ ընթացքում 200,000 կամա-
ւորների մէջ շատ սակաւներ արտասանել են իրանց
համազգեստը, որ մեղանչող կամաւորը հասարակու-
թեան կողմից խստիւ դատապարտվում է, որ ամէն
խաւերից և ամէն տեղերից հաւաքած այդպիսի բազ-
մութեան մէջ մի քանի տարի շարունակ չեն պատա-
հել արբեցութեան, անհնազանդութեան, կոպտու-
թեան, անվայելչութեան դէպքեր, և տրտունջներ
չեն լսուել, — իրաւունք է տալիս եզրակացնելու, թէ
կամաւորը իւր հագած համազգեստի մէջ նոր հզօր
առիթ է տեսնում այն վսեմական անձնայարգութեան,
որ նորան պէտք է սովորեցնէ բարձր հանդիսանալ
չնչին, ստորացուցիչ, մեղանչական անձնապաշտու-
թիւնից և համարել իւր մարմինը տաճար Հոգւոյն
Սրբոյ։

Այժմ սաստիկ մաքառումն է սկսուել ոչ միայն
Եւրոպայի պատերազմական դաշտում։ Ամէն կողմից
այդ մաքառումն է պաշարել մեզ, իսկ մենք մէջը
զինուոր ենք մէկ կամ միւս կողմից։ Այս անմռունչ,
մեծ ներքին պատերազմը վարում են հեշտութիւնն ու
սրբութիւնը, ստութիւնն ու ճշմարտութիւնը, արդա-
րութիւնն ու անիրաւութիւնը։ Այդ պատերազմի հա-
մար հարկաւոր չէ ոչ բարեպատեհ առիթ, ոչ մեծա-
հանդէս ամփիթէատրոն, ոչ արտաքին հանդերձանք
փայլ և պերճութիւն, վասն զի կատարվում է մարդու-
սրտի ներսը։ Սակայն նորա ազդեցութիւնն ու արդիւն-
քը տարածվում է ամբողջ աշխարհի վերայ։ Այդ պա-
տերազմը արտայայտվում է և՝ այն ժամանակ, երբ որ
անմաքուր խիղճը կամ քայքայուած մարմինը մարդուն
հասցնում է ինքնասպանութեան կամ խելագարու-
թեան, և՝ այն ժամանակ, երբ որ երիտասարդութեան

կենաց արմատը դառն է եղել, իսկ ծաղիկը՝ ուրպէս անճիւն: Նոյն պատերազմով են պատերազմում և արբեցողը, որ իւր ախտից արժանապէս տանջվում է, և՛ հիւանդանոցներում պառկածները, որ մարդկանցից արհամարհած և կարծես թէ Աստծուց մոռացուած՝ մոլութիւնների թշուառ զոհեր են եղել: Կար ժամանակ, որ նոքա էլ ունեցել են անմեղութեան վարդեր և էին պատուաւոր մարդու նշան ունեցող էակներ (և այդպէս էլ կու մնային, եթէ մարդկային մեղքեր չլինէին), ճակատին կուսութեան շնորհով և հոգու մէջ Աստուծոյ ցօղով:

Ահա թշուառի մէկը կէս գիշերին դողունի մերձենում է մութով պատած դռներին, լսվում է ջրի խուլ թնդիւնը, և ամենայն ինչ վերջանում է:—Այսպիսի մաքառման ձայն լսվում է ամենայն լաց ու կոծի, ամենայն յուսահատ ալէծփութեան մէջ: Այդ հանդէսի մէջ հոգւով անդարձ կորածները՝ շարք շարք փռուած են մեր փողոցներում, և դոցա արիւնը, որով թաթախուած է շատ երիտասարդների սիրտը, և որի կարմիր բծերը թերևս աղուեսադրոշմ է դարձել ձեզանից շատերի խղճի մէջ, Աստծու վրէժխնդրութիւնն են կոչում: Դոքա զոհեր են, որ կոտորուել են Աստուծոյ դէմ վարած պատերազմում: Ո՜վ Անգլիայի երիտասարդ կամաւորներ, այս մեծ պատերազմում Աստուծոյ կողմը կանգնեցէք: Եղէ՛ք քրիստոնէական ասպետութեան անդամներ, կապուած մի անգամ ընդ միշտ սրտի ուխտած ուխտով, բայց այնպիսի սուրբ ուխտով, ինչպէս որ ուխտում էին հին ասպետները: Եւ ինչի՞ն է պէտք մեր զէնքը, եթէ մենք Քրիստոսի զինուորներ չենք, որ միշտ պատրաստ պիտի լինինք զկնի Նորա գնալու, յանձն առնելով մահը, եթէ չենք լսի Նորա պատուէրներին, եթէ կը խախտենք Նորա օրէնքները: Պաւլը

վայր է ընկնում մեր ճակատից, որովհետև մեղանչել ենք։ Ո՜հ, նուիրեցէք Նորան ձեր հոգին, այդ սուրբ, անապական, ազնիւ ընծան։ Լսեցէք Նորա մշտահրաւէր ձայնին, մի գայթակղուէք Նորա թշնամիներից։ Եթէ Անգլիայի զաւակները այս յաղթութիւնը տանեն,—էլ ոչ ոք չի կարողանայ վնասել Նոցա հայրենիքին։ Այսպիսի զաւակներ աւելի զօրավիգն կը լինեն Անգլիային և աւելի մեծ վեհութիւն կու տան Նորան, քան երկաթով կռած նաւերի ամբողջ տորմիղը, քան շուրջը բլուրների վերայ շարած ռմբաձիգ հրետանին։ Այն երկիրը, որ մասնուել է փափկութեան, ճոխութեան և ագահութեան դիւրութիւններին, ունի իւր սրտի մէջ տկարութեան սաղմ և քայքայուելու ճակատագիր, ինչպէս որ վկայում է պատմութեան ամէն մի էջը։ Իսկ այն ազգը, որի զինուորները միևնոյն ժամանակ Քրիստոսի յօժարակամ ծառայ և մարտնչող են,—թող ոչնչից չվախենայ, եթէ նոյն իսկ ամբողջ աշխարհ անիրաւութեամբ զինուի իւր դէմ։ Եթէ մինչև իսկ մի առ ժամանակ պարտուի, այդ կը պատահի նորոգուելու համար, այդ կը պատահի, որպէս զի յարութիւն առնէ իբրև պատուական, երջանիկ, աստուածանման, քրիստոնէական ազգ, այնպէս, ինչպէս որ արեգակն առ ժամանակ միայն ընկղմում է ովկիանի մէջ, որպէս զի արշալուսին աւելի փառաւորութեամբ ծագի նորոգուած լուսով։

ԺԲ․

## ՄԻ ԴՊՐՈՑԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՒ ՑՈՅՑԵՐ․

Մենք հաւաքուել ենք, եղբարք, որպէս զի պատ-
ուենք մի բարի մարդու յիշատակը և մտաբերենք մեր
պարտքը դէպի մեծ համայնքը։ Ջոն-Լայոնի անունը,
որ առհասարակ աշխարհին քիչ է յայտնի, մեծ նշա-
նակութիւն ունի մեզ համար։ Այսօրուայ համար մենք
պէտք է թողնենք մեր մտածմունքները մեր անձի և
մեր շահերի մասին և ուշք դարձնենք միայն Հարրովի
դպրոցի, անոր շահերի և այն բանի վերայ, թէ ինչ
պարտականութիւն ունինք առ միմեանս և առ մեր
հասարակութիւնը։ Շատ բան կայ ասելու, բայց աւելի
շատ դժուար է անոնց մէջ յարմար ընտրութիւն անե-
լու։ Այսպիսի դէպքում և ի պատիւ այսպիսի հաս-
տատութեան խօսող մարդու վերայ՝ մեծ պատասխա-
նատուութիւն կայ։ Սակայն որչափ որ անկատար լի-
նին իւր խօսքերը, նա կարող է յուսալ, որ եթէ այդ
խօսքերը ճշմարիտ սրտոյ պտուղ են և եթէ սրտից են
բղխում, համակրութիւն կը գտնեն բարեմիտ ունկնդիր-
ների մէջ, գէթ բնաբանի մեծ կարևորութեան պատ-
ճառով։ Կարծում եմ, թէ աւելի լաւ կը կատարեմ
պարտքս, եթէ նախ և առաջ հիմնողի հաստատու-
թիւնը յիշենք, եթէ Հարրովեան դպրոցի անցեալը
շրջահայենք, ապա և անոր կոչումն իմանանք։ Ի վեր-
ջոյ ես մի քանի նկատողութիւններ կաւելացնեմ, որ

ընականապէս հետևում են մեր բռնելիք յարաբերու-
թիւնից դէպի այս պատկառելի հաստատութիւնը։
Թող Սուրբ Հոգին մեզ հետ լինի և օրհնէ մեր գործը։

Ուրեմն նախ խօսենք մեր դպրոցի անցեալի մա-
սին։ Հնգետասաներորդ և վեշտասաներորդ դարում
մարդկային միտքը արթնեց զօրաւոր կերպով։ Նոր գի-
տութիւնը խոր սասանեցրեց Եւրոպային, և երբ որ
գարնան առաջին շունչը արտաքսեց տգիտութեան և
անհաւատութեան ցուրտ մառախուղը, հազարաւոր
խորհողներ ազատուեցան շղթաներից, հնչուեցան
պերճախօս ճառեր, գեղգեղեցին երգեր։

Այս էր փառաւոր ժամանակ,—հսկայական յա-
ռաջադիմութեան, գիտակցական ազատութեան, կա-
տարեալ յոյսերի դար։ Անգլիայում թախծաբարոյ,
կեղծ բարեպաշտ թագուհին կամեցաւ տիրել մարդ-
կանց հոգուն և պապութեան ուռկանի մէջ բռնել
նոցա։ Հինգ եպիսկոպոս-մարտիրոսներ*) կրակի մէջ
այրուեցան։ Բայց Մարիամին յաջորդեց ուրիշ թա-
գուհի, արքայական մեծ տաղանդներով, առիւծի
սրտով։ Նորա լուսամիտ հոգացող պաշտպանութեան
ներքոյ ծաղկեցին միտք և գիտութիւնը։ Նորա գահը
շրջապատուած էր այնպիսի մարդկանցով, որոնցից մի
քանիսների ճակատը պսակուած էր միանգամայն բա-
նաստեղծի, պետական մարդու և փիլիսոփայի պսա-
կով։ Երբէք Անգլիայի փառքը այդչափ մեծութեան
չէր հասել։ Մի առժամանակեայ խաւարութիւնից յե-
տոյ, այդ փառքը վերականգնեցաւ, ինչպէս որ արե-
գակը ծագում է ովկիանի ալիքներից։

Այս ժամանակ, մօտ երեք հարիւր տարի սո-
րանից առաջ,**) մի ազնիւ երկրագործ, որ կենում

---

*) Կրանմէր, Հուպէր, Ռայդլէյ, Լատիմէր, Ֆարրար։

**) Ջոն-Լայոնը Եղիսաբէթից հրովարտակ ստացաւ 1571 թ.

նելով, ինքը լուռ ու մունջ վճռեց իւր գիւղին հնարաւորութիւն տալ, որ օգտուի այնչափ բազմաբեղուն առաւելութիւններից։ Սակայն Ջոն-Լայոնը հասարակ շինական էր։ Նա չունէր այնպիսի դերը, որով մարդկանց համար յարգանք է ստեղծվում։ Նա չէր ստորագրում իւր անուանից յետոյ մինչև անգամ «ջենտըլմէն» բառը։ Եթէ մենք նորան փողոցում պատահէինք, նորա վերայ կը նայէինք իբրև ամէն մի հասարակ մարդու վերայ։ Սակայն անյայտութիւնը արգելք չեղաւ, որ նա փորձ փորձէր իւր սերնդեան բարիք անելու։ Փոխանակ իւր հարստութիւնը աճեցնելու կամ ունեցածը իւր գիւրութիւնների համար ծախսելու, նա հիմնեց տարրական ուսումնարան և մի քանի պարզ կանոններ կազմեց իւր հաստատութեան ուղղութիւնը ապագայում պահպանելու համար։ Այդ կանոնները իմաստութեամբ շօշափում են դաստիարակութեան երեք կողմերը՝ բարոյական, մտաւորական և ֆիզիքական։ Անոնք վերաբերութիւն ունին հոգու, մտքի և մարմնի կատարելագործութեան, իսկ ներդաշնակ միաւորութեամբ՝ կատարեալ մարդու ամբողջութեան։ Այդ կանոններից մէկը խիստ բնորոշ է, և ես խորհուրդ եմ տալիս լաւ նկատել այդ. այն ժամանակուայ տիրող հոգու համեմատ, կանոնն ասում էր aut disce, aut discede (կամ սովորիր, կամ հեռացիր) և փոյթ ունէր, որ ծոյլերն ու անընդունակները դըպրոցում մի տարուց աւելի մնալու իշխանութիւն չունենան։ Ծոյլն ու պարապ-սարապը տեղ չպէտք է գտնէր։ Ոչ մի չորացած կամ գօսացած ճիւղ չպէտք է խլէր սնունդը պտղաբեր ոստերից։ Ջոն-Լայոնի ժառանգութեան մէջ տապարը պէտք է պատրաստ լինէր չորացած ծառի արմատի մօտ։

Այսպէս ուրեմն, Ջոն-Լայոնը հիմնեց Հարրովի մէջ քերականութեան տարրական ուսումնարան։ Այս

անունը կարող է թուել շատ համեստ, բայց Հարրովը իրօք որ քերականութեան ուսումնարան է, ինչպէս և բոլոր բարձր հաստատութիւնները, եթէ բանը ուղիղ հասկացուի։ Ով որ քերականութիւն է սովորել, նա լեզուի բանալի ունի և իմացել է խօսքի մեծ խորհրդեան ամենանշանաւոր գաղտնիքը։ Նա սովորել է գործ ածել և գնահատել մարդկային ձիրքերից մեծագոյնը, այն ձիրքը, որով մարդ բարձրանում է անբանից, որով մի հոգի հաղորդակցում է միւսի հետ, և որով օդի հասարակ ձայները ոգեշունչ մտքեր և կրակոտ խօսքեր են դառնում։ Այս ձիրքի շնորհով, սրտի յոյզերը, արծաթէ լարի թրթռումների պէս, սրտից սրտին է հաղորդվում։ Այս ձիրքի միջնորդութեամբ մենք հասկանում ենք մարդկային մտերմութիւնները և խոստովանում ենք մեր գոհութիւնը Աստծուց։ Այս ձիրքը օգնում է ոգևորւած շրթունքներին, որ արտասանեն պարզ բառեր, իսկ իրանց բորբոքած ձայնը, Աստուծոյ պատգամների հետ ի միասին, մարդկանց հասուցանեն հազարաւոր սերունդներից յետոյ։

Հարրովի ուսումնարանը հիմնելուց մի քանի տարի յետոյ, երբ որ անոր միակ սենեակի մէջ մնացած էր հազիւ թէ 12 գիւղացի տղայ, անյաղթելի Արմադան մերձենում էր Անգլիային, իւր լայն հետքը թողնելով մեր ծովի ջրերի մէջ։ Մեր սակաւաթիւ նաւերը ընդ առաջ ելան և Աստուծոյ պարգևած փոթորկի օգնութեամբ՝ ջարդեցին այն վիթխարը և դուքս-ա-ռաջնորդին խաղք ու խայտառակութեամբ վռնտեցին։ Արդեօք ինչպէս պիտի ուրախանար Ջոն-Լայոնը Անգլիական առաքինութեան այս նոր ապացուցից, ինչպէս աղաչում էր Աստծուց (նա երկիւղած մարդ էր), որ իւր նոր դպրոցի մատաղ աշակերտները, որոնց ինքը մատակարարում էր կրօնասիրութիւն և լուրջ

հալածանքը, որ Անգլիային տառապեցնում էր, և ոչ ներքին խռովութիւնների բորբոքը։ Տարէցտարի ուսումնարանի նախկին աշակերտները գնում էին իրանց տեղերը բռնելու կենաց այգու մէջ, որպէս բարի, ազնիւ, արդարադատ մշակներ։ Տարէցտարի աշակերտները իրանց խաղերի հրապարակում վարժութիւններ էին անում մրցանակով, որ մի արծաթեայ նետ էր, և տանում էին արդարապէս արժանացած պարգևներ խաղաղ դպրոցական սենեակում. Ահա ուրեմն, կրկնում եմ, դպրոցը շարունակեց ընդարձակուել և ծաղկել, և մենք պարտաւոր ենք անկեղծ շնորհակալ սրտով յայտնել, որ վերջին ժամանակներում հաստատագկման բարձրագոյն աստիճանին և աշակերտների մէջ առող թուի գագաթնակէտին։ Եթէ Ջոն-Լայոնը այժմ կարողանար գերեզմանից վեր կենալ, թափ տալ այն անճիւնը, որ շատ տարիներ իւր պատանքի վերայ փռուած էր, և երևալ մեր մէջ, եթէ մենք կարողանայինք նորան առաջնորդել չորրորդ դասարանը, նա կը տեսնէր բանաստեղծների, պետական մարդկանց և մարտիկների անուններ, որ իրանց մանկական ձեռքերով փորագրել են կաղնու տախտակի որմազարդուածի վերայ, մենք ցոյց կու տայինք նրան, Վորդսվորթի ասելով, թէ

Մեզ հետ են ապրել այս տեղ մեծ մարդիկ,
Այս տեղ են մտածել. այս տեղ է հնչուել
Իրանց մեծիմաստ ճառերի ձայնը։

Նա կիմանար, որ իւր գիւղական ուսումնարանից դուրս են եկել անմահ բանաստեղծներ, մեծ աստուածաբաններ, գիտուն նահանգապետներ, որ հեռաւոր կուսակալութիւններում միլիոնաւոր նոր հպատակներ կառավարելու են կոչուել, պերճախօս հռետորներ, որոնց ձայնը շնչասպառ լսել է ծերակոյտը, պետական անձինք, որ քաղաքակիրթ ազգերի բախտին

ուղղութիւն են տուել, քաջամարտիկներ, որոնց յաղթութեան որոտումը թնդացել է ծով և ցամաքի սփիւռներում։ Նա կիմանար, որ իւր հաստատութիւնը թագաւորական հովանաւորութեան ներքոյ է գտնվում, անվիճելի առաջնութիւն է ստացել, ոյժ և անուն է հանել Անգլիայի կրթուած հասարակութեան մէջ։ Ի՞նչ էք կարծում, նա չէ՞ր խնդայ ի բոլոր սրտէ։ Նա չէ՞ր ցանկայ ուսումնարանի անցեալ պատմութիւնից և մեծամեծ արդիւնքներից այն խրատը հանել ձեզ հրահանգելու համար, թէ Աստուծոյ ողորմութիւնը նաև փոքր բաների հովանի է դառնում, այն խրատն եմ ասում, որ այնպէս փառաւոր կերպով նա հաստատում է իւր իսկ վարքով, մի պարզ երկրագործի վարքով, թէ բարի գործը անվարձ չի մնում։

Հարրովեան ուսումնարանի երկարակեցութիւնը դրաւական է անոր յարատև ծաղկման։ Մի անգամ խոր արմատ ձգած այդպիսի հաստատութիւնն էլ չի կարող ոչնչանալ։ Ինչպէս որ գոյութիւն ունի, այնպէս էլ գոյութիւն կունենայ բախտի և անբախտութեան օրերում։ Այդ հաստատութիւնը քայլ առ քայլ կամ դարձեալ կը բարձրանայ, կամ խոր խաւարի մէջ կընկնի և անյաջողութեան անփառաւոր հետք կը թողնի։ Հարրովի բախտը ձեր ձեռքին է, սիրելիք։ Մի սերունդ կարող է ամբողջ ապագան պատրաստել։ Այս տեղ պատանին առ հասարակ հինգ տարուց պակաս է մնում, բայց անհնարին է գուշակել այն բոլոր բարիքը կամ չարիքը, ինչ որ նա այդքան ժամանակում կարող է գործել։ Հինգ տարուց յետոյ ձեզանից շատ ոսկաւներ կը գտնուին այս նստարանների վերայ, բայց մինչև ձեր կենաց վախճանը ձեր սրտում կը պահուի այդ ժամանակի յիշատակը։ Իմացէք, որ ով որ ձեր տեղը բռնի, նա կամ կը թշուառանայ ձեր

կատարած մեղքերից կամ կը շահուի այն բարիքներից, ինչ որ դուք այս տեղ ցանել էք և կը ցանէք։

Այս վայրկեանում դուք էք կազմում Հարրովի ուսումնարանը։ Այդ հաւաքական մարմինը—որ անդադար փոփոխվում է իւր բաղադրիչ մասերով—ներկայացուցիչ է հազար յաջորդ խմբակցութիւնների։ Ինչպէս որ ալիքները անցնում անյայտանում են, իսկ գետը մնում է, այնպէս էլ մեծ դպրոցի անդամները անդադար հեռանում և նորոգվում են, իսկ ինքը դպրոցը մնում է։ Անոր զօրութիւնը կազմվում և ուղղվում է առաւելապէս հզօր աւանդութիւններից, իսկ իւրաքանչիւր պատանի նպաստում է անոր զարգացման։ Մեր գործը մեզ հետ դուրս չի գալիս, երբ որ մենք հեռանում ենք դպրոցից։ Գործը շարունակում է իւր ներգործութիւնը ընդարձակել աւելի և աւելի մեծամեծ շրջաններով, ինչպէս որ ջրի մէջ ձգած քարը համակենդրոն շրջաններ է կազմում։ Գործը վկայ է հանդիսանում կամ ի նպաստ մեր կամ հակառակ մեր։

Պատասխանեցէք ինձ Հարրովի դպրոցի այժմեան սերնդեան աշակերտներ,—ես չեմ կարող ձեր փոխարէն պատասխանել—արդեօք Հարրովի պատիւը ձեր ձեռքում բարձրացա՞ւ, թէ ընկաւ։ Ի՞նչ է եղել ձեր գործը, ի՞նչ էք սերմանել։ Լաւացրե՞լ էք ձեր դպրոցի աւանդութիւնները, թէ չարութեան ձեր բաժինն էք վճարել։ Աւելի փառաւորե՞լ էք Հարրովի անունը, թէ նսեմացրել էք։ Այս բոլորի մասին լաւ մտածեցէք, և եթէ աննպաստ պատասխան ստանաք, աղաչում եմ ձեզ, գէթ ամաչեցէք։

Ենթադրենք, թէ դուք մի ազնուական ցեղի վերջին շառավիղը գոլով, արդեօք ի՞նչ կզգայիք, եթէ անուղղելի մշտական նախատինք բերէիք ձեր հռչակաւոր տոհմին։ Բայց երևելի տոհմի մաքուր զինադրոշի

մէջ պատճառած մի բիծ՝ ոչինչ բան է, համեմատու-
թեամբ այն նախատինքի և ամօթի, որ դուք ձեր
թուլութեամբ կամ ամբարշտութեամբ կարող էք բե-
րել մեծահռչակ դպրոցի վարկին, այն դպրոցի, որ
աւելի ձեզ պատիւ է մատուցանում, քան դուք երբ
և իցէ պատիւ տալ կարող էք։

Ձեր ջերմ սրտով և մեծանձնական ցանկու-
թիւնը, որ փառաւորէք ձեր կրթավայրը, որ ապրէք
այնպէս, որպէս զի «Հարվարդի Դպրոցի աշակերտները
սերունդէ սերունդ յիշատակեն ձեզ, պարծենալով, թէ
«դա էլ Հարվարդի մէջ է դաստիարակուել», պատուա-
կան կեանքի գեղեցիկ նշան է։ Ամէնքդ չէք կարող մեծ
մարդ լինել։ Երևի թէ ձեզանից շատ սակաւները մե-
ծութեան հասնեն։ Սակայն ամենախոնարհ վիճակումն
էլ, դուք կարող էք արքայական կերպով կատարել ձեր
պարտականութիւնները և Հարվարդի առաջինի անձանց
երկայն ցանկի մէջ գրուիլ։ Որոնց անունները որ այս
պղնձէ տախտակների վերայ փորագրած են, եղել են
ոչ մեծ և ոչ հռչակուած մարդիկ։ Բայց ամէնքը վախ-
ճանել են, իրանց պարտականութիւնները համարձակ
և քաջ կերպով կատարելուց յետոյ, ուստի և դոցա
անունները մենք կարդում ենք տխուր պարծանքով։
Եթէ Աստուծոյ տնօրինութեամբ ձեզ վիճակուէր մի
հասարակ, անյայտ ուսումնարանի աշակերտ լինել,
այն դէպքումն էլ պարտաւոր էիք սիրել, յարգել և
բարձրացնել ձեր կրթավայրը։ Բայց Աստուած ձեզ կո-
չել է ամենաբարձր, պատուականագոյն, առաջին տեղ
բռնող դպրոցում սնանուիլ։ Պարծենալ դպրոցով ոչ
միայն ներելի է, այլ և արդարութիւն է, ոչ միայն
հասկանալի է, այլ և ցանկալի։ Այս հաստատութեան,
և ոչ թէ ուրիշին, պէտք է նուիրած լինի ձեր մտեր-
մութիւնը, այս հաստատութեան, և ոչ ուրիշին,
պիտի պատկանէ ձեր ասպետական հաւատարմու-

թիւնը։ Եթէ Հայրոմը պակասութիւններ ունի, արդ. ճոխացրէք նոր առաւելութիւններով, շրջապատեցէք լուսագոյն կարգերով, հրապուրիչ կացուցէք աւելի գողտրիկ յիշատակներով։ Քաջութեամբ արտաքսեցէք այն չարիքը, որ եթէ և իրօք կայ, պէտք է հալածուի մութ անկիւններից։ Իսկ առաւելապէս մի՛ մոռանաք այն պերճախօս խորհուրդը, որ նորերիս լսեցինք. «Թող իւրաքանչիւրիդ մեհեանը սրբութեան սեղան դառնայ, որովհետև դուք տաճար էք Աստուծոյ», և աղօթեցէք Հայրոմի համար անկեղծ սիրով, որպէս զի Աստուծոյ Գառան լոյսը լուսաւորէ այդ վայրը։

Այժմ դառնանք հասարակաց դպրոցի նպատակին և կոչման։ Այդ բաները արժանի են ձեր պարծանաց և սիրոյ։ Դպրոցի նպատակն ու գլխաւորն այն է, որ հնար տրուի մանուկին խելք և արժանաւոր մարդ դառնալու։ Միևնոյն ժամանակ չպէտք է պակասի հոգացողութիւն առողջութեան և մարմնական ուժի մասին։ Դպրոցը մանուկին օգնում է, որ նորա բաց-ուող միտքը կազմակերպուի, սովորեցնում է նորան իմանալ ժամանակի գինը, փրկում է նորան ծուլու-թեան և ապիրատութեան ճանկերից։ Բայց առաւելա-պէս աշխատում է, որ աշակերտը մեծանալով դառ-նայ մաքուր, ազնիւ, քաջ առոյգ մարդ, ջէնտըլմէն և քրիստոնեայ։ Միով բանիւ դպրոցի կոչումը այն պիտի լինի, որ մատակարարած դաստիարակութեամբ մա-նուկը դառնայ, ինչպէս որ մեր ամենօրեայ աղօթքն ասում է, բայց մենք միշտ մոռանում ենք, «օգտաւէտ անդամ Եկեղեցւոյ և հայրենեաց և ապա հաղորդակից յարութեան անմահ փառաց»։

Որքան որ կատարելութիւնից հեռու լինին անգ-լիական հասարակաց դպրոցները, այնու ամենայնիւ անոնք այնչափ լաւ լուծեցին իրանց խնդիրը, որ ամե-նայն իրաւամբ մասն Անգլիայի պանծալի հաստա-

տութեանց կարգը, իսկ ամբողջ Եւրոպան հիացմամբ և նախանձով է նայում անոնց վերայ։

Ես թարգմանաբար առաջ կը բերեմ մի երևելի և ձեռնհաս ֆրանսիացի հեղինակի կարծիքը. «Անգլի-այում, ասում է կոմս Մոնտալամբէրը, մի տեսարան կայ, աւելի հաղուադիւտ և հրաշալի, քան խորհրդա-րանը—այդ են անոր հասարակաց դպրոցները։ Դպրոց համեստ անուամբ պէտք է հասկանալ երեք կամ չորս ընդարձակ հաստատութիւններ, որոնց մէջ առաջնա-կարգ են Իտոն և Հարրօվ դպրոցները։ Ատոնց մէջ պատրաստվում են Անգլիայի մեծատուններին զաւակ-ները, որոնք ամենապատուական առաջնորդութեան ներքոյ և անգլիացուն յատուկ ինքնարգութեամբ ստանում են միանգամայն դասական և արիութեան դաստիարակութիւն։ Այս հաստատութիւնները նախ և առաջ ներգործում են աշակերտների վերայ այն մեծ մարդկանց յիշատակներով, որ իրանցից առաջ նոյն նստարանների վերայ նստած են եղել և այնու-հետև գնացել են, որ կառավարեն աշխարհի ամենա-ընդարձակ պետութեան բախտը։ Մանուկները այն-տեղ ազատութիւն են վայելում, որ մեզ տարօրինակ է թւում։ Առանց հսկողութեան, առանց որ և է սահմանափակութեան, բացի աւանդութեամբ սրբա-գործուածներից, նոքա սկսում են բուռնեռանդ սրտով և ուժով հմտանալ անձամբ անձի կառավարութեան արուեստին։ Եւ նոքա թէպէտ շատ վաղ են ընտելա-նում ազատութեան, բայց նոցա մէջ չի նշմարվում ոչ կոպտութիւն, և ոչ աներես յանդգնութիւն կամ լպրշութիւն։ Մանուկների խաղերը տեսնելով, հասկա-նալի է դառնում դուքս Վելինգտոնի բացականչու-թիւնը, երբ որ նա ծերացած հասակում կրկին այցե-լեց իւր կրթութեան բնավայրը, յիշեց իւր մանկու-թեան օրերի մարմնական վարժութիւնները և երբ որ

իւր ընկերակիցների զաւակների մէջ ևս գտաւ նոյն-
պէս վաղօրօք զարգացած ոյժ, թէ «Ահա Վատերլօօի
յաղթութեան բուն պատճառը»։

Սակայն, սիրելիք, թէպէտ ես չեմ ուզում խըտ-
րութիւն դնել «աշխարհական» և «հոգևոր» ուղղու-
թիւնների մէջ, և ներողութիւն չեմ խնդրում, որ
խօսում եմ ամբիոնի համար անսովոր նիւթի մասին,
բայց և այնպէս չեմ մոռանում, թէ հենց այս տեղ,
Աստծու տան մէջ, մենք պէտք է նախ և առաջ
ընդգծենք հասարակաց դպրոցի ծայրագոյն նշանակու-
թիւնն ու կոչումը—որ է սրտի հրահանգութիւն։ Ոյժ,
առողջութիւն, գեղեցկութիւն և մինչև իսկ գիտութիւն
—աճիւն և մոխիր են՝ սրբութեան համեմատութեամբ։
Մեզ համար աւելի լաւ է, որ դպրոցից մէկ հատ
բարի մանուկ ելլէ, քան յիսուն խելօք, ուժեղ և լաւ
սովորածներ։

Սիրելի՛ք, եթէ Հարրովի դպրոցը հռչակ է ստա-
ցել և յարգուած է, այդ բանի գաղտնիքը այս վայրն
է, ուր որ միշտ աշխատել են ձեր մէջ պահպանել սէր
առ Աստուած և ձեզ յիշեցնել Քրիստոսի օրինակը։
Դուք միշտ եղել էք բարեպաշտ մարդկանց խնամոց
ներքոյ։ Մենք երբէք չենք սկսում և աւարտում մեր
պարապմունքները, առանց ջերմ սրտով աղօթելու առ
Աստուած, որ նա օրհնէ մեր աշխատութիւնները։

Թող ինձ, եղբարք սիրելիք, չմեղադրեն, իբր թէ
հասարակաց դպրոցի վտանգներն ու փորձութիւնները
չգիտեմ։ Եւ եթէ, Աստուած մի՛ արասցէ, ձեր մէջ
կան փչացած սրտեր,—միթէ այդ բանի պատճառը
Հարրո՞վը պիտի համարուի։

Ի՞նչ կասի դպրոցիս բարեպաշտ հիմնադիրը,
եթէ կարողանար աչքը բաց անել և իրեն մեր մէջ
երևալ, սքանչանալով նայէր այս սիրուն մատրան պա-
տերին, ուր գրուած են քաջ մարտիկների անունները,

չպէտք է համբերէք արատն ու մոլութիւնը, մանաւանդ ձեր ներկայութեան առաջ։

Դուք չպէտք է վախենաք ապականուած ընկերի անարգ ծաղրից։ Վախեցէք դատապարտանքից, մեղքից, խղճի խայթից, յաւիտենականութիւնից, Աստծուց։ Դուք ասում էք, թէ մեծամեծաւոր գայթոցից չարիք վերացնելը, արմատով հանելը—դժուար բան է, ծանր գործ է։ Այո՛, այնչափ դժուար, որչափ և դժուար է վէրքը առողջացնել, այն ինչ անպատճառ պէտք է առողջացնել, ապա թէ ոչ վարակումը կը տարածուի և ամբողջ մարմինը կը փտի։ Երանի թէ գործի դժուարութեան մասին չխօսէիք. որչափ դժուար լինի, այնչափ աւելի պատիւ է դժուարութիւն յաղթողին, այնչափ աւելի կարևոր է անոր դէմ մաքառումը։ Ոչ թէ իսկական դժուարութիւնն է ձեզ վախեցնում, ոչ թէ անկարելութիւնն է ձեզ վախեցնում, այլ ինչից որ վախենում էք, այն ձեզ թւում է դժուար. համարձակութիւն առէք և դժուարութիւնը կը վերանայ։ Այս է ձեր պարտքը և այս բանը պէտք է պսակէք յաջողութեամբ։

Նորամուտ աշակերտը, նոյն իսկ փոքրագոյն մանուկը, իսկոյն պէտք է բարութեան կողմը կանգնի, իսկ եթէ դորա միամտութիւնը ծաղրէ մէկը, նորան զգացնել և հասկացնել տուեցէք, թէ թող չհամարձակուի հանաքներ անելու։ Մի՛ վախենաք, թէ ձեր ազդեցութիւնը թոյլ կը լինի. ոչ մի ազդեցութիւն թոյլ չէ, իսկ եթէ իրօք այդպէս էլ լինի, թոյլ ազդեցութիւնների հաւաքական գումարումը աւելի անյաղթելի է լինում, քան թէ մասնաւորների մեծամեծ հերոսական ջանքերը։

Դուք ամէնքդ—տաճար էք Աստուծոյ։ Ամէնքդ ի միասին Աստուծոյ հրաշակերտ արարչագործութիւն էք, իսկ Քրիստոս՝ հիմք։ Տաճարի ամէն մի անգամ

պէտք է լինի հոգևոր կերտուածքի կենդանի, սիրուն, գեղեցիկ ակն պատուական: Կա՞ն ձեր մէջ այդպիսի պատանիներ: Անշուշտ. գոհութիւն Աստուծոյ ձեր մէջ այնպիսի տղայք կան, որ պատիւ են բերում այս վայրին—Ջանասէր, ազնիւ, սրտով, մաքուր, աշխոյժ և ուժեղ են, վասն զի չափաւորութիւնն ու զգաստութիւնը—կատարեալ զօրութիւն են: Նոքա գեղեցիկ են երեսով, որովհետև գեղեցկութիւնը բարութեան կնիք և դրոշմ է, քաղաքավարի և ազնիւ են, որովհետև առաքինութիւնը իսկական ազնուութիւն է, իսկ ազնիւ ձևերը՝ ազնիւ խորհուրդների ծնունդ են: Նոքա գոյնզգոյն շքեղ ակներ են չափիղայի երկնակամարում, զանազան՝ իրանց կարգով, իրանց փայլով, բայց ամէնքն էլ գեղեցիկ, ամէնքն էլ արժանի գործածուելու Քրիստոսի պատուական անկեան վէմի մէջ:

Թող նոցանից մէկը լինի չափաւորութեան մեղեսիկ կամ ամեթոյս (մանիշակ քար), միւսը մաքրութեան մարգարիտ, երրորդը ջերմեռանդութեան կայծքար (կարմիր եաղուտ): Նոցանից իւրաքանչիւրը, ըստ իւր կարգի, կը լինի երկնային փայլի պէս փայլող և երկնային աստղերի պէս յաւիտենական գանձ Աստուծոյ: Դուք ամէնքդ այդպէս եղէք,—և այն ժամամանակ ցնորած, երևակայած, մտացածին բարեկեցութեան երկիրը, չնաշխարհիկը, Նոր եդեմը—իրագործած կունենանք: Տուէք մեզ այդպիսի դպրոց—և էլ չենք ուզում աւելի լուսաւորագոյն տաճար, աւելի սրբազան սրբութիւն, աւելի երջանիկ տուն: Իրականութիւն դարձած իդէալը՝ աւելի սքանչելի աստուածային տեսարան կը ներկայացնէ, քան նիւթական ճարտարութիւնների ամենափայլուն յերիւրումը:

«Նեղեալդ, խախտեալդ ի մրրկէ, ոչ սփոփեալդ ի մխիթարութենէ. ահաւասիկ պատրաստեալ եմ կարկեհան զքարինս քո, և զհիմունս քո շափիղա: Եւ

կանգնեցից զաշտարակս քո յասպիս, և զդրունս քո յականց վանակայց. և զամենայն սահմանս քո յընտիր ընտիր ականց պատուականաց։ Եւ ամենայն որդիք քո ուսեալք ի Տեառնէ, և ի բազում խաղաղութեան մանկունք քո [1])։

Տայ Աստուած, որ և մեզ համար լինի այս մարգարէութիւնը, թող այսօրուայ մարգարէութիւնը ոչ ապաքէն վաղը իրագործուել կարող է։

1). Ես. ԾԴ. 11—14։

## ԺԳ.

## ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ԵՒ ՄԱՐԴԿԱՅԻՆ ԽՆՋՈՅՔ.

Ձեզ համար միշտ պատրաստ է երկու խնջոյք—աստուածային և մարդկային։ Սեղանի վերայ այն մաքուր նուրբ կտաւը, որով ծածկուած է բեկեալ հացը և նուիրեալ գինին, յիշեցնում է ձեզ այն խնջոյքը, որ Աստուած ձեզ համար պատրաստել է կենաց անապատի մէջ։ Երկնային հացը՝ այն կերակուրը, որ Աստուծոյ կամքը կատարելով է պատրաստվում, Ջրի աղբիւրը, որ ամէն ծարաւութեան պապակն է կտրում և յաւիտենական կեանքն է տանում, կենաց ծառը, որ զարդարած է անմահ ծաղիկների վարդերով, որոնցից իւրաքանչիւրը նշանակում է անմեղութիւն կամ առաքինութիւն,—այս ամէնը փոքրաթիւ պարզ նշաններ են Աստուծոյ խնջոյքի, ուր որ Աստուծոյ ձայնը անդադար հրաւիրում է Իւր զաւակներին։

Սակաւաթիւ, պարզ նշաններ են. ասոնց մէջ չկայ ոչ փարթամութիւն, ոչ հրապուրիչ փայլ, ոչ արքայական պերճութիւն։ Իսկ մարդկային խրախութեան խնջոյքը աւելի զարդարուն է յարտաքուստ։ Այդ խնջոյքը աւելի շլացուցիչ է իւր հեշտացուցիչ փայլով։ Հարստութիւնն այդ տեղ հեղում է ոսկու և արծաթի հեղեղներ, արուեստը ստորանում է և այդ տեղ է զոհ բերում գոյների նրբութեանց և ձևերի կատարելութեանց գաղտնիքը, գեղեցկութիւնը ժըպ-

տում է ամենավստանգաւոր կերպով, մեղանչական խնդութիւնը ծիծաղում է անհոգ չուայտութիւններում։ Այս սեղանի վերայ հպարտութիւնը ծածանեցնում է իւր ամբարշտութեան դրօշակները, իսկ փառամոլութեան փողերը հնչեցնում են ամենաթմբեցուցիչ ձայներ։ Այս է այն ամէն փարթամութիւնների և զեղխութիւնների խնջոյք, ինչ որ աշխարհը հրապուրելով տալիս է իւր պաշտողներին։ Ամենայն օր աշխարհը մեզ էլ է առաջարկում նոյնը։

Այսպէս են երկու խնջոյքներ։ Նկատեցէք զանազանութիւնը։ Կենաց հացի համն առէք, և դուք այլ ևս չէք քաղցի։ Խմեցէք ջինջ բիւրեղեան գետից, և դուք այլ ևս չէք ծարաւի։ Ձեր հոգին գոհութիւն կըզգայ, թէ մէկը և թէ միւսը վայելելուց յետոյ։ Բայց նայեցէք աշխարհային կենաց տօնախմբութեան և տեսէք, թէ ինչ կը հետևի։ Դուք ուտում էք անյագ և որքան որ աւելի ուտելով՝ ձեր կերածը կոշտ ու աղքատիկ կերակուր է դառնում, այնքան աւելի զգում էք սովատանջութիւնից կըծող տաղտկութիւնը։ Դուք այնքան էք խմում, մինչև որ բաժակը դատարկւում, սակայն ըմպած խմիչքի դառնութիւնը աւելի է տոչորում ձեր չորացած կոկորդը։

Դուք խնջոյքի էք նստում և, որպէս թէ դիւթական դաւաճանի չարժմամբ, արդէն ամենայն ինչ տեսնում էք իւր իսկական լուսով։ Դուք նստած էք ապականութեան ոսկէզօծ մնացորդների մէջ։ Այդ տեղ գեղեցկութիւնը մաշվում է, հարստութիւնը փչանում է, հանդերձը ցեցակեր է լինում, ոսկի և արծաթը կարմրում է ժանգից ու կեղտից։ Այս բաները առաջ չէիք հաւատում, որովհետև ամենայն ինչ սքողուած էր և կեղծուած, իսկ անմտութեան և հեշտասիրութեան թանձր վարագոյրը փակել էր ձեր աչքերը։ Դուք չէիք հաւատում, բայց այժմ առ աչօք

տեսնում էք։ Դուք յուսահատուած ձեր շուրջն էք նայում, բայց միայն ապականութիւնից մնացածներ էք տեսնում։

Ձեզանից շատերը տակաւին նստած էք այդ խնջոյքին, դիւթած և հրաշացած։ Մեր ընկերներից շատերը այդ տեղ նստած՝ հոգնած հիւրերին են նմանում։ Բազմաթիւ զեղխասէրներ անդադար խառնվում են այդ տեղ։ Եւ որովհետև խնջոյքի հրապոյրը այնչափ գրաւիչ է, որ մինչև ինքներդ չտեսնէք այն սոսկալի զարհուրանքները, ոչ ոքի ձեռքը չի կարողանայ պահպանել ձեզ այդ խորխորատի մէջ ընկնելուց, ապա ուրեմն լսեցէք ինձ։ Այսօր դուք հրաւիրուած էք ուրիշ, աւելի մաքուր տօնախմբութեան։

Տէր Աստծու վարդապետութեան հետևելով, ես կը պատմեմ ձեզ, թէ ով հրապուրուեցաւ այն տեսակ խնջոյքի աղէտալի հրաւէրից։ Այս պատմութիւնը միայն մի հոգու պատմութիւն է, բայց ով գիտէ թէ քանի՜ անթիւ մարդկային կեանաց պատմութիւն է։ Կարելի է հէնց այնպիսիների պատմութիւն է, որ այժմ իրանց ջահել աչքերով ինձ նայում են։ Այս պատմութիւնը այնքան յայտնի է, որ այս տեղի մանուկներից փոքրագոյնն անգամ լաւ գիտէ։

Արեգակն ամենայն առաւօտ՝ մեր մատրան պատուհանների կարմիր ու կապոյտ ապակիներից թափանցած ցոլանալով՝ լուսաւորում է մի պատկեր, ուր որ այդ դէպքն է նկարած։ Բայց աւելի քան եօթը տարուայ ընթացքում միայն մէկ անգամ առիթ ունեցայ այդ պատմութեան վերաբերեալ քարոզը լսելու։ Այն ինչ՝ մոլորեալ որդու առակը [1]) Քրիստոսի առակների մէջ ամենաքնքոյշ, ամենապատշաճն է։

«Առն միոջ էին երկու որդիք· ասէ կրտսերն ի

---

1) Ղուկ. ժե. 11—32։

Նոցանէ ցհայրն. Հայր, տուր ինձ բաժին, որ անկանի ինչիցդ: Եւ նա բաժանեաց նոցա զկեանսն: Այն որդիքը — մենք ենք: Մեր մէջ բաժանում է Տէր Աստուածը Իւր ողորմածութեան պատուական ձիրքերը: Մեզ ամէնիս Նա տալիս է այս երկիրը իւր ամենօրեայ հրաշալիքներով և զօրութիւններով: Նա մեզ տալիս է արևի ծագումն ու մայր մտնելը, ծաղիկներ, երկնային ցօղ, լեռներ և գետեր, երկինք և դաշտեր: Մեզ ամէնիս Նա առաքում է առողջ օդ ցերեկը և քաղցր քուն գիշերը. իւրաքանչիւրիս տալիս է բնակարան, բարեկամի կամ եղբօր, ամուսնու կամ զաւակի քնքոյշ ձայնը, տարուայ ժամանակների փոփոխուող յաջորդութիւնը, մահուան քաղցր խորհուրդը, երկնային արքայութեան յոյսը:

Իսկ դուք, բացի այս բոլորից, ունիք կենաց բարիքների ուրիշ, մասնաւոր, թանկագին պարգևներ ևս. «տեսողութեան և լսողութեան հրաշալիք, պատանեկութեան ոսկի ժամեր», ժամանակի անգին գանձ: Այլ և ձեզանից շատերը ունին հարստութիւն, տոհմային մեծութիւն, ոյժ, շահաբեր դիրք, մեծազօր խելք: Սոքա Աստուծու պարգևած տաղանդներ են, ժառանգութիւն, որ Նա բաշխում է մեր ծննդեան օրը: Նա ի՞նչ նպատակով է տալիս մեզ այդ բարիքները: Արդեօք որպէս զի մենք այդ բոլորը թաղենք, ծածկենք, գործ ածենք մեզ պարարելու կամ մեզ հռչակելո՞ւ համար: Ո՛չ: Մեզ պարգևած պարգևները Իւր սեպհականութիւն են, և ոչ թէ մերը: Մենք ողորմութեամբ ենք ստացել և ոչ թէ անձամբ վաստակել ենք, և ստացել ենք ոչ թէ բոլոր բոլորովին, այլ անոնք փոխ տուած են ի սպասաւորութիւն Նորա, կամ որպէս զի գոհութեամբ, փութաջանութեամբ, սիրով գործածենք նոյնը ի փառս Նորա: Աւա՜ղ, պատանեկիկ մոլորուած որդին չէր հասկացել այս բանը:

Մենք տեսանք նորա պատկերը տան մէջ։ Այժմ տեսնենք, թէ ինչպէ՞ս է թողնում տունը։

«Եւ յետ ոչ բազում աւուրց ժողովեալ զամենայն կրտսեր որդւոյն՝ գնաց յաշխարհ հեռի»։ Յետ ոչ բազում աւուրց։ Տխուր, մեծանշանակ բառեր։ Նորաբողբոջ, կենսազուարթ մանկահասակը, միայն մի քանի օր առաջ կենաց պարգևներ ստացողը՝ արդէն ուզում է հայրական տունը թողնել։ Բոլոր չքնաղ յիշատակները, բոլոր սիրտ մտերմութիւնները, բոլոր սիրող անձինքները՝ ոչինչ են նորա համար։ Նա մերժում է տունն ու երդը, օճախի մխքուր, սրբազնագոյն մթնոլորտը, այն տեղի բարեհամբոյր առողջ հրահանգութիւնը, այն տեղի օգտաւէտ և անհրաժեշտ ինքնազսպութիւնը։ Նա երբէք չի զգացել շնորհակալութեան ամենաշնորհ հրաշագեղութիւնը, մատաղ հասակի հնազանդութեան առատ օրհնաբերութիւնը։ Նորան ի՞նչ փոյթ այս ամէնը։ Նա կամենում է այն ճանապարհով գնալ, ուր որ իրան առաջնորդում են բուռն կրքերը։ Նորա սիրտը բորբոքուած է սուտ ազատութեան ցանկութեամբ, իւր խելքով ապրելու կարստաքեր ցնորքով։ Սատանէն շշնջում է նորա ականջին. «Լինիցիս իբրև Աստուած՝ ճանաչել զբարի և զչար» 1)։ Եւ դուք տեսնում էք, որ հայրը չի արգելում նորան. թողնում է, որ ապրի ինչպէս և կամենայ, և կթէ իւր կենաց պտուղը։

Կամապաշտներին պէտք է իրանց կամքին թողնել։ Թող որ իրանց խելքով վարուելու փորձը ճաշակեն։ Այս կը լինի պատիժ և միևնոյն ժամանակ բժշկութիւն։ Երբ որ կրակոտ մանուկը նստում է կենաց կառքի մէջ, երեսը շրջում է բանականութիւնից և սանձերը յանձնում կրքերին, ապա կատաղի ձիերը

---

1) Ծնն. Գ. 5։

Նորան պէտք է վայրագ ճախրապայթութեամբ տանեն վազեցնեն, մինչև որ իրանց կարճատև ոյժը սպառուի։ Եւ այն ժամանակ նա, կառքից տապալուած, ջարդուած, աքիւնոտ, ձիերու ոտքերից կոխ տուած, գետինն ընկած կը տեսնի իւր անձը։

Այսպէս ուրեմն, հաւաքելով ամենայն ինչ—իւր ջահելութիւնը, առողջութիւնը, գեղեցկութիւնը, հարստութիւնը—ողորմելի մոլորուած պատանին, հրաժեշտի արտասուքներ տեսնելով և բարեմաղթութիւններ լսելով, ուրախ անհոգութեամբ թողեց ծնողական տունը և հեռացաւ։ Դուք այս անմիտ պատանուն դատապարտում և անարգում էք։ Դուք ասում էք, թէ նա մեծ տոհմի ճշմարիտ սերո՞ւնդ չէ, այլ ինչ որ մի կողմնակի խորթ ճիւղ է։ Իսկ մենք ամէնքս միթէ նոյնը չե՞նք արել։ Միթէ մենք սխալներ չե՞նք անում, սուտ չե՞նք խօսում, կուռքեր չե՞նք պաշտում ամէն մի դալար ծառի տակ, մեր ծնած օրից սկսած։ Միթէ մենք չորս կողմը չե՞նք տեսնում այդպիսի զաւակներ, որ մոռացել և քամու են տուել ծնողական տան մէջ մանկութեան ժամանակ լսած բոլոր մաքուր, հեզութեան խրատները։ Միթէ մեզ յայտնի չե՞ն բազմաթիւ մոլորուած որդիք, որ բառացի իմաստով փախել են իրանց մանկութեան վայրերից, սգի մէջ թողնելով մօրն ու գերդաստանը, մերժելով մանկութեան առաջնորդողին, մոռանալով Աստուծոյ պատուէրները այն խորհրդով, որ գնան սրտի ուզածին պէս ընկղմեն մոլութեան և մեղքի գլխապտոյտ յորձանքի մէջ և ապա վերադառնան (այն էլ ոչ միշտ) «անօգնական, յուսահատած, մերժուած»։ Միթէ մոռացե՞լ ենք, որ երկրիս վերայ ծնած առաջին տղան, մի և նոյն ժամանակ առաջին մարդասպան եղաւ և աքսորուեցաւ Աստուծուց, ու նորա ճակատին նշան դրոշմեց։

Պատանին գնաց աշխարհ հեռի—աւա՜ղ և որչափ

հեռու երկնքից և ծնողական տնից։ Եւ ինչպէս իւր նոր տեսածները ու լսածները այլ եւս նման չէին առաջուայ տեսածներին ու լսածներին։

Հին ժամանակներում երիտասարդ ասպետները տնից հեռանում էին, որ արդարութիւն ցոյց տան և անիրաւութիւնն ուղղեն։ Այս հրաժեշտը ազնիւ էր, յոյսերով լի նպատակ ունէր։

Բայց այսպէս չէր մոլորեալ որդու վիճակը. սորան սպասում էր պղծութիւն, վիշտ, աղքատութիւն։ Այս տեղ քաջութեան կամ արիութեան նշոյլ անգամ չկար։ Այս ճանապարհը իսպառ զուրկ էր վեհութիւնից։ Այս ճանապարհը տանում էր անմեղութիւնից մեղքին, մեղքից դառնութեան։ Սարսափելի էր սատանայի ստրուկ դառնալը, փորձութեան շշնջին հետևելը գիշերուայ սև մթին։ Դէպի որոգայթ թռչող թռչունը, մորթելու գնացող եզը—ահա այդպիսի ճանապարհորդութեան իսկական օրինակ։ Ճանապարհները զանազան են, բայց ամէնքը մահացու են։ Մինը տանում է խելագարութեան, միւսը՝ ինքնասպանութեան. մինը՝ յանկարծակի քայքայման, միւսը՝ յայտնի խայտառակութեան. բայց ամէնքը անցնում են սև ստուերների հովիտով և վերջանում են մահուամբ և դժոխքով։

Ինչ է անում պատանին այս «հեռի» աշխարհում։ Նկարագրութիւնը կարճ և պարզ է. «և անդ վատնեաց զինչս իւր, զի կեայր անառակութեամբ»։ Մենք տեսանք ծնողական տունն ու հեռագնացութիւնը։ Լրացրէք երրորդ տեսարանը երևակայութեամբ, ինչպէս որ կամենաք։ Թողէք, որ մոլորեալ որդին լաւ կշտանայ կարճատև քաղցրութիւններից։ Թող որ խաբուսիկ բախտաւորութեան շլացնող լոյսը՝ երկներևութի պէս խաղայ նորա առաջ իւր վտանգա-

ւոր հոյակապութեամբ։ Այս են պատանու երազած կարճատև ցնորքները։

Երևակայեցէք խեղճ մանկահասակին փառահեղ գինեբրուքի զրգանքների մէջ։ Նորա աչքերը բորբոքում են։ Վարդերի պսակը զգուում է նորա գլուխը։ Թող խնջութիւնը լինի բուռն, երկարատև և աղմկաձայն։ Աւելացրէք, եթէ կամենաք, սուտ բարեկամութեան նենգ շողոքորթութիւնն և կեղծապատիր սիրոյ հրապուրանքները։ Թող արատը մի առ ժամանակ չմերկացնէ այն դիւթիչ դիմակը, որով պատանին շտապեց փախչել առաքինութեան մաքուր երեսից։ Մի քանի ժամանակ տևում են այս մեղանչական զուարճութիւնները։

Ուրիշ Թոյների պէս, սկզբում մեղքը քաղցր է։ Ապա թէ ոչ, ո՞վ կուզենար մեղանչութեան համն առնուլ։ Հէքիաթների մէջ հանդիսացող Լամիա վիշապը որի՞ն պիտի կարողանար փորձութեան մէջ գրաւել, եթէ գեղեցկութեան քողի տակ ծածկուած չունենար իւր թունաւոր ժանիքներն ու օձաձև տտուն։ Թող մոլորեալ որդին այս բոլորը ճաշակէ. ոչ մի մարդ երկար չի վայելում այսպիսի զուարճութիւնները։ Հետևեալ խնջոյքը, ուր որ մենք պատանուն կը պատահենք, էլ առաջնին նման չի լինի։ Նա վատնեց իւր կարողութիւնը անառակութեամբ ապրելով, ուրեմն չպէտք է զարմանալ, եթէ ձեռին էլ ոչինչ չմնայ։ Այս տեսակ կեանքում չափաւորութիւնը տեղ չի գտնում։

Զարմանալի է, թէ ինչպէս մարդիկ վատնում են կենաց պարգևները, Ո՛չ, «վատնել» բառը դեռ այնքան էլ ազդու չէ։ Նոքա շռայլում, ցրիւ են անում, լափում են։ Եւ տեսէք, թէ նոքա ինչպէս են լուանում իրանց երեսի միւռոնը, մերժում են կենաց ամենայն ազնուութիւն և սրբութիւն, կարծես թէ

կերակրի ախակը լքում․ մարգարտագործում են և պա-տարկեցնելով՝ մեկզի են չարչարում: Շուտ՝ շատ շուտ տեսակ մոլորեալ հոգիներ, որ ուրախութեան չտեսնա-ջանները հատել են: Պատանեկութիւնը կորաւ զարմանալի արագութեամբ, ոյժը ջլատուեցաւ, գեղեցկութիւնը թառամեց, առողջութիւնը քայքայուեցաւ, յագուրդն ու յափրանքը կարծես թէ երկարատև կեղծ ցաւագարութիւն դարձան: Նոյն իսկ քաղցրութիւն վայելելու ընդունակութիւնը մաշուեցաւ և սպառուեցաւ:

Հեշտախութիւնը զարմանալի կերպով վաղ է հասնում. ջահելութիւնն անյայտանալուց յետոյ՝ շատ վաղ կորչում է ճշմարիտ խնդութիւնն զգալու կարողութիւնը: Պատանին զգում է, որ ինքն իրան սպանում է, կամ թէ արդէն սպանել է իւր մէջ ճշմարիտ առողջարար զուարճութիւնը: Դևը խոստանում է, բայց չի կատարում խոստումը: Ով որ իւր հոգին վաճառում է ստախօսին, թող չզարմանայ, եթէ ի վարձատրութիւն ստանայ միայն ստութիւն և խաբէութիւն:

Մեղքը գձուձ կերպով է բաժանում արդէն իսկ աղքատիկ և թունաւոր զուարճութիւնները: Տալիս է միայն այնքան, որ գայթակղեցնէ, բայց ոչ թէ հանգստացնէ. միայն այն չափով, որ ամբողջ կենաց համար լոկ գրգռէ և բորբոքէ ապականուած ճաշակը, բայց ոչ այն չափով, որ գէթ մի օրուայ համար գոհացման զգացում տայ: Մեղքը խոստանում է բերկրութիւններ, իսկ տալիս է իւր միակ կարողացածը, այն է՝ իւր զզուելի ներկայութիւնը և մահը, որ միշտ մեղքի հետքերով է գնում և իւր նետերն է սրում:

Ուրեմն լսեցէք շարունակութիւնը. «և իբրև սպառեաց զամենայն, եղև սով սաստիկ յաշխարհին յայնմիկ»: Այն հեռու աշխարհում միշտ սով է թա-

դատողում։ Նախ քան հոգին խաղաղ հանգչի, խեղճ շունչն այդ ժամանակ ճնշուածութեան է մատնվում, մարդու մէջ դեռ եւս մի ձգտում է մնում դէպի լա-ւագոյն, դէպի վեհագոյն կեանքը, որից որ իւր անձը զրկուած է գտնում ընդ միշտ անդարձ կերպով։ Իսկ երբ որ հոգին արդէն հանգած է լինում և շունչը անասնացած, սարսափելի տգիտութիւն է սկսվում նաև այնպիսի կերակրի համար, որ այլ ևս հաց չէ, և ծարաւութիւն՝ այնպիսի ջրերի համար, որոնք աւելի ևս տոչորում են պապակը։

Մեղքի աշխարհը չարաչար սովի աշխարհ է, որ լցուած է միայն զանազան հիւանդութիւններով և տեսակ տեսակ մահերով։ Այն տեղի սոված բնակիչ-ները աստիճան առ աստիճան անցնում են վատից աւելի վատթարագոյնին, սատր կարգի զուարճու-թիւնից՝ միշտ աւելի նսեմացուցիչ մեղքերին։ Բայց այս բաներն ևս հետզհետէ աւելի անհամանում են և կորցնում են առաջուայ բուրած հոտը։ Աւելի տխուր և աւելի խրատական բան չկայ, քան այն սգոյ եր-գերը, որով այս աշխարհի խանձացած որդիք ողբում են իրանց երիտասարդութեան թռած ուրախութիւն-ները։ Նոցա համար երիտասարդութիւնը եղել է մի տենդային քուն։ Նոքա երազել են կերակուրներ, բայց զարթնելուց յետոյ սոված են մնացել։ Եւ երբ որ շուրջը նայել են, իրանց կողքից աւելի դառն բան չեն գտել։

Ո՞ւր են այն բոլոր անմտութեան, զուարճու-թիւնների, մեղքերի ժամերը. հետքն անգամ չի երե-ւում։ Հապա ինչո՞ւ են վաճառել նոքա իրանց հոգին։ Նոքա կարծես թէ նստած են այն պալատի մոխրի վերայ, որ այրել են իրանց ձեռքերով։

Մոլորեալ որդին ընկաւ կարօտութեան մէջ—և սկսաւ ինքն չքաւորել»։ Այս էլ անլուր բան չէ։

ծերը՝ անառակ խօսքերն են, մոխիրը՝ անմաքրութիւնն է, իսկ վախճանը՝ դժոխք է»*)։

Վերջին՝ չորրորդ տեսարանում մենք մոլորեալ որդուն տեսնում ենք, ամենայն յարգանք կորցրած դէպի իւր անձը և բոլորովին կորած։ «Եւ գնացեալ յարեցաւ ի մի ումն ի քաղաքացւոց աշխարհին այնորիկ. և յղեաց զնա յագարակ իւր արածել խոզս»։

Հիմա այլ ևս չենք տեսնում ոչ պայծառ լուսաւորած խնջոյք, ոչ վարդերի պսակ, ոչ գոհութեան ժպիտ, ոչ ծխող խունկ, ոչ արբեցնող խմիչք։ Մեզ ներկայանում է միայն ցնցոտիք, սով, աղքատութիւն, միայնակութիւն և մի այնպիսի պարապմունք, որ նոյն իսկ աղտոտ, դիւահար գադարացիք (գերգեսացիք) նուաստացուցիչ էին համարում։ Այդ պարապման անունն անգամ զզուանք և ատելութիւն էր յարուցանում հրէից մէջ։ Նոցա աչքում այդ պարապմունքը անյոյս և անել չքաւորութեան նշան էր։ Այս ինչ սարսափելի անկումն էր հարուստ, համարձակ պատանու համար, որ նոր էր հեռացել ծնողական տան խաղաղական ուրախութիւնից, այն անկասկած յուսով, թէ կերթայ կեանք վայելելու, անկախ կը լինի, ազատութիւն կունենայ։ Ո՞ւր են այժմ իւր նախկին բոլոր բարեկամներն ու շողոքորթները, որ նորա բարեկեցութեան հաղորդակից էին. ո՞ւր են նորա ուրախ գինարբուքի սրտակից ընկերները։ Նոքա՝ հարստութեան պէս՝ հեռացան նորանից։

Ճշմարիտ բարեկամութիւնը այդ ճանապարհով չի հաստատվում։ Միայն առաքինութիւնն ու արդարութիւնը ստեղծում է բարեկամութիւն, և միայն բարձրախոհ, ազնուամիտ մարդկանց մէջ այդպիսի մտերմութիւն է գոյանում։ Նոյն իսկ լաւագոյն մար-

*) Երանելի Օգոստինոս։

դը, որ գիտէ թէ որչափ սրբազան զգացմունք է ճշմարիտ բարեկամութիւնը, կարող է չգտնել այդ բարերը և իւր կեանքը թառամեցնել տխուր միայնակութեան մէջ, խորշելով այնպիսի կեղծ բարեկամութիւնից, որով «բարեկամ» մեծ անունը արատաւորվում է։ Եթէ լաւագոյնների հետ այսպէ՞ս, որչափ աւելի ևս վատթարների հետ։

Զուարճութիւնների, արատների, մոլութիւնների և յանցանքների մէջ մասնակցութիւնը հերիք չէ, որ ապա մարդիկ սերտ օրտով միանան իրար հետ։ Ընդհակառակ՝ այդպիսի մասնակցութիւնը անվրէպ սկիզբ է յաջորդ խորշութեան։ Նոքա, որոնք ձեզ շողոքորթում և փչացնում են, որոնք ձեզ մղում են մեղքի մէջ և ծիծաղում ձեզ վերայ, նոքա, որոնց երկիւղից կամ որոնց գովեստից դուք ձեր անդրանկութիւնը վաճառում էք և բարեպաշտութեան գանձը շների ոտի տակ էք ձգում, — երբէք չեն լինի և չեն կարող լինել ձեզ բարեկամ։ Նոքա միայն անարգում են ձեր թուլութիւնը, իսկ դուք շատ շուտ սովրուած կը լինիք ատել նոցա՝ իրանց վարմունքի համար։ Նոքա միայն խաղեր կը խաղան ձեզ հետ, մինչև որ ձեզ իրանց մակերևոյթը իջեցնեն, իսկ յետոյ կը շպրտեն ձեզ արհամարհութեամբ։ Երբ որ ձեր ընկերակցութիւնը իրանց ձանձրացնէ, նոքա կսկսեն ծիծաղել ձեր դժբախտութիւնների վերայ, իսկ երբ որ դուք իրանց նպատակներին անպէտք դառնաք, ձեզ կուղարկեն էրանց խոզերին արածելու։

Այսպէս ուրեմն, մենք քայլ առ քայլ մօտենում ենք խեղճ պատանու ճգնաժամին, որ այնպիսի խօսքով է արտայայտվում, որպէս թէ մի անհուն յուսահատութեան արձագանք է լսվում մեր ականջում. «Եւ ցանկայր լնուլ զորովայն իւր յեղջերէն, զոր խոզքն ուտէին, և ոչ ոք տայր նմա»։ Եւ ցանկայր..., այս

մ՞ինչ տարօրինակ, անբնական ցանկութիւն էր, և ինչպէս սաստիկ պիտի լինէր սովը, որ խոզի կերածն ուտելու տենչ է զարթեցրել։

Կար ժամանակ, երբ որ այդ պատանին սնուցւում էր առողջ, մաքուր կերակրով։ Նա հագնում էր լաւագոյն պատմուճան, մատներին մատանիներ ունէր և անմեղ ուրախութիւնների ժամանակ ուտում էր պարարակ եզի խորովածներ։ Այժմ նորա հոգեկան կեանքը միայն աղտոտութիւն, նուաստութիւն, միայնակութիւն, ցնցոտիք, չքաւորութիւն և սով, որ իւր կենաց բոլոր ջղերն են հալում և մաշում։ Ո՛հ, այս սոսկալի սովը, որ սրտի մէջ ծածկուած օձի պէս է կրծում և խայթում։ Ոչինչ չի կարող թեթևացնել սովի տանջանքը կամ վերացնել սովը։ Նա այնպէս փչացել է, որ չի կարող ճարակել առաջինութեան կերակուր, և իւր զուր փորձում է սնանել աղտոտ եղջերենի, որ աղտոտ անասուններն ուտում են սովի ժամերին։ Այդպիսի սովը աւելի սարսափելի է, քան դժոխքը, և բերանի մէջ այն դառնութեան համ է դառնում, որ աշխարհային վայելչութիւնից յետոյ մնում է։ Միայն մի նշանախեցով Տէր Աստուածը նկարում է այդ վիճակը։ Նորա միայն մի բառում բովանդակուած է բոլոր մոլորուող հոգիների պատմութիւնը, մեղանչող ազգերի և մեղանչող մարդկանց վիճակը. «Նա ցանկայր լնուլ զորովայն իւր»։

Դուք լսել էք, որ եթէ Ցէյլոնի որսորդները կերակուր չեն ունենում, ուտում են ծառի կեղևներ։ Նոյնը պատահեց և մոլորուող որդուն։ Հիմա բանն այն չէր, որ ախորժակն վայելում սրտի, այլ որ որովայնը լցուի։ Եւ ինչո՞ւ, որովհետև, երբ որ մեղանչական զուարճութիւնները արդէն վաղուց ի վեր դադարել են զուարճութիւն լինել, անոնք դարձեալ շարունակում են հալածել և կատաղեցնել սոված հո-

դառն։ Անոնք իրանց յետևից թողնում են վատ սովորութիւններ, և աճելով հոգու մէջ, այնպէս են գործում, որ խեղճ մարդն ամբողջապէս ուզում է իւր ողջակիզը լինել, թէպէտ գիտէ, որ այսպիսի ազատելի կերպարանով երբէք չի կարող լուսացնել իւր աչքերը։ Հէնց այս բանն էլ լաւ նկատվում է այն յուսահատութեան և տրտմութեան պատկերի վերջին տողում, որով այնպէս սրտաշարժ կերպով արտայայտվում է նորա անկման պատմութիւնը. «և ոչ ոք տայր նմա»։ Ո՜վ մեղք, դու իրօք որ անգութ բռնակալ ես եղել քեզ ծառայողների վերայ։

Ես նկարագրեցի Յիսուսի առակի մէջ պատմած հոգւոյ անկումը։ Բայց փառք Աստուծոյ, այս մռայլ պատմութիւնն ունի նաև մխիթարական, սրտաշարժ վախճան—փրկութիւն հոգւոյ։ Աստուծոյ ողորմութիւնը մեղաւորին օգնեց, որ զղջայ։ Աստուծոյ ձայնը գտաւ նորան իւր դառն, տառապեցուցիչ, յուսահատ միայնակութեան մէջ։ Եւ այդ ձայնը հասաւ նորան, ինչպէս որ գարնան հողմի առաջին շարժումը, որով երկիրը զարթնում է ձմեռուայ քնից։

Զղջման արշալոյսը տարբեր կերպով է գալիս զանազան հոգիների մէջ։ Մի քանիսների վերայ այն լոյսը իջնում է անակնկալ, անդիմադրելի, ազդու ուժով, որպէս սաստիկ կայծակ, և բերում է Աստուծոյ ներկայութեան յանկարծակի գիտակցութիւն, ինչպէս որ այդ պատահեցաւ այն պատանուն, որի դարձը այսօր Եկեղեցին յիշատակում է։ Միւսների զղջումն սկսվում է Ս. Գրքի որ և է բառից, որ աննկատելի կերպով ընկնում է քարացած սրտի մէջ, ինչպէս որ արեգակի ճառագայթը թափանցում է ապառաժների մութ ճեղքերի մէջ։

Մի մարդու մասին կարդացել եմ, թէ նա առաջին անգամ իմացաւ իւր յուսահատ դրութիւնը, երբ

որ կարդաց Ս. Գրքի ծննդաբանութիւնները, ուր որ բազմաթիւ անձեր վերջանում էին «և մեռաւ» բառերով: Այս բառերը նորան կանգնեցրեցին մահուան և անյայտ հանդերձեալ աշխարհի դէմ առ դէմ: Մի ուրիշ մարդ առաջին անգամ մտածեց հոգևոր աշխարհի մասին, ուշադրութիւն դարձնելով այս տան վերայ. «Շուն որ կենդանի է լաւ է՝ քան զառիւծ մեռեալ» 1): Նա գիտէր, որ ինքը կարելի է թէ և՛ ցած արարած է, և՛ չնչին, բայց կենդանի է, իսկ այժմ իմացաւ, որ նոյն իսկ յետին կենդանութիւնը յուսալու հնարաւորութիւն ունի, որից որ զուրկ է աւելի ազնիւ ծնուած մեռեալը:

Բայց երևի թէ մեծ մասով մենք չարիքի միջնորդութեամբ ենք իմանում բարութեան զօրութիւնը. կամ թէ մեղքի, վշտի և պատուհասի միջնորդութեամբ բարձրանում ենք մինչև յաւիտենական կեանքը: Այսպէս պատահեց մոլորեալ որդուն: Ջախջախուած, ստորացած, ամենայն ինչ կորուսած օտարականը՝ զգաստացաւ: Նա «եկեալ ի միտս իւր» յիշեց հայրական տունը: Չնայելով ամօթին, խայտառակութեան, երկիւղին և այն բոլոր զգացումներին, որոնք յաճախակի վստահութիւն չեն տալիս խեղճ, մոլորուած պատանիներին, որ դառնան հայրական տունը, նա գնաց իրան մնացած միակ ճանապարհով: Երեսը դարձրեց իւր բոլոր մեղանչութիւններից, խոստովանեց և զղջացաւ. խոնարհեց: Վեր կացաւ և գնաց առ Հայր:

Եւ ինչպէս ընդունեց Հայրը: Երկրաւոր հայրերից շատերն այդպէս չեն վարվում, թէպէտ իրանց որդկերանցից այնպէս սաստիկ վիրաւորուած չեն լինում, ինչպէս որ մոլորեալ որդին վիրաւորել էր իւր հօրը:

Ես ճանաչում էի մի հայր, որի որդին ծովային

---

1) Ժող. Թ. 4:

ծառայութեան ուղարկուեցաւ։ Կարելի է պատանին
իրան շատ լաւ չէր պահում, բայց նաւի մէջ շատ
խիստ էին վարվում նորա հետ։ Աղորմելին փախաւ
նաւից և դարձաւ հօրը։ Ի՞նչպէս հանգիպեց նորան
տարիքով փորձուած, անձամբ վշտեր կրած և ընդ-
նմին քահանայ մարդը։ Նա պատանուն փակեց վեր-
նատան սենեակում, միայն հաց և ջուր տալով, և
հետևեալ առաւօտ, անուշադիր թողնելով որդու ա-
ղաչանքներն ու արցունքը, վերստին դարձրեց ատելի
նաւը և աւելի ատելի նաւապետին, որոնցից որ փա-
խել էր։ Այս պատանին այլ ևս երբէք չդարձաւ հայ-
րական տունը։

Իսկ մոլորեալ որդին կարո՞ղ էր գուշակել, թէ
ինչպէս կընդունուի․ ինչպէս իմանար, թէ իրան չի
սպասում անգթութիւն, պատիժ, իսկ կարելի է նաև
ծեծ և մահ։ Միթէ այլ ակնկալութիւն կարո՞ղ էր ու-
նենալ, քան թէ հայրական տունը պիտի փակուի իւր
առաջ, և ինքը խայտառակութեամբ պիտի վռնտուի
այն սրտերից, որ ինքը տրտմեցրել է, և այն տնից, որ
ինքը արատաւորել և նշաւակել է։ Բայց դուք գիտէք,
թէ նա ինչպէս ընդունուեցաւ։ Ամբողջ արտաքին և
հոգևոր գրականութեան մէջ չի գտնուի այսպիսի ամե-
նակարող, ամենագութ և ամենախոր սիրոյ նմանը։
«Եւ յարուցեալ եկն առ հայր իւր։ Եւ մինչդեռ հե-
ռագոյն էր, ետես զնա հայրն և գթացաւ․ յարեաւ և
ընթացաւ ընդ առաջ, անկաւ զպարանոցաւն նորա, և
համբուրեաց զնա»։

Ես աւելի բան չեմ ասի․ մնացածը դուք արդէն
գիտէք։ Ո՛հ, եթէ այս տեղ գտնուող ամենայն կորած,
մեռած որդի կարողանար նոյնպէս կենդանանալ և
նոյնպիսի ընդունելութիւն գտնել։ Այս տեղ էլ կան
մոլորեալ որդիք։ Դոքա երիտասարդ են տարիքով,
բայց ծեր են մեղքով։ Դոքա այս տեղ նստած են, կա-

րելի է թէ ուրիշներին անյայտ և ուրիշներից անկաս-կած, բայց իւրեանց հոգու խորութեան մէջ մահացու-տով զգացող։ Գննիր քեզ խղճիդ դատաստանով և սթափուիր։ Եւ եթէ յայտնուի, որ դու մոլորեալ որ-դուն հեռանել ես մոլորութեամբ, հետևիր Նորան Նաև զղջմամբ և դարձով քո հայրենական տունը։

Ինչպէս որ մաքսաւորներն ու մեղաւորները Աս-տուծոյ Որդու Բանը լսելով դարձի կոչուեցան, քեզ և, ով թշուառական, Հայրը կոչում է, թէպէտև դու քո միտքն ու խիղճը պղծել ես և մանկութիւնից սկսած ամէն տեսակ մեղքերի մէջ ես թաթախուել։ Դարձիր աշխարհի խնջոյքից, որ նախ ապականում է ճաշակը, ապա տալիս է իւր վերջին կաթիլները. դար-ձիր ճշմարիտ հացի սուրբ խնջոյքին, առ որ տակա-ւին կոչում է քեզ Նա։

Եկէք ամէնքդ մոլորեալ որդու պէս, նոյն իսկ աղտոտ հագուստներովդ, նոյն իսկ խոզի դռնից։ Նա ձեզ չի մերժի։ Ընդ հակառակ Նա հեռուից արդէն կը նկատէ ձեզ և ձեր անպիտանութիւնը կը ծածկէ Իւր սպիտակ հանդերձներով։ Նա կը փրկէ ձեզ սովի տան-ջանքներից։ Ձեզ կազդուրելու համար, Նա երկիրը կը սփռէ երկնային մանանայով։ Նա ձեր սոսկալի ծարաւը կը կտրէ բիւրեղի պէս մաքուր կենաց ջրով, որ բղ-խեցնում է Ինքը Տէր Աստուած և Աստուծոյ Գառը։

ԺԴ.

## ՄԱՐՄՆԱԿԱՆ ԵՒ ՀՈԳԵՒՈՐ ԿԵԱՆՔ.*)

*«Եւ էր Եսաւ այր հմուտ որսոյ՝ վայրագ.*
*եւ Յակովբ այր հանդարտ, ընտանօք»։*
ԾՆՆ. ԻԵ. 27.

Մարդու կեանքն ու սիրտը 4000 տարի առաջ էլ այնպէս նոյն է եղել, ինչ որ արդի մարդու կեանքն ու սիրտն է։ Սուրբ մատենագրի ձեռքը Նահապետի խորանի վարագոյրը բաց է անում և ցոյց է տալիս մեզ ընտանութեան մի և նոյն գծեր, ինչ որ մենք տեսնում ենք արդի անգլիական տան մէջ։ Ահա մենք տեսնում ենք երկու խաղացող մանուկ։ Երկուսն էլ բարեպաշտ ծնողների զաւակներ, պատուական ուխտի ժառանգորդներ։ Երկուսի առաջ կայ ոսկի ապագայ։ Սակայն թէպէտ երկուսն էլ մի և նոյն արտօնութիւններ ունին, բայց նոքա տարբեր կերպով են օգտվում այդ բանից և յընթացս ամբողջ կենաց տարբեր ճանապարհներով են ընթանում։

1) Մանուկները զանազանվում էին, ինչպէս և դուք զանազան էք։ Եսաւը՝ զօրեղ, համարձակ, վրտանգներ սիրող, բացօթեայ խաղերին վարժուած, գործունեայ, ջղոտ—անապատի խոտակեաց վայրենու

---

*) Ուսանողների առուած:

տիպար է։ Յակոբը մտախոհ, խաղաղակրօն հովիւ էր։ Նա սիրում էր օճախի կշտին նստած՝ հանգարտ պարապմունքներին անձնատուր լինել։ Առաջինը միայն այն ժամանակ երջանիկ էր, երբ որ շնչում էր պարզ լեռնային օդ, երբ որ որսում էր Ջուղայի լեռներում արծիւ, կամ տեսնում էր, թէ ինչպէս առիւծը իւր որջից ոստնելով դուրս է գալիս։ Երկրորդը կեանք էր վայելում, երեկոյին իւր ոչխարների մօտ նստած։ Աստղերի լուսնի մէջ նորան երևում էր Աստուծոյ անունը՝ երկնային մեծ Գրքի վերայ գրած։ Նմանապէս սիրում էր խորանի մէջ նստել՝ արդէն ծերացած Աբրահամի ոտքի առաջ՝ և սրտի բաբախմամբ լսել Աւետեաց պատմութիւնը։

Այն ժամանակներում որսորդութիւնը դատարկ զբօսանք չէր։ Այլ լուրջ և անհրաժեշտ պարապմունք էր, լի վտանգներով, և մի և նոյն ժամանակ՝ ապրուստի միջոց։ Կասկած չկայ, Յակոբի ձգտումները անպայման կերպով աւելի ազնիւ էին, բայց Եսաւի ձգտումներն էլ բացարձակապէս անբարոյական չէին։

Զգուշացէք ֆիզիքական գերազանցութիւնները խիստ բարձր դասելուց։ Հարկաւ պէտք չէ արհամարհել ոյժ, արագութիւն, սրատեսութիւն, բայց ով որ այդ բաներն է համարում իւր իդէալը, ինչպէս Եսաւը, նա ընտրում է ստորին կարգի իդէալ, որ մի և նոյն ժամանակ երբէք խաղաղութիւն չի պարգևում։ Եսաւի օրինակին նմանիլը արժանի բան չէ։ Երևի թէ նորա ընտրած իդէալն էր իւր հօրեղբայր Իսմայէլը, արաբական հրոսակների առաջնորդը։ Ս. Գիրքը Իսմայէլին կոչում է «վայրագ», բառացի նշանակութեամբ —«վայրենի իշին նմանող մարդ»։ Այո՛, անապատի վայրենի էշը սիրուն, ազնիւ, երագ, անընկճելի և զօրեղ կենդանի է, սակայն միթէ Աբրահամի զաւակը, կամ աւելի ևս Աստուծոյ զաւակը, գո՞հ կը լինի, որ

այդ անունը ստանայ, որ իւր նախապատկերը համարէ որ և է վայրի անասուն։ Ինչպէս ողորմելի պիտի լինի իւր կեանքը, որ միայն մի ժամ պայծառացած է երևում—արեգակի մայր մտնելու միջոցին։

Ամէն տեսակ ֆիզիքական յաղթանակները կարճատև են. և ի՞նչ կը լինի միայն այդ բաներով ապրող մարդու վիճակը, երբ որ երիտասարդութիւնը երազի պէս անցնի և հիւանդութիւնը, պատահականութիւնները կամ ծերութիւնը քամեն նորա ոյժը և նորան հասցնեն մահու դուռը։ Միայն ներկայով մի՛ ապրէք, մտածեցէք նաև ապագայի մասին։ Արիութիւնը, զօրութիւնը և միւս ֆիզիքական ձիրքերը կարող են մարդու ճակատին դնել անմեղ, կամ նաև փառաւոր պսակ, բայց միայն այն դէպքում, երբ որ բացառապէս այն բաների յետևից չէ ընկած, և երբ որ հետը միանում են ուրիշ, աւելի լաւագոյն յատկութիւններ։ Ինքն ըստ ինքեան Եսաւի ճաշակը ստոր բան չէր. ես միայն այն եմ ասում, թէ Յակոբի ճաշակը աւելի վսեմ և ազնիւ էր, ինչպէս որ մարմինը ստոր է, քան հոգին ու միտքը։

Բայց Աստուած մեզ պարգևում է պէսպէս ձիրքեր, և մենք հարկաւ շնորհակալութեամբ պէտք է անոնց արժանիքը ճանաչենք։ Ամէն կենդանի էակին մեր երկնային Հայրը տուել է որ և է ձիրք, որով մարդ բախտաւորվում է և ինքն իւր աչքում յարգելի է դառնում։ Մէկն ունի գեղեցիկ, ազնիւ մարմին, միւսը՝ սուր միտք։ Մէկը յառաջադէմ է դատարանում, միւսը կրիկետի մէջ։ Իւրաքանչիւրը կարող է միւսի մէջ գտնել որ և է զարմացման արժանի բան, որ շարժէ իւր բարի նախանձն ու յարգութիւնը։ Ո՜հ, եթէ ամէնքը միմեանց յարգէին և փոխադարձաբար օգնէին։ Չէ որ ամէնքը եղբայր են, ամէնքը որդի են մի և նոյն Հօր, ամէնքը ոչխարներ են մի փարախի։

Եթէ միշտ այսպէս լինէր, որչա՜փ բարձր և բախտաւոր պիտի լինէր մարդկութիւնը, բայց աւա՜ղ շատ անգամ նոյն իսկ մի գերդաստանի ամբողջութիւնը հերձուած և պառակտուած է լինում։ Այս պատահեց նաև Իսահակի ընտանիքի մէջ։

Ծնողները կարող էին պարծենալ երկու որդոց արժանաւորութիւններով ևս և հաւասարապէս սիրել նոցա, բայց, դժբախտաբար, հայր և մայրը համերաշխութեամբ չէին վերաբերվում իրանց որդոց։ Իսահակը սիրում էր որսորդ, անվեհեր մանուկին, իրան որս բերողին Աստուծոյ օրհնեալ դաշտերից։ Իսկ Ռեբեկան աւելի քնքշութեամբ էր սեղմում իւր կրծքին հանդարտ և մտախոհ որդուն։ Եղբայրների մէջ էլ այդպէս էր։ Յակոբը կարող էր Եսաւին սովորեցնել աւելի հանդարտ իմաստութեան, իսկ Եսա՛ւը Յակոբին ազդել՝ աւելի առողջ քաջարութիւն. սակայն Եսաւը անարգում էր Յակոբին, իսկ Յակոբը նախանձում Եսաւին։

Մեր մեծ վտանգներից մէկն այն է, որ մենք լիակատար կեանքով չենք ապրում, որ ինչպէս հարկն է՝ չենք զարգացնում մեր մէջ հաւասարապէս մեր բնութեան երկու կողմը—ֆիզիքականը և բարոյականը։

Մէկը կարող է, չի կամենում,
Միւսը կամք ունի, բայց ոյժ չունի.
Այսպէս քայքայած, միշտ պառակտած ենք։

Եսաւի համար նշանակութիւն ունէր մեզ պարգևած բարիքներից միայն մի կէսը, այն ևս աւելի ստորնագոյն և վաղանցուկը։ Իսկ միւս կէսի մասին մտածմունքը՝ նորա գլխի մէջ ասես թէ տեղ չէր գտնում, այսինքն նա չէր մտածում, թէ ինքը ստեղծուած է աներևոյթ Էակի նմանութեամբ, թէ ունի անմահութեան և հանդերձեալ կենաց ահեղ ձիրք։ Նորա յոյսերն ու ձգտումները սահմանափակուել էին նեղ

կեանքում. միայն հողեղէն երկրից էր ստանում իւր ուրախութիւնները։

2) Այսպէս մեծացան այն մանուկները, և նոցա պատմութեան հետևեալ նշանաւոր դէպքը ապացոյց է, թէ ինչպէս վտանգաւոր է՝ միայն անասնական կողմին նուիրած մարդկային կեանքը։ Եսաւին պատահեց այն, ինչ որ հասարակաբար պատահում է իւրա նըմաններին. Նա մոռացաւ Աստուծուն և ընկղմեցաւ անզուսպ, անխոհեմ զգայասիրութեան մէջ։ Նա ապրում է ամենաստորին կեանքով, անասնական կեանքով։ Նա «վայրագ» է, ուրեմն անքան, անխելք է, չի զարգացած։ Մի մոռանաք այս բանը, մինչև որ շարունակեմ այն ունայնասիրական կեանքի պատմութիւնը։ Արդէն հասակն առած, թաւամորթ որսորդ Եսաւը վերադառնում է ամբողջ օրուայ չարքաշ որսից յետոյ։ Նա մահու չափ յոգնած է։

Բայց այնպէս պատահեց, որ խորանի մէջ միամիտ սրտով նստած Յակոբը՝ իւր համար պատրաստել էր ոսպնաթան։ Այս մի ամենահասարակ, էժան կերակուր էր, բայց «նքթեալ» որսորդի ախորժակին խիստ համեղ բան երևեցաւ։ Թանի կարմիր գոյնը գրաւեց նորա ուշքը, և նա գոչեց տղայական անհամբերութեամբ. «Տուր ինձ ճաշակել ի շիկնաթանէդ յայդմանէ, զի նքթեալ եմ», 1) իսկ բառացի այսպէս է. «տուր ինձ, որ այդ կարմրից ճաշակեմ»։ Անզուսպ, անասնական եռանդեամբ չի էլ կարողանում կերակրի անունը յիշել, որ միայն գոյնով է անուանում, «այդ կարմիրը»։ Նա ուզում է, ինչ էլ որ լինի, ճաշակել աչքի առաջ եղածը։ Եւ հէնց այստեղ է արտայայտվում Յակոբի բոլոր խորամանկութիւնը։ Նա տեսնում է, որ դէպքը իրան ձեռնտու է, գիտէ, որ Եսաւը ոչինչ

1) Ծնն. ԻԵ. 30:

չի խնայի և ամենայն ինչ պատրաստ կը լինի տալու իւր բորբոքած ախորժակի համար, և ասում է. «Վաճառեա ինձ զանդրանկութիւն»: Ցայանի է, թէ Եսաւի պէս մարդը այսպիսի առաջարկին ինչ կը պատասխանէր: Քանի որ անդրանկութիւնը հոգևոր օրհնութիւն է, և ուրեմն ոչ ուտել կարելի է, ոչ խմել, ոչ երկու ձեռքով բռնել, քանի որ այդ աներևոյթ բանը Եսաւին երբէք շահ չի տուել ոչ որսի, և ոչ իւր վայրենական խաղերի ժամանակ,—հետևապէս նա պատասխանեց անարգութեան արժանի շտապով:

Ցակոբը դէպքից օգտվում է, Եսաւին ստիպում է երդուել, և ապա թէ տալիս է այն չնչին հացն ու թանը, որի փոխարէն որ զգայասէր որսորդը մի վարկեանում տուեց հեռաւոր ապագայի մարգարէական գուշակութիւնը և հազար տարուայ օրհնութիւնը: Մի քանի րոպէում թանը կերաւ և ապա, Ս. Գրքի ասելով, «կերաւ և արբ, և յարեաւ գնաց և անարգեաց Եսաւ զանդրանկութիւնն»:

Դուք կասէք, թէ է՞հ այսքանով էլ բանը վերջացաւ: Մեղաւորների մեծ բազմութիւնը կրկնում է նոյնը, երբ որ աչքերը խփած՝ առաջին անգամ փափկասիրական զուարճութեան գիրկն են ընկնում: Բայց աւա՜ղ, այս միայն սկիզբ էր: Վերջն էլ այն եղաւ, որ նա, իւր բոլոր լաւագոյն յատկութիւններով հանդերձ, իւր ուղղամտութեամբ, գթաշարժութեամբ, քաջութեամբ, վեհանձնութեամբ—էլ երբէք յետ չը ստացաւ իւր անարգուած անդրանկութեան իրաւունքը: Սկզբում տիրեց Նորան մի ներքին տեսակ անհանգըստութիւն և անփոյթ անօրինութիւն, որ Նորան դրդեց անմաքրութեամբ ամուսնանալ անիծուած ցեղի դուստրըների հետ. ապա սկսուեցաւ արիւնահեղ կռիւներով շաղախուած բռնակալութեան կեանք. վերջապէս բնակութիւնը ընդ միշտ հաստատեց ոչ թէ «պարար-

տութեան և ցօղոյ երկնից» վայրերի մէջ, այլ հեռու պարարտութիւնից և ի վերուստ ցօղից՝ Սէիրի կարմիր ժայռերում և արևակէզ անապատներում։

Նորա ճակատին դրոշմուեցաւ «Եդովմ» կամ «շէկ» անունը, որովհետև նա վաճառեց անդրանկութիւնն իւր բոլոր անմահ առաւելութիւններովը մի հասարակ չեկնաթանի համար։ Նա գնաց անապատի մէջ ապրելու որպէս անշուշտ դիակ, որովհետև կեանքի, գործի, պատուի և փառքի համար արդէն կորել էր։

Վերջին անգամ մենք տեսնում ենք նորան, իւր ոլացած նետերի փայլատակման մէջ, որով նա ուզում էր իւր սխակալութեան կրքին յագուրդ տալ և սպանել եղբօրը։ Սակայն դարձեալ կրքի մէջ, բայց այս անգամ վեհանձնութեան կրքի մէջ, ներում է եղբօրը, և այնուհետև նրա մասին էլ ոչինչ չենք լսում, բացի այն տեղեկութիւնից, թէ նորանից սերեց մանր իշխանների մի հարստութիւն, որոնց մասին ոչ մի յիշատակ չի մնացել, բացառութեամբ մէկի, որ անապատում ջերմուկներ է գտել։ Իսկ ինքն այդ իշխանների հայրը, այլ մահարձան չթողեց, բացի այն առակից, որ յիշեցնում է նորա դժբախտ բոպէներից մէկը. «Մի՛ ոք պոռնիկ և պիղծ իբրև զԵսաւ, որ ընդ միոյ կերակրոյ զանդրանկութիւն վաճառեաց» 1)։ Ցրտու վիճակ մի մարդու համար, որ այնքան ազնուութեան և քաջութեան յատկութիւններ ունէր։ Բայց աւա՜ղ, մեղքի նզովքը հէնց այն է, որ ստորացնում և ապականում է ազնուական հողու տէր մարդկանց, որ ոլինդ և հաստատուն շղթայի մէջ մի թոյլ օղակ գտնելով, կտրում է այն և ամբողջ շղթան անպիտանացնում է։

Ասում են, թէ իրօք անզգամական է այն կեանքը,

---

1) Եբր. ԺԲ. 16:

ուր որ մեղքը պատմութեան ամբողջութիւնն է կազմում, և ոչ թէ լոկ լբւև միջնադէպ։ Մի քանի բնական լաւ յատկութիւնները՝ մերկայոյզ գիշերուայ փայլատակման պէս՝ աւելի ևս սաստկացնում են ընդհանուր մթութիւնը։ Եսաւը այս տեսակէտից շատ լաւ օրինակ է։ Նա իւր անձը ընծայեց երկրաւոր չնչին կայքերին, վասն որոյ կորցրեց նաև այդքանը։ Նա իւր հոգին ծախեց այս կենաց մարմնական հաճոյութիւններին և ստացաւ, նոյն իսկ այս բանում, պակաս, քան իւր եղբայրը։ Ինչո՞ւ։ Որովհետև Յակոբը իւր հոգու խորութեան մէջ ունէր հաւատք, աներևոյթի մասին. հաւատք, ունէր Աստծուց կախման զգացմունք և սէր առ Աստուած, կամ այն ամէնը, ինչ որ անհասկանալի էր Եսաւին։

Արդ Յակոբի կենաց մէջ վերջապէս հասաւ ճգնաժամը, որով նորա հոգին մաքրուեցաւ ամենայն բանից, ինչ որ նորան ստորացնում էր, և մնաց միայն իւր բնութեան սրբազոյն և վսեմագոյն պարգևով։ Յակոբի հոգու լուսաւորութիւնն սկսուեցաւ նախ այնու, որ նա տեսաւ ոսկի սանդուղ, որով հրեշտակներն ելնում և իջնում էին։ Ապա երբ որ Յակոբի հոգին միայնակութեան մէջ և գիշերուայ հսկմամբ մարտնչում էր, նա կարծես թէ դիւթական ձեռքի շարժմամբ՝ յանկարծ դառաւ Իսրայէլ («որ մարտնչի ընդ Աստուծոյ»)։

Եսաւը այսպիսի ճգնաժամ երբէք չի ունեցել, որովհետև այդ բանին ընդունակ չէր։ Նորա ճգնաժամն էր կերակուրը, որ այնպէս ագահութեամբ կերաւ։ Այնուհետև, ինչպէս աւա՜ղ ուրիշ շատ ընտիր, մեծանձն, արի մարդիկ, նա հետզհետէ աւելի ստրկացաւ իւր անկարգ բնազդումներին։ Այս բաւականութիւնը ստանալուց յետոյ՝ նա մոռնուեցաւ անփոյթ անտարբերութեան։ Նա ընդարմանում էր, աւելի և աւելի

ընկղմում էր մեղքի մէջ, մինչև որ «մարդկային եր-
ջանկութեան բաժակը մեղքի սերմով չլցուեցաւ» և
կատաղի դիցուհինները վրէժխնդիր չեղան։

Ահա, դուք կասէք, թէ երբէք կերած բանը այս-
չափ թանկ չի նստել, թէ աւելի տարօրինակ և յիմա-
րաւոյն վարմունք չի եղել, և թէ աւելի անմիտ մարդ
չէր կարող լինել։ Ներեցէք ինձ, սիրելիք։ Անդրանկու-
թեան այսպիսի վաճառումը, հոգին ծախելը—շատ
սովորական բան է և երբէք օգտաւէտ չէ եղել։

Եթէ Եսաւը հոգին վաճառեց կերակրի համար,
Եւան վաճառեց արգելած պտուղի համար, Բաղաամը՝
այնպիսի խոստման համար, որ երբէք չկատարուեցաւ,
այլ ընդհակառակ մահ ստացաւ կռւում, որպէս Աս-
տուծոյ թշնամիների կողմնակալ[1]։ Աքարը հոգին վա-
ճառեց նկարէն ամղանի (հագուստի) համար, որ էլ
չհագաւ, ոսկու համար, որ մի քանի շաբաթ իւր վրանի
հողի տակ թաղուած էր[2]. Աքաաբը՝ այգու համար,
որի դռների մօտ հետևեալ օրը մարգարէն հանդէպ
եկաւ և հարկադրեց անիծել այդ տեղը[3]։ Յուդան իւր
հոգին ծախեց երեսուն արծաթի համար, որոնցից ոչ
մէկը չծախսեց, այլ մի քանի օրից յետոյ սոսկալով
տաճարի յատակը շպրտեց. մոլորեալ որդին վաճառեց
այնպիսի խնջոյքի համար, որ սկսուեցաւ շուայտու-
թիւններով, իսկ վերջացաւ խոզի կերած եղջերենի-
ներով։

Բայց ի՞նչ հարկ կայ օրինակներ փնտռել 2000
տարուց առաջ ժամանակներում։ Միթէ ձեզանից ոչ
ոք իւր հոգին չի՞ վաճառել։ Դուք ամէնքդ ունեցել
էք կամ ունիք անդրանկութիւն—Հոգւոյն սրբոյ ներ-

---

1) Թիւ. ԻԲ—ԻԴ., Բ. Օր. ԻԳ. 4:

2) Յես. Է.

3) Գ. Թագ. ԻԱ. 20—29:

կայութիւնը ձեր մէջ, չարութիւնից պահպանող կամ բարութեան ըղձող աստուածային ձայն, մանկական հեզ և սուրբ հնազանդութեան միամտութիւն, առուի պէս ջինջ և անարատ յիշատակութիւններ, հրեշտակաց հանդերձի պէս անբիծ անմեղութիւն, արշալուսի պէս մաքուր երեսի վարդ, գայթակղութիւններից, մեղքից կամ ամօթաբերութիւնից ազատ սիրտ,—այս ամէնը ձեր անդրանկութիւն էր։ Իսկ ո՞ւր է այժմ։ Այդեօք պիղծ տեսիլքներով լցուած սրտի՞ մէջ։ Թէ մեղանչութեան յիշատակներով դիզուած յիշողութեա՞ն մէջ։ Թէ թուլամիտ ներողամտութեա՞ն մէջ դէպի անձը, որով խուսափում էք պարտականութիւններից և փախչում էք դժուար տքնութիւններից։ Թէ ամբարիշտ կամ զգայասէր ոգու անհնազանդութեան, պղերգութեան, ինքնապաշտութեան մէջ։ Ասացէք ինձ, ձեր անդրանկութիւնը ո՞ւր է։ Իսկ եթէ ոչ, ապա ուրեմն վաճառել էք։ Բայց ի՞նչ գնով։ Հարցրեցէք իւրաքանչիւրիդ, նոյն իսկ ամենակրտսերիդ, ի՞նչ գնով վաճառեցիք մանկական անմեղութեան անդրանկութիւնը։ Միթէ աւելի լաւագոյն, աւելի հաստատուն, պակաս ամօթաբեր գնո՞վ, քան շիկնաթանը։ Մինչև անգամ առակներում պատմում են, թէ ով որ իւր հոգին սատանային ծախել է, ստացել է «Սոդոմի խնձոր, որ թէպէտ դիւթական ոսկւով է եղել օծուած, բայց իսկոյն փխրուել է մոխրի պէս կամ չոր տերևներ է դարձել»։

Դուք այս պատմութիւնները դատարկ բան էք համարում, բայց իզուր. ամէնը զուտ ճշմարտութիւն է։ Սատանային հոգի վաճառելը հասարակ բան է, բայց այսօր այդ բանը կատարվում է առանց առուտուրի։ Մարդիկ իրանց հոգին վաճառում են ոչ թէ ահագին գանձի, ոչ թէ անսահման իշխանութեան համար, այլ ամենաչնչին մեղքի, կամ յիմարի ծաղրա-

ծութեան, կամ ընկերի գայթակղութեան պատճառով, որ դժոխքի դուռն է հասցնում։ Հոգի են ծախում և՛ վատ կրքի, և՛ վատ մտքի հրապուրանքով։ Մարդիկ տալիս են իրանց առաջուայ ունեցածը, առաջուայ հարստութիւնը, ամենայն ինչ, որ ինչ երբեմն ուրախացրել է իրանց. և ի՞նչ են ստանում իրանց զոհաբերութեան փոխարէն, (այն, ինչ որ դուք էլ ստացել էք, եթէ այդպէս էք վարուել)—հիւանդութիւն և յափրանք, ափսոսանք և հոգեկան մահ, արմատով կորած կեանք, սրտի սոսկալի չփոթութիւն, որ աւելի սաստկութեամբ է աղմկում, քան ինչ որ պատահում է մարդուն կէս գիշերի աչքակոխ մթութեան ժամանակ, կամ գերեզմանատան մասին մտածելիս։

Եսաւը «կերաւ և արբ, և յարեաւ գնաց. և անարգեաց զանդրանկութիւնն»,—այսինքն մեղքի հաշիւը արագ վերջացրեց, բայց որովհետև մեղքից մնացած յիշատակութիւնը այնչափ տհաճելի է, որչափ և գինարբութիւնից յետոյ նողկութիւնը, երևի թէ Եսաւը շտապեց մոռանալ այն։ Սակայն եթէ նա ինքը իւր հաշիւը վերջացրեց մեղքի հետ, փոխարէն մեղքը դորանից իւր պահանջը չդադարեցրեց։ Մեղքը Եսաւին զգացնել տուեց անցածը ոչ թէ իսկոյն, ոչ թէ մէկ կամ երկու տարուց յետոյ, այլ երկար ժամանակ անցնելուց յետոյ—40 տարուց յետոյ։ Մինչև այդքան ժամանակ նա համեմատաբար բախտաւոր էր այն մարդկանց պէս, որոնք որ մոռանում են Աստծուն, և որոնց որ Աստուած էլ քիչ քիչ մերժում թողնում է այնպէս, ինչպէս որ Եզեկիէլի տեսիլքի մէջ Աստծու Ոգին հեռացաւ տաճարից նախ նախադաւիթը, ապա արևմտեան դուռը, և վերջապէս քաղաքից դուրս լեռները[1]։

1) Եզեկիէլի տեսիլ:

Զարմանալի է, թէ ինչպէս մեղքի մէջ խոր թա-
թախուածը մի առժամանակ ամենայն քաղցրութեամբ
խմում է մեղքի լիք լիք բաժակը։

Բայց Եսաւի դատաստանի ժամը հասաւ, ինչ-
պէս որ մեր ամէնի ժամը կը հասնի։ Ձեր մանկութեան
մեղքերը՝ դարանամուտ գազանների պէս՝ կը յար-
ձակուին ձեզ վերայ, աւելի հասուն տարիքում։ Ինչ-
պէս ասացի, մեղքը Եսաւին յիշեց միայն քառասուն
տարի անցնելուց յետոյ։ Այդ բանը արտայայտուեցաւ
արդէն այն սրտաճմլիկ տեսարանում, երբ որ այնքան
գողտրիկ յատկութիւններ ունեցող մանուկը, սիրելի
որդին, որ պէտք է հօր օրհնութիւնը ժառանգէր,
յանկարծ գտաւ, որ այդ օրհնութիւնն արդէն տրուել
է անդարձ կերպով ուրիշին, իսկ յետոյ մանկութեան
մեղքը նորա գլխին թափուեցաւ ծանրութեան բոլոր
ճնշմամբ. «Գիտէք զի թէպէտ և յետոյ կամեցաւ ժա-
ռանգել զօրհնութիւնն, խոտան գտաւ. զի և ապաշ-
խարութեան տեղի ոչ եգիտ, թէպէտ և արտասուօք
խնդրեաց զնա»1)։ Ծննդոց գրքի բառերով խօսելով,
«Եւ եղև իբրև լուաւ Եսաւ զբանսն հօր իւրոյ, աղա-
ղակեաց ի ձայն մեծ դառնացեալ յոյժ, և ասէ ցհայրն
իւր, օրհնեա արդ և զիս, հայր։ Եւ ոչ մի՞ ինչ օրհնու-
թիւն թողեր ինձ, հայր։ Միթէ մի՞ օրհնութիւն իցէ
քո, հայր. օրհնեա և զիս, հայր. և ամբարձ զձայն իւր
Եսաւ և ելաց»2)։ Երանի՜ թէ ամէն մարդու ականջում
թնդայ այս աղէխոռով յուսահատութեան ողբը, ով
որ (թերևս ոչ թէ իսպառ ապականութիւնից, այլ
թուլութիւնից, խնդութեան միջոցին, Աստուած մո-
ռանալով) ծախում է իւր անդրանկութիւնը. թող
ամէնքը մտքով պատկերացնեն այս զօրեղ, գետնի հետ

---

1) Եբր. ԺԲ. 17:
2) Ծնն. ԻԷ. 34, 36, 38:

հաւասարեցրած, լուր կորած կենաց վերայ ողբացող խեղճ մարդու դառն յուսահատութիւնը։

Ի կնիք բանի թոյլ տուեցէք մի երկու խօսքով բարեկամական խորհուրդ տամ։

Ահա առաջին խորհուրդ. ձեզանից շատ շատերին, որոնք խաղերը գերադասում էք, քան աշխատութիւնը. զարգացրեցէք Աստծուց ձեզ պարգևած բոլոր կազմերը, և գիտացէք, որ միտքը բարձր է, քան մարմինը, իսկ հոգին՝ երկուսից էլ վեր է։

Ամէն կողմից գանգատներ ենք լսում, թէ «դպրոցում անցուցած աշակերտների ժամանակը, ըստ մեծի մասին, կորած է իրանց մտաւոր զարգացման համար»։ Յոյս ունենանք, որ այս խօսքը աւելի վերաբերում է այն մանուկներին, որոնց ծուլութիւնն ու տգիտութիւնը բիծ է դնում անգլիական չէնտլմէնի վերայ, և որոնք հաւասար չափով մեղաւոր են թէ մարդկանց, և թէ՛ Աստուծոյ առաջ։ Մի խաբուէք։ Ոչինչ չգիտենալ այն ամէնից, ինչ որ ձեզ մի քանի տարի աւանդել են, ժամանակի ամօթաբեր և անօգուտ գործածութիւն է։ Ընտրեցէք աւելի լաւագոյն և արժանաւոր մասը։

Յոյս ունենանք, որ ձեզանից որոնք որ խաղերում խիստ գերազանց են հանդիսացել, այս տարի ոսկի առիթը չեն փախցնի, որ ամենայն ջանքով աշխատեն միւս մասում, և կը լինին ջանասէր, արիասրտութեամբ հեզ և հնազանդ։ Տէր Աստծու անունը տուէք և յիշեցէք, թէ ձեզանից է կախուած այս դպրոցի փառքն ու երջանկութիւնը, ապա և այս երկիւղած և առաքինի կղզու վաղնջական պատիւը։

Իմ երկրորդ խորհուրդը բոլորից է վերաբերում, մանաւանդ նորընծաներից, և խօսքս կարճ կը լինի։ Կասեմ մի խօսք. «Զգուշացէ՛ք», զգուշացէք վաճառել ձեր անդրանկութիւնը թուլամորթութեան, անմտու-

թեան, Աստուած մոռանալու րոպէներում։ Մի փո-
խէք ձեր անմեղութեան երջանկութիւնը խղճի խայթի-
անքի և ամօթի հետ։ Խուսափեցէք սուտ բարեկամնե-
րից, ծուլութեան հրապուրից, չարութեան առաջին
քայլից։ Զգուշացէք հայհոյական բառերից։ Աւելի ևս
զգուշացէք վատ խորհուրդների աղէտալի տպատա-
կութիւններից։ Աղաչում եմ, եղբարք սիրելիք, արթուն
կացէք և աղօթեցէք, որպէս զի փորձութեան չհան-
դիպէք»։

Արդ, խնդութեամբ և ի սրտէ ողջունում եմ ձեզ
ուսման տարեմուտին։ Աստուած տայ, որ այդ ժամա-
նակը և՛ ձեզ և՛ մեզ համար լինի ամառուայ պտղա-
բեր օրեր։ Մաղթում եմ, որ Աստուած պահպանէ
ձեզ, որ անհեղ փորձութիւններից անխրատ չմնաք, որ
անմեղ մանկութիւն ունենաք, հասուն տարիք տես-
նէք, լաւ, ազնիւ, սուրբ, արդար, և փութաջան լի-
նէք, որ Աստուծոյ որդիք լինէք։

## ԺԵ.

## ԱՍՏՈՒԾՈՅ ՈՂՈՐՄՈՒԹԵԱՆ ԱՊԱՑՈՅՑ *).

Յակոբ Նահապետը, երկրի վերայ իւր թափառման առաջին տարիներում, Աստուծոյ ողորմութեան յատուկ ապացոյցներ ստացաւ: Մի անգամ, մանկութեան ժամանակ, երբ որ հօրը սուտ ասելու պատիժը կրեց և վշտացուցած եղբօր վրէժխնդրութիւնից փախչելու հարկադրուեցաւ, եկաւ մի տեղ և քնեց, գլուխը քարի վերայ դնելով: Նա տեսաւ երկրից դէպի երկինք տանող սանդուղ, որի վերայ հրեշտակներ ելնում և իջնում էին, իսկ վերևը հաստատուած էր Տէր Աստուածը: Այս ահեղ տեղում նա երդուեց, թէ Տէրը միշտ իւր Աստուած կը լինի, և ապա երբէք չդրժեց ուխտը:—Մի օր նա վերադառնում էր, որպէս առոյգ ճամբորդ, ցուպը ձեռքին: Նորան հետևում էին կանայք, որդիք, ծառայք: Նա շրջապատուած էր հովուական թագաւորի ամենայն փառաւորութեամբ: Երբ որ Մանայիմի (Աստուծոյ բանակի) մօտ [1]) կրկին «ընդ առաջ եղեն նմա հրեշտակք Աստուծոյ», Յակոբը նոր ազատուել էր իւր մօրեղբայր Լաբանի սար-

---

*) Նոյնպէս ուսանողներին ասած, Հրեշտակապետների տօնին:

1) Ծնն. ԼԲ. 1:

տափերի հովաձանքից։ Այս նշանաւոր եղելութեան վախճանը դուք այսօր առաւօտ լսեցիք։ Ահա այն ճանապարհի վերայ էր իւր դառնացուցած եղբայրը՝ որ արդէն անապատական մարտիկների հզօր առաջնորդ էր ճանաչուած։

Ահաբեկուած և իւր նախկին մեղաւորութիւնն զգալով, նահապետը այնու ամենայնիւ ամէն նախազգուշութիւններ ձեռք առաւ։ Նա հետամուտ էր, որ իւր կանայք, որդիք և անասուններ անվտանգ անցնեն իրանց հանդէպ եղած լեռնային կատաղի հեղեղը։ Եւ եղաւ երեկոյ, և մայր մտած արևի ծիրանին լեռների գլխին վերջապէս մարեց, հանգաւ, որպէս հեռացող հրեշտակաց փետրոտ վերջին առկայծներ։ Երկնքի վերայ փռուեցան աստղեր։ Երկրին պատեց սրբազան մթութիւն։ Յակոբը մնաց միայնակ, միմիայն կասկածներով և տագնապներով լցուած, կէս գիշերուայ երկնքի հովանու տակ, լուռ անխօս լեռների մէջ։ Անշուշտ այս մի ահեղ վայրկեան էր, այն վայրկեաններից մէկը, երբ որ մարդու աչքերի առաջ կենդանանում է բոլոր անցեալը իւր անմտութիւններով և մեղքերով, համարձակութեամբ և համբերութեամբ, մամոնային ծառայելով և Աստուծոյ տեսիլքներով։ Եւ յանկարծ նա պարզ տեսաւ, որ ինքը միայնակ չէ, թէ իւր հետ մի որ մէկը կայ։ Մինչև առաւօտ նա մարտնչեց խորհրդաւոր էակի հետ, հաղթանակելով, որ ինքը մարդը, մահկանացուն, միայնակ մաքառում է Աստծու հետ։ Եւ երբ որ արևելքում արշալուսի առաջին ճաճանչը երեւեցաւ, Ոգին ասաց. «Արձակեա զիս քանզի այգ եղև» 1)։ «Ոչ արձակեցից զքեզ, եթէ ոչ օրհնեսցես զիս», պատասխանեց Յակոբը։ Բայց այն վայրկեանից, հենց որ արեգակի ծագման յանկարծական կրակները

---

1) Ծնն. ԼԲ. 26։

վառուեցան իւր առաջ լեռների վերայ, Ցակոբը՝ այն սաստիկ մարտի մէջ արդէն «կաղացեալ»՝ դարձաւ այլ մարդ. Նախկին Ցակոբը այժմ եղաւ Իսրայէլ («որ մարտնչի ընդ Աստուծոյ»)։ Նորա համայն էութիւնը փոխուեցաւ և լուսաւորուեցաւ, որ անշուշտ հիմա աւելի բարձր, աւելի սուրբ էր։ Մարդկային կենաց առաւօտը այսպէս անցաւ և եղաւ պայծառ օր, և Ցակոբի վերջին արտասանած խօսքերն էին իւր բարձր մարգարէութիւնը իւր երկոտասան զաւակներից իւրաքանչիւրի համար, որոնցից որ ապա ազգեր սերուեցան։

Սիրելիք, Թէպէտ մեր մանկանացու աչքերը չեն տեսնում տեսիլքներ, թէպէտ մեզ շրջապատող խաւարը անցք չի տալիս և անոր վերայ չեն երևում լուսաւոր դէմքեր և հրաշալի թևեր, այնու ամենայնիւ Աստուծոյ հրեշտակները մեզ հետ լինում են աւելի յաճախ, քան կարծում ենք։ Իւրաքանչիւր սուրբ սրտի համար ամենայն տունը՝ Բեթել է, իսկ ամենայն կենսական ճանապարհը՝ Փանուէլ է և Մանայիմ է*)։ Ե՛ւ արտաքին աշխարհում, և՛ մեր ներսը անդադար տեսնում ենք և անդադար հանդիպում ենք Աստուծոյ դեսպաններին—հրեշտակներին։ Բնութեան մէջ Նորա հրեշտակներ են հոգիները (հողմերը), իսկ պաշտօնեայ է կիզեալ հուրը (փայլատակումը)՝ արեգակն ու լուսինը յայտնում են Նորա գիտութիւնը, իսկ վաղորդայն աստղերը քարոզում են Նորա փառքը 1)։ Մեր ներսն էլ հրեշտակներ կան—մանկութեան, անմեղութեան հրեշտակ,—աղօթքի, ժամանակի և մահուան հրեշտակներ։

Սոքա էլ Աստուծոյ դեսպաններ են։ Մեր վարմունքները ահագին նշանակութիւն ունին մեզ համար։

---

*) Տուն Աստուծոյ,—Տեսիլ Աստուծոյ, բանակ Աստուծոյ:

1) Սաղ. ԺԹ.

Անոնք բերում են մեզ օրհնութիւն կամ անէծք, օրհնութիւն՝ գօտեպնդեալներին և լապտեր լուցանողներին, անէծք՝ ծոյլերին և չարերին, անէծք՝ անառակ սրտին և պարարտաբոյծ կեանքին։ Ով որ այդ բաների հետ կռուում է հաւատով և աղօթքով, նորա համար այդ հրեշտակների ձեռքերը դառնում են շնորհաց լիութեան եղջիւր։ Իսկ ով որ այն հրեշտակներից ուրանում է կամ նոցա հետ լաւ չի վարվում, կը հանդիպի նոցա մերկացած սրին կամ հրեղէն բոցին։

Լսեցէք, եղբարք, թէ ինչ պէտք է անել մեր կենսական ճանապարհում հանդիպող հրեշտակների մասին։ Աղաչում եմ, Յակոբի պէս մարտնչեցէք նոցա հետ և յաղթեցէք, որպէս զի ստանաք նոցա ձեռքով բերած օրհնութիւններ։

Նախ և առաջ մեր հանդէպ է մեր մանկութեան հրեշտակը։ Չկարծէք, թէ դորան կարող էք երկար պահել ձեզ հետ։ Նա շուտ և ընդ միշտ կը թողնէ ձեզ։ Ամենայն տարի, որքան որ աւելի անփոյթ լինիք և արհամարհէք նորան, այնքան քիչ բարիք կը ստանաք նորանից։ Տասնուվեց տարեկան պատանին պակաս կը ստանայ, քան տասնուհինգ տարեկանը, սա էլ աւելի քիչ, քան տասներկու տարեկանը։ Ուրեմն, տնօրինեցէք, ինչպէս իմաստուն տնտես, ձեր կենաց այս բարեմասնութիւնը։ Մի՛ գործածէք այդ բարերար բանն այնպէս, որ բոլոր կենաց մնացած մասը դառնանայ, այլ այնպէս ծախսեցէք, որ յետոյ ափսոսալու բան չունենաք։

Մի՛ մոռանաք, որ ինչպէս որ ձեր դէմքը այժմէն իսկ այն արտայայտութիւն է ստանում, ինչ որ եկող տարիներում կատարեալ կերպով պիտի ունենայ, այնպէս էլ կը պատահի ձեր կենաց հետ։ Ձեր ամէն մի վարմունքը—սերմ է՝ երկինքում ցանած կամ դժոխքում, որոնցից հէնց այս ժամին, հասնում են ամենա-

քաղցր կամ մահաբեր պտուղներ։ Ձեզանից է կախուած դառնալ ճշմարտախօս, համարձակ, մաքուր, անձնազոհ, կամ ստախօս, երկչոտ, աղտեղի, ինքնասէր։

Երիտասարդութեան հրեշտակը կարող է (և այս փորձով տեսնում ենք) ձեր ձեռքից բռնել և հասցնել մինչև պատուական չափահասութիւնը ձեր ամենայն զօրութեամբ և համբերութեամբ, մեծութեամբ առաքինական գործերում, անխոցելի անմեղութեամբ, անշէջ ջերմութեամբ, սրբութեան սաղաւարտի և արդարութեան վահանի զրահաւորութեամբ։ Բայց նա կարող է հակառակն էլ գործել, եթէ ուրանաք նորանից։ Նա կարող է (այս բանի փորձեր էլ կան) զրկել ձեզ երիտասարդութեան առաւելութիւններից, և դուք կլինիք անշահ, անձնասէր, տգէտ, ապականած։ Բորոտութիւնը կարող է այլանդակել ձեր հոգեկան գոյութեան տաճարի պատերը, իսկ փոխանակ աղօթքի, փառաբանութեան և սուրբ սրտի անուշահոտ խնկարկութեան, որ պէտք է ծխի հոգւոյ սեղանի վերայ, այն տեղ կը տարածուին մեղքի վնասակար գոլորշիները ու նեխեալ մթնոլորտը։

Հետևեալ հրեշտակը — անմեղ զուարճութեանց հրեշտակը — պատահում է աւելի մանկութեան ժամանակ։ Կարելի է թէ այդ բանից զրկուած են ծանր աշխատութեան տակ տառապող և դուզնաքեայ կերակրով ապրող աղքատ, խեղճ մանուկները. բայց դուք, փառք Աստուծոյ, միշտ ուրախ էք, խնդում և ցնծում էք։ Ձեզ է համարում հին ժամանակների նկարագրութիւնը երիտասարդութեան մասին. «Երիտասարդութիւնը ուրախ պարում կայթում է օդային հրախաղութեան պէս, փայլում է աղաւնու խայտաճամուկ վզի պէս կամ նոյն իսկ ծիածանի պէս, որ անէակ գոլով՝ ամէն տեսակ կախարդիչ գոյն և ձևեր է ստանում»։

«Անմեղութեան երջանկութիւն»։ Այս երկու բառը պարունակում է իր մէջ խորհրդաւոր նշանակութիւն և արտայայտում է երկինք երկրի վերայ։ Ի՞նչ չքնաղ յիշատակներ են ծնանում այդ բառերը մեր հասուն տարիքում։ Ակամայ մեր մտքի առաջ կենդանանում են անցեալ զուարճութիւններն ու յաղթանակները, Ինչպէս չյիշենք այն ժամանակուայ անհոգութիւնը, ձեռք բերած ծանօթութիւնները, դրամակից բարեկամները, թէ և ոմանք այժմ մեռած են կամ մեզանից օտարացել են, լուսաշաւիղ յոյսերը, որ այժմ կարելի է թէ աղօտացել են կամ բնաւ անյայտացել են։

Կարծես թէ այն ժամանակուայ պէս մանկական հոգով զգում ես աշխարհի թարմ պայծառութիւնը և մայր մտնող արեգական հրաշակերտ փայլը, շուշանի գեղեցկութիւնը և սոխակի երգը։

Մեր առաջ որպէս կենդանացած վեր են կենում երկարաձիգ ամառային արձակուրդի յիշատակները, երբ ով մենք խաղացել ենք ծովի ափը բլուրների վերայ, մինչև ծնկները ընկղմելով ծիրանածաղիկ խոտի մէջ։ Ո՛հ, ինչ գեղեցիկ բան է հնարաւորութիւն ունենալ ամենայն անմեղութեամբ լիաբուռն խմելու քաղցր աղբիւրից, որպէս զի յետոյ ծերութեան հասակում անջրդի անապատում գէթ մասամբ ծարաւի չմնանք։ Այն ժամանակի յիշողութիւնները առաջուայ ուրախ, խաղաղ տրամի մշտական արևի լոյս կը դառնան և երբեք իրանց պայծառութիւնը չեն կորցնի, չնայելով բուռն մրրիկներին, որ մեզ թշուառութիւն են բերում, և անխրութեան ալիքներին, որ ծփում են մեր ոտքի տակ։ Դուք կարող էք կրկնել այն անգլիական դշխուհու աղօթքը, որ գայթակղութեան ժամանակ աղամանդով փորագրեց ամրոցի պատուհանի վերայ հետևեալը. «Ո՜հ, ինձ զօրութիւն պարգևիր, որ անմեղ մնամ, իսկ աշխարհի մեծութիւնները թող ուրիշներին»։

Բայց, սիրելիք, անփոյթ չվարուիք այս հրեշտակի հետ։ Զուարճութիւնը և՛ անմեղութիւն է, և՛ ապականութիւն։ Յիշեցէք, որ հեթանոսական դիւցաբանութեամբ, զուարճութեանց աստուածը մի և նոյն ժամանակ մահուան աստուած էր։ Եթէ ձեր բախտաւորութիւնը փնտռէք մեղքի մէջ, որ Աստուծոյ կամքի դէմ ըմբոստութիւն կը լինի, յանցանքի մէջ, որով կը խախտուի մարդու հանգստութիւնը կամ բախտաւորութիւնը, արատի և մոլութեան մէջ, որ ձեր անձնական կենաց մէջ միայն նուաստացուցիչ սովորութիւն եղած կը լինի,—հապա այդ ամէնը՝ և՛ մեղքը, և՛ յանցանքը, և՛ արատն ու մոլութիւնը ձեր հոգու մէջ դաժան հետք կը թողնեն, որով ընդ միշտ կը դառնանայ ձեր բախտը։ «Յանցաւոր երջանկութիւն» չկայ աշխարհիս երեսին. յանցանքով բախտաւորութիւն փնտռելը զուր է։ Այո՛, կայ «յանցաւոր զուարճութիւն», դժոխային անդունդի հէնց եզերքից քաղած ծաղիկը»—կարճատև, թունաւոր զուարճութիւն, որ կործանարար է յանցանքի մեծութեան և չափի համեմատ։ Իսկ «յանցաւոր երջանկութիւն», ո՛չ, բնութեան մէջ յայտնի չէ այդպիսի բան։ Ընդհակառակ, բնութեան մէջ երկուորեակ են—յանցանքն ու դժբախտութիւնը։ Եւ ի՞նչ բախտաւոր կը լինի մարդը, եթէ նորա հոգին այրվում է յանցաւորութեան գաղտնիքներից, եթէ նա գիտէ, թէ ինքը ինչ է, եթէ ատում է իւր մեղքը, բայց չի ուզում թողնել։ Եւ ի՞նչ բախտաւոր կը լինի նա, եթէ մարդկանցից մէկը կամ միւսը դորան մատնացոյց անէ, որպէս իւրեանց կորստի բուն պատճառի վերայ, եթէ նա ձեռք ու ոտքով կապուած լինի մեղքի մէջ, եթէ նորան տանջում լինի անշէջ հուրը և խղճի խայթի կրծող որդը։

Ո՛չ, սիրելիք, այսպիսի մարդը բախտաւոր չի կարող լինել։ Իսկ դուք տակաւին մանկահասակ էք, և

«Անմեղութեան երջանկութիւն»։ Այս երկու բառը պարունակում է իւր մէջ խորհրդաւոր նշանակութիւն և արտայայտում է երկինք երկրի վերայ։ Ի՞նչ չքնաղ յիշատակներ են ծնանում այդ բառերը մեր հասուն տարիքում։ Ակամայ մեր մտքի առաջ կենդանանում են անցեալ զուարճութիւնները ու յաղթանակները։ Ինչպէս չյիշենք այն ժամանակուայ անհոգութիւնը, ձեռք բերած ծանօթութիւնները, որոնցից բարեկամները, թէ և ոմանք այժմ մեռած են կամ մեզանից օտարացել են, լուսաշաւիղ յոյսերը, որ այժմ կարելի է թէ աղօտացել են կամ բնաւ անյայտացել են։

Կարծես թէ այն ժամանակուայ պէս մանկական հոգով զգում ես արշալոյսի թարմ պայծառութիւնը և մայր մտնող արեգակի հրաշալի փայլը, շուշանի գեղեցկութիւնը և տատրակի երգը։

Մեր առաջ որպէս կենդանացած վեր են կենում երկարաձիգ ամառային արձակուրդի յիշատակները, երբ որ մենք խաղացել ենք ծովի ափը բլուրների վերայ, մինչև ծնկները ընկղմելով ծիրանածաղիկ խոտի մէջ։ Ո՜հ, ինչ գեղեցիկ բան է հնարաւորութիւն ունենալ ամենայն անմեղութեամբ լիաբուռն խմելու քաղցր աղբիւրից, որպէս զի յետոյ ծերութեան հասակում անջրդի անապատում գէթ մասամբ ծարաւի չմնանք։ Այն ժամանակի յիշողութիւնները առաջուայ ուրախ, խաղաղ տաք մշտական արևի լոյս կը դառնան և երբեք իրանց պայծառութիւնը չեն կորցնի, չնայելով բուռն մրրիկներին, որ մեզ թշուառութիւն են բերում, և անխոհութեան ալիքներին, որ ծփում են մեր սրտի տակ։ Դուք կարող էք կրկնել այն անգլիական գիւղուհու աղօթքը, որ գայթակղութեան ժամանակ աղամանդով փորագրեց ամրոցի պատուհանի վերայ հետևեալը. «Ո՜հ, ինձ զօրութիւն պարգևիր, որ անմեղ մնամ, իսկ աշխարհի մեծութիւնները թող ուրիշներին»։

Բայց, սիրելիք, անփոյթ չվարուիք այս հրեշ-
տակի հետ։ Զուարճութիւնը և՛ անմեղութիւն է, և՛
ապականութիւն։ Յիշեցէք, որ հեթանոսական դիւցա-
բանութեամբ, զուարճութեանց աստուածը մի և նոյն
ժամանակ մահուան աստուած էր։ Եթէ ձեր բախտա-
ւորութիւնը փնտռէք մեղքի մէջ, որ Աստուծոյ կամքի
դէմ ըմբոստութիւն կը լինի, յանցանքի մէջ, որով կը
խախտուի մարդու հանդստութիւնը կամ բախտաւո-
րութիւնը, արատի և մոլութեան մէջ, որ ձեր անձնա-
կան կենաց մէջ միայն նուաստացուցիչ ստորութիւն
եղած կը լինի,— հապա այդ ամէնը՝ և՛ մեղքը, և՛ յան-
ցանքը, և՛ արատն ու մոլութիւնը ձեր հոգու մէջ
դաժան հետք կը թողնեն, որով ընդ միշտ կը դառնա-
նայ ձեր բախտը։ «Յանցաւոր երջանկութիւն» չկայ
աշխարհիս երեսին. յանցանքով բախտաւորութիւն
փնտռելը զուր է։ Այո՛, կայ «յանցաւոր զուարճու-
թիւն», դժոխային անդունդի հէնց եզերքից քաղած ծա-
ղիկներ»—կարճատև, թունաւոր զուարճութիւն, որ կո-
րստաբեր է յանցանքի մեծութեան և չափի համեմատ։
Իսկ «յանցաւոր երջանկութիւն», ո՛չ, բնութեան մէջ
յայտնի չէ այդպիսի բան։ Ընդհակառակ, բնութեան
մէջ երկուորեակ են—յանցանքն ու դժբախտութիւնը։
Եւ ի՞նչ բախտաւոր կը լինի մարդը, եթէ նորա հոգին
այրվում է յանցաւորութեան գաղտնիքներից, եթէ նա
գիտէ, թէ ինքը ինչ է, եթէ ատում է իւր մեղքը,
բայց չի ուզում ուղղուել։ Եւ ի՞նչ բախտաւոր կը լինի
նա, եթէ մարդկանցից մէկը կամ միւսը դորան մատ-
նացոյց անէ, որպէս իւրեանց կորստի բուն պատճառի
վերայ, եթէ նա ձեռք ու ոտքով կապուած լինի մեղքի
մէջ, եթէ նորան տանջում լինի անշէջ հուրը և խղճի
խայթի կրծող որդը։

Ո՛չ, սիրելիք, այսպիսի մարդը բախտաւոր չի
կարող լինել։ Իսկ դուք տակաւին մանկահասակ էք, և

անմեղութեան երջանկութիւնը պատրաստ է ձեզանից շատերի համար։ Հաւատացեք ինձ, պատանի եղբայրներս, Աստուծոյ ողորմութիւն և պարգև է այդ բանը, Արքայութեան նախազգացումն է այդ բանը։ Եւ Աստուած, ամենադութ Աստուածը, Տէր և Հայր Աստուածը թող ձեզ այդ երջանկութիւնը տայ այժմ և յաւիտեանս։

Բացի այդ բանից մեզ հետ են նմանապէս, թերևս նաև այժմ, ժամանակի և յաջող հանգամանքների հրեշտակները։ Մենք միշտ կարող ենք դոցա ձեռքից ստանալ անմահութեան ծաղիկների պսակ։ Նոքա անլսելի քայլերով և թևատարած տանում են մեզ միշտ առաջ, մութ ջրերի հոսանքը կտրելով, դէպի անյայտ աշխարհը։ Աւելի վաղ, քան թէ կարողանայիք ուշքի գալ, դուք արդէն հասակն առած մարդ էք դառնում։ Մեր ոտքով արդէն մտել ենք ալիքների մէջ, իսկ կեանքի գետը անշշուկ կերպով աւելի և աւելի խորութիւն ստանալով, լայնանում, երկայնանում է, լուռ անմռունչ բարձրանում է մինչև մեր ոտքի ելուստը, ծունկը, վիզը, ծածկում է գլուխը և, աննշմար մեզանից, միշտ շտապեցնում է իւր արագ ջրերը, ձգտելով կուլ տալ մեզ իւր մշտական անյատակ խորութեան մէջ։ Ո՜հ, պատկառեցէք, որպէս հարկն է գործ դրեցէք այն ժամերը, որոնց նիւթական կորստեան համար դուք յետոյ պէտք է համար ու հաշիւ տաք։

Իւրաքանչիւր նոր լուսացած օրուայ վերայ դուք նայեցէք որպէս Աստուծոյ նոր՝ տակաւին չապականած՝ պարգևի վերայ, վասն զի ձեր անցած օրերի դառնարութիւնը միշտ կարճատև է, և այսօր կարող էք դարձնել անցեալ կորածները, ուստի արշալուսից սկսած այդ օրուայ հետ մարտնչելով, ասացէք. «Ոչ արձակեցից զՔեզ, եթէ ոչ օրհնեսցես զիս» 1)։ Արքադոր-

1) ԾՆՆ. ԼԲ. 26:

*ծեցէք այդ օրը ձեր աղօթքով, մինչև որ եղծուած չէ և անմեղ է։ Իսկ աղօթքը—հրեշտակ է, որի թևերը արծուի թևերի պէս ուժեղ են, թէպէտ նման են աղաւնու ոսկէփետուր և արծաթապատ թևերին։ Աղօթքը—հրեշտակ է, որ շարժեցնել է տալիս Նորա ձեռքերը, Ով որ աշխարհ է շարժում և պահպանում. հրեշտակ է, որ կարող է ապականութիւնը դարձնել անապականութիւն, մեղաւորներին՝ զղջացող, զղջացողներին՝ սուրբ։ Աղօթեցէք, և դուք կը լինիք բախտաւոր, անմեղ և ազնիւ։ Բայց դուք այն կը լինիք, ինչ որ կը լինի ձեր աղօթքը։ Եղբարք սիրելիք, աղօթեցէք, աղօթեցէք ձեր երկնաւոր Հօրը անդադար, բարեպաշտութեամբ, ճշմարիտ սրտով։ Զուր տեղից չվերկենաք, մինչև չզգաք, թէ դուք ձեզ յաղթել էք և թէ արդէն կարող էք Աստծուն կրկնել հին Նահապետի ասած խօսքը. «Ոչ արձակեցից զքեզ, եթէ ոչ օրհնեսցես զիս»։*

*Երիտասարդութեան, ժամանակի, բախտաւորութեան, աղօթքի հրեշտակների հետ մենք կարող ենք մարտնչել կամ ոչ, բայց կայ մի հրեշտակ, եղբարք, որի հետ մաքառումը անհրաժեշտ է, և որի զօրաւոր օրհնութիւնը կամ անէծքը մենք չենք կարող փոխել,—այն է մահուան հրեշտակը։ Մենք չգիտենք, թէ նա երբ կու գայ մեզ կանչելու, բայց մենք տեսնում ենք, որ մարդկանց սերունդները մեր շուրջը նոյն վիճակն են ունենում, ինչպէս և անտառի մէջ տերևները, որ նախ արեգական լուսով և գարնան ցօղով զարդարացած, ապա թառամում և գետինն են ընկնում։ Մենք գիտենք, որ մեզանից իւրաքանչիւրը նոյնպէս իւր հերթով կերթայ, իւր սիրելիների ողբի և սգի յուղարկաւորութեամբ, յաւիտենական հանգստեան տեղը՝ մահուան անշարժ կացութեան մէջ՝ ոսկրացած, սառած և ընդարմացած։*

Մէկի կամ միւսի վախճանը անդադար մեզ յի-
շեցնում է, թէ մեզ էլ ինչ բախտ է սպասում: Այս-
պէս էր և սորանից տասը տարի առաջ, երբ որ ես
այս տեղ էի. Ես լաւ յիշում եմ այն նկարակերտ պա-
տուհանը, որ այդպէս զարդարուեցաւ հեզ, սուրբ մա-
նուկներից մէկի յիշատակի համար: Իսկ չորս տարի
առաջ, երբ որ մահը մեզանից խլեց այն բարեկամին,
որին ձեզանից շատերը ճանաչում և սիրում էին, և
որ նոյնպէս կարգուել էր այն տեղ, ուր որ ես բախտ
եմ ունեցել պաշտօն վարելու, յիշում էք թէ այն ժա-
մանակ ձեզ ինչ ասացին. «այս մատաղ զոյգը աւելի
և աւելի աճում է, սակայն մարդկային կենաց պէտս.
զոյգի չափահասութեան մերձենալը՝ բերում է կա-
րօտանք և հաւէրժանում է նախկին սիրելիների գե-
րեզմաններով»: Աւա՜ղ այսօր դարձեալ մի գերեզման
աւելացաւ առաջուայ թուի մէջ. հեռու Հնդկաս-
տանի գերեզմանատանում հողի տակ պառկած է նա,
որ այս տեղ ուսուցիչ է եղել, բայց գնացել էր այն
մեծապանծ աշխատութեան գործակցելու, որի մասին
լոկ միայն մտածութիւնը շնորհակալութիւն և պար-
ծանք կարող էր ազդել մեր Մալբորոյի*) ամենայն
պատանու սրտին: Սորանից երկու տարի առաջ նա
ինքը յիշեցրեց ձեզ այդ աշխատութիւնները: Նա այս
տեղից արտասանեց քրիստոնէութեան սկզբանց մասին
քաջասիրտ խօսքեր, քնքուշ խօսքեր: Այդ քարոզը
ձեզանից շատերի ձեռքումն է և շատերը երևի թէ
լաւ յիշում են: Բայց այժմ այն ձայնը լռել է ընդ-
միշտ, և դուք այլ ևս այն մարդու երեսը տեսնել չէք
կարող: Այն տեղ, ուրիշ աստղերի տակ, իր Անգլիայից,
իւր սիրած տնից հեռու, նորա հանգստացած աճիւնի
վերայ արդէն կանաչել է խոտը: Միթէ նորա Հնդկաս-

*) Կոլէջի անուն:

տան գնալուց մի քանի ժամանակ առաջ, երբ որ երկուսովս կիրակի օրը միասին էինք քահանայական խաղաղ տան մէջ։ Միթէ, ասում եմ, մոռցուել կանց-կենինք, թէ հեռանալ անգամ ինձ վիճակուած պիտի լինի յիշատակել նորա անունը, որպէս արդէն Աստծա-մօտ կոչուած մարդու անունն, յիշատակել այն մարդ-կանց ժողովում, որոնք նորան յարգել են, և այն մանուկների առաջ, որոնց նա ուսուցել է։

Բայց մահը աւելի մեծ է։ Դուք ոչ միայն խմա-ցել էք նորա մեռնելու ձայնը, որ նման է տան հե-ռաւոր միջանցքներից լսուող զարհուրեցուցիչ քայլե-րին, ուր որ բնակւում են ուրուականներ,—այլ մահը հենց ձեր առաջն է կատարուել։ Դուք զգացել էք ահով և սարսուռներ սփռող թևերի թափումը, դուք տեսել էք, թէ ինչպէս մի վայրկեանում մեզ իւր տակ տակ է ճմլում և, ինչպէս որ մանուկը թղթի կտորներ կամ աւազ ու ցեխ ոտի տակ է անում, ընդ միշտ կո-խատում է՝ մեզ հետ միասին՝ մեր մեղք ու վիշտը, յոյս և երկիւղը։ Ձեր ընկերները, որոնց դէմքերը դուք լաւ յիշում էք, որոնց ուրախ ծիծաղը յաճախակի լսել էք, որոնց ձեռքերը քիչ առաջ ջերմ սրտով թօթ-ուել են ձեր ձեռքերը, վերջին ամիսներում անյայ-տացան ձեր միջից։ Նոցա տեղերում այժմ նստած են ուրիշները, իսկ իրանք որպէս ականատես գնացել են Աստծուն և Յիսուս Քրիստոսին զեկուցանելու Մայ-բորոյի մանուկների և նոցա կենցաղավարութեան մա-սին։ Ահա, սիրելիք, ձեզ կոչող ձայները—գերեզմա-նում հանգստացած մանուկների ձայներ են։ Արդեօք դոցա մահը խորհրդաւոր, հանդիսաւոր, ծանրակշիռ նախազգուշութիւն չէ՞ն ձեզ համար։ Միթէ չէք լը-սում՝ ասես թէ աներևոյթ աշխարհից եկած՝ նոցա անեղ ձայնը. «Պահպանեցէք ձեր անմեղութիւնը և աշ-խատեցէք արդարութեամբ ապրել, որովհետև մարդս

միայն այդպէս կարողանում է խաղաղութիւն գտնել»։ Ո՜հ, եթէ զուր չաղաղակէին նոքա և արդեամբ ձեզ զգուշացնէին։

Դուք այս տեղ տեսել էք, ինչպէս և մենք տեսել ենք Հարրովի մէջ (ուր շատ անգամ ողբացել եմ ոչ թէ մէկ, ոչ թէ երկու, այլ շատ մանուկների, ձեզ պէս մատաղահասների մահը), որ նոյն իսկ փոքրագոյն արարածն անգամ կարող է ասել անառակութեան, թէ «Դու ես իմ հայրը». որդ և ճճուքն՝ թէ «Դուք էք իմ մայրն ու քոյրը»։ Բնութեան մէջ ևս միթէ չե՞նք տեսնում, որ թառամում է ոչ միայն խոտը, այլ և նորաբողբոջ ծաղիկը։ Խոտը չորանում է, ծաղիկը թարշամում է, բայց Աստուծոյ խօսքը մնում է։

Աստուծոյ խօսքը մնում է, և այդ պատճառով մահուանից յետոյ գալիս է դատաստանը։ Սակայն մեր դատաստանը կատարվում է միշտ, ամենայն օր։ Տէր Աստծու աթոռի առաջ կայ մի բաց գիրք, ուր որ օրէցօր գրվում են, դատաստանի օրուայ համար, մեր անցեալ կենաց բոլոր գաղտնի և յայտնի մեղքերը, իսկ իւրաքանչիւր մեղաւորը, բացի այդ բանից, իւր խղճի մէջ ունի մշտապէս նաև իւր խիստ դատաւո-րը։ Ահեղ դատաստանի ժամանակ, մենք կը հանդի-պինք դատաստանի հրեշտակապետին, և մենք Տէր Աստծու աթոռի առաջ մեր վարք ու բարքի համար ու հաշիւ կու տանք։ Այն ժամանակ հրով կը բացուի այն ամենայն, ինչ որ գաղտնի գործել ենք, և կը յայտնուի Աստուծոյ, հրեշտակների և մարդկանց առաջ։

Ո՞ւր կը լինինք այն օրը, երբ որ ահեղ ձայնի թըն-դացող արձագանքը և հրեշտակապետի փողի մեծագոչ հնչիւնը կը վերկացնէ մեռեալների բազմութիւնները իրանց երկար քնից, երբ որ մեր գործերը կանյայտա-նան, կենաց չնչին անափառութիւնները կաճիւնանան, իսկ բոլոր չնչին յոյսերը, սին յաջողութիւնները կը

կորչէն այն ցեցի պէս, որ շլացած բոցի մէջ մղվում է այրուելու, երբ որ մարմնի և աչքի բոլոր ցանկու-թիւնները, ամբողջ կենաց պարծանքը կը հանդիսանան որպէս կատարած ալիքի լոկ փրփուր միայն, երբ որ կրակի մէջ կը հալչին աշխարքի տարերքը, իսկ երկինքը կը կնճռոտի, որպէս այրուող թղթի թերթեր *)։ Հանա-պազօրեայ կեանքը ցոյց է տալիս, թէ ուր կը լինինք։

---

*) Հիմա չունիմ օրինակական նկարագրութիւնը նաեւ մեր հոգեւոր բանաստեղծից.

Յորժամ տարերքս դղրդին,  
Հաստատութիւնքն սասանին,  
Իբր զծովու կոհակք կուտին  
Ի յեռանդանն կաթսային.  
Լայնատարած դողայ գետին,  
Ի թանձրութեանց հիմանց շարժին.  
Լերինք հիմամբըք զարհուրին,  
Եւ ուժգնակի բախմամբ թնդին.  
Կարծր բնութիւնք վիմաց հալին  
Եւ ամենայն նիւթք հրդեհին.  
Մինչ գետք հրեղէնք յորդահոսին  
Իբր զհեղեղ ջուրց ծաւալին.  
Հողմով հանդերձ սաստիւ հնչին  
Եւ միգախառն մրմռին.  
Խրթնահայեաց դիմօք վառին  
Եւս թափանցիկ վայրաբերին  
Իբր զտերեւ մի բորբոքին  
Բնութիւնք ամէն հողեղինին.  
Բլուրք լերամբըք հալեցին  
Եւ դաշտաձեւ աշխարհք լինին.  
Ծովու ալիքըն ցամաքին  
Եւ կենդանիք նորա նուաղին.  
Յորժամ բարբառքն նուագին,  
Փողն գոչէ Գաբրիէլին  
Յանկարծակի մէջ գիշերին՝  
Ի յեղակարծ ժամանակին.

Նայեցէք ձեր սրտի մէջ, և այն տեղ կը գտնէք պատասխանը։

Դուք չկարծէք, թէ անհամար ամբոխի մէջ մենք չենք նշմարուի։ Այդ տեղ էլ մեր մեղքերը մեզ կը գտնեն, Աքարի պէս 1), և ընդհանուր դատաստանի ժխորում մեր անձի դատապարտութեան որոտը կը հասնի մեր ականջին։

Ինչ որ արած կամ խորհած լինինք այս աշխարհում, որքան որ տարբեր լինի մեր կեանքը, բաւական է տախտակի վերայ գրած հրեշտակ-վկայի միայն մի տող, որ այդ բանով անկորուստ նշանակուի մեր գերեզմանը։ Այն տախտակի վերայ թուած չեն լինի ոչ մեր արարքների փառաւորութիւնները, և ոչ մեր տոհմային ծագման փայլը,—այլ այնպէս կարճ և խիստ կը լինի, ինչպէս իսրայէլացւոց թագաւորների դամբանական գիրն է։ Նոցա գերեզմանի անփուտ մարմարինի վերայ կարող էին յիշատակուած լինել նրանց երկաթէ կառքերի և ոսկի վահանների, նրանց նուաճած աշխարհների, նրանց շինած փղոսկրեայ պալատների թիւը։ Սակայն նոցա կենաց համար, ինչպէս և մեր կենաց համար, որ կամ փառաւոր է և կամ մըռայլ, հերիք է միայն մի յիշատակարան, որ երկնքում պահվում է։ Այն է մի պարզ, անպաճոյճ խօսք. «Արար բարի և ուղղութիւն առաջի Տեառն Աստուծոյ իւրոյ» կամ «Արար չար առաջի Տեառն Աստուծոյ իւրոյ» 2)։

Ո՛հ, եթէ կամենում էք հաւատով և աներկիւղ հանդիպել մահու և դատաստանի հրեշտակներին, մարտնչեցէք. աղերսեցէք, երկրպագութեան, ժամանակաւոր յաղթութիւնների, աղօթքի հրեշտակների հետ։

---

1) Յես. Է:

1) Թագաւորութեանց գրքերում—բազմիցս:

Դուք այժմ էլ կարող էք մարտնչել նոցա հետ։ Տեսէք, որ նոքա չհեռանան, մինչև որ չօրհնեն ձեզ։ Ամենայն օր այս տեղ, մանաւանդ աստուածպաշտութեան ժամանակ, Տէր Աստուծոյ այս պատուական տան մէջ, առաւել ևս այսօր ս. հրեշտակների և ձեր սիրելի դպրոցի հիմնադրութեան տօնի օրը, նոքա ձեզ առաջարկում են իրանց շնորհները։ «Զի՞նչ ինչ առնել էր այգւոյ իմում, և ես ոչ արարի նմա»[1]։ Զգուշացէք, որ ձեր երջանկութեան օրերին (վասն զի յաջողութիւնն աւելի վտանգաւոր է, քան անյաջողութիւնը, և մենք դողում ենք ձեզ համար մանաւանդ ձեր բախտաւոր օրերին), զգուշացէք, որ ձեր այգին՝ փոխանակ ազնիւ խաղողի՝ ձեզ չտայ վայրի խաղող և փուշ, երբ որ Տէր Աստուածը հարցնելու գայ այգու վիճակը։ Մինչև այսօր այս տեղ այդ բանը չի պատահել։

Որչափ որ գեղափթիթ է այս դպրոցը,—կարելի է թէ առաւելութիւնը հենց այդ է, որովհետև յոյս ունենանք, որ զարդարուած է մանկութեան գեղեցիկ անմեղութեամբ, և տակաւին ապականուած չէ աւելի մեծ հասակի վատթար սովորութիւններով,—այնու ամենայնիւ շատ թուով ունեցել է օգտաւէտ անդամ եկեղեցւոյ և ազգի, իսկ ապա նաև հաղորդակից յարութեան անմահ փառացն։

Դպրոցի պատիւն ու փառքը յանձնվում է ձեր և դպրոցի հետևեալ սերունդների ձեռքին։ Զգուշացէք, որ ձեր ձեռքի մէջ և ձեր միջոցով դպրոցն այնպիսի ուղղութիւն և սովորութիւններ չստանայ, որ յետոյ անջնջելի նզովք դառնան։

Ուղղութիւնն ու սովորութիւնները այն բարոյական մթնոլորտ է, որ կազմվում է դպրոցի իւրաքանչիւր աշակերտի վարած կեանքից։ Եթէ այն

---

1) Ես. Ե. 4:

կեանքը չար է, կարող է թունաւորել դպրոցի ամբողջ բախտաւորութիւնն ու օգտակարութիւնը և դպրոցի խնամքին յանձնած ամէն մի անմահ հոգի վտանգի մէջ դնել։ Մինչև այսօր այդ դպրոցում թագաւորել է ուղղութեան պարզութիւնն ու մաքրութիւնը, բնաւորութեան լրջութիւնն ու արիութիւնը, որոնց վերայ առանձին ուշադրութիւն է դարձրած, այն փոխադարձ սիրոյ և յարգութեան հազուագիւտ միաւորութիւնը, որ աշակերտների և ուսուցիչների մէջ հաստատուել է։

Այս բոլորը անգին առաւելութիւններ են։ Բայց ի հարկէ ես կը դժուարանամ անաչառ լինել։ Սորանից ինը տարի առաջ ես ինքս ձեր մէջն էի։ Ասում եմ, ձեր մէջ, որովհետև Մալբորոյի մէջ ուսուցչի սիրտը նման է աշակերտների սրտին։ Թէպէտ այն ինը տարուայ մէջ ես ստացել եմ նոր պարտաւորութիւններ և նոր հոգսեր, բայց այդ պատճառով չեն թուլացել իմ շնորհակալութիւնն ու սէրը դէպի այն վայրը, ուր որ բարեկամներ եմ գտել։ Այս տեղ ես ունեցել եմ ընկերներ, որոնք որ ինձ հետ վարուել են եղբայրական սիրով, համակրութեամբ և համբերութեամբ։ Նոքա այժմ գործում են ձեզ հետ ի միասին մի և նոյն դաշտում, աշխատելով ձեր սրտում և այս մեծ դպրոցի կեանքում կանգնեցնել մի տաճար, որի քովթարը (սեան գլուխը, վերնախարիսխը) պիտի լինի Տէր Աստուծոյ սրբութիւնը։ Այժմ այս տեղ դառնալով, դարձեալ գտնում եմ մի և նոյն բարեկամներիս և չփոխուած։ Տեսնում եմ, որ գործը շարունակւում է նոյն սրտագին, ջերմեռանդ, պարզ, անձնուէր ոգով և զարմանալի աճող արդիւնաւորութեամբ։

Առաջ եղել են փորձութեան, տարակուսութեան և դժուարութեանց օրեր, բայց Աստուած օրհնեց Իւր փառաւորութեան համար ձեռնարկած գործը, և մենք

խնդութեամբ ու շնորհակալ սրտով կարող ենք տեսանել և խոստովանել, որ այժմ յառաջադիմութեան ծաղկման, առնախմբութեան օրեր են հասել։ Այն ժամանակ Կոլէջի բարեկամները սերմանում էին արտասուքով, այժմ հնձում են ուրախ սրտով։ Ի լիութիւնէ սրտի մաղթում եմ, որ այդ բարիքները չնուազին։ Մաղթում եմ, որ Աստուած գեղեցիկ գոյներով զարդարէ ձեր քարերը, իսկ հիմքը՝ շափիւղայով, որպէս զի «եղիցին ամենայն որդիք ուսեալք ի Տեառնէ և ի բազում խաղաղութեան մանկունք» 1)։ Որպէս հաւատարիմներից մէկը, որոնք սիրում են այս մեծագործ դպրոցը, բարեմաղթում եմ, որ Տեառն Հայրական բարութիւնը միշտ լինի ձեզ հովանի, իսկ Նորա Հոգին Սուրբը՝ ձեզ հետ լինի, և որ Նա սովորեցնէ ձեզ ճանաչել և լսել Իւր ձայնին, որպէս զի դուք կարողանաք ստանալ յաւիտենական կեանք։

1) Ես. ԾԴ. 13։

ԺԶ.

## «ԳՈՐԾՔ ԻՒՐԵԱՆՑ ԳՆԱՆ ԶՀԵՏ ՆՈՑԱ». 1)

Դժուար թէ որ և է այլ գիրք կարողանայ տալ աւելի վսեմական հանգստութիւն, աւելի երկնային յոյս, քան Ս. Յովհաննու Աստուածաբանի Յայտնութիւնը այնպիսիներին, որոնք որ ուղիղ են հասկանում այս գիրքը: Այո՛, այս գիրքը շատ անգամ նախապաշարմամբ վիճաբանութեան է ենթարկուել, միջի արժանաւորութիւնը նսեմացրել են, իմաստը մթնացրել են, և այդ պատճառով պարզամիտները էլ չեն կարդում այդ գիրքը: Բայց խաղաղ, ճշմարտասէր սրտի համար՝ գիրքը լիքն է անճառելի իմաստութեամբ:

Հրաշալի տեսիլք երևեցաւ այն մարդու աչքին, որի գլուխը պատանեկութեան ժամանակ՝ հանգստացած էր Քրիստոսի կուրծքին 2): Ծծմբի հանքերից, դաժանատեսիլ կղզուց, միայնակութեան աքսորից, ոճրագործների ընկերութիւնից, յանցաւորի շղթաներից՝ նա տեսիլքով վերացաւ մեծ անմահների վերնագաւառները: Անթիւ անհամար սքանչելի տեսարաններ անցնում էին նորա մտաւոր աչքի առաջ, բարձրագոյն երկնքի օրհներգութիւնները անճառելի

---

1) Յայտ. ԺԴ. 13:

2) Ըստ Յով. ԺԳ. 23—25:

քաղցրութեամբ հրաշանում էին Նորա մանկանացու ականջների մէջ։ Այո՛, Նորան վիճակուեցաւ և այլ տեսարաններ տեսնել—եօթը մեծ վէրքեր, եօթը սկաւառակ լի ցասմամբ, Թշուառութիւն գուժող փողոյ ձայներ, իժերի խմբեր, սպիտակ ձիու վերայ Նստած մահ, հրոյ լիճ, մեծ դատաստան պոռնիկի, որ արբեցած էր մարգարէների արիւնով, և չտեսնուած երկրաշարժեր ու արեգակի խաւարումներ։ Բայց այս տեսարանների հետ և անհամեմատ աւելի փայլով գալիս են Գառան և առիւծու տեսիլքներ, սպիտակ ընհեղներով և արմաւենի ձեռին մարդկային երջանիկ հոգիք, պսակով երեցներ, հրեշտակ-յաղթականներ և երկնքից իջնող Ոսկի Երուսաղէմ՝ յասպիսի պարիսպներով և մարգարտի դռներով։ Այդ վերջին նեղեղինները դեռ դարձեալ մեր ականջում հնչում են. նոքանք արժանապէս փակում են մեր առաջ Յայտնութեան դռները, որ մարդուն մի հարևանցի գաղափար է տալիս արքայութեան փառաց մասին։ Ինձ յայտնի չէ մի ուրիշ գիրք, որ աւելի կարողանար բարձրացնել այնպիսի մարդու ոգին, որ յոգնած լինի կեանքի տաղտկութիւններից, վշտերից և անձնապաշտութիւնից, որ կորուսած լինի սրտի ձգտումն ու յոյսը, քան Յայտնութիւնը։ Այս գիրքը բարձրացնում է, վսեմացնում է և կենդանացնում է մարդուս։

Այսօր ես ուզում եմ ձեզ հետ խօսել մի քանի բառերի մասին, որ այդ գրքի տեսիլքների մէկից հանում եմ [1]։ Նախ մեծ որոտման և բազմութեան ջրերի պէս ձայների մէջ Ս. Յովհաննէս լսում է քնարների վերայ հարկանող երաժիշտների ձայնը. նոքա էին կուսանք՝ Աստուծոյ Գառան կնիքը ճակատին։ Այս երկնքի մէջ Թռչում է հրեշտակ՝ յաւիտենական Աւետա-

1) ԺԴ. ամբողջ գլուխը։

գամ երբ որ ափից նայում ենք մի նաւին, որ ալեգանի մութը մտնելու ժամանակ՝ տանում է հեռու և ծածկում է մեզանից մեր բարեկամին, տարակուսանքի մէջ թողնելով, թէ դորա բախտն ու վիճակը ինչ է լինելու։ Ահա նա անյայտացաւ ծովի ցոլացումներով լուսաւորած հորիզոնում. և որքաղան մթութիւնը պատեց նորան։ Մենք այս աշխարհում այլևս չգիտենք, բայց կու գայ ժամանակ, երբ որ մենք էլ կիմանանք. իսկ առ այժմ կը մեռելոց յարութեան յուսով և կատարեալ հաւատով՝ այն խօսքերով յուղարկաւորենք մեր բարեկամների մահկանացու անձինք։

Իմ առաջ բերած խօսքը մեզ պատմում է, ոչ թէ մեռեալների նոր վիճակի մասին, այլ այն անմահ յիշատակի մասին, որ նոքա թողել են. ոչ թէ նոքա ինչպէս են այժմ՝ իւրեանց մեռելութեան ժամանակ, այլ թէ ինչպէս են եղել՝ կենդանի ժամանակ։ Եւ այն տեղ խօսվում է ոչ թէ առ հասարակ մեռեալների մասին, այլ վասն «մեռելոյն որք ի Տէր ննջեցին», այսինքն մեծ և սուրբ մեռեալների մասին։ «Զի յոյս ամբարշտի իբրև զփոշի յարուցեալ ի հողմոյ, և իբրև զեղեամն ի մրրկէ հալածեալ մանր, և իբրև զծուխ մաշեալ ի հողմոյ։ Բայց արդարք յաւիտեան կեցցեն. և ի Տեառնէ է և՛ վարձք նոցա և՛ խնամ նոցա ի Բարձրելոյն» 1)։

Նկատեցէք, Հոգին ասում է, թէ այդպիսի մեռեալները երանելի են, թէ նոքա հանգստացան իւրեանց աշխատութիւններից: Այս բառով անհնարաւորութիւն անգամ չկայ, թէ մեռեալները կարող էին չաշխատել և այնպէս գալ հանգստանալու։ Նա, Որոյ քաղցր ձայնը երկնքից հնչուեցաւ, հանգստութիւն բերելով երկրաւոր ուխտաւորներին, այլ տեսակ երանելի մեռեալ չէր ճանաչում։ Եւ անհնարին է, որ այնպիսիք լինէին։

---

1) Իմաստ. Ե. 15, 16։

«Հանգստութիւնը քաղցր է կատարուած գործից յետոյ։ Իսկ եթէ գործք չկայ, չի կարող և հանգստութիւն լինել։ Աշխատութիւնն առաջին օրէնք էր, որ Աստուած կարգեց եդեմում, և վերջին օրհնութիւն է, որ լսում ենք Նորանից Ս. Գրքում, ինչպէս որ այդ գտնենք մեր առաջ բերած Յայտնութեան վկայութիւնից։ «Զինուոր, հանգստացէք, որովհետև կատարել էք աշխատութիւնդ»։ Ահա և մեր աշխատութեան ասպարէզ. ահա երկիրը—մեծ այգին, որ պէտք է դու մշակես։ Դու պէտք է հաւաքես այդ տեղից պտուղը և մաքրես անպտուղ վայրերը։ Աշխատի՛ր, մինչև որ մահը քեզ ազատութիւն չտայ։ Միայն այն ժամանակ կարժանանաս և կը ստանաս հանգստութիւն։ Երկնքում տեղ չկայ ծոյլերի, անշահների, անձնադիւր մարդկանց համար։

Ո՜հ, ինչ խեղճ, անտանելի, սոսկալի, արհամարհութեան արժանի պիտի երևայ վերջապէս այն կեանքը, որ ոչինչ անելով է թռուցել իւր օրերը։ Երբ որ վախճանը գայ, ինչպէս սարսափելի պիտի թուի աշխարհամարդու և ծոյլի կեանքը, լապտերը չլուցանողի և մէջքը չգօտևորողի կեանքը, թաղած տաղանդի և անխնամ թողած այգու կեանքը։

«Նոքա հանգչեան յաշխատութենէ իւրեանց. և գործք իւրեանց չոգան զհետ նոցա»։ Ի՞նչ գործք։ Ի հարկէ ոչ այն գործքերը, ինչ որ դուք կարող էք սպասել մարդկանց սովորական կենցաղավարութեան նայելով։ Ոչ ոսկի և արծաթ, որոնց գանձելու համար նոքա այնպէս աշխատում են, և որ իւրեանց մահուանից յետոյ՝ թերևս ծախուին իրանց ատած նպատակներին և իրանց ատելի մարդկանց ձեռքերով. ոչ սին գովեստներ և դատարկ բառեր, որոնց համար սառած ականջը այնպէս խուլ կլինի, ինչպէս և գերեզմանի չոր խոտի վերայ շշնջող հովի համար. ոչ թանկագին ակ-

նեղէններ, որ նոքա կրել են, բայց յետոյ կը փայլեն
ուրիշների վրայ, երբ որ իրանք կը փտեն գետնի տակ.
ոչ մեծագին հագուստներ, որոնց փոխարէն պատանք
կունենան. ոչ հոյակապ տներ, որոնցից որ ընդ միշտ
դուրս կու գան, որպէս զի ամփոփուեն խոնաւ, նեղ
գերեզմանի մէջ։ Օրերից մէկը, ժամերից մէկը յանկարծ
կարող է Թափուր անել նոցա իրանց պարծանքներից,
զուարճութիւնից, ազգեցութիւնից, հարստութիւնից։
Նոքա պէտք է այնպէս վարուեն, ինչպէս և մի մեծ
Թագաւոր, որ ձայն տանելով, Թէ «Պատրաստուիր,
որովհետև հիմա պէտք է գնաս սատուածների մօտ»,
—իսկոյն հանեց իրանից ծիրանին և խոնարհութեամբ
փաթաթուեցաւ կտաւի սաւանի մէջ[1]։ Ոչ, այսպիսի
գործեր չեն հետևում մարդկանց յետևից, որովհետև
այդ բաները ոչ մի նշանակութիւն չունեին, փչանալու
և ապականելու բաներ են, այլ հետևում են նոցա
սէրը, արդարամտութիւնը, մաքրութիւնը, մեծանձ-
նութիւնը, մխիթարուածների սրտերը, իրանց ձեռքով
փրկուածների հոգիները։

«Զի գործք իւրեանց չոգան զհետ նոցա»։ Ինչու
գործքերն այս տեղ չմնացին, այլ զհետ նոցա գնացին։
Վասն զի այս տեղ, երկրիս վերայ, իւրեանց գործքերը
շատ անգամ՝ բառիս բուն կամ այլաբանական նշանա-
կութեամբ՝ չեն հետևել նոցա։ Մարդիկ չեն ճանաչել,
աւելի ևս չեն գնահատել և չեն վարձատրել զոցա։
Այս հերիք չէ, այլև զոքա շատ անգամ պարսաւանք
են լսել գովեստի փոխարէն և անյաջողութիւն վայելել՝
փոխանակ արժանացած յաջողութեան։ Այդ մարդիկ
ազնուութեամբ աշխատել են յօգուտ այլոց, իսկ
իւրեանց վարձատրութիւնը եղել է եսասէրների ան-
տարբեր չեզոքութիւնը, ախմարների ծաղրը և անքա-

---

1) Ցովնան, Դ.

ըեմիտ մարդկանց անպարգութիւնը։ Հապա ուրեմն այդպիսի մարդը իւր ցանածը հնձում է ոչ թէ մարդկանցից և ոչ թէ իւր կենաց ժամանակ։

Ժամանակակիցների անողորմ ձեռքերը շատ անգամ սպանում են իւրեանց մարգարէներ, իսկ յետոյ արձան են կանգնեցնում նորան. լեզուները, որ նորա վարկը սևացրել էին կենդանութեան ժամանակ, կեղծաւորութեամբ ողկէզործում են նորա անունը. մարդիկ, որոնց համար որ նա ապրել է, թուղթաւորում են նորա կենաց բախտաւորութիւնը, իսկ այդ պսակները են ձօնում նորա գերեզմանի վերայ։ Ճշմարիտ փառքը միայն մեռեալներն են վայելում։ Աշխարհը շատ յաճախ իւր բարերարներին վճարում է՝ կենդանութեան ժամանակ—նախատինք, խայտառակութիւն, տրտմեցնելով և սիրտը խոցելով։ Բայց կեանքը կարճ է, և կու գայ վախճանը։ Նրանց գործքերը կերթան նոցա հետևից, և իմաստութիւնը կը ճշմարտանայ ժառանգների համար։ «Այն ժամանակ ապագայը ամենայն համարձակութեամբ կը կանգնի ինքը վիրաւորողների և իւր առաքինութիւնները անարգողների առաջ. սորա էլ մեծ երկիւղով կը շփոթուին և կը զարմանան նորա փրկութեան վերայ և կասեն. ո՞չ ապաքէն սա այն մարդն է, որին մենք առաջ ծաղրել ենք և հայհոյել ենք։ Անմիտներս, մենք սորան խելագար էինք կարծում և սորա կեանքը—անպատուն, բայց ի՞նչպէս եղաւ, որ դասուեցաւ Աստուծոյ որդոց և սրբերի կարգում։։

«Զի գործք իւրեանց չոգան զհետ նոցա»—իւրեանց ճշմարիտ գործքերը, և ոչ թէ փառասիրական խորհուրդների ու երազական յոյսերը։ Դուք, մեծ կարծածներդ, ոսկու պաշտօնեաներդ էք, վերնազարդ շողշանակ էք, որ կրակի մէջ այրվում ցնդվում է, այն ինչ միայն զուտ ոսկին կարող է դիմանալ կրակին։ Մեզ

Համար խիստ խրատական դաս է, երբ որ տեսնում ենք, թէ ինչպէս անհետ են կորչում այն մեծագործութիւնները, որ ջոջ մարդիկ գոռոզամտութեամբ գործում են անձնական շահերի համար, իսկ իրենց ճշմարիտ գործերը, անձնուրաց աշխատութիւնները, խոր հառաչմունքները՝ անշուշտ կենդանի են և բարգաւաճում են։ Առաջին դէպքում նոցա գործերը են տներ՝ աւազի վերայ շինած, իսկ երկրորդ դէպքում՝ վէմի վերայ շինած։ Առաջինները—տներ, անցաւոր պատրանքներ են, երկրորդները—իսկական, մշտնջենական, յաւիտենական գործեր են։

Օր ու գիշեր աշխատող անգլիական ուսումնականը յաջողութեամբ գտնում է աշխարհ կառավարող ընդհանուր օրէնքը։ Անձնասիրութիւնից զայրացած անգլիական պետական անձը՝ ազատ երկրի պատմութեան էջից ջնջում է ստրուկների վաճառման նախատինքը։ Հասարակ անգլիական ջենտըլմէնը՝ իւր անձնական ջանքերով՝ կարողանում է իրագործել եւրոպական կալանաւորների վիճակի բարւոքումը։ Այս բոլորը ճշմարիտ գործեր են, որ նոցա հետևից կերթան։

Հիմա այդ բաների հետ համեմատենք այն գործերը, որ աշխարհի աչքում աւելի բարձր է համարվում։ Մի անյայտ երիտասարդ զինուոր՝ ամբողջ ցամաքի բախտը տնօրինող իշխան է դառնում։ Նա յաղթահարում է թագաւորութիւնները։ Նա ոտի տակ է կոխում դրօշակները և սպառնանում է ազգերի զօրութիւնը։ Նա դառնում է մեծ ազգի կայսր և թագեր է դնում իւր եղբայրների, քոյրերի և զօրապետների գլխին։ Այս էր իսկական, ոչ թէ ճշմարիտ փառք։ Եւ ի՞նչ վախճան ունեցաւ գործը հէնց նոյն մարդու կենդանութեան ժամանակ։ Այդ բանի պատասխան եղան մեծ չարաբաստիկ վէմեր՝ Ատլանտեան ովկիանի

հեռու մնացած քարուտ կղզու վերայ։ Նա Եւրոպան խճճեց յաղթական պատերազմների յորձանքի մէջ, բայց այս բանը ի՞նչ պտուղ տուեց նոյն իսկ իւր կենդանութեան ժամանակ։ Ոչինչ։

Այս չեն այն գործերը, որ երանելիների հետևից գնում են։ Ընդհակառակ այս են, ինչպէս որ իրաւամբ կոչուած է, «փամփուշտի շլացուցիչ բռնկումն»։ Միայն մի ժամ տևողութեամբ ամբողջ աշխարհը թուում է ծխով ու բոցով ճարակուած. ոչ աւելի, քան բայց միայն մի ժամ տևողութեամբ։ Կրակը շուտ հանգչում է, իսկ աշխարհը շարունակում է իւր հին լեռներով ու գետերով անփոփոխ մնալ։ Գլխովին այլ տեսակ են ճշմարիտ իմաստութեան որդւոց գործերը։ Անոնք չեն կայծակում և չեն բորբոքում սաստկաբար, բայց և չեն հանգչում. անոնք լուսաւորում են արեգակի և աստղերի շարունակ փայլով, այն իմաստութեան փայլով, որ Աստուծոյ կարողութեան և Ամենակարողի փառաց մաքուր ներգործութեան շունչ ու կենդանութիւն է։ Այդ իմաստութիւնը ամենայն դարերում հեղվում է սուրբ հոգիների վերայ, որով իրանք Աստուծոյ սիրելի և մարգարէ են դառնում։

«Զի գործք իւրեանց չոգան զհետ նոցա»։ Կարելք չկայ, որ այս գործքերին մեծահռչակ սխրագործութիւններ լինին։ Այլ կարող են բոլորովին անյայտ մնալ աշխարհում։ Ի՞նչ բան է մարդկային անունը երկրի վերայ, ի՞նչ է հուշակը։ Միայն թէ հրեշտակ-վրկաները չմոռանային այդ անունը նշանակել։ Եղբարք, աշխատեցէք աւելի մոռանալի դառնալ երկրի վերայ, եթէ այդ հնարով պէտք է երկնքում յիշատակուէք։

Մի օր ես կանգնած էի Հռոմի փոքր եկեղեցում, որ նուիրած է առաջին վկայի՝ Ս. Ստեփաննոս սարկաւագի յիշատակին։ Այդ եկեղեցին տարէնը միայն մի անգամ է բացվում։ Անոր պատերի վերայ նկարուած

են քրիստոնեաների ամբողջ զինուորութիւնները, որոնց հալածուել և ընկել են։ Դոցա անունները, բացի մի-երկուսից, անյայտ են մնացել։ Այդպիսի տեղում դժուար է չմտածել այդ մարդկերանց գործքերի և իրանց ստացած վարձատրութեան մասին։ Ի՞նչ են արել դոքա։ «Հաւատով նուաճել են թագաւորութիւններ, տարածել են արդարամտութիւն, միաբանական ուխտեր են հաստատել, առիւծներ են հովուել, կրակի զօրութիւնն են ընկճել, քաջ են հանդիսացել կռուում, ընդ կրունկ են դարձրել հեթանոսներին»։ Միով բանիւ, նոքա քրիստոնէական հաւատքի են դարձրել մարդկանց։ Ահա թէ ինչ են գործել։ Եւ ի՞նչ էր իրանց վարձատրութիւնը։ Նոքա կրում էին անգութ ծաղր և լլկանք, շղթայ և բանտարկութիւն։ Նոցա քարկոծում էին, պատառ պատառ էին անում, փորձութեան էին ենթարկում, սրախողխող էին անում, տանջում էին։ Նոքա ապրում էին աղքատութեան, թշուառութեան մէջ, և վերջապէս ոճրագործի գերեզմանական փոսն էին ձգվում։

Բայց անյայտ մնացածների այս քստմնելի յիշատակների մէջ՝ անհնարին է այն ևս չտեսնել, թէ երկրպագութեան արժանի իրանց արդիւնքը՝ եկեղեցու սերմ է, թէ իրանց յիշատակարանները բոլոր բուրգերից էլ աւելի հաստատուն են, թէ «Գործք իւրեանց չոգան զհետ նոցա»։ Դոցա դէմ էին թագաւորներ, կայսրներ, բանակներ, խարոյկի բոց, կրկէսի գազաններ, դահիճների չարչարանք։ Իսկ դոցա հետ էր Աստուած։ Նոցա ամբողջ կապոյտ երկինքը նոցա վահան էր, և թէպէտ մարդիկ նոցա յիշատակը և նոցա կեանքը արհամարհութեամբ ոտնակոխ արեցին,—աշխարհի բոլոր զօրութիւնները անզօր մնացին նոցա դէմ, որոնց անուններն անշուշտ գրուած են «Կենաց գրքի» մէջ։

արի նպատակ ունենալու, բայց և այնպէս (մի հը-րաշքով) անձնատուր չլինի անարգ մեղքերին, և եթէ իւր կեանքը փչացնէ միայն անշահ ժամավաճառու-թեամբ, ամենայն օր ոլին զուարճութիւններ փնտռե-լով, եթէ այդ կեանքը նմանի չորացած ծառին, որ ոչ ստուէր, և ոչ պտուղ է տալիս—այսպիսի կեանքը ո՞չ ապաքէն կարելի է կոչել զուրկ որ և է գործից։ Իսկ ոչ մի լաւ բան չկատարող մարդը՝ չարութեան արբանեակ դառնալու վտանգի մէջ է։

Երբ որ ես տեսնում եմ մի պատկեր, ուր որ մեծ նկարիչը սրբապղծել է աստուածային հանճարի կու-սական հուրը, որովհետև մեղքի սեղանի վերայ է վա-ռել, կամ երբ որ բանաստեղծի տաղանաւորներ եմ կարդում, որ յիշեցնում են Յուդա առաքեալի խօս-քը, թէ «անսաստ ալիք ծովու, որ միշտ փրփրեն զիւրեանց անձանցն զամօթ»[1]) կամ Եսայի դարձուա-ծը, թէ «անօրէնք իբրև զծով ծփեսցին՝ որ հանգչել ոչ կարէ, և արձակեն ջուրք նորա տիղմ և կաւ»[2]), և երբ որ յիշում եմ, թէ ինչպէս վառ երևակայ-ութեան ծնունդը երկար ժամանակ իւր թունաւոր հեղեղը տարածում և օդը վարակում է փտող գէշի պէս,—ես այդ ժամանակ կարծում եմ, թէ այս տեղ էլ մարդկանց գործքերը իրանց հետքերով են գնում։ Ո՛չ, չէ թէ միայն իրանց հետքերով գնում են, այլ հալածում են, ինչպէս որ ծխի ամպերը, տաք մոխրի կայծեր և բոցի երկայն լեզուները հալածեցին այն մարդուն, որ դուրս էր գալիս իւր ձեռքով կրակ տուած քաղաքից, կամ ինչպէս որ դիցաբանութեան մէջ՝ մազերի տեղ գլխին օձերով և ձեռքին ջահերով՝ կատաղի դիցուհիները հալածում էին ոճրագործներին։

---

1) Յուդ. 13:

2) Ես. ԾԷ. 20:

Աւա՜ղ, հանճար հարկաւոր չէ ունենալ, որ մարդ չար գործեր կատարէ և երկար ժամանակ նզովք դառնայ աշխարհի համար։

Ամենատխմար մարդն անգամ կարող է չարութիւն գործել, մէջը կորչել և ուրիշներին կորցնել։ Իմաստունները միշտ զարմացել են, որ յիմարը կորստաբեր ձգտում ունի չարութեան, և իրօք պէտք է ապշել, թէ չարութիւնը ինչ տիտանական ազդեցութիւն է գործում ամէն տկարամիտ և ցած սրտի վերայ։ Դոցա մասին և՛ս կարելի է ասել սոսկալի ճշմարտութիւնը, թէ իւրեանց գործերը գնում են դոցա հետևից։

Եթէ դուք շատ բան չյիշէք, գէթ այս հարցմունքն արէք։ Ի՞նչպէս են ձեր գործերը, արդեօք բարի՛ են, չա՛ր են, թէ բնաւ կատարած բան չունիք։ Եթէ անարժան են կամ անարգ,—աղօթեցէք ամենայն սրտով, որ Աստուած փրկէ ձեզ այդպիսի գործերի պտուղը վայելելուց, այլ զօրաւիգն լինի ձեզ այնպիսի գործեր գործելու, որ ձեզ կարողանան անմահացնել։ Ինչ էլ որ լինի ձեր գործը—ոսկի, արծաթ, գոհար, փայտ, խոտ, կամ տերև—բոլորը կը փորձուի հրով, և հրոյ մէջ կը փորձուի ամենայն մարդ։

## ԺԷ.

## ՊԱՏԵՐԱԶՄ ՈՐԻՑ ԱՐՁԱԿՈՒՄՆ ՉԿԱՅ. *)

«Ոչ գոյ արձակումն ի պատերազմի», ասում է Սողոմոնը 1) մարդկութեան թշնամու՝ մահուան մասին: Բայց ամբողջ Ս. Գիրքը, Ծննդոցից սկսած մինչև Յայտնութիւնը, թոյլ է տալիս մեզ այդ ձեռնու-թեան իմաստը ընդարձակել նաև մարդկութեան ուրիշ թշնամիների դէմ պատերազմելու վերայ, մանաւանդ մեղքի դէմ, այդ հոգևոր չարութեան դէմ, որով աշխարհը կործանվում և մահը փառաւորվում է:

Ուրեմն պատերազմ՝ որից արձակումն չկայ, է պատերազմ մեղքի դէմ: Ամբողջ Ս. Գիրքը լիքն է այդպիսի սրբազան պատերազմով: Ոչ միայն սրբերից շատերը իրօք զինուոր են եղել, այլ և Ս. Գրքի փոխաբերութիւնները զարմանալի յաճախութեամբ ընտրըրուած են պատերազմական ասպարէզներից: Ի՞նչպէս է նկարագրուած քրիստոնէի կեանքը: Նա պէտք է համարձակ լինի մաքառման մէջ, պէտք է քաջութեամբ կռուի, և Քրիստոսը նորա առաջնորդը կը լինի: Թէպէտ նորա զէնքերը նիւթական չեն, բայց և

---

*) Միդլսէքսի կամաւորներին ուղղած խօսք, զօրական տօնի օրերում:

1) Ժող. Ը. 8:

այնպէս զինուորական սպառազինութիւն են — զրահ Աստուծոյ, զրահ լուսոյ, զրահ արդարութեան։ Արդարութիւնը պէտք է լինի նորա լանջանոց, հաւատը — վահան, փրկութիւնը — սաղաւարտ, սուրը — սուր Հոգւոյ, որ է Բանն Աստուծոյ։ Նորա այս տեղի յոյսն այն է, որ Աստուծոյ ողորմութեամբ յաղթէ աշխարհը, մարմինը և սատանային, իսկ հանդերձեալում — յաղթէ մահուան լուծը և դերեզմանի աճիւնն ու խաւարը։ Ուրեմն կեանքը հարկաւ պատերազմական դաշտ է։ Այս պատճառով նորածին երեխան կոչվում է զինուորեալ եկեղեցու անդամ — որ միշտ մարտնչելու պատգամ է նշանակում։

Մկրտութեան ցօղը սրսկելով երեխայի ժպտող դծագրութիւնների վերայ, մենք ասում ենք, թէ նորան դրոշմում ենք խաչի նշանով, հաստատելով այն հանգամանքը, թէ մեծանալուց յետոյ նա չի տկարանայ դաւանել խաչեցեալ Քրիստոսին, թէ նորա դրօշակի տակ արիութեամբ կը պատերազմէ մեղքի, աշխարհի և սատանայի դէմ, և թէ մինչև կենաց վախճանը կումնայ Քրիստոսի հաւատարիմ զինուոր և ծառայ։ Այս պատերազմը կարող է լինել ծածուկ՝ սրտի մէջ, և յայտնի։

Ի պաշտօնէ այս օր պարտաւոր եմ մի քանի խօսք ասել իւրաքանչիւրիդ հասարակական, ազգային կենաց մասին, երկրի քաղաքական պարտականութիւնների մասին։

Թէպէտ գիտեմ, որ ոյժերս տկար են, բայց և այնպէս մաղթում եմ առ Աստուած, որ իմ առածների մէջ ունկնդիրներս գտնեն փոքր ինչ բան, որով նոքա կարողանան հոգւով բարձրանալ և լուսաւորուել։ Պատմութիւնը — նոյնպէս պատերազմ է, և անոր մեծ մարդիկը մի և նոյն ժամանակ մարտիկ են եղել։ Այդպէս էին Գեդէոնը, Բարակը, Սամփսոնը, Յեփթայէն

և Դաւիթը, այդպէս էին և Մակաբայեցւոց մեծ թա-
գաւորները և Կոստանդնու քրիստոնեայ-լեգէոնական-
ներից շատերը, քրիստոնէութեան սուրբ մարտիրոս-
ները, ռամկապետութեան երկաթէ զինուորները և
Կամբրուէլի հզօր երէցները. Աստուծոյ ողորմութեամբ,
այսպէս էին և Անգլիայի փառաւոր զինուորներից շա-
տերը, և՛ նոքա, որ այսօր ևս ողջ առողջ են, և՛ նո-
քա, որոնց մարմինը հանգստանում է Եւքսինեան
ծովու ափերին, կամ Հնդկաստանի կիզիչ արևի տակ։

Բայց միայն զինուորները չեն հերոս։ Սամուէլը
և մարգարէները Ս. Գրքում հաւասար են նկարագրած
մարտիկներին և թագաւորներին։ Ս. Պօղոս առա-
քեալը, որ մարդկանց մէջ ամենահեզ, գրեթէ կանացի
քնքշասիրութիւն ունէր, որի ձայնը սրտի փղձուկից և
աչքի արտասուքից կտրվում էր,—բայց և այնպէս
կռուել է առիւծների դէմ [1]) և առիւծից աւելի կա-
տաղութեամբ՝ մարդկանց դէմ։ Իւր երկար կենցաղա-
վարութիւնը կնքեց նա այս խօսքով. «Զբարւոք պա-
տերազմ պատերազմեցայ» [1])։

Իսկ աւելի դժուար է կեանքի մէջ կեղծ բարե-
պաշտութեան, ագահութեան, մոլորութեանց, չար
սովորութիւնների, պաշտած կուռքերի, յաղթական
ստութեան դէմ մարտնչիլը, և աւելի վտանգաւոր է,
քան զինուած թշնամու դէմ կռուիլը, մանաւանդ որ
հարկաւոր է աւելի արիութիւն և անսասան հաւատք
ունենալ։ Այս կարգի հերոսներից է կազմուել այն մեծ
բանակը, որ մեծամեծ վշտեր կրելով, իւր հանդերձները
լուացել է Աստուծոյ Գառան արեան մէջ։ Եկեղեցու
հայրապետների, վկաների և մարտիրոսների մէջ շատ են
եղել այսպիսի հերոսներ։ Երևի թէ չի եղել ոչ մի մեծ
մարդ, ոչ մեր, և ոչ ուրիշ պատմութեան մէջ, որ

---

1) Բ. Տիմ. Դ. 17, . . . 7։

արիութեամբ կռուած չլինի հակառակորդների դէմ մի այնպիսի գործ պաշտպանելու, որը որ ի սէր Աստուծոյ, ի սէր ազատութեան կամ ի սէր ճշմարտութեան է ձեռնարկվում։

Չկարծէք, սիրելիք, որ ձեր այսօր լսած աստուածային լեռնաքարոզը՝ հակառակում է այս ճշմարտութիւններին։ «Երանի խաղաղարարաց» 1), սակայն ով որ խաղաղութիւն է սիրում, պարտաւոր է, երբ որ հարկ լինի, մարտնչել խաղաղութեան համար։ Իսկ միթէ հնարաւոր է հեզութիւն և սէր, առանց ի սրտէ անարգելու ամենայն ստորութիւն և ատելու չարութիւնը։ Մեր լաւագոյն և ամենաքաջ մարտիկները մի կողմից սրտի փափկութեամբ և մեղմութեամբ կարեկցել են նոյն իսկ անբան արարածներին, բայց միւս կողմից ամեհի քաջութեամբ բորբոքուել են այնպիսիների դէմ, որոնք յանդգնութեամբ կնոջ արցունքի կամ մանկան հառաչանքի պատճառ են եղել։

Ինչպէս որ կայծակի ոգին ամփոփուած է մի կաթիլ ցօղի մէջ՝ այնպէս էլ ազնիւ սրտի մէջ արդար պայքարը շատ անգամ նիրհում է հեզութեան և գթութեան հետ ի միասին։ Երբ որ դուք խորհում էք մեր Տէր Աստուած Յիսուս Քրիստոսի մասին, մեր Վարդապետի և Փրկչի մասին, որ աստուածային Օրինակ է ամենաառատ ներողամտութեան, հեզութեան, երկայնամտութեան, սիրոյ,— մի՛ մոռանաք Նորա բնութեան և միւս կողմը։ Նա, Որ լաց է եղել Ղազարոսի գերեզմանի վերայ, բարակ չուաններից խարազան շինեց և դուրս արեց այն մարդկերանց, որոնք Նորա Հօր Տունը դարձրել էին գողերի որջ 2)։ Նա, Որոյ աչերը քանի անգամ կամեցաւ Երուսաղէմի որդոց ժո-

1) Մատ. Ե. 9:
1) Յով. Բ. 13—17:

զովել, ինչպէս որ հաւը իւր ձագերին թեւի տակ է հովանաւորում, հրով էր այրում և ցամաքած փարիսեցիների ու դպիրների խայթած խղճի գաղտնիքներ էր բաց անում: Նա թափում էր անարգութեան և արհամարհութեան բորբոքած խօսքեր՝ կեղծաւորների վերայ 1):

Նա, Որ Իւր անհուն սիրոյ պատճառով դէպի մարդկութիւնը՝ չէր պղծում բորոտի վէրքերից և թոյլ էր տալիս զղջացած անառակ կնոջ, որ Նա իւր ջերմ արտասուքով լուանայ Նորա ոտքերը և իւր մազերով սրբէ, աներկիւղ կանգնեց ժողովրդանոցի կառավարի անդամների առաջ և արհամարհական պատասխան ուղարկեց Թեթեւամիտ, արեան մէջ ողողուած արքային 2):

Ահա ուրեմն, քրիստոնեան էլ պէտք է ունենայ զինուորի աներկիւղ ոգի և պինդ ջղեր: Հարկաւ, կեանքն աւելի դիւրին կը լինէր, եթէ մենք խոնարհութեամբ ապրէինք, երբէք չմարտնչելով անարգուած ճշմարտութիւնների համար, չպաշտպանելով զրպարտուած մարդուն կամ ջոջերին հաճելի չեղած կարծիքները, ուշադրութիւն չդարձնելով բամբասանքների վերայ, պղերգութեամբ հանդուրժելով, որ ծաղրեն մեր անձը, ոչընչին հակառակ չկալով, չամբաստանելով արատն ու մոլութիւնը:

Հեշտ է այնպէս ապրել, որ հոգանք միայն ուտելու և խմելու մասին, դրամ դիզելու կամ դիզածը չնչին յարմարութիւնների և դատարկ զուարճութիւնների վերայ ծախսելու մասին, մոռանալով ամենայն որբութիւն, բացի մեր անձից, մոռանալով, որ մենք

1) Մատ. ԻԳ. 37, Ե. 20, ԺԵ. 1—9, ԻԳ. 3, 15. 23, 25, 27, 29, նոյնպէս եւ միւս աւետարն.

2) Մատ. ԻԶ. 6, Ղուկ. Է. 37—38, Մատ. ԻԱ. 23—27, Ղուկ. ԺԳ. 31—33:

քրիստոնեայ և քաղաքացի ենք, անգլիացի ենք, մոռա-նալով այն ցեղը, որին որ պատկանում ենք: Այո՛, այդ կը լինէր և՛ դիւրին և՛ սովորական բան, բայց և ար-ժանի անարգութեան: Չլինի թէ այսպիսի տխուր եսա-կանութիւնը կոչենք «քրիստոնէական հանդուրժութիւն և խաղաղութիւն» անունով, կամ թէ մեր ստրկական երկչոտութիւնն ու վատութիւնը ծածկելու փորձենք՝ կրօնասիրութեան անունով:

Այն մարդը, որի համար երկինքն ու երկիրը իւր ագարակի կամ ապրանքների մէջ է բովանդակւում, ար-ժանի է դատաճանի կամ ստրկի կենաց: Իսկ ով որ կա-մենում է լինել Տէր Աստծու զինուոր և քրիստոնէա-կան փառաւոր երկրի արժանաւոր քաղաքացի, եթէ իւր մէջ կայ գէթ մի կայծ ազնուութեան, վեհանձնու-թեան, արիութեան, պէտք է, երբ որ հարկը պա-հանջի, պատերազմէ Աստուծոյ, ճշմարտութեան, ար-դարութեան կամ կարեկցութեան համար, և աշխատէ յամենայն դէպս յաղթութիւն ստանալու: Թող ոչ ոք չյաւակնի զրկել քրիստոնէութիւնը այն արիութիւնից, այն ազատաշունչ համարձակութիւնից, որ հին լեզու-ներում նոյնանիշ էին առաքինութեան:

Ամաչկոտութիւնը — քրիստոնէական առաքինու-թիւն չէ: Այդ բանը — մեղքի և ամօթական գործոց ժառանգութիւն է: Թող խարդախը, նենգաւորը, սու-տը, արբեցողը, անառակը ամբողջ կեանքի ընթացքում դողայ ու դողդողայ սուտ խղճահարութեան պատ-րանքներից. համարձակ հայեացքը, ազատ կեցուածքը, աներկիւղ հոգին՝ յատուկ է քրիստոնէական մարդ-կին: «Փախուցեալ է ամպարիշտն առանց ուրուք հա-լածելոյ, իսկ արդարն՝ իբրև առիւծ յանձն ապաս-տան է» 1):

---

1) Առկ. ԻԸ. 1:

«Քրիստոնէի հեզութիւնը, ասում է մէկը, երբեք չպէտք է վախկոտութեան բնութիւն ստանայ, և մենք պէտք է սատանայի արբանեակներին տեղի չտանք, որ մեծապարծութեամբ իրանց գլուխը գովեն, իբր թէ համարձակութիւնն ու զօրութիւնը միայն նոցա է պատկանում»: Սիրելիք, արդեօք այս մտքերը ձեզ մի օգուտ կը բերեն, թէ չէ, չգիտեմ, բայց ես մի բանի հաւատք ունիմ. որքան որ մենք աւելի լաւագոյն և արիագոյն լինինք, որպէս անգլիացիք, այնքան աւելի լաւ կը լինինք նաև որպէս մարդիկ:

Մեղքը նոյնչափ կործանիչ է ազգերի համար, որչափ և հատ հատ անձնաւորութիւնների համար: Խանութպանը, որ կեղծ կշիռք է բանեցնում կամ յաճախորդին խաբում է, կալուածատէրը, որ մշակի վարձը կտրում է, հարուստը, որ աղքատների քրտինքն է քամում, աղքատը, որ իւր վաստակը արբեցութեան համար է վատնում, և բոլոր ծոյլերը, չարամիտները, զգայասէրները—սոքա ամէնքը հաւասարապէս հայրենի աշխարհի անէծք են դառնում: Այն խոր արմատացած եսասիրութիւնը, որ իւր ցանցի մէջ բռնել է մարդկանց մեծ մասը և նոցա մեղքերի կէսի պատճառ է դառնում, ամենաօխերիմ թշնամի է մեր երկրի և մեր անձի վսեմութիւններին և առաքինութիւններին: Այս մասում մենք հին ազգերից և հեթանոսներից յետ ենք մնացել: Կարելի է թէ նոցա կեանքի մէջ մաքրութիւնն ու բարձր սկզբունքները աւելի քիչ է եղել, քան մեր կեանքի մէջ, բայց և աւելի քիչ է եղել նմանապէս և մամոնայի երկրպագութիւնն ու չնչին ունայնութիւններով ապրելու ճիգը: Նոցա մէջ աւելի էր հասարակական ոգու վեհութիւն, առաքինի հայրենասիրութիւն:

Օգտաւէտ է զգաստանալ այն զարհուրելի անձնասիրութիւնից, որ այժմեան հասարակութեան հիւան-

գութիւն է կազմում և որ կրօնական բարեպաշտու-
թեան մէջ ևս անարգաբար խառնում ենք։ Աստուած
մարդիկ ի զուր չի բաժանել զանազան ազգերի։ Մեր
անցեալ փառքը մեզ յիշեցնում և սաստում է, որ
թողնենք անձնական շահերը և արժանաւոր կերպով
բարձր պահենք հայրենի դրօշակը։ Եւ հէնց այս օրերիս
մենք աւելի գոհ պէտք լինենք մեր հայրենեաց անդորր
վիճակից։ Այս գարնան օրերին, երբ որ բնութիւնը
յարութիւն է առնում, և այս զատկական օրերին,
որ ուրիշ աւելի մեծագոյն Յարութիւն է բերել մեզ
և անմահութեան յոյս, գիտէ՞ք թէ աշխարհում ինչ
աղէտալի դէպքեր են պատահել։

Արդէն շատ անգամ կայծակի փայլատակումնե-
րը, որ Աստուած մեզ ուսուցել է գործածել տեղեկու-
թիւնները ելեքտրական լարերով մտքի արագութեամբ
հաղորդելու, մեզ բերել են այնպիսի սոսկալի, սրտա-
ճըմլիկ լուրեր, որ լրագրական իւրաքանչիւր համարի
ընթերցանութիւնը ծանրակշիռ խրատ է դարձել, իսկ
ամէն մի հաղորդած դէպք նախազգուշութիւն է լի-
նում կամ առիթ՝ անկեղծ սրտով գոհացողական մաղ-
թանք վերառաքելու։

Մեր աշխարհից դուրս տեսանք կայսեր անդրանիկ
որդուն, որ ախտացել էր նորերեւոյթ և զարհուրելի հի-
ւանդութեամբ։ Նորան տարան Ֆրանսիայի բարեխառն
հարաւը, ուր որ նա այրեց իւր պատանեկութեան
վերջին օրերը, գրեթէ կենդանի գերեզման մտնելով,
բախտի խստութեամբ խլուելով այնպիսի պետութեան
կայսերական թագից և իշխանութիւնից, որի հըպա-
տակները ամբողջ մարդկային ցեղի երրորդ մասն են
կազմում։ Հանդերձեալ մութ անյայտութիւնը կոչեց
նորան երիտասարդութիւնից, կեանքից, յոյսերից, սի-
րելի ծնողներից և ընտանեկան տնից, ամբողջ կայս-
րութեան երկրպագութիւնից, մանկամարդ հարսի

քնքոյշ սիրուց, կոչեց այն վայրերը, ուր որ Թագաւոր և մուրացկան հաւասարապէս կանգնած են, որպէս մեզաւոր հոգի Աստուծոյ աչաց առաջ։

Եւ որպէս այս խազաղ մահուան զարհուրելի հակապատկեր կազմելու՝ մենք մի քանի օրից յետոյ լսեցինք մի այլ անձի մահ, որ ժողովրդոց բախտի աչ պակաս նշանաւոր կառավարիչ էր, որ ոչ թէ անփորձ պատանի էր, այլ ալևոր ծերունի, որ ծնուած էր ոչ թէ ծիրանու մէջ, այլ բարձրացրել էր հասարակ մարդկանց դասերից։ Նա կամաց կամաց չէր հալչում անուշահոտութիւններով լցուած սենեակում, անդադար մահուան գուժաբեր շշուկը լսելով բարեկամների արտասուալից փղձուկի մէջ։ Ո՛չ, նա յանկարծակի անդարձ կորաւ Թատրոնի օթեակում․ առողջակազմ, յոյսերով լի, վաստակներով ամենից յարգուած, նա գետնին վայր տապալեցաւ աբիւնթաթախ, անխօս, ընդ միշտ անշնչացած։ Երբ որ նա հասել էր իւր կոչման գագաթնակէտին, նորա կենաց թելը խզուեցաւ մի վայրկենում ոճրագործի ձեռքով։ Դըժուար թէ պատմութեան մէջ այլ աւելի խրատական օրինակ գտնուի, քան այս մարդու կեանքը, որի սպանութիւնը ողբում է ամբողջ աշխարհը։

Եթէ Աբրահամ Լինկոլնը մեծ հանճար չէր, նա դարձեալ մեծ էր իւր վեհութեամբ։ Երևի թէ մի մեծ ազգի բախտը երբէք այսչափ պարզ, հասարակ և հեզ մարդու ձեռքով չի կառավարուել։ Եւ իրօք, ոչ մի կառավարիչ Ասածուն չի ապաւինել այսչափ խոնարհութեամբ․ աւելի բարեպաշտութեամբ չի զգացել և այնպէս բացարձակ կերպով չի խոստովանել, թէ ինքը լոկ միայն թոյլ գործիք է Ամենակալի։

Աբրահամ Լինկոլնը չիրաւի լաւ մարդ էր։ Փառձութիւններով շրջապատած՝ փառասէր և ագահ չէր, երբէք չի գրել վրէժխնդրութեան ոչ մի բառ,

երբ որ իւր շուրջը ուրիշները դիւահարում էին զորա դէմ։ Ասում են, թէ նոյն իսկ վերջին օրերում Նորա դէմքը փայլում էր խաղաղութեան յուսով և գթութեան զօրութեամբ։ Դժբախտութիւնը Նորան չէր ճնշում, իսկ յաջողութիւնից Նա չէր մեծամտում։

Նա «լաւ մարդ էր, բախտի փոթորկի դէմ մարտնչելու միջոցին», կարևորութիւն չտալով քամբասանքներին, հանդիստ սրտով, խոնարհութեամբ, յուսով տանելով ամենայն բան, և մինչև իւր դառն վախճանը իւր պարտականութիւնը կատարելով սրբութեամբ։ Եւ Աստուած վարձատրեց Նորան. Նորա յանկարծակի մահը, որ մեզ պատճառում է սուկումն, Նորա համար դարձաւ փառաւորութիւն։ Նա այնքան ապրել էր, որ մարդկային սրբազնագոյն յաղթանակին հաղորդակից եղաւ, որ կարողացաւ յանցանաց մոռացման և թողութեան սկզբունք հաստատել տալ, այո՛, այնքան երկար, որ Նորա վաղընդփոյթ աճին դառնալու ականջը՝ արդէն կանխաւ լսեց ստրկութեան ընդմիշտ ջնջման աւետող ձայներն ու ազատուած ժողովրդեան օրհնութիւնները, որ մահուան ձի տակ փակուելու Նորա աչքերը՝ արդէն տեսան բռնակալութեան վայրէջքը դէպի մայր անդունդը և հզօր ազատութեան վարդամտան արշալոյսը։

Մինթէ այս լուրերը մեզ համար նշանակութիւն չպէտք է ունենան, որ մարդիկ և քաղաքացիք ենք։ Մինթէ այդ ամէնը ապացոյց չեն, թէ մեր կեանքը, ինչպէս երկարատև հիւանդութեան, նոյնպէս և յանկարծակի մահուան դէպքերում՝ վաղանցուկ և խախուտ է, որպէս լեռնային մշուշ, որպէս թռչնի թեւերու ստուեր, որ փռուած անցնում է արևից լուսաւորած դալարիքի վերայ։ Մենք համոզվում ենք, որ մեր շահերը, մեր յոյսերը աւելի բարձր և վսեմ պիտի լինին, քան ինչ որ մահը կարող է մի վայրկե-

Ահա այսպէս անցաւ մեզ համար այն ուրախ՝ ուրիշների համար այն տխուր օրը։

Ես չեմ կասկածում, որ այս ծովը, որը որ այս րոպէիս չքնաղապէս ժպտում է, իսկ ուրիշ ժամանակներում ահեղ կերպով մռնչում, և ուրեմն խաղաղութեան անհաստատութեան լաւ օրինակ է ներկայացնում ձեզ էլ խելամուտ է կացուցանում, թէ անոր ափերը բաւական ամուր պատնէշ չեն՝ մեր երկիրը ապահովելու համար, և թէ հետևապէս այդ դէպքում մենք պէտք է յուսանք նախ Աստուծոյ, ապա և այն ազնիւ համարձակութեան վերայ, որ փրկում է անարգ ստրկացումից։ Մենք էլ պատրաստ պիտի ունենանք փրկութեան բանակը։ Հրաշալի էր Աստուծոյ ողորմութիւնը, որ մինչև այսօր Ինքը փրկեց մեզ, և որովհետև ժառանգորդ ենք այդպիսի ողորմութեան, ապա ուրեմն պարտաւոր ենք յօժար կամօք, ընդ միշտ, անխարդախ մտքով պահպանել այն։ Պարտաւոր ենք, և Աստուծոյ օգնութեամբ՝ կը լինինք այդպիսի պահապաններ։

Ներեցէք, ես ինձ կարհամարհէի, եթէ շողոքորթելով խօսէի, բայց ես ասում եմ ճշմարտութիւն, յայտարարելով, որ իմ սիրտս պարծանքով է լցվում և յուսով եմ մայրենի երկրիս համար, երբ որ մի առ մի յիշում եմ մեր վաշտերում գտնուած անձինքներից շատերի անունն ու բնաւորութիւնը. այդ ինչ պատուական քրիստոնեաներ են, որչափ անկեղծ, հանդիստ, խելօք, արդարամիտ են։ Այսպիսի իրողութեան դէմ ինքնին ոչնչանում է մեր թշնամիներից բացարձակապէս մեզ վերայ բարդած՝ իսկ մերոնցից շշնջմամբ մեր մէջ կրկնուած՝ այն մեղադրութիւնը, իբր թէ մեր ազգը այլասեռւում է։

Շատ ազգերի բախտը ընթացել է ազատութիւնից փառքին, փառքից հարստութեան, հարստութիւնից մոլութիւններին, և թէպէտ մեր սիրելի Անգ-

ղեկայում յաճախակի պատահում է ցածութիւն և
մամոնայի երկրպագութիւն, բայց այս տեղ դեռ չենք
նկատում այն ժպիրհ անաստուածութիւնը, այն մո-
լեգին շռայլութիւնը, այն փափկասէր անձնդիւրու-
թիւնը, որոնք որպէս ուլաք ազդարար շրջանակի վե-
րայ՝ միշտ ցոյց են տալիս ազգերի կորստեան բախտը։
Թող որ մեզանից իւրաքանչիւրն իւր սրտի մէջ պահ-
պանէ այն արդարամտութիւնը, որով ազգերը վսեմա-
նում և բարձրանում են, իսկ այնուհետև մենք ոչինչ
վախենալու բան չենք ունենայ։ Այդպիսի արգա-
րամտութիւնը մեզ համար կը լինի զրահ, բայց անխո-
ցելի՝ թշնամու ասպատակութիւններից։

Հրաւիրում եմ ամենայն քաղաքացուն, և մանա-
ւանդ ամենայն կամաւորին, որ իւր երկրի պաշտպան
հանդիսանայ։ Թերևս երբէք մեզանից ոչ ոք չստիպուի
պատերազմելու թշնամու հետ, բայց կեանքի մեծ պա-
տերազմում մենք պէտք է մշտապէս զինուոր մնանք,
մեր բարձր և ստորին վիճակներում, գործունէու-
թեան ամենայն շրջանում։ Չմոռանանք և՛ ծեր, և՛
երիտասարդներս, թէ մենք միակ չենք, և թէ թշնա-
մին արթուն է, և սրտապնդութեամբ խոստովանինք,
որ մեզ ամէնիս ի մի միաւորող կապերը՝ միևնոյն ժա-
մանակ մեզ պարտաւորեցնում են, որ աշխատենք
ապրել ազնիւ, բարեպաշտ և արդար կեանքով։

Եղբարք, և մանաւանդ դուք, երիտասարդներ, որ
պարծենում էք ձեր առոյգ զօրութեամբ և որ տակաւին
չէք ճաշակել կենաց բոլոր հրապոյրներն ու գայթակ-
ղութիւնները. հաւատացէք ինձ, որ այս պատերազմը
դիւրին չէ. այս այն պատերազմ է, որից արձակումն
չկայ, որից ազատուելու հնար չկայ։ Աւելի ծանր
գործ, աւելի երկարատև, յոգնեցուցիչ աշխատութիւն
է վիճակվում նորան, ով որ կեանք է վարում հերո-
սական հաւատարմութեամբ, համարձակութեամբ,

ազնուութեամբ, արդարամտութեամբ։ Ահա այդպէ-
սին պէտք է ապրի չափաւորութեամբ և կուսութեամբ,
խուսափէ այն խաւարի, սայթաքիչ ճանապարհներից,
որ դէպի մահն են տանում, և այն հրապուրիչ խըն-
ջոյքից, որք հիւրերն են մեռեալներն ու Աստծուց մեր-
ժեալները։ Այդպիսին այնչափ գթոտ պիտի լինի դէպի
մարդիկ, որ անարգէ ամենայն բծախնդիր չարութիւն,
արհամարհէ անմաքրութեան և ստութեան ամէն տե-
սակները։ Նա պէտք է ի բոլոր սրտէ սիրէ Տէր մեր
Յիսուս Քրիստոսին և երբէք չտրտմեցնէ սուրբ Հոգին
իւր յօժարամիտ մեղանչութիւններով։ Որպէս Աս-
տուծոյ պաշտօնեայ, ես ձեզ այսպիսի կեանքի եմ
հրաւիրում։ Նոյն բանի են հրաւիրում ձեզ և՛ ձեր
խիղճը, և՛ ձեր սրտի մէջ լսուող Աստուծոյ ձայնը, և՛
Ս. Գրոց խօսքերը, և՛ կեանքի խրատները, և՛ անմա-
հութեան յոյսը։

Ո՜հ, մի՛ խցէք ձեր ականջը Աստծու ձայնը լսելիս։
Եթէ առաջ այդ չէք արել, այսօրուանից քաջալեր-
ուեցէք լինել արդարամիտ և սուրբ, արի սրտով պա-
տերազմեցէք Փրկչի դրօշակի տակ աշխարհի, մարմնի
և սատանայի դէմ։ Եթէ այս պատերազմից արձա-
կումն չկայ, տրիտուրն էլ այն է, որ այդ պատե-
րազմում անյաջողութիւն ևս չկայ։

Ահա այսպէս դուք կը լինիք մայրենի աշխարհի
ծաղկման կենդանի գրաւականը։ Ո՜հ, եթէ մենք ամէնքս
այսպէս լաւ մարդիկ լինէինք։ Այն ժամանակ Անգ-
լիան կը լինէր ամենափառաւոր աշխարհ, և երկնային
հաստատութիւններից երկիրը նայող հրեշտակները՝
խնդալով մատնացոյց կանէին այդ աշխարհը, որպէս
այնպիսի վայրեր, ուր որ բնակւում է Աստծու ընտ-
րած ազգ։

Թող Աստուած լսէ մեր աղօթքը։ Այն ժամա-
նակ, երբ որ սկսուի վերջին պատերազմը և Հաւա-

տարիմն ու Ճշմարիտը[1]) «բոց հրոյ» աչքերով[2]), «ներկեալ արեամբ» հանդերձով[3]) դուրս գայ, որ կոխէ «հնձան գինւոյ ցասման բարկութեան Աստուծոյ Ամենակալի»[4]), երբ որ երկրի թագաւորները և նոցա զօրքը ժողովուին, որպէս զի պատերազմեն նորա դէմ[5]), իսկ արեգակի վերայ կեցած հրեշտակը կոչէ «ամենայն հաւուց թռուցելոց ընդ մէջ երկնից», որպէս զի ուտեն թագաւորների, հզօրների, զօրապետների մարմինները[6]),—այն ժամանակ, եթէ մենք երկրի վերայ հաւատոյ արդար դատի կողմը լինենք, կարող ենք դասուել այն երկնային զինուորութեան կարգում, որ «զգեցեալ բեհեզս սուրբս և սպիտակս»[7]) գնում է Աստուծոյ Բանին հետևից վերջին յաղթութիւնը տանելու համար։

---

1) Յայտ. ժԹ. 11։
2) » » 12։
3) » » 13։
4) » » 15։
5) » » 19։
6) » » 17, 18։
7) » » 14։

## ԺԸ.

# ՄՈՐԵԽԻ ԿՍՐԱԾ ԱՆՑԵԱԼԸ. *)

> «Եւ Հատուցից ձեզ փոխանակ ամացն յորս եկեր մարախն եւ ջորեակն եւ գրուիճն եւ խառնիճն։։ Յովէլ. Բ. 25։

Դժուար է պատկերացնել այն տոսկումը, որով ըմբռնուեցաւ հովուական ժողովուրդը, որ ապրում էր իւր այգիների և թզենիների շքի տակ, դալարագեղ հովիտներում կամ լեռների լանջերի վերայ, ու որ ամենուրեք զարդարուած էր սիրուն նշենիների ծաղիկներով ու ձիթենու արծաթափայլ տերևներով, երբ որ նա՝ կէս օրուայ խաղաղ ժամանակ՝ առաջին անգամ նկատեց մորեխի քիչ քիչ բազմանալը, որ սկզբում երևել էր հեռու դաշտերում և այգիներում։ Մարդիկ անակնթարթ և գրեթէ մոլեգնած աչքերով նայում էին հորիզոնի վերայ, և մենք հազիւ կարող ենք երևակայել նոցա սրտատրոփ յուզումը՝ այն հեռաւոր սև բիծը տեսնելիս, որ աւելի և աւելի սպառնալեօք ստուարանում էր և հետզհետէ ստանում էր թուխպ կոյտերի խտացած մառախուղի կերպարանք, որը որ արագ արագ պատում էր համայն երկինքը և մթնացնում էր։

Այս սարսափելի աղէտից խռովուած, Յովէլ մար-

---

*) Ասուել է հին տարուայ բոլորուելոյ եւ նոր տարուայ սկսուելոյ առթիւ:

գարէն բորբոքիչ խօսքերով նկարագրում է իւր գրքում ժողովրդեան ողբը և նոցա խաւարած դէմքերը։ Նոքա հիմնաւոր պատճառ ունէին լալու համար. մարախից յետոյ եկաւ սով, աւերակ, կործանումն, յուսահատութիւն։ Աւելի և աւելի խստանում էր մէգի խաւարը, չորս կողմը պատեց ամպ ու մառախուղը։ Ամէն տեղից լսվում էր մի աղմուկ, որ կարծես թէ լեռների գլուխներին ապառաժոտ կառքերի շառաչիւն լինէին։ Արեգակը մթնացաւ, իսկ օդը դողաց բազմութեան միջատների թևերի սաստանմունքից։ Այն ժամանակ միայն հասկացան մարդիկ, որ իւրեանց երկրի վերայ մորեխ է թափուել, և թէ ականջին հասած աղմուկն ու շարժմունքը՝ գիւղացու համար աւելի սոսկալի թևաւորների արշաւանք է, քան մահուան հրեշտակի թևարկութիւնը։

Բանաստեղծ-մարգարէի գրգռած երևակայութեամբ՝ մորեխը Տէր Աստծու անընկճելի մեծ զինուորութիւն է կամ թէ այնպիսի հեծեալների բազմութիւն, որ չորս կողմը կրակի պէս ուտում ճարակում է։ Ոչ մի սուր չի կարող խոցել այդ հրէշին, ոչ մի պարիսպ կանգուն չի մնայ դորա առաջ։ Այս էր մեծ, արագ, թևաւոր, անհամար զօրք, և Աստուծոյ մեծ ձայնը հնչում էր այդ բանակի մէջ։ Սակայն առանց մոլեգնութեան և առանց ցնորքի ևս, իրօք որ մորեխի տուած վնասի մեծութիւնը՝ չափ ու սահման չունէր։ Նորան բոլոր այգիները, որով ժողովուրդը պարծենում էր, կորաւ հնձի յոյսը. թշուառացաւ ցորենը, ցամաքեցաւ գինին։ Արեգակի և անձրևի տակ ծիծաղող դաշտերն ու ցորենները՝ փոսացան և տգեղացան։ Աչքը էլ ոչ մի տեղ չի տեսնում դալարին, իսկ ապատակ թշնամու սատկած և կենդանի մարմինները՝ մարդու ոտքի տակ ճարճատում են, նորա ամէն մի քայլափոխին։

Թզենու, Նռնենու, արմաւենու և խնձորենու ուռը լնացել (մերկացել) էր։ Ոստը արմատով կերել էին, իսկ առաջուայ դալարի դաշտերն այժմ ծածկուած էին արդէն փտող դէզերով։ Ինչ որ սովալլուկ մորեխը չէր կարողացել ուտել, այն էլ վարակեց նա իւր հոտած ապականութիւններով։ Նորա մնացորդեր բոյլերը տարածում էին ժանտահոտ և սև մահ։ Նորա զարհուրելի արգասաւոր ծննդականութիւնը ապագայի յոյսն անգամ իսպառ կտրում էր։ Այն երկիրը, որ առաջ դրախտ էր, մորեխից յետոյ՝ աւեր անապատ դարձաւ։

Այո, մորեխի գալու օրը՝ Տեառն Աստուծոյ այցելութեան օր էր, մութ, մառայլ օր՝ խոր ամպերով ծածկուած։ Այդ էր մի գառն, սիրտը կտոր կտոր անող թշուառութեան օր, որի յիշատակը անցել է պապերից հեռաւոր սերունդներին։ Եւ որովհետև Փիզիքական աշխարհի ամենայն երևոյթ համապատասխանող երևոյթ ունի հոգեկան աշխարհի մէջ, արդեօք մորեխը աւելի սոսկալի տառապանաց նշան չէ՞։ Այս այն խորհրդաւոր արդումներից է, որ մեզ միշտ տատանեցնում է, կարծես թէ մթութեան մէջ մի չար ոգի է անցնում մեր կշտով, մի արդումն, որ հեռաւոր նմանութիւն ունի ամենայն գեղեցկութիւն թարշամեցնող վէրքին, ամենայն կեանք մաշող բորոտութեան, կամ այն անէծքին և թշուառութեան՝ որ մարդկային կանաչ դաշտերի վերայ չարագուշակ ծանրանում է, որպէս թուխաւոր ծառի մահաշունչ ստուեր։

Այն մարդու համար, որ մեղանչութիւնից խղճահարվում է, որի մտաւոր աչքը տեսնում է բարոյական աշխարհի խռովութեան անսաստ լինելը, որ աշխատում է իւրերի վերայ նայել Փրկչի աչքերով, որ դատում է ոչ թէ մարդու՝ այլ Աստուծոյ չափած չափով, նորա համար մորեխի առաջին ապականութիւնը գեղածիծաղ արտերի վերայ՝ երբէք այնչափ

սոսկալի չի կարող լինել, քան չարութեան առաջին փոքրագոյն ամպը, որի ստուերը ընկնում է անմեղ, դեռահասակ կեանքի վերայ, ամէն մի երիտասարդի կենաց վերայ, ինչպէս որ երբեմն եղել էք և դուք։

Մեր Երկնային Հօր երեսը տեսնող հրեշտակները՝ արդարութեան աշխատանքների վերայ գրում են այն առաջին չար բառը, որ արտասանում ենք առանց կարմրելու, այն առաջին երդումը, որով սրբապղծում ենք մեր անսովոր շրթունքները, այն առաջին ստու-թիւնը, որ մեզ ասեցնել է տալիս սուտը, որպէս զի ծած-կենք սխալը կամ դիտաւորութեամբ պարտազանցութիւնը։ Նոքա նշանակում են նմանապէս և առաջին չար միտ-քը, որ յղանում ենք մօր դէմ, և առաջին հարուածը, որ պատճառում ենք հօր սրտին։ Նոքա արձանագրում են ըզգաստութիւնից և պատուից առաջին անգամ խոտորումը, «չարութեան գիտութիւն» ծառից ճաշա-կելու և իբրև աստուածներ դառնալու ցանկութիւնը, նաև այն շշունջը, թէ «Մի վախենար, դու չես մեռնի» («Ոչ եթէ մահու մեռանիցիք»)։ Նոքա տեսնում են և առաջին անձնահաճ արարքը, որով մոլորութիւնը ծըլ-առում է ճշմարտութիւնն ու արդարութիւնը և դրեթէ դրօշակ է բարձրացնում Աստուծոյ թշնամիներու շար-քում։

Մենք կարող ենք մոռանալ այդ առաջին բառը, այդ առաջին դիտակցական չարութիւնը, ինչպէս որ մորեխի առաջին գուժաբերները մոռացուեցան՝ ուրիշ հազար հազարների երևելով, ինչպէս որ մոռացվում է չորացած տերևը բռնկեցնող առաջին կայծը, երբ որ այնուհետև բոցով է բռնվում ամբողջ անտառը։ Բայց հրեշտակներն այդ բանը չեն մոռանում։ Չի մոռա-նում և Աստուած։ Նա, որ տեսնում է գալարացած ծառի մէջ սկսուող ցամաքումը, անշուշտ տեսնում և նշանակում է այն մեղքը, որ ուրանալով յուտարեր

*նորաբողբոջ կեանքին, անոր արմատը դառնացնում է, իսկ ծաղիկները փոշու պէս ցրուում: Նա տեսնում է, թէ ինչպէս չարիքն աճում և բազմանում է, թէ ապականութեան սերմը մահաբեր պտուղներ է հասցնում, մինչև որ արտը իսպառ անապատանում է, իսկ հոգին, որ Աստուծոյ դրախտ է, խաւարում և պղծվում է, ինչպէս Հիննոմի հովիտը*[1] *և մահուան հովիտը:*

*Ո՜հ, եղբարք, մի խաբուիք. Աստուծոյ հետ հանաք անել կարելի չէ: Ես գիտեմ, որ նորասիրութիւն է դարձել մեղքի մասին երկար ու բարակ մտածելը, բայց այդ միայն խօսքով է: Ես գիտեմ, որ ի մանկութենէ ամէնքս աշխատում ենք հանդիսական հագուստ հագնել, բայց այդ բանը լոկ վերնազարդ է, որ վերջը կպչում է մեր մարմնին և մաշում է մեզ, ինչպէս առասպելական «Թունաւոր շապիկը»: Ես գիտեմ, թէ ինչպէս համարձակ և հեշտ կերպով ծիծաղում ենք «նախանձողների» վերայ, որոնց որ մենք կեղեքել ենք, «երկչոտների» վրայ, որոնք որ մեզ հետ անառակութիւն չեն գործում, «ծոյլերի» վերայ, որոնք որ մեզ չեն ստրկանում, «ամբարիշտների» վերայ, երբ որ կարծում ենք, թէ Աստուած շատ գոհ է մեր պղծութիւնից: Սիրելիք, ձեր սիրտը քննեցէք, արդեօք վարագուրով չի՞ ծածկուած այդ սիրտը, արդեօք չէ՞ք ընդարմացել աշխարհային դիւրակեցութեան մէջ, հոգեկան մահացու անզգայութեան մէջ, մեղքին քաջալերելու հանգստութեան մէջ, որ մեր շատերի կենաց անէծք և նզովք է դարձել:*

*Եթէ մեր մէջ կան մարդիկ, որոնց Աստուած պատժել է այդպիսի կուրութեամբ և թոյլ է տուել նոցա խղճին, որ քնած մնայ, թող էլ չսպասեն մեղա-*

---

1) Եր. է. 32 (ձոր Ենովմայ):

նից քաղցր խօսք և սուտ գուշակութիւնների մարգարէութիւններ։

Երբ որ այդպիսի մարդու պատասխանէ օրը գայ և աշխարհային թատրոնում շահերի լոյսը ընդ միշտ մթնանայ և հանգչի, երբ որ պատրողական ստուերների փոխարէն՝ նորա առաջ մերկանայ անհեղ յաւիտենական ճշմարտութիւնը,—ինքնախաբէութիւնը կը վերջանայ, և խղճի մահացու քունն ընդ միշտ կը խափանուի։ Այսպա ուրեմն ամենայն մեղաւոր պիտի ուզենայ, որ եկեղեցու պաշտօնեաների քարոզները լոկ միայն թոյլ, անգայն, պայմանաւոր ճառախօսութիւններ չլինեին ուղղափառութեան մասին։ Ո՛չ, թող քարոզչի ձայնը թարքաւէ և հնչէ այն փողոյ եղջիւրի պէս, որ երբեմն ծխող լեռների գագաթները սասանեցրել է [1])։

Ձեզանից շատերը, սիրելիք, էլ երիտասարդ չեն։ Մենք արդէն թողել ենք մեզ վիճակուած կենաց մեծ մասը, և ժամերի, օրերի ու շաբաթների սայլը միշտ դարձեալ թաւալւում է յառաջ դէպի խաւար գերը, դէպի անյայտ աշխարհը։ Սայլը մեզ տանում է այնպիսի ճանապարհով, որով երկրորդ անգամ անցնել էլ չենք կարողանայ։ Լաւ թէ վատ, բայց մեր կենաց մեծագոյն և նշանաւորագոյն մասն արդէն ընդ միշտ ճանապարհորդել ենք։ Անցածն արդէն անցել է. ոչ ջնջել, և ոչ դարձնել հնար ունինք։

Միևնոյն ջրի մէջ մարդ երկու անգամ չի ընկըղմում և լողանում, միևնոյն ժամանակում մարդ երկու անգամ չի ապրում։ Անցեալը անյայտացաւ հեռաստանի մառախուղի մէջ. մեզ համար ընդ միշտ անյայտացաւ, լոկ մի թոյլ յիշատակ թողնելով իւր մասին։ Բայց Աստուած ընդ միշտ պահել է անցեալը, որով փնտացած-եղածը՝ մշտնջենական անջնջելի երա-

1) Ելք. ԺԹ. 9—25։

հանութիւն է դարձել։ Մենք արդէն ապրել ենք այն վայրկեանները, որ մանուկն իւր մատներով կարող է թուել, և այն յորահոլով և մշտանորոգ վայրկեաններից մեծագոյն մասը, որ Աստուած մեզ շնորհում է։ Մեզանից շատերի համար գիշերը շատ վաղ է հասնում։ Ի՞նչպէս անցուցինք այդ ժամանակը։ Արդեօք անոր մէջ չե՞ն եղել «ամք, յորս եկեր մաքախն» 1)։ Այս շատ նշանաւոր խնդիր է։

Նոր տարուց յետոյ այս առաջին կիրակի օրը դառնանք դէպի յետ և տեսնենք մեր անցած կեանքը։ Ցխուր է այս շրջահայեացքը, նոյն իսկ մեզանից լաւագոյնների համար։ Մենք արդէն հասել ենք հեռաւոր լեռները, որ մեզ այնպէս կապոյտ և փայլուն էին երեւում, և անոնց ցուրտ, լպրծուն գագաթներից հիասթափ նայում ենք մեր անցած ճանապարհի վերայ։ Եղբարք, լաւ խորհեցէք, թէ մեզանից շատերի համար ինչ է եղել այդ ճանապարհը։ Այդ տարիները կարծում էինք, թէ արքայութեան դրախտ պիտի լինին,— բայց արդեօք տխուր անապատին չհանդիպեցանք։ «Առաջ նորա հուր ծախիչ, և վերջ նորա բոց բորբոքեալ» 2)։ Իսկ այս բանը պատահեց այն պատճառով, որ մեր մեղաց մարմնային զօրութիւնները թափուեցան գեղեցիկ դաշտերը, որոնք անշուշտ պայծառ և դալար կու մնային, եթէ մեր բարի ցանկութիւնները վաղանցուկ չլինէին «իբրև զամպ առաւօտու և իբրև ցօղ վաղորդայնոյ»։ Մեր մեղաց մարմնի զօրութիւնը մէկիկ մէկիկ առած՝ դատարկ բան է, բայց անընկճելի է, երբ որ միասին է ժողոված։ Իսկ թէ՛ մէկ և թէ՛ միւս դէպքում կորստաբեր և զզուելի է։

Ինչու՞ անցեալի շրջահայեցողութիւնը շատերի

---

1) Բ. 25:
2) » 3:

համար այնպէս անտանելի է։ Ինչո՞ւ նոքա պատրաստ են ոչինչ չխնայել, նոյն իսկ կեանքը տալ, միայն թէ կարողանային վերստին դարձնել կորուսած տարիները։ Արդեօք ո՞չ այն պատճառով, որ «Ետուն ժանգոյ զպը-տուղ իւրեանց, և զվաստակս իւրեանց մարախոյ» 1)։ Քանի անգամ աղօթել ենք, որ աւելի լաւանանք, աւելի սուրբ լինինք և աւելի վսեմ։ Քանի անգամ վըճռել ենք խուսափել այս ու այն հրապուրիչ, մարտնչել այս ու այն փորձանքի դէմ։ Քանի անգամ ցանկացել ենք թողնել չար սովորութիւնները և փոխել մեր անձնապաշտ կենցաղավարութիւնը։ Բայց յաճախ, անուշադիր թողնելով խղճի խայթը, մոռանալով աղօթքը և խախտելով վճիռը՝ մենք կրկին դարձել ենք մեղքերին, ինչպէս որ շունը իւր փսխածին, կամ ջրի մէջ լուացած խոզը՝ դարձեալ իւր սիրած աղբին։

Այս տեղ անշուշտ կան այնպիսիք, որոնց մեղանչական մտածմունքը՝ արդէն ցանկութեան են փոխուել, իսկ ցանկութիւնները արտայայտուել են արարքներով։ Վերջապէս արարքներն ևս դարձել են սովորութիւններ, այսինքն դժոխքի կողպէքներ և ցանկապատ, որ միայն Աստուած կարող է բանալ։ Միայն Աստուած և այդ մարդու հոգին գիտեն, թէ արատը, մեղքն ու յանցանքը ի՛նչ խաւար հետքեր են թողել այդ հոգու մէջ, և թէ ինչպէս այն տեղ ոչնչացել է ամենայն գեղեցկութիւն, թուլացել է զօրութիւնը, պղծուել է մաքրութիւնը։ Դոցա ունայն կենաց մասին կարելի է նոյնն ասել, ինչ որ ասուած է իսրայէլացւոց դաշտերի համար. «Զմնացորդս խառնճի եկեր մարախ, և զմնացորդս մարախոյ եկեր ջորեակ, և զմնացորդս ջորեկի եկեր գրուիճ» 2)։

---

1) Սաղ. Հէ. 46:
2) Ա. 4:

Արաբական առակաւոր խօսքը, թէ «երիտասարդութեան յիշատակը—միշտ ցաւ և հառաչանք է», տխուր ճշմարտութիւն է յայտնում։ Եւ ասածներից արդէն յայտնի է, որ այդ ուղիղ է։ Տխուր բան է շրջահայել անցած տարիները և զգալ, որ մեր գործերից ոչինչ բարութիւն չի ծագել կամ՝ որ աւելի վատթարագոյն է՝ երանի թէ անոնք բնաւ եղած չլինէին. տխուր բան է գիտենալ, թէ մենք վատ սերմ ենք ցանել մաշուած հողի մէջ, և թէ այդ բանի հունձն ենք հնձում, թէ մենք վարհուրելի սխալանք ենք արել, իսկ բնութիւնը անգութ պարտատէր է, թէ մենք մեր գեղեցիկ երիտասարդութեան օրերը գործ ենք ածել անխուսափելի վիշտ և թշուառութիւն պատրաստելու մեր կենաց եկող տարիների համար։ Այո՛, չեմ ծածկի, այս գիտակցութիւնը մեծ թշուառութիւն է, արտասուաբուխ վիշտ է մեզ համար։ Սակայն թող այդպէս լինի, տարիներն արդէն անդարձ անցել են։ Այս ցաւին էլ դարման չկայ։ Ինչ որ եղաւ, պէտք է լինէր։ Այդ պատկանում է Աստծուն, ոչ մեզ։ Նոյն իսկ անհուն օդը թող մշտապէս սասանի այս մեր ասած խօսքից։

Լուսի ճառագայթները եթերի թրթռմամբ միշտ և շարունակ կը տարածեն մեր արարքների պատկերը մէկ աշխարհից միւս աշխարհները։ Այն բոլորը անցել է, և մենք ոչինչ փոփոխել չենք կարող։ Յետ ենք նայում և միշտ հառաչում ենք, երբ որ յիշում ենք մեր յիմարութիւնը, չարութիւնը, անզգամութիւնը։ Այս մի տխուր պատկեր է, բայց հնար չկայ ջնջելու, ապա ուրեմն ամենամեծ անմտութիւն է անդադար տրտմել այդ բանից։ Աւելի անշահ և անօգուտ բան չկայ, քան անդարմանելի վշտակրութիւն և ցաւակցութիւն։ Օգտաւէտ է երբեմն սխալներով բարդուած անցեալը շրջահայել, բայց կարիք չկայ երկար զբաղ-

ուել այդ. բանով, եթէ չենք ուզում մեր հոգուն անօգուտ վիշտ և վտանգաւոր յուսահատութիւն պատճառել։ Եթէ ես շատերից մատնացոյց արեցի ձեր անցեալ կենաց պղտոր ամպերը, այդ այն խորհրդով եղաւ, որ ամէնքս կարողանանք նայել այն յուսալից ծիածանին, որ Տէր Աստուածը իւր ողորմածութեամբ երևեցնում է մեզ շրջապատող խաւարի մէջ։ Ապա ուրեմն. համարձակ սրտով երեսը շրջենք անդարմանելի անցեալից և դարձնենք ամենայոյս ապագային։

Գիշեր ժամանակ ճանապարհից մոլորուած ուղևորը՝ կայծակի փայլակով յանկարծ լուսաւորուած է տեսնում իրան շրջապատող ժայռերն ու անդունդները, մանաւանդ անմիջապէս սպառնացող վտանգը՝ թէ իսկոյն պիտի գլորուէր, և զարհուրած անշարժ մնում է իւր կեցած տեղը մինչև արշալոյսը։ Երբ որ արեգակը փարատում է խաւարը և ուղևորը իւր քայլերի հետքեր է նկատում անդունդի բերանի եզերքում, երբ որ տեսնում է, որ այն գերանն արդէն տեղաշարժ է եղել և թուլացել է, որով հեղեղի մի ափից միւս ափն էր անցել մութ ժամանակ, նա խոր հառաչանքով վեր է կենում, գոհութիւն է մատուցանում Աստծուն և «գօտևորեալ առ սռեամբքն», գնում է վստահ ճանապարհով, աւելի խոնարհ, սուրբ սրտով, խրատուած և մտախոհ դարձած։ Այսպէս և մենք, սիրելիք, համարձակ սրտով ծածկենք աչքերը՝ մեր անօգուտ հերպով վատնած բոլոր անցեալ տարիների վերայ, և մաղթելով, որ նոր գարուն ծագի մեր սրտում և լուսաւորուի մեր զղջման ճանապարհը, երթանք մեր բոլոր եռանդով դէպի մեր բարձր կոչման նպատակակէտը։

Թող մեզանից ոչ ոք չյուսահատուի, որչափ որ սաստիկ եղած լինին անցեալ տարիներում ասպատակած մոլեխեի բոյլերը, որչափ որ աւերած լինին նոցա

մեր անօգուտ, անկարգ մանկութիւնը, մոլի և կատաղի պատանեկութիւնը։ Մեզ ինչո՞ւ է շնորհել Աստուած ժամանակի պարգևը, եթէ ոչ զղջալու համար։ Մեզ համար՝ անցեալ մեղաւորներիս համար, զղջումը ամբողջ կենաց գործ է։ Իւրաքանչիւր նոր օր մեզ տրվում է ոչ թէ աւելի հարստանալու, աւելի մեծատուն դառնալու համար, ոչ թէ յարմարագոյն և հաճելի կեանք վարելու համար, այլ որպէս զի մեր հոգին հաշտուի Աստծու հետ և դարձեալ ընդունելի դառնանք Նորա փարախում, որ տեղից մեր երեսը շրջել ենք։ Անցեալը խաւար է։ Ի՞նչ, ի՞նչ անենք։ Իսկ մեր առաջ ապագայ կայ. մեր ապագան կարող է անմեղ, երջանիկ լինել, այն կարող է աւելի ազնիւ, աւելի անարատ, աստուածանման լինել։ Ստացէք ձեր ապագան պաղատողական աղօթքով, շնորհակալութեամբ, և մէկդի ընկեցէք թառամած անցեալը։ Սերմն ցանեցէք և այգի ձգեցէք սրբապղծած գետնի վերայ։ Կարելի է թէ հունձը մեծ չլինի և քիչ ողկոյզներ հասունանան կենաց ամենաբարձր ճիւղերի վերայ. բայց ամենայն ջանք գործ դիր, որ մնացորդը զարմանես մորեխի ապականութեան հետքերից։ Արա՛ այն, ինչ որ արեց Իսրայէլը, երբ որ բոյլերը գետինն իջան։ Նա յիշեց, որ Աստուած մի անգամ մեծ հողմ է ուղարկել, որով հալածեց մորեխին, և այդպէս միջատների բիւրք բիւրոց խեղդուեցան Կարմիր ծովու ալիքներում 1)։ «Պատառեցէ՛ք զսիրտս ձեր, ասում է մարգարէն, և մի՛ զհանդերձս 2), և դարձէք ձեր Տէր Աստծուն, վասն զի նա գթած և ողորմած է, երկայնամիտ և բազումողորմ է և զղջանում է չարեաց վերայ։ Եւ մարդիկ դարձան առ Աստուած։ Մտադրութեամբ լսեցէք

---

1) Ելք. Ժ. 12—19:

2) Յովէլ, Բ. 18:

Լսածս ամենազօրութ դատաստանը. «Քաջալերուեցէք, երկի՛ր, խնդա և ուրախ լեր, զի մեծացոյց Տէր զառնել իւր ընդ քեզ... Եւ լցցին կալք ցորենով, և զեղցին հնձանք գինւով և իւղով։ Եւ հատուցից ձեզ փոխանակ ամացն յորս եկեր մարախն» 1)։

Բայց մի նշանակութեամբ այդ տարիները էլ չեն կարող նորոգուել։ Մենք կարող ենք ունենալ նոր տարիներ, ցանած դաշտեր և նոր արտադրութիւններ, բայց ոչ հները։ Չեն վերադառնալու և մեր կորած գանձերը, որոնք կարող էին զարդարել այն տարիները։ Մենք երբէք չենք կարող այն լինել, ինչ որ եղել ենք մինչև մեղանչութիւնը։ Խոստովանենք այս խիստ ճշմարտութիւնը. մեղքերի ներումը չի կարող լինել միանգամայն և անոնց հետևանքների ներումն, ինչպէս որ շատ փչացած կեանքի օրինակներից գիտենք։ Թողութիւն ստացած մեղաւորը երբէք չի կարող ունենալ այն կատարեալ ազատութիւնը, այն լիուլի անմեղութիւնը, որ անմեղի յատկութիւնն է կոչւում։ Մի օրուայ, մի ժամուայ, մի վայրկեանի մէջ մենք կարող ենք ոչնչացնել, ինչ որ երկրի վերայ էլ ոչնչով չի ուղղուի։

Քանի՜ մարդկանց բաղէական մեղքը ամբողջ կեանաց յուսահատութիւն է դարձել։ Եթէ մահացու վէրքերը, ըստ ողորմութեան Աստուծոյ, նոյն իսկ առողջանանան, այնու ամենայնիւ սպիեր աղէկները կու մնան մեր հոգու մէջ, մինչև որ անդուլ մարդու չար մասը միշտ կարող է ցուցանել այդ։ Բայց փառք Աստուծոյ։ Նա աւելի մեծ է, գթած է, համբերող է, քան չնչին մարդը։ Երբ որ մեզ անօգնական է թողնում մեր հայրը կամ մեր մայրը, մեր ձեռքից Նա է բռնում։ Որչափ որ ցած ընկնենք, Նա Իւր պայծառ

---

1) Յովէլ, Բ. 21, 24, 25։

երկնքից խոնարհում է դէպի մեզ, եթէ մենք յուզեալ կեանք վարելուց յետոյ դիմում ենք Նորան։ Երբ որ մենք կարօտելով կարօտում ենք նոյն իսկ խոզի կերած եղջերենին, այդ ժամանակ ևս Նա բաց է անում իւր գիրկը մեզ համար և՝ դարձի եկած մոլորեալ որդու պարանոցին փարելով՝ լաց է լինում։ Հէնց այս բանի համար էլ մեռաւ Քրիստոսը։ Նա, Որ Նստել է մաքսաւորի սեղանին, չի վախեցել բորոտի վէրքերից, երեսը զզուանօք չի դարձրել վայրագ, աղտոտ գերգեսացուց, Որ Ներողամտութեան ձեռք է մեկնել տաճարի յատակի վերայ լացող շնացեալ կնոջը և ասել է անճառելի հեզութեամբ. «Եւ ոչ ես դատապարտեմ զքեզ, երթ, յայսմ հետէ մի՛ մեղանչեր», Որ անառակ կնոջից եօթը դև հալածելով՝ թոյլ է տուել, որ Իւր ոտքերը նորա արտասունքով լուացուի և նորա մազերով սրբուի, — մեզ էլ կընդունէ, ողորմելով կը սիրէ և կը ներէ։ Մենք հարկ չունինք մարդկանց մասին փոյթ ունենալու, երբ որ Նա մեզ ներում է։ Իսկ Նա ներում է մեզ։ Յաւիտենական Սուրբը դէպի մեզ է կարկառում իւր ձեռքը և նորից ծաղկեցնել է տալիս մորեխի կերած տարիները։

Նա մինչև իսկ մեղքի յիշողութեան ծանրութիւնը թեթևացնում է։ Երբ որ մենք կենաց գետի մէջ լող ենք տալիս, երբեմն յանկարծակի յիշողութիւնը վեր է կենում ծածկուած խորութիւնից, և պղտոր ջուրը լցվում է մոռացուած մեղքերի անթիւ պատկերներով, որ տառապելական յաւէրժահարսների պէս ջրից մեզ սպառնում են և մեր մահն են մարգարէանում։ Բայց Աստուած մեզ զօրութիւն է տալիս, որ անխռով նայենք այդ պատկերների վերայ և շնորհակալ յուզմամբ ասենք. «Այդ իմ մեղքերը չեն, այդ իմ անցեալ մեղքեր են, որ թողութեան են արժանացել։ Այդ իմ ծանր բեռն էին, բայց այժմ բեւեռուած

են իմ Փրկչի խաչի վերայ։ Այդ բոլորը ցուցակի մէջ գրուած էին իմ դէմ, բայց Նա ջնջեց ցուցակը։ Այո՛, ես գործել եմ այդպիսի արարքներ, բայց այժմ լուացուած, մաքրուած, սրբուած եմ»։ Մենք մեր հըռչակաւոր ողբերգութեան թագուհու պէս ասում ենք, թէ «ովկիանի բոլոր ջրերը» չեն կարողանալ լուանալ մեր յանցանքի բիծը, և թէ «ոչ խաշխաշ, ոչ մանրագոր և աշխարհի ոչ մի ուրիշ քնաբեր հեղանիւթ» չեն կարող քնացնել մեր յիշողութիւնները։ Այս ճշմարիտ է։ Սակայն Քրիստոսի անգին արեան մի կաթիլը կարող է ընդ միշտ սրբել մեզ։ Կամաց ձայնով Նորա ասած մի խօսքը, թէ «Երթ խաղաղութեամբ», կարող է լռեցնել յուզուած խղճի կատաղած մրրիկը, և կէս գիշերուայ յուսահատութեան մէջ՝ դառնալ խնդութեան երգ։

Բայց մի մոռանաք, եղբարք, որ մենք անգործ նստել չենք կարող։ Չլինի թէ աղէտալի միամտութեամբ երևակայենք, իբր թէ մենք կարող ենք մեղքերի մէջ հանգիստ մեռնել և ընդ նմին իսկոյն մտնել երկնքի դռներով, իբր թէ հոգին կարող է երկրից հեռանալ առանց թողութեան, առանց զղջալու, ապականուած և կորած, և իսկոյն առանց այլևայլութեան տեղ գտնել Աբրահամի գոգի մէջ։ Այս միտքը սարսափելի մոլորութիւն է։ Երբ որ մորեխը գալիս է, ժողովուրդն իսկոյն մեծամեծ խարոյկներ է բորբոքում, խոր փոսեր է փորում և օր ու ցերեկ աշխատում է սատակեցնել մորեխը և բարձրաղաղակ Աստուծոյ օգնութիւն է կանչում։ Մենք էլ պէտք է դիմենք առ Աստուած։ Եւ այդ բանը պէտք է կատարենք այժմ իսկ, որովհետև եթէ և յանկարծ չկոչուենք, այնու ամենայնիւ տարին տարուանից յետոյ անցնում է, որպէս ծովը թափուող հեղեղը, և ժամանակը արագ արագ մեզ մղում է իւր անդիմադրելի ալիքներով։ Ժամերն անցնում են և յանդիմանում են մեզ։ Ժա-

մանակ չկորցնենք անցեալի մասին ղուր ողբեր ողբա-
լով։ Առաջ գնանք այն հին ժամանակի մեծ զօրավարի
պէս, որ երազում աչքը յետ դարձնելով՝ տեսաւ իւր
հեռուից եկող անհագին հրեշաւոր ճիւաղ, օձերի մէջ
փաթթուած, որի ամէն մի քայլափոխի հետ՝ շուրջը ամե-
նայն ինչ խորտակվում տապալվում էր դղրդմամբ։ Զօ-
րավարին հրամայէլ էին գնալ շեշտակի առաջ, առանց
երեսը շրջելու. և գնաց նա հնազանդութեամբ դէպի
փառքն ու յաղթութիւնը։ Մենք էլ շեշտակի գնանք,
յաջողութեան հաւատով։ Եթէ մարդիկ վեր կենան
մեր դէմ, Աստուծոյ ուժը մեզ կը փրկէ նոցա անգութ
գոռոզութիւնից։ Եթէ մեր խիղճն ուզենայ մեզ սար-
սափեցնել,—Աստուծոյ գթութիւնը մեզ ապաստան
կը լինի։ Եթէ անցեալը մեր դէմ զինուի,—մենք կեր-
թանք ապահովութիւն գտնելու մեր ներկայ անմեղու-
թեան մէջ, որ Աստուծոյ ողորմութեամբ՝ ունինք և
կունենանք։ Մեզ սպասում է մեծ յաւիտենականու-
թիւնը, որի ոսկի դռները տակաւին չեն փակուել
մեր առաջ և հաւասարապէս լայն բացվում են զղ-
ջացող մեղաւորների համար և անարատ սրբերի հա-
մար։ Տայ Աստուած, որ սրընթաց տարիներ սլանալուց
յետոյ, երբ որ ծովը կամ կանաչ խոտը կը ծածկեն
ձեր ամենից աճիւնը, ձեր անմահ հոգիները միմեանց
հանդիպին և իրար ճանաչեն այն տեղ, ուր որ ապաշ-
խարեալները, անմեղութեան սպիտակ հանդերձներով,
ապրում են առանց մեղանչելու և վշտանալու, այն
քաղաքում, որի հիմքը դրել է Ինքը Աստուած։ Եթէ
ոչ երկրի վերայ, գէթ այն տեղ վերջնականապէս կը
վարձատրէ Աստուած զղջացած խոնարհ մեղաւորնե-
րին՝ այն տարիների համար, որ կերել է մորեխը։

## ԺԹ.

# ՀԱՅԵՑՈՂՈՒԹԻՒՆ.*)

«Եւ տեսցեն զերեսս նորա եւ անուն
նորա գրեալ ի ճակատս նոցա»։
Յայտ. ԻԲ. 4։

Այս վկայութիւնը առնուած է Ս. Գրքի վերջին գլխից, որ շատ կողմերով գեղեցկագոյն և ամենասրտաշարժ մասի համարուի։ Այդ գլխի մէջ, որպէս թէ դրախտի դրան մօտ, զգացւում է երկնային երանգների ցոլացումն և հրեշտակների օրհներգութեանց խորհրդաւոր արձագանքը։ Միջի պատկերները սաստի, մահուան և դատաստանի դրոշմ ունին։ Իսկ աւետաւած խաղաղութիւնը երկրաւոր նկարագիրներից ոչ մի նշան չունի։ Տեսէք, թէ ինչպէս բնաւ նման չեն այդ գրքի խոստումները մեր ողորմելի և խեղճ ցանկութիւններին։ Մենք ի՞նչ կը ցանկայինք, եթէ մեզ թողնէին, որ երկինքը կատարելագործէինք։ Միթէ մեր բոլոր կրքերը, երկրի ամենայն անձնասիրութիւնները չէ՞ինք տեղափոխի այն տեղ։ Մէկը կաշխատէր իրագործել իւր հեշտասիրական պատկերացումները, միւսը՝ դիւրակեցութեան իւր ցած իղձերը, երրորդն իւր սնափառութեան երազները։ Գրեթէ ամէնքը կը ցանկային

*) Ուսանողների առաջ ասուած:

աստուածացնել իւրեանց ունայն ցանկութիւնները, և երկինքը ոչ թէ երկինք կը դառնար, այլ երկրի պէս՝ ինքնասէր հիւլէների մաքառման ասպարէզ, խճողուած յօյսերի անլուծելի կծիկ։ Այսպէս չէ Ս. Յովհաննու Յայտնութեան մէջ մեր տեսած երկինքը։ Այն տեղ չկան աշխարհի խոստումներն ու ցանկութիւնները, դուժնիկ հոգու նպատակներն ու յոյսերը։ Ոչ մի ստուեր չի խաւարեցնում այդ կենաց գետի բիւրե-ղեայ վճիտ ջրերը. ոչ մի պղծուած քայլ չի կարող անցնել այդ ապակեղէն յատակի վերայ։ Մարդն իւր բոլոր սուտ յատկութիւններովը անյայտացել է. մնացել է միայն Աստուած։ Ծիածանով զօտեւորած աթոռի առաջ Կենաց պսակ, հեթանոսները բժշկող տերև, ծածուկ մանանայ, նոր անուն, օր ու գիշեր չընդհատուող օրհնութիւն 1)—ահա այն երանութիւն-ները, որ սուրբ սիրտը այն տեղ ազդմամբ կիմանայ, որպէս զի հանգստանայ։ Միևնոյն ժամանակ այդ տեղ չի լինի ոչ աստիճանների զանազանութիւն, ոչ եսա-կան մենավաճառութիւն, ոչ բարձր ու ստոր կարգերի խտրութիւն։

Բոլոր խոստումներից ամենապատուականագոյնն է հետևեալը. «Եւ նզովք անդ ոչ ևս էին. և աթոռն Աստուծոյ և Գառին նորա էր ի նմա, և ծառայք նորա պաշտեսցեն զնա։ Եւ տեսցեն զերեսս նորա և անուն նորա գրեալ ի ճակատս նոցա» 2)։ Միթէ հը-նարաւոր է, որ մեզ պէս սրտերը տեսնեն Տէր Աստծու երեսը։ Լոկ միայն այս բանի մտածութիւնը մեզ վե-րացնում է անհուն բարձրութիւնները, շատ հեռու մեր այժմեան խոնարհութիւնից։ Տեսնել Աստուծոյ երեսը նշանակում է տեսնել լոյս։ Խաւար գործեր

---

1) Իբ. 1—5:
2) » 3, 4:

կատարվում են ծածուկ կերպով. դուրս բերէք լոյս աշխարհ, և անոնք չեն կարողանայ տանել լոյսը։ Յամ հոգին բնականապէս կը մաքրուի, եթէ դուրս բերուի լոյս ցերեկը։ Ինչ որ խաւար է մթութեան մէջ, լուսաւորվում է ցերեկուայ լուսին։ Ուստի և Աստուծոյ երեսը տեսնել նշանակում է մաքրուել ամենայն խայտառակութիւնից և վերանալ երկրաւոր բաներից բարձր։

Կար ժամանակ, որ ռուս կայսրուհիներից մէկը սառուցէ պալատ շինել տուեց, և հիւրերը պարում և խնդում էին սառուցէ փայլուն սրահների մէջ։ Բայց երբ որ արեգակը լուսաւորեց, պալատը հալուեցաւ և դարձաւ ցուրտ, լպրծուն ցեխ։ Նոյն վիճակն են ունենում և այն մանր ձգտումները, որոնց մասին որ մարդն աւելի ջանք ու ճիգ է թափում։ Գալիս է մահը, և ինչ որ նա այնպէս սաստիկ ցանկանում էր՝ բնաւ լաւագոյն չի լինում, քան սառուցեալ պալատը, որ լուսնի տակ պսպղուն արևակներ (օպալներ) էր ճառագայթում, իսկ արևի լուսով զզուելի աւերակ դարձաւ։ Տեսնել Աստուծոյ երեսը նշանակում է որոշել իրականը պատրանքից, ճշմարտութիւնը սուտութիւնից։ Բացի դորանից, Աստուծոյ երեսի տեսութիւնը խաղաղութիւն է բերում։ Ինչպէս որ անկերպարանութիւնից՝ Հոգւոյն սրբոյ թևերի հովանու տակ՝ կարգ և գեղեցկութիւն յօրինուեցաւ, ինչպէս որ Գալիլիացւոց ծովի յուզուած ալիքները Փրկչի ոտքերի տակ խաղաղուեցան, այնպէս էլ Նորա ներկայութեան ժամանակ շփոթութիւններ չեն լինի. չարահոգիները կը դադարեն խռովեցնել, իսկ խոնջեալները կը հանգստանան։ Աստուծոյ երեսը տեսնել նշանակում է ապրել սիրով։ Մեր արտասուքները սրբվում են Նորա ձեռքով, Որ ստեղծեց հոգին, Որ միայն հասկանալ կարող է հոգին, Որ շնորհում է հոգուն այն, ինչ

Տեառն իբրև զհուր բորբոքեալ ի վերայ գլխոյ լերինն» 1)։ Բայց տեսնել Աստծուն, գէթ այս չափով, մեր միակ յոյսն ու երջանկութիւն պիտի լինի այս տեղ, երկրի վերայ։

Եթէ մի մարդու ներկայի կամ ապագայի մասին եմ մտածում, ես չեմ հարցնում. «Արդեօք հարո՞ւստ է, մեծատուն է, զօրաւոր է. արդեօք մարդիկ գովո՞ւմ են նորան, յաջողվում են իւր ծրագիրները, տանջվում է անօգուտ հոգսերից»։ Այսպիսի յատկութիւն ունեցողներից շատերը ամենադժբախտ են, և աւելի դժբախտ են, որ չեն զգում իրանց դժբախտութիւնը։ Այլ ես հարցնում եմ. «Արդեօք տեսնո՞ւմ է Աստուծոյ երեսը, գէթ երբևիցէ կը տեսնէ՞ Աստուծոյ երեսը»։ Միայն այսպէս նա կարող է երջանիկ լինել կամ աւելի ճիշտն ասել՝ միայն այսպէս խաղաղութիւն կունենայ Աստուծոյ և մարդկանց հետ, այժմ և հանդերձելում։

Այո՛ ցանկացէք աւելի գիտութիւն, աւելի առողջութիւն, բարեկամներ, յաջողութիւններ։ Բայց ամէնից աւելի ցանկացէք տեսնել Աստուծոյ երեսը։ Ով որ ջերմեռանդութեամբ աշխատում է արդար կեանք վարել երկրի վերայ, կարող է աւելի յոյս ունենալ Աստուծոյ երեսը տեսնելու, իսկ ով որ անկեղծ աղօթքով դիմում է Երկնային Հօրը, աւելի է մօտենում այդ կեանքին։ Ով որ ուզում է տեսնել իւր Արարչին, պէտք է աղօթէ և սո՛ւրբ կեանք վարէ։

Աղօթքով դուք ստանում էք արքայութեան ոսկեղէն բանալին, իսկ կեանքի սրբութեամբ դուք կարող էք մտնել սերովբէների խումբը։ Այս կանոնները պահողի համար մինչև կենաց ծառի ճանապարհը բաց է։ Դրախտի մուտքը փակուեցաւ միայն հակառա-

1) Ել. ԻԴ. 17։

կորդների համար։ Իսկ ով որ աղօթքով և սրբութեամբ է մերձենում դրախտին, քերովբէները նորա առաջ խոնարհում են իւրեանց սաստիկ դէմքերը և հրեղէն սուրը դնում են պատեանի մէջ։

Բայց արդեօք դարձեալ ուրիշ բան չկա՞յ, որ հնարաւորութիւն տայ մեզ շուտով հասնելու այդպիսի երանութեան։ Արդեօք Աստուած ուրիշ ճանապարհներով չի՞ յայտնվում մարդուն։ Այո՛, եղբարք, կան շատ ճանապարհներ աննենգ աչքի համար, պարզ մաքուր սրտի համար։ Հէնց այդ մասին ուզում եմ այսօր խօսել։

Ա. Նախ և առաջ սովորեցէք Աստուծոյ երեսը տեսնել բնութեան մէջ։ Բնութիւն անունով ես հասկանում եմ Աստուծոյ բոլոր արարածներն և բոլոր օրէնքները։ Եղբարք, ես չեմ կարող իմ բոլոր զգացմունքները ձեզ հաղորդել։ Ես գիտեմ և՛ Ս. Գրքից և՛ փորձերիցս, որ աշխարհի մասին պայծառ սիրաբողբոջ հայեացքը, առ հասարակ լաւատեսութիւնը, խիստ օգնում է հաւատին, և երջանկութեան պարզ աղբիւրներից մէկն է։ Աշխարհի մարդիկ այսպիսի զգացումներ արհամարհում են։ Նոքա այդ բանը, ինչպէս և ուրիշ շատ ճշմարտութիւններ և լաւ բաներ, կոչում են դատարկ յափշտակութիւն և կերպարանեալ դիւրագրգռութիւն կամ դիւրահալ սրտի ցնորք։ Նոցա համար անըմբռնելի է՝ Աստուծոյ արարածների ազդմամբ՝ հոգւոյ վերասլացումն և պարզամիտ սքանչացումը։ Արեգակը ելնում է և մայր է մտնում կոյր աչքերի առաջ, և օդը երաժշտութեամբ է հնչում, բայց շատերի ականջը խուլ է։ Այս չէր Աստուծոյ կամքը։ Այս բանը անհաւատութեան կամ դիւական զգացման հետևանք է։ Երբ որ Յոբ երանելին, հիւանդ, ջարդուած, իւր բարեկամների ծաղրին և չարակնութիւններին ենթարկուած, ընկած էր աղբիւսի մէջ,—ի՞նչ-

ցեցէք և ուսումնասիրեցէք Աստուծոյ արարչութիւնը։
Այն աւելի լաւ է, քան մարդկային բառերը։ Այն
կու տայ ձեզ աւելի պարզ ճաշակ և աւելի մաքուր
զուարճութիւններ։ Այն աւելի կը հարստացնէ ձեր
սրտոցը, քան ինչ որ հայրական տունը կարող է տալ։
Այդ ուսումնասիրութիւնը աւելի բախտաւոր կը կա-
ցուցանէ ձեզ ուրախ ժամերում, և ձեզ հանդստու-
թիւն կը ներշնչէ խռովութեան րոպէներում. երբէք
մենակ չէք լինի, մխիթարիչ կունենաք։ Բայց այս դեռ
բոլորը չէ. դուք Աստծուն կը տեսնէք։ Նա ամենուրեք
կը լինի և ձեզ համար։ Ամէն բանի մէջ ներկայ կը
լինի Նա։ Ամենայն ինչ կը վկայէ Նորա ներկայու-
թիւնը. թէ՛ ուր որ մենք քայլում ենք, թէ՛ օդ, որով
շնչում ենք, թէ՛ տերևները, թէ՛ խիղճ, թէ՛ աստղալից
երկինք վերևը, և թէ՛ բարոյական օրէնք մեր ներսը։
Եւ քանի աւելի ծանօթութիւն ստանաք, այնքան
աւելի կը զգաք Նորա ներկայութիւնը։ Գիտութիւնը
ուրիշ ոչինչ չի անում, բայց միայն բարձրաձայն կար-
դում է հէնց այն Գիրքը, հէնց Աստուծոյ արարչու-
թիւնը, որ միշտ բաց է, բայց որի վերայ ձեզանից
շատերը նայում են տգիտութեան բարձրութիւնից։
Այդ ուսումնասիրութեան շահագրգռութիւնը այն-
քան աւելի կաճի, որքան որ ձեզ աւելի յայտնի դառ-
նայ Նա։ Ով որ սիրում է տերևները և սքանչանում է
տեսածից, բայց չգիտէ և չի հասկանում այդ բոլորի
կարգն ու նախադիծը, նման է քարայրի առաջ ապուշ
կանգնած մարդուն, որ մէջի հարստութիւնն ու գե-
ղեցկութիւնը հեռուից միայն տեսնում է աղօտ կեր-
պով։ Բայց մէջի անհուն գեղեցկութիւնը բացայայտ
կերևայ Նորան, ով որ մէջը ջահով մտնէ։ Թող իմաս-
տալից գիտութիւնը ձեզ համար լինի այդպիսի ջահ,
և ոչ թէ անձնապաստան գիտութիւնը։

Բ. Ուրեմն նախ կարող էք բնութեան մէջ տես-

նել Աստուծոյ երեսը։ Աղա դուք կարող էք ճանաչել Նորան Իւր յայտնութիւններից, որով յայտնուել է ուրիշ մարդկանց։ Այդպիսի յայտնութիւն կը գտնէք Նոցա թողած գրքերում։ Առանց ներշնչութեան Ս. Հոգւոյ՝ չի գրուել կամ չի տուել ոչ մի բան, ինչ որ լաւ, ընտիր, ճշմարիտ, խելօք է։ Այդպիսի գրքեր կարդալով, դուք տեսնում էք Նորա յայտնութիւնը։ Մեծ մարդկանց սրտի լաւագոյն արիւնով գրուած գրքերը՝ մեր արժանաւոր, անգրգուելի, անխարդախ բարեկամներ են։ Դոցա գնահատող և յարգող մարդիկ շատ չեն։ Ո՛հ, երբ որ ես յիշում եմ, թէ որքան բազմաթիւ են լաւ վսեմ գրքեր, որ մեր ամբողջ կեանքում բաւականութիւն կարող էին տալ, և որոնցից իւրաքանչիւրը ճշմարտասէր ընթերցողին կարող էր աւելի խելօքացնել, լաւացնել, ազնուացնել, կարող էր և՛ մտաւորական կողմից և՛ բարոյական ուժով բարձրացնել,— զարմանքս գալիս է, թէ էլ ի՛նչպէս յիմարանում ենք և անպտուղ թագաւորների կամ լաւ է ասել խեղկատակների փեշից բռնած՝ առաջնորդւում ենք։

Միթէ չէ՞ք կամենում ճանաչել փիլիսոփաների իմաստութեան գանձերը, հռետորների որոտաձայն պերճախօսութիւնը, բանաստեղծների դիւթիչ երգերը։ Եւ ինչո՞վ էք ուզում փոխարինել այդ օրհնութիւնները։ Միթէ ձեր անձնական, դատարկ, անկապ խօսակցութիւններո՞վ։ Մեր գրադարանում շատ կան իմաստուն մարդկանց խօսքեր պարունակող, մեծահանճար, անգին հատորներ։ Այս թողնելով, ուրիշ ի՞նչ գիրք պէտք է կարդալ։ Չեմ ուզում լիակատար նկարագիր տալ այն գրականութեան, որ ինչպէս երևում է շատերից սիրելի է դարձել, գոնէ ձեր ձեռքում այդպիսի գրքեր շատ են երևում։ Դոքա գրքեր չեն,—դոքա ստորաքարշ հրապոյրներ են, որոնց համար անուն չկայ, թունդ զգայութիւններ սիրողների անհեթեթ վէժանք-

ներ են, յիմար հաղտանքներ են, որ ծաղրում են մարդկային ազնուագոյն զգացումները։ Եւ միայն բանտէ ջղերի համար տանելի այսպիսի գրականութիւնը, ախտերի և յետին խանութների տենչացած մկլպասանութիւնները, առհասարակ աղմկահան և անվայել շաղակրատութիւնները՝ հետաքրքրակա՞ն պիտի դառնան մեր պատանիների համար, որոնցից շատերը հազիւ թէ գիտեն մեր մեծ բանաստեղծների անունը և չեն էլ անգամ լսել ժամանակակից իմաստնագոյն գրքերի վերնագիրը։ Ինչ տեսակէտից որ նայենք այս երևութի վերայ, այսպիսի ճաշակը թշուառութիւն է, իսկ այսպիսի գրականութիւնը՝ մեր երկրի անէծք է։

Բայց, փառք Աստծու, կայ մի գիրք, Գիրք գրոց, որ մենք կամայ ակամայ միշտ լսում ենք Եկեղեցում կամ նաև ամենայն օր կարդում ենք։ Գրականութեան բոլոր երկերում դուք կարող էք տեսնել Աստծուն, բայց ոչ մի տեղ այնպէս պարզ և պայծառ կերպով, ինչպէս Սուրբ Գրքում։ Կարելի է մարդկային բոլոր իմաստութեան տեղ այս մի սուութիւնը դնել. «Եկայք առ իս ամենայն վաստակեալք և բեռնաւորք, և ես հանգուցից զձեզ» 1)։ Եթէ մինչև իսկ ճաշակ չունենք կարդալու աւելի խաղաղական, ընտիր, ճշմարիտ դրուածքները, այնու ամենայնիւ մի՛ դանդաղիք Սուրբ Գիրքը կարդալու։ Այդ գրքի օրհնաբեր վարդապետութիւնը ձեզ հետ կու մնայ նաև այն ժամանակ, երբ որ աշխարհը իւր տեղից խախտուի։

Մեր առաջնակարգ բանաստեղծներից մէկի մասին պատմում են, թէ իւր կենաց վերջին օրերում գրեթէ ուրիշ գրքեր էլ չէր բաց անում։ Մի այլ մեծ մարդ (չնչին արարածներից զրպարտուած), երբ որ ուրիշ ամենայն ընթերցանութիւն նորա աչքում կոր-

1) Մատ. ԺԱ. 28:

ցրել էր հրապոյրը, շարունակ մխիթարութիւն էր հայցում Ս. Գրքից: Բայց այս էլ ճշմարիտ է, որ շատ անգամ Ս. Գիրքը ստորացրել են նախապաշարման և անապաշտ նպատակներով: Այդ գրքից օգտուել է և՛ ներգործող դաւանաբանը, և՛ ազգէտը, որ միջից բառեր է քաղել նիւթապաշտութիւնը հաստատելու համար, և՛ մոլեռանդը, որ այն տեղից զէնք ստանայ իւր ըն-կերի յոյսերը ջախջախելու համար: Այդ գրքով են վահանաւորուել փարիսեցիք և բռնաւորք: Այդ գրքով են ձգտել արդարացնել հաւատաքննիչների խարոյկ-ները և ստրուկների շղթաները: Սակայն որչափ որ մարդիկ խեղաթիւրել են այն գրքի զօրութիւնը, նոքա չկարողացան խլել գրքից իւր մեծութիւնը, չկարողա-ցան նսեմացնել այն: Այն էր, է և կը լինի հոգւոյ հաստատուն և հաւատարիմ յոյս ու խարիսխ, փա-րոսի լապտեր, որ անսպառ վառվում է մթոլորտների մէջ, որ աստուածային հաստատութեամբ լոյս է տա-րածում ահեղաձայն մռնչող ալիքների վերայ և փա-րատում է ահաբեկութիւնը:

Գ. Երրորդ, մենք կարող ենք Աստուծոյ երեսը տեսնել Քրիստոսի հաւատարիմ ծառաների և վկաների կեանքում: Նոքա այժմ ևս տեսնում են Նորա երեսը, և Նորա անունը գրած է նոցա ճակատի վերայ: Վա-ղուց նկատուած է, որ մինչդեռ «սուրբ» անունը միայն մի կամ երկու հեթանոսի է յարմարում, քրիստոնէից մէջ շատ են եղել այնպիսի մարդիկ, որոնք իրանց ներկայութեամբ ամաչեցրել են չար մարդկանց, քա-ջալերել են լաւերին լաւագոյն լինելու, և երբեմն զգալի են կացուցանել Նոյն Ինքն Աստուծոյ ներկայ-ութիւնը իւրեանց վկայութեամբ: Ինչպէս որ մոլորակը արեգակի լոյս է ցոլացնում, այնպէս էլ դուք կարող էք գտնել Աստուծոյ երեսի աղօտ ստուերապատկերը այն մարդկանց կենսագրութեան կամ բարք ու վարքի

մէջ, եթէ դուք բախտ էք ունեցել ձեր հանապազօ-րեայ կեանքում այնպիսիներին պատահելու: Այդ մարդիկ—երկրի աղ են: Լոկ միայն դոցա գոյութեամբ երկիրը չի կործանվում:

Եղբարք, երկու տեսակ կեանք կայ. մինը այն է, որ մենք ամէնքս վարում ենք, միւսը այն՝ որ վարում են Քրիստոսին հետեւողները, որոնք ի սէր Նորա թողել են ամենայն ինչ, և՛ տուն, և՛ հայր, և՛ մայր, և՛ բարեկամ: Մեր վարած կեանքը ոչնչով չի զանազան-վում աշխարհի կեանքից: Մենք վաստակում ենք դրամ և տրտնջում ենք, ծախսում ենք և դիզում ենք, մեզ շրջապատում ենք յարմարութիւններով, ամէն տեսակ փարթամութիւններով, մեր անձի հա-մար հոգում ենք ամենայն բան, բայց քիչ փոյթ ենք ունենում այլոց շահերի և զգացումների մասին: Իսկ այն մարդիկ—այդ անգործնական յափշտակուողները, այդ ծաղր ու ծանակ դարձած դիւրագրգիռ մարդիկ—պարզ և միամիտ են, ազնուութեան պատճառով աղ-քատ են, չլսուած կերպով բարի մարդիկ են: Երեւա-կայեցէք, որ այժմ այդ մարդիկ այս տեղ մտնեն, այդ Աստուծոյ սուրբերը, մարտիրոսները, քարոզիչները հասարակ սոսկականները, բայց հաւատարիմները. մենք ի՞նչպէս կը վերաբերէինք դոցա: Մենք ի հարկէ մեր բարձրութիւնից դոցա կը հովանաւորէինք, ներո-ղամտութեամբ կը վարուէինք դոցա հետ, այնպէս որ դոցա պատիւ պէտք է համարէին, եթէ դոցա ձեռ-քերը մենք թօթուէինք: Եւ եթէ մենք ժպտել ենք, տեսնելով նրանց կոպիտ ռամիկական հագուստը, գէթ գիտենանք, որ այժմ նոցա հանդերձները լուսի մէջ են թաթախուած: Եթէ մենք մեր անձը նոցանից բարձր ենք համարել, մենք երևի մոռացել էինք, որ նոցա այժմ երկնքումն են վերացած: Նոցա աղքատ են եղել, բայց նրանց միջնորդութեամբ բիւրաւոր մար-

ճանկերից, մտքում պահեցէք, որ եթէ մի քիչ շեղ-ուիք ուղիղ ճանապարհից, ապա դժուար չի լինի, որ աւելի և աւելի հեռանաք. Եթէ դուք արգելեալ հա-ռանցի մէջ թեւակոխէք աննշմարելի կերպով, հոսանքը գետ կը դառնայ, որ կը խառնուի ծովի հետ, և այն ժամանակ էլ անհնար կը լինի «նաւակից ոտնել ափը»: Ցասնումէկ տարուայ ընթացքում շատ անգամ դա-տարկ եմ տեսել այն տեղերը, որոնց վերայ այժմ դուք նստած էք: Ոմանք մահուան պատճառով են հեռացել, և երևի թէ խաղաղութեամբ, յուսով և ուրախութեամբ: Բայց միւսներն աւա՜ղ այս տեղերը թողել են իրանց չար արարքների պատճառով: Մեր շրջանից աքսորուածները գնալով միշտ և միշտ ընկել են խոնարհ, աւելի կամ պակաս չափով: Այդ մեռեալները մեր տխուր բարքերի օրինակ են. դոցա բարոյական մահը մենք աւելի պէտք է ողբանք, քան առաջիններին բնական մահը: Դոցա այս տեղ նստած են եղել, լսել են մեր խօսքերը և ծիծաղել են և մեղք են գործել: Քիչ քիչ, նոքա դարձել են չար մանուկներ, նախա-տինք են վաստակել և յուսահատութիւն ու թշուա-ռութիւն են ցանել իրանց ծնողների սրտում: Իսկ կար ժամանակ, երբ որ նոքա անմեղ էին, մանկահա-սակ նորընծայ էին: Արդեօք կարո՞ղ էին գուշակել, երբ որ ձեզ պէս նոքա էլ առաջին անգամ խրատ էին լսում այս ամբիոնից, թէ Հարրովի դպրոցում նոցա մի կամ երկու տարի մնալը այնպէս խայտառակու-թեամբ պիտի վերջանայ: Անգին սիրելիներս, մեղքի սկիզբը նման է բացուած սահանքից դուրս վազող ջրին: Եթէ ժամանակին չզգուշանաք, սրընթաց հեղե-ղից փրկութիւն չի լինի:

Մի խօսք դարձեալ: Մեզանից շատերը սուրբ սեղանի առաջ խոնարհած, կաշխատեն թափանցել մեր կեանքը շրջապատող մառախուղը, որպէս զի

*գէթ մասամբ արժանանան տեսնել Աստուծոյ երեսը։ Միացէք այսօր մեր աղօթքներում։ Աղօթենք այս մեծ դպրոցի համար, մեզ համար, ձեզ համար, այն նոր-ընծաների համար, որոնց մասին որ խօսեցի։ Ծնկա-չոք և ձեռք ձեռքի տուած աշխատենք, եթէ հնար է, որ աւելի սէր, համակրութիւն, ազնուութիւն, երջանկութիւն յոյս ունենանք։ Երբ որ Դու առա-ցիր. «Խնդրեցէք զերեսս Իմ յամենայն ժամ», Քեզ առած սիրտ իմ. «Զերեսս Քո, Տէր, խնդրեցից»։* 1)

---

1) Սաղ. ԻԶ. Ը։

## Ի.

# ԴՈՒՔ ԱՍՏՈՒԾՈՅ ՏԱՃԱՐ ԷՔ. *)

*«Ո՞չ գիտէք եթէ տաճար էք Աստուծոյ.*
*եւ Հոգի Աստուծոյ բնակեալ է ի ձեզ»։*
Ա. Կոր. Գ. 16։

*«Տաճար Աստուծոյ» խօսքի երեք զանազան նշանակութիւնը լաւ ցոյց է տալիս Տէր Աստուծոյ առ ս. Եկեղեցին յարաբերութեանց երեք շրջանները։ Հին կտակարանում այդ անունը անփոփոխ տրվում է մարմարից, ոսկուց և մայր փայտից շինած այն հոյակապ սրբութեան, որ Սողոմոնը իւր ամենամեծ զօրութեան ժամանակ շինեց։ Նոր կտակարանում այդ բառը պատահում է Աւետարանի մէջ, որով Քրիստոսը բառին տալիս է՝ հրէից ականջին անսովոր՝ մի այլ նշանակութիւն. «Նա ասէր վասն տաճարի մարմնոյ իւրոյ» 1)։ Վերջապէս թղթերում, մանաւանդ ս. Պաւղոս առաքեալի թղթերում, այդ խօսքը աւելի ևս հրաշալի նշանակութիւն է ստանում, որովհետև վերաբերում է իւրաքանչիւր քրիստոնէի մահացու մարմնին. «Մարմինք ձեր տաճար են Հոգւոյն» 2)։ Մի*

---

*) Տաճարի նաւակատիքին ասած:

1) Յով. Բ. 21:

2) Ա. Կորն. Զ. 19:

հարևանցի հայեացք ձգենք այս երեք տաճարի վերայ, որ են՝ Երուսաղէմի տաճար, Քրիստոսի մարմնի տաճար և իւրաքանչիւր քրիստոնէի սրտի տաճար։

Ա. Սիրելիք, Ամենաբարձրեալը չի բնակում մարդու ձեռքերով շինած տաճարներում։ Եթէ բովանդակ երկինքն ու երկիրը բաւական չեն Նորան [1], աւելի պակաս ևս մարդու կառուցած շէնքը։ Եթէ այս հզօր տիեզերքը իւր բոլոր գեղեցկութեամբ խիստ չնչին է Նորա անհեղ հոյակապութեան համար, հապա մարդու ջանքով կանգնած ո՞ր շէնքը պիտանի կարող է լինել Նորա բնակութեան համար։ Սակայն գիտենալով մարդու հոգեկան պահանջները, Նա Ինքը ցոյց տուեց սուրբ խորանի յատակագիծը և Իւր ներկայութեան արտաքին նշանը արժանի համարեց դնել տալ թևատարած ոսկի քերովբէների միջև [2]։ Խաւարի և մոլորութեան երկար տարիների ընթացքում այս տաճարը կանգնած էր, որպէս կենդանի ուխտ և վկայութիւն ընդդէմ կռապաշտութեան։ Տաճարը վկայում էր, թէ եթէ երկինքը լռել է, և երկիրը ընթանում է մեղքի, թշուառութեան, անզգամութեան, ամբարշտութեան և ցանկութեանց մէջ,—այնու ամենայնիւ Աստուած թագաւորում է ջրերի և ամպերի վերայ, որպէս արդարութեամբ իշխող Թագաւոր, թէպէտ «Ի ծովու են ճանապարհք Նորա, և շաւիղք Նորա ի ջուրս բազումս, և հետք Նորա ոչ ևս երևին» [3]։ Նա ոչ թէ անփոյթ էր մարդկանց մեղքերին և թշուառութիւններին, ինչպէս որ եպիկուրեաններն հաւատացնում էին, այլ անհուն գթառատ Հայր էր, միշտ սրտմտելով

1) «Ահա երկինք եւ երկինք երկնից՝ չեն քեզ բաւական»: Գ. Թագ. Ը. 27:

2) Ել, Իե. 18—20, Լէ. 7—9:

3) Սաղ. ՀԶ. 20:

Իւր մեղաւոր որդւոց հոգիների համար։ Նա, այդչափ անկարօտը, ընկալաւ խոնարհ սրտերի պահանջը և թոյլ տուեց մարդկանց, որ Իւր տաճարը ճոխապէս զարդարեն, որպէս ապացոյց նոցա սիրոյ և յարգութեան առ Աստուած, և դարձեալ որպէս ապացոյց Նորա մշտական ներկայութեան ի մէջ մարդկան այն վախճանով, որ նոցանից շնորհակալութիւնները ընդունէ և նոցա աղօթքները լսէ։

Բ. Հազար տարի անցնելուց յետոյ Տէրը արտասանեց տակաւին չյառուած քարեր տաճարի մասին. «Քակեցէք զտաճարդ զայդ, և զերիս աւուրս կանգնեցից զդա», ասաց Նա Իւրանից նշան խնդրողներին։ «Քառասուն և վեց ամ շինեցաւ տաճարս այս, և դու զերիս աւուրս կանգնեսցես զդա», պատասխանեցին կատաղած հրէաները։ Բայց Նա ասում էր «վասն տաճարի Մարմնոյ Իւրոյ» 1)։ Այս խօսքը խիստ խոր ապաւորութիւն գործեց։ Այդ դարձաւ գլխաւոր առիթ Նորան մեղադրելու Կայիափայի առաջ։ Այդ խօսքը երեսին տուեցին Նորան, որպէս ամենակծու ծաղրը, երբ որ Նա կախուած էր խաչի վերայ։ Այդ եղաւ քանդակ, որով լուծուեցաւ Իւր ամենախորհրդաւոր մարգարէութիւնը, երբ որ Նա յարեաւ ի մեռելոց 2)։ Եւ իրօք, արժէր որ այն քարերը անմոռանալի պահուէին, որովհետև մեծ էր անոնց անհեղ նշանակութիւնը։ Ցիրաւի, այդ ժամանակից նիւթական տաճարի վարագոյրը պատառուեցաւ, և մուտքն առ Աստուած աւելի մերձենալի և հաստատուն եղաւ։ Երբ Աստուած Իւր Որդին կանգնեցրեց մահուանից մարմնի մէջ. Նորա յաւիտենական Հոգւոյ կեանք նման էր մեղքին և նոյն նիւթից էր։ Եւ թէպէտ Քրիստոսի

1) Յով. Բ. 18—21։

2) Մատ. ԻԶ. 61, ԻԷ. 40, Յով. Բ. 22։

մարմնի տաճարը երկրի վերայ ոչ թէ դարեր շարունակեց, այլ միայն մի քանի տարի, բայց չմոռանանք, որ Նա երկնքում յաւիտենական է։ Երկրաշարժն ու ջրհեղեղը կարող է աշխարհն աւերակ դարձնել, երկաթէ ժայռերը կարող են խախտուիլ և մշտնջենական սարերը ճեղքուիլ, տիեզերքը իւր բոլոր արեգակներով և աստղերով կարող են թափուիլ և կուլ գնալ ամեհի ծովի ալիքներում, իսկ երկնից երկնքի վերայ յաւիտեանս կու մնայ այս Կենդանի տաճարը։ Յաւիտեանս Աստուածային և մարդկային բնութիւնք միաւորած կը լինին կատարելապէս, անշփոթ, անխախտ կերպով։ Յաւիտեանս որոտման մէջ կը հնչէ «Որդոյ մարդոյ բարբառը», յաւիտեանս մեզ Նման Դէմքը արգահատելով կը նայէ մեզ վերայ Աստուծոյ աթոռից։ Ով Որ երկրի վերայ սիրել է իւրայիններին, մինչև կատարածը կը սիրէ և՝ ընդհանուր կործանման ժամանակ՝ անվըտանգ կը պահէ Նոցա Իւր յաւիտենական սիրոյ գոգի մէջ։

Գ. Չպէտք է մոռանանք, որ Տէր Աստծու հոգին անցաւ Փրկչի մարմնի տաճարից իւրաքանչիւր քրիստոնէի սրտի տաճարը։ Այս խոստմամբ Տէրը մխիթարեց Իւր ահաբեկուած աշակերտներին, և հէնց որ Նորա մահացու Մարմնի տաճարը երկինք համբարձաւ, իսկոյն Նոր կենդանի տաճարը լցուեցաւ Փառքով և ժողոված առաքեալների ճակատը պսակուեցաւ Պենտեկոստէի հրեղէն լեզուներով։ Այդ ժամանակից մեզանից իւրաքանչիւրի մահացու մարմինը դարձաւ Աստուծոյ տաճար, Սուրբ Հոգւոյ տաճար։ Աստուծոյ Հոգին ամէն տաճարներից աւելի սիրեց ազնիւ, մաքուր սիրտը, ասում է Միլտոնը։

Առաքեալները ոչ մի վարդապետութիւն այնքան չեն պնդել, ինչպէս այս մէկը, որ միշտ իրանց թղթերում կրկնում են, ցոյց տալով, թէ հոգևոր կենաց գլխաւոր

աղբիւրն այդ է[1]։ «Ո՞չ գիտէք եթէ տաճար էք Աստուծոյ, և Հոգի Աստուծոյ բնակեալ է ի ձեզ», երկու անգամ հարցնում է Պօղոս առաքեալը իւր աշակերտած Կորնթացիներից։ «Զհոգին մի՛ շիջուցանէք», խրատում է նա Թեսաղոնիկեցիներին։ «Եւ մի տրտմեցուցանէք զՀոգին Սուրբ Աստուծոյ», կրկնում է նա Եփեսացիներին։ «Դուք տաճար Աստուծոյ կենդանւոյ էք»։—Երևակայեցէք, որ նա այժմ ձեզ դիմէր հէն հարցմունքով. «Եթէ ո՞չ գիտէք զանձինս, զի Քրիստոս Յիսուս ի ձեզ է, բայց եթէ անպիտանք իցէք»։ Բա՜յց— ո՜հ ինչ զարհուրելի ենթադրութիւն է. այսինքն՝ բայց եթէ այնքան անպիտանացել էք, որ արդարև Քրիստոս չի կարող ձեր մէջ ապրել . . .

Առաջին քրիստոնեաները առանց յապաղելու հետևեցին այս վարդապետութեան, որ հեթանոսների գաղափարով անլուր և անհասանելի խորհրդաւոր բան էր։ Երբ որ խեղճ ծեր Իգնատիոս եպիսկոպոսին բերեցին Տրայանոսի մօտ, յաղթութիւններով մեծամտած կայսրը արհամարհանօք կոչեց նորան—ողորմելի դեւ: Իգնատիոսը այս բառի պատասխանը տուեց և ասաց, թէ «այն մարդուն, որ իւր մէջ Աստուած է կրում, կարելի չէ կոչել դև, որովհետև դևերը հեռանում են Աստծու ծառաներից»։ «Իսկ ո՞վ է կրում իւր մէջ Աստուած», հարցրեց Տրայանոսը։ «Նա, որի սրտում որ Քրիստոս է», պատասխանեց Իգնատիոսը։ «Դու այն խաչեցեալի մասի՞ն ես խօսում», հարցեց Տրայանոսը։ «Նորա մասին. Ով որ խաչեց իմ մեղքը և մեղք թելադրողին», պատասխանեց Իգնատիոսը, Ով որ բոլոր դիւական մոլորութիւններն ու չարութիւնը դրեց այն մարդկանց ոտի տակ, որոնք որ իւրեանց սըր-

---

Ա. Կոր. Գ. 16 եւ 17, Զ. 19, Բ. Կոր. Զ. 16, Ա. Թես. Ե. 19, Եփ. Դ. 30, Ա. Պետ. Դ. 14:

տումն ունին նորան: «Է՛, դու է՞լ ունիս Խաչեցեալին քո սրտումդ», ծաղրելով հարցրեց Տրայանոսը: «Այո՛», պատասխանեց Իգնատիոսը, որովհետև գրուած է, թէ Բնակեցայց ի նոսա և գնացից ի նոսա»: Այն ժամանակ Տրայանոսը վճիռ կարդաց. «Հրամայում ենք, որ իւր մէջ Խաչեցեալին կրող Իգնատիոսը գազաններին պատառոտելու տրուի, ժողովուրդը զբօսեցնելու համար»: Ո՜վ երջանկագոյն մարտիրոսների մէջ: Լիբիական առիւծը կարող էր իւր ծնօտները ներկել մարդու արիւնով, բայց չէր կարող երկնային բնակութեան հասնել, որ վնասէ հոգուն: Իգնատիոսը կոչուեցաւ Աստուածակիր (Թէոֆորոս), որովհետև ասած, թէ զԱստուած է կրում ի սրտի: Բայց Ս. Գրքից բերած նորա վկայութիւնը ցոյց է տալիս, որ ինքն իրան առանձին անուն չէր տալիս, այլ ամենայն քրիստոնէին համարում էր զԱստուած կրող ի սրտի, առանց խտրութիւն դնելու, թէ արդեօք քրիստոնեայ մարդը գիտէ իւր մեծ առաւելութիւնը, թէ չէ:

Այսպէս ուրեմն ս. խորանը մարդն է, և տիեզերքում միայն մի տաճար կայ—մարդկային մարմինը: Եւ մարդու համար այս հանգամանքներից աւելի բարձր կատարելութիւն չկայ, կամ ինչպէս որ բանաստեղծ Վորդսվորտն ասում է, «մենք իսկութեամբ աւելի բարձրութեան ենք կոչուած, քան կարծում ենք»:

Աշխատենք այս գաղափարը լաւ պարզել մեր մտքի մէջ: Աստուած մեր մէջ է: Նա ուրեմն, ոչ միայն աներևութապէս մեզ հետ է և մեզ մօտ, ոչ միայն հսկում է մեզ վերայ մեր խորհրդաւոր րոպէներում, ոչ միայն Իւր թևերի ստուերով է մեզ հովանաւորում և Իւր լուսով լուսաւորում մեր երեսը. ո՛չ, այլ Նա մեր մէջ է, մեր մարմինը—Նորա տաճար է, մեր սրտերը Նորան բնակութիւն են: Ի՞նչ փա-

ռաւ որ մեծութիւն է։ Ի՞նչ արքայական ժառանգութիւն է։ Մենք—Աստուծոյ որդի ենք, անմահութեան ժառանգորդ ենք։ Մենք փոքր ինչ խոնարհ ենք հրեշտակներից։ Մենք պսակուած ենք փառքով ու պատուով։ Միայն այս մտածութիւնը կարող է «իսկապէս վսեմացնել սրտի բաբախումը»։ Միայն այդ հաւատքը կարող էր «մարդկային կենաց տագնապը վեհութեան և արքայական մեծափառութեան դարձնել»։ Ո՛հ, եթէ կարողանայինք լաւ տիրանալ այդ մտքին, այն ժամանակ մեր կեանքն աւելի ազնուագոյն և գեղեցկագոյն կը լինէր։ Մենք կը շնչէինք աւելի մաքուր, լաւագոյն, խաղաղական օդ։ Ժամանակը մեզ կը ներկայանար աւելի ճոխ և արգասաւոր ձևով, և ամենօրեայ աղմկութիւնները կը հնչէին որպէս աւելի գեղեցկագոյն մեղեդիների արձագանգ։ Այն ժամանակ կենաց պղտոր ջրերը վճիտ պարզութիւն կը ստանային, օրորոցից սկսած, մինչև գերեզմանը, և անոնց անթափանցելի մթութիւնը կը լուսաւորուէր երկնքի հրաշափայլութեամբ, այն յաւիտենական կենաց անփոփոխ արեգակնային լուսով, որ Աստուածային Երրորդութեան մէջ ունինք։

Եփեսոս մեծ քաղաքը պարծենում էր մեհենազարդ[1]) անունով, որ իսկապէս նշանակում է Դիանա դիցուհու մեհեանը աւելող (հոգացող, զարդարող)։ Արդեօք մենք էլ մեր կոչման ահեղ մեծութիւնը ճանաչելով՝ պատրաստ չե՞նք մեր բոլոր ջերմեռանդութիւնը այնպէս գործ դնել, որ հոգևոր տաճարը կանգնած լինի սրբած ու մաքրած սրտի մէջ, որ այդ սեղանը արժանի լինի ճրագ վառելու համար, և Տէր Աստծու լոյսը ճաճանչանայ սեղանի տապանակի վերայ։ Աստուած կը ոչնչացնէ տաճարը պղծողին։ Բայց

1) Գործ. ԺԹ. 35 (Νεωχόρος):

միթէ մարդը կարո՞ղ է գիտութեամբ և կամաւ աւերել և պղծել տաճարի ներքին սրբութիւնը, եթէ ըմբռնել է անոր ահեղ նշանակութիւնը։ Միթէ թոյլ կու տայ, որ չար երևակայութեան պիղծ պատկերներով ապականուին այն պատերը, ուր որ ներկայ է Աստուած։ Միթէ կարո՞ղ է նա գայթակղեցնել իւր աչքն ու ձեռքը, որ մեղքի և խայտառակութեան գործիք դառնան, երբ որ իւր մէջ է Քրիստոսը։ Միթէ կարո՞ղ է ընկղմել արբեցողի անասնական ինքնապարարութեան մէջ, կամ Փրկչի նուիրած մարմնի անդամները արատաւորել, պոռնիկ կնոջ հաճոյքին տալով։ Անշուշտ, ոչ։ Նա չի համարձակուի իւր աստուածանման յատկութիւնների անդին գանձը անառակութեան մատնել, որպէս զի գրկախառնէ զուարճութեանց ցամաքած դիմակը կամ պատկէ հեշտասիրութեան դժոխապետի տգեղ ճակատը։ Նա շատ բարձր կը դասէ այն գանձը։ Նա կզգայ, որ լաւագոյն և ամենալուսաւոր տարիները մոլութեան և փափկասիրութեան նուիրելը՝ ոչ այլ ինչ կը լինի, բայց եթէ ոսկեղէն գոհարը կախ տալ խոզի դնչի վերայ, կամ ակն ու մարգարիտը՝ ոսկրոտ գանգի ճակատի վերայ։ Ուղիղ է ասել մեծ բանաստեղծ Միլտոնը. «Ով որ իւր անձը արժանապէս յարգում և պատուում է, թէ՛ իւր սրտի մէջ կրած Աստծու պատկերի վեհութեան համար, և թէ՛ իւր մեծագին փրկութեան պատճառով, որ իւր ճակատի վերայ դրոշմած է,—նա ընդունակ է ամենայն ազնուական, աստուածանման արարքներ գործելու։ Նա այնքան բարձր կը լինի, որ չի վստահանայ նսեմացնել իւր անձը մեղքով և ապականութեամբ, այն անձը, որ փրկուել է մեծ գնով և արժանացել է Աստուծոյ որդեգրութեան։ Մարդկանցից կրած վիրաւորանքներն ու բամբասանքներն երբէք այնչափ սոսկալի չեն լինի նորա համար, որչափ որ իւր երեսք

պարհուրանքն ու ամօթոյ կարմրութիւնը, երբ որ նա իւր խիստ և պարկեշտատեսք աչքերով տեսնէ իւր վատ արարքներն ու մեղանչական մտքերը, թէպէտ և ծածուկ կատարուածները»։

Հասկացէ՛ք, իմ կրտսեր եղբայրներ, այս մեծ վարդապետութիւնը, որ մեր կենաց վերայ բնականաբար մեծամեծ պարտականութիւններ է դնում։ Եթէ Աստուծոյ ողորմութեամբ դուք հասնէք այդչափ բարձր գիտակցութեան, դուք կը վաստակէք այն յարատև, վսեմական ինքնարգութեան զգացումը, որ ամենաստոյգ աղբիւր է ամենայն վեհ, բարեպաշտ, աստուածանման արարքների։ Այդ զգացումը ձեզ համար այն հմայք-թալիսման կը լինի, որ կը պահպանէ ձեզ ամենայն նսեմութիւնից և մեղկութիւնից։ Այդպիսի գիտակցութեամբ կիրագործուի ձեր արքութիւնը, ձեր մարմինը կը մկրտուի, և դուք ձեր մէջ կզգաք Անմահ Թագաւորի ներկայութիւնը։

Դուք միշտ կզգուշանաք աղտոտել ձեր մանկութեան տօնական հանդերձները նուաստացնող արարքներով, կը զգաք, որ չլինի թէ ձեր մաքուր հոգին պղծէք հեշտութեան ցանկութեամբ, անգթութեամբ, ստութեամբ, կը խուսափէք ցած բաների շօշափութիւնից, ինչպէս որ մերկ մարմնի կաշին վախենում է կրակից։ Այն ժամանակ կիմանաք, թէ ինչ սարսափելի բան է, «մեր գոյութեան երկնային տարրերը և աստուածային անուշահոտ խունկը աննմանութեամբ ծխել, արքութեանց արքութիւնք դարձնել անառակ շուայտութեան վայր, իսկ հոգին բթացնել, ամբարշտացնել, անազգաղութեան մատնել։ Այն ժամանակ կիմանաք, թէ ինչ առաքինութիւն է կենաց մաքրութիւնն ու չափաւորութիւնը, ինչ աստուածային շնորհ է պատմուճ այտերի վերայ առողջ կուսական կարմրութիւնը, ինչ վեհ և բարեբար բան է իւրաքանչիւր

*քրիստոնէի բուն պարտքը, և ինչ թշուառութիւն է, երբ որ այդ պարտքը չի կատարվում» (Պալլէյլ)։*

*Այնքան ժամանակ չունիմ, որ այդ ճշմարտութիւնները մանրամասն բացատրեմ, բայց առաձնեքն էլ թող բաւական համարուին, եթէ կարողացել եմ գէթ մի մատաղ սրտի մէջ ազդել նոր գիտակցութիւն, թէ մեր հողային մարմինը սուրբ է, թէ մօտիկ է այն յաւիտենականութիւնը, որի ստուերի տակ, ոըպէս թէ Աստուծոյ թևի տակ, մենք մեր չնչին կեանքով ապրում ենք։ Միայն մի քանի խօսք կաւելացնեմ այն դէպքի առիթով, որ մեզ այսօր գումարել է։*

*Այս մեծ հաստատութեամբ հետաքրքրուողները, անխտիր ամէնքը ոչինչ չխնայեցին, որպէս զի այս մատուռը իւր գեղեցկութեամբ արժանի դառնայ Նորա փառքին, Որին որ նուիրած է. Աստծուն փառաւորելու համար և մեր ջերմեռանդութեան համեմատ հարկաւոր է, որ եկեղեցին,—որ Ոսկեբերանի ասելով. «հրեշտակների և հրեշտակապետների վայր է, Աստուծոյ դաւիթ է և երկնքի պատկեր է»,—ստանայ մեր ընտիր, յօժարակամ նուէրները։ Ճշմարիտ է, որ Նա, ով որ իւր ներկայութեամբ լցնում է ամբողջ տիեզերքը և երկնային լուսի պէս թափանցում է վճիտ երկնագնդի ամենայն հիւլէներում՝ միայն մի տեղում չի հեղում Իւր ներկայութեան փառքը։ Ճշմարիտ է և այն խօսքը, թէ ամենահոյակապ եկեղեցու շէնքը աւելի նուազ չափով է դառնում Նորա տաճար, քան մկրտութեամբ նուիրագործած ամենայետին մանուկ-քրիստոնէի մարմինը։ Հին Հայրապետներից մէկն ասում է. «Մովսէսը ծովի մէջ, Յոբը աղբիւսի վերայ, Եզեկիէլը մահուան մահճում, Երեմիան ցեխի մէջ, Դանիէլը առիւծների գբում, երեք մանկունք բորբոքուած հրոյ մէջ, Պետրոս և Պօղոս առաքեաները բանտում՝ Աստուծոյ անունը տալով, լսելի եղան Երկըն-*

քում»։ Եւ յիրաւի՝ հաւատով և աղօթքով ամենահա-տարակ խրճիթը նոյնչափ սրբութիւն կարող է դառնալ, որչափ Սինայի խորանը կամ այն սանդուղի աստիճան-ները, որով ելնում և իջնում էին հրեշտակները։

Բայց և այնպէս, քրիստոնէական սուրբ պաշ-տաման նուիրած վայրը աւելի զօրութիւն ունի, քան Աստուծոյ միւս ամենայն բնակութիւնը։ Ի բոլոր սրտէ գոհութիւն մատուցէք Նորան այն շնորհի համար, որ հնար ունիք ամենայն օր, այս տեղ իմանալու, թէ Տէր Աստծու տունը երկնքի դուռն է։ Այնպէս չանէք, սիրելի եղբայրներս, որ Աստուծոյ պաշտա-մունքը (ափսոս որ շատ անգամ է պատահում) դառնայ տաղտկալի ժամավաճառութիւն կամ լոկ մի ձևապաշտութիւն, ուր սիրտը իսպառ անհաղորդ է մնում։ Հաւատացէք ինձ, մեզ համար մեծ առաւե-լութիւն և արտօնութիւն է այս տեղ ամենայն օր ժողովուիլը, որպէս զի մեր սրտերը քննենք, Աստծուն անկեղծ շնորհակալութիւն յայտնենք և աղօթենք։ Լաւ բան է գալ այս տեղ, հեռանալով աշխարհի սին աղմուկից, հրաժարուելով բոլոր աւելորդ հոգսերից ու մոլի մաքառումից, և խոնարհութեամբ, ծնկաչոք խոստովանել մեր Երկնային Հօրը, ինչպէս որ մենք մեր վշտերը յայտնում ենք մեր հաւատարիմ բարե-կամներին։ Մանուկն ի՞նչպէս պէտք է պատրաստէ ու մաքրէ իւր ճանապարհը, եթէ ոչ ունկն դնելով Աստուծոյ խօսքերին։ «Ի՞ւ ուղղեսցէ երիտասարդ զճանապարհս իւր»։ «Այլ ի պահել զԲանս Քո» 1)։ Թո՛ղ ուրեմն, որ այդ Բանը լինի ձեր պաշտպան և ձեզ քաղցրութիւն։ Մեզ ամէնիս համար կու գայ մի օր, երբ որ մեր մանկութեան հասակում սովորած Ս. Գրքի ամենապարզ խրատը՝ անհամեմատ աւելի

1) Սաղ. ճժԸ. 9:

նշանակութիւն կունենայ, քան ատտիկեան պերճախօսութեան բոլոր սատտկագոչ որոտումները և հռովմայեցւոց քնարերգութեան հրաշալիքները։ Այն ժամանակ Ս. Գրոց խօսքերը, որ այժմ պարզ չենք հասկանում, կը ճառագայթին աւելի տհեզ և մարգարէական փայլով, քան Ահարոնի զգեստների վերայ գոհարները։

Մի արաբ, շոգից և ծարաւից գրեթէ մեռած, անապատում շրջում էր։ Նորան թւում էր, թէ իւր ուղտերի բեռների մէջ մի տիկ կայ ջրով։ Պատրանքի յոյսերով խաբուած, նա իսկոյն բաց արաւ տիկի բերանը։ Տիկը լցուած գտաւ մարգարտով։ Արաբը զայրացած ձգեց տիկը գետին, մարգարիտները փռելով տաքացած աւազի վերայ, և յուսահատ ձայնով գոչեց. «Ա՜հ, միայն մարգարի՞տ է եղել մէջը»։ Նոյնը կը պատահի, սիրելիք, և մեր ծարաւեցած հոգուն, եթէ մենք խմենք միայն երկրաւոր փորձերից և երկրաւոր գիտութիւնից, և ոչ թէ Աստուծոյ արդարութեան մաքուր ջրից։ Եղբարք, թող այսպիսի բան ձեզ չպատահի։ Աստուծոյ ողորմութիւնը տայ ձեզ այնպիսի սիրտ, որ իւր մաքրութեամբ արժանի դառնայ Աստուծոյ երեսը տեսնելու։ Աստուած ձեզ անպատճառ կը պահէ մանկութիւնից, ապա անվտանգ կառաջնորդէ բոլոր մրրիկներում, և կը լինիք որդիք Աստուծոյ։ Այն ժամանակ ձեզ քարոզողներս կարող ենք պարծանքով, յուսով և շնորհակալութեամբ նայել մանկահասակ ժողովրդ և գոչել ջերմեռանդ մաօք «անսուտ բանիւք», թէ ահա իրօք սոցա սիրտը՝

«Տաճար Տեառն, տաճար Տեառն, տաճար Տեառն է» 1)։

---

1) Եր. Է. 4:

## ԻԱ.

## ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆԻ ՏԵՍԻԼՔԸ. *)

Ս. Յովհաննէս Աստուածաբանը, դէպի բիւրեղեան խորութիւնները բարձրացնելով իւր հայեացքը, լսեց վեցթեւեան անմահ ոգիների եռապատիկ հրաւէրը, որ երբեմն Եսային էր լսել խնկի ծխի մէջ 1): Երկնքի ոսկի դռները բացուել էին ոչ թէ խցի մէջ զբաղուած փիլիսոփայի համար, ոչ թէ պալատում նստած կայսեր համար, այլ այն մարդու համար, որ առաջ Գալիլիայում ձկնորս գոլով, այժմ ստրուկ էր, Եգէյեան ծովի անապատ կղզու հանքերում քրէական աշխատութեան դատապարտուած: Նա երջանկութիւն ունեցաւ մահացու ականջներով լսելու հրեշտակների անթիւ զինուորութեան երկնային մեղեդիները, իւր մարդկային աչքերով տեսնելու Յաւիտենական Աթոռի աներեւակայելի փառքը: Երբէք մտաց յափշտակութեամբ այսպիսի հրաշալի տեսիլքներ չեն երեւացել մարդուն, տեսիլքներ, որ նոյն իսկ բանաստեղծներին անմատչելի են, և որոնք խաւարեցնում են երկրաւոր թագաւորների բոլոր հոյակապութիւնն ու պերճութիւնը, այդ բոլորը դարձնելով սուտ պաճու-

---

*) Հոգեգալստեան տօնին խօսած:

1) Ես. Զ. 4:

ճանք, շրջանակ։ Ակկերոնի պատմած հեթանոսական երազում՝ ստուերի աշխարհը առաջնորդող ոգին յանդիմանում է իւր առաջնորդած մահկանացուին, թէ փոխանակ վերին լոյսը գիտելու, խոնարհ դէպի երկիրն է նայում։ Քրիստոսի սիրելի աշակերտը չէր կարող այդպիսի մեղադրութեան արժանանալ։ Նորա արծուի հոգին խորասուզուել է երկնային լուսի մէջ, և Նա իւր բոլոր տեսածները արձանագրել է այն վեհ վկայասանութեան մէջ, որ այս օր այս տեղ կարդացուեցաւ։ Նա այնպէս է խօսում, որ կարծես թէ սերովբէի քնարի ձայները տակաւին հնչում են Նորա ականջներում, և աստուածային փառաց ճառագայթը դեռ դարձեալ լուսաւորում է Նորա քաղցր մթութիւնը անճառելի փայլով։

Եղբարք, եթէ մենք աստուածային իրերի խորհրդածութիւններով զբաղուած լինէինք, ինչպէս որ խորհրդածել է Ս. Յովհաննէսը, ո՞վ գիտէ, արդեօք մեզ էլ այն շնորհը չէ՞ր տրուի, որ գէթ փոքր ինչ տեսնէինք այն մեծափառութիւնից։ Բայց ի՞նչ յոյս կարող ենք ունենալ, երբ որ մեր սիրտն ու մտածմունքները միշտ այս տեղ է, եթէ միշտ երկրի վերայ ենք մնում կպած Ակկերոնի հեթանոսի պէս, եթէ միշտ քրքրում ենք հանգած երկրային մոխիրը, մէջը հուր փնտռելով, որ չկայ, եթէ միշտ մտածում ենք միայն մեր անձի համար, մեր շահերի, և ոչ թէ Արարչի մասին, ուտելու, խմելու, վարկի մասին, և ոչ թէ Արարչի մասին։ Իսկ եթէ սկսում ենք հոգևոր ճշմարտութիւնների խորհրդածութիւններով ապրել՝ մեծ մասով մեր մտածմունքը վերաբերում է մեղքին և վշտին, զղջման և պատժին, բախտաւորութեան, անձնահաճ երազներին, դժոխքի ահին, և ոչ թէ Աստուծոյ մեծափառութեան կամ Նորա օրէնքներին։ Գէթ այսօրուայ համար մոռանանք մեր անձը և ամե-

վում են թեթևամիտ խօսքերով ամենայն օր պղծել այս փառաւոր և ահեղ անունը, այլ դառնում եմ մարդկանց, որոնք երբեմնապէս, աղօթքի կամ խորհրդածութեան րոպէներում, գէթ փոքր ինչ զգացել են Նորա մեծութիւնը, և հարցնում եմ Նոցանից, թէ արդեօք հասկանո՞ւմ են Նորա մեզ շնորհած Յայտնութեան բոլոր բարիքը, որով մեզ ցոյց է տրվում կենդանի Աստուած։ Նայեցէք երկրի զանազան ազգերի վերայ և տեսէք, թէ ի՛նչեր է պաշտել նրանց անառաջնորդ բանականութիւնը։ Գոհութիւն մատուցանենք Աստծուն, որ աստուածներ չենք շինում զզուելի սողուններից և ի պատիւ Նոցա ներկուած տաճարներ չենք կանգնեցնում, եգիպտացիներու. պէս. որ աւազերը չենք պաշտում և չենք հնարում մեզ համար մոգ կամ դև, հեռաւոր ծովային կղզիներու բնակիչների պէս։ Մենք երկրպագութիւն չենք տալիս աշխարհի ոչ կոպիտ ուժին, ոչ մեռեալ հողուն, և ոչ հակասող օրէնքների անընդհնելի յորձանքին։ Փառք Աստծու, մենք հռովմայեցիներու պէս սեղան չենք կանգնեցրել Երկիւղին և Ողորմութեան, Ծիծաղին և Յուսահատութեան և մինչև անգամ չենք յափըշտակուել ամենագեղեցիկ առասպելներով. մենք թոյլ մարդկութիւնը նախ չենք շողոքորթել, ապա և կուռք դարձրել, վիպական զարդարուն քողի տակ ծածկելով Նորա արատը և մոլորութեան տգեղութիւնները և «դժոխքի դուռը—դրախտ նկարագրելով»։

Մեր Աստուածը կայծակի և որոտման աստուած չէ, ոսկեզարդ ու ակնաձև պաճուճապատանք չէ, հեշտասիրութեան և արիւնասիրութեան մարմնացումն չէ։ Նա չէ ոչ հուր, ոչ հողմ, ոչ շունչ, ոչ երկնակամար, ոչ հեղեղ, ոչ լուսատու մարմին։ Նա չէ բնութիւն, այլ բնութեան մէջ է յայտնվում Նորա Ամենակալութիւնը, Նա չէ և բախտ, որ «Նորա աներևոյթ խնա-

*մահկալութիւն է, իսկ մարդկանց անունով դիպուած
է»: Նա է Տէր, մեծ և հզօր, Թագաւոր Թագաւորաց,
Տէր իշխանաց, Տէր Ամենակալ: Նա է Աստուած աստ-
ուածոց, ճշմարիտ Աստուած: Նա Աստուած է, և
հաւասար չկայ Նորան: Աստուած է, և նախ քան
Ինքը, ոչ ոք չի՜ եղել: Նա Աստուած է, և նման Նորա
չկայ: Նա Աստուած է, և բացի Նորանից ոչ ոք չկայ:
Նա այն Աստուած է, Որ երբէք չի փոխվում: Նոյն
իսկ երկինքը չի կարող բովանդակել Նորան, մինչդեռ
Ինքը հաճում է բնակել մանկան խոնարհ սրտի մէջ:
Նա Լոյս է և Հայր Լուսոյ: Սուրբ Նորա լուսաւո-
րագոյն է, քան արեգական լոյս: Նա բնակում է
անմատչելի փառաց մէջ: Նա—Այբ և Քէ: Նա—Ես
եմ որ Էն, Երրորդութիւն միութեան մէջ: Աստուած
Սուրբ Շնորհաց, Անեղը կարողութեամբ, Ամենուրեք,
Հինաւուրցն: Եւ այս ահեղ, բարձրագոյն կարողութիւնը,
այս անիմանալի, անմատչելի, անեղծ Ոգին—մեր Հայրն
է: Քրիստոս իջաւ երկիրը, որ մեր աչքը բացուի և ճա-
նաչենք, թէ Նա—Հայր է ամենեցուն: Այն գաղափա-
րը, թէ «մենք ամէնքս—Նորա շարաւիղ ենք», երբեմն
բանաստեղծների մտքով էր անցնում, երբ որ նոքա
քաղցրապէս շնչում էին օդի մաքրութիւնն ու անու-
շահոտութիւնը և մեծապէս զքանչանում էին գա-
րունքից կամ ամառուայ հրաշալիքներից: Բայց այս
միտքը լոկ միայն աղօտ երազ կամ փայլուն նախագ-
գացութիւն կու մնար ընդ միշտ, եթէ Քրիստոսը չա-
ւետէր և մեզ չսովորեցնէր ճանաչել Նորան մեր Հայր:
Ինչ խոր, անպատմելի, ընկճող յուսահատութիւն պիտի
տիրէր մարդու սրտին, եթէ այդ գիտակցութիւնը չու-
նենար: Ապա թէ ոչ, այս ահեղ իրականութիւնը մեզ
կարող էր կամ խելագարեցնել և կամ ինքնասպանու-
թեան դրդել: Միթէ աւելի սարսափելի բան կարո՞ղ է
լինել, քան նայել այս աստղալից երկնքին և տեսնել*

արեգակների լուսի տարածուիլը՝ երկնային կամարի ամէն ծագերը և անյայտանալը հեռաւոր դրութիւնների և ծիր կաթինների անեզր տարածութիւնների մէջ. և ապա իմանալ, թէ այս ամբողջ աշխարհը լոկ մի կէտ է, մի բիծ է, մի հիւլէ է տիեզերքի համեմատութեամբ, իսկ այս տիեզերքն էլ աւելի փոքրագոյն կէտ է, աւելի փոքրագոյն բիծ և հիւլէ է այն անհունութեան, որի մէջ ինքը փռուած է, որպէս թէ՝ ապարանքի յատակի վերայ՝ անթիւ աշխարհների ոսկէփոշի: Նոյն տեսակ մտածմունքներ են առաջ գալիս, երբ որ մենք զննում ենք մի կաթիլ ջրի փոքր աշխարհը և տեսնում ենք աներևոյթ՝ բայց իրարից պարզ զանազանելի էակների բազմութիւններ, որ մեզանից անհամեմատ ստոր են, և որ չեն չափվում ոչ մեր փիլիսոփայութեամբ և ոչ մեր անկատար մտքի թոյլ և կոպտար հաշիւներով: Այս ամբողջ մեծ իրականութիւնը ցոյց է տալիս մեզ, որ մենք լոկ միայն հիւլէ ենք, որ կորչում ենք մտքին անըմբռնելի անհունութիւններում, թէ մենք ոչինչ ենք կամ աւելի պակաս ենք, քան ոչինչ: Անեզրութիւն է մեր վերը, անեզրութիւն է մեր վարը: Մենք շրջապատուած ենք անծայր հակասութիւններով և ամենայն քայլափոխում հանդիպում են մեր անզօրութեան ադամանդեայ կարծրութեան: Միթէ մենք լոկ միայն աւերակների փլատակնե՞ր ենք, որ աննպատակ, դիպուածով, անյոյս ձգվում ենք գոյութեան անեզր, անհուն ովկիանի մէջ: Կամ թէ մենք այն փոշու մանրամա՞ղ ենք, որ կազմուել է պատռուող աշխարհների ահեղ ընդհարումից: Ո՛չ, ո՛չ, սիրելիք, նոյն իսկ այդպէսիններիս համար Աստուած Հայր է: Ոչինչի խաւար անդունդներից Նա Իւր ձեռքը կառկառում է դէպի մեզ, ճգնաժամի րոպէներում: Նորա նախախնամութիւնը, Նորա սիրոյ ոգին ամենայն տեղ է և առաջնորդում է ամենայն ինչ: Սքանչելի՛, օրհնեա՛լ մտած-

մունք։ Մեզ համար՝ նոյն իսկ մեզ համար, Աստուած— Հայր է։ Հայր, որ մեր մասին հոգացող է, ինչպէս որ արծիւք հոգս է քաշում իւր ձագերի համար։ Մարդու սէրն էլ երբեմն աստուածային է իւր մաքրութեամբ և տանջանք կրելու հերոսութեամբ, բայց Նա մեզ սիրում է, մեզ, ամենաթոյլ, ամենաողորմելի արարածներիս, այլ սիրով, աւելի քնքոյշ, աստուածային սիրով։ Այսպիսի մտածմունքներից յետոյ, ակամայ ամենայն ոք ցանկութիւն է ստանում իւր հիացման և շնորհակալութեան զգացումն արտայայտել շատ ծանօթ խօսքերով. «Եկայք երկիր պագցուք Նմա, և անկցուք առաջի Տեառն Արարչին մերոյ։ Նա ինքն է Աստուած մեր, մեք ժողովուրդք ձեռին Նորա և խաշն արօտի Նորա» 1)։ Ո՜հ, եթէ դուք այժմ լսէիք Եսայի մարգարէի պէս սերոբէների աղաղակը. «Սուրբ, սուրբ, սուրբ Տէր զօրութեանց։» Բայց ինչպէս մերձենանք, ինչպէս երկրպագենք անիմանալի Ոգուն, Որի առաջ տկարացած թուլանում են մարդկային երևակայութեան թևերը։ Մեր հոգին ինչպէս ըմբռնէ այն փառքը, որ մութ է մեր աչքի համար իւր փայլի սաստկութեան պատճառով։ Մեր երկրպագած Էակը չի երևում մեզ ծխոտ հնոցի մէջ, և ոչ Քորեբի մորենւոյ հրոյ մէջ, և ոչ Սինայի մրրկապատ գագաթներում։ Բիւրեղեան ահեղ երկնակամարի վերայ, պարհուրենի մրրիկների և բոցեղէն ամպերի մէջ և աթոռի նմանութեանց վերայ, գերեալը տեսաւ Քոբար գետի ափին մօտ կերպարանք չորս կենդանեաց և կերպարանք մարդոյ ի վերայ նոցա 2)։ Պատմոսի ժայռերում աքսորածը տեսաւ աղջամուղջների մէջ, ահեղ սառուցեալ լճի առաջ բարձրացած աթոռի վերայ՝ զենեալ

1) Սաղ. ՂԴ. 6, 7։

2) Եզ. Ա.

Գառը [1])։ Փառք Աստուծոյ, մեր աչքը չպիտի կուրանայ Ամենակարողութեան և Անեզրութեան վերայ նայելիս։ Մենք համարձակութիւն ունինք մերձենալ Աստծուն, որ մարդացաւ։ Աստուծոյ Որդին, Ս. Երրորդութեան երկրորդ անձը, Նորա աջ կողմն է կանգնած և ընդունել է մարդկային մեղաւոր մարմնի կերպարանք։ Նորա միջնորդութեամբ մենք կարող ենք մերձենալ Հօր աթոռին, որովհետև Իւր բուրվառով Նա մեր աղօթքը վեր է առաքում։ Մարդոյ Որդին գորովով խոնարհում է դէպի մեզ, որ մեր խնդերը լսէ, իսկ երբ որ մեռնենք, Նորա ձեռքը մեր առաջ բաց կանէ կենաց դուռը։

Լոյս ի լուսոյ Հօր Միածին,
   լուսով լցեր զազգ երկրային,
Եւ զաշակերտս լուսոյ Բանին
   լոյս ասացեր անուամբ Քոյին.
Լուսաւորեա լուսով Նոցին
   զանգիտութեան խաւարս անձին . . .
Եւ զԱրուսեակդ առաւօտին
   տեսից ի փառսըն հայրենին։

Բայց մի ուրիշ մտածմունքից էլ թափուր չպէտք է լինենք։ Աստուած ոչ միայն անճառելի ահեղ զօրութիւն ունի, իսկ մենք անհուն կերպով թոյլ ենք, — այլ Նա միևնոյն ժամանակ մեր Թագաւոր է, իսկ մենք ըմբոստացել ենք ընդդէմ Նորա։ Նա մեր Արարիչ է, իսկ մենք խախտել ենք Նորա օրէնքը. Նա Հայր է, Որի սէրը մենք անարգել ենք։ Նա Սուրբ է, իսկ մենք սրբապղծել ենք Նորա տաճարը, — Օրհնեալ է, իսկ մենք Նորա անունը սնոտեաց վերայ ենք յիշատակում։ Ո՞վ կը թեթևացնէ մեզանից մեր գործած մեղքերի ծանրութիւնը։ Ո՞վ կը կրէ մեր չկատարած

1) Յայտ. Ե. 6:

պարտքերի պատիժը։ Ոչ լեռներ կարող են ծածկել և ոչ գետեր լուանալ այդ խայտառակութիւնը։ Սակայն Քրիստոսի արդարութիւնը կարող է հովանաւորել, իսկ Նորա արիւնը՝ սրբել այդ ամէնը։ Եւ այդ իսկ պատճառով Քրիստոսը մեր Փրկիչ է։ Նա մեռաւ, որ փրկէ մեզ մեր մեղքերից։ Թէ ի՞նչպէս այս եղաւ, ի՞նչպէս կարող էր այս կատարուել—ես չգիտեմ։ Ինչ որ մեզ հարկաւոր է գիտենալ, այդ այն է, թէ Աստուծոյ Որդին յօժար կամօք մեռաւ մարդու մեղքերի համար։ Հիմա ի՞նչպէս յայտնենք Աստծուն մեր երախտապարտութիւնը Նորա առ մեզ այն անհուն սիրոյ համար, որով Յիսուս Քրիստոս փրկեց աշխարհը, ապա և Նորա շնորհաց համար և մեր մեծամեծ յոյսերի համար։ Եթէ դուք չէք կարող հասկանալ, թէ ինչու մենք Նորան պարտական ենք անհուն շնորհակալութեամբ,—փորձեցէք երևակայել, թէ առանց այնպիսի փրկութեան ի՞նչ պիտի լինէր մեր վիճակը։ Մտածեցէք (մանաւանդ զղջման և ամօթոյ րոպէներում), թէ մենք ինչ կը լինէինք, եթէ մեղքի դէմ Փրկիչ չլինէր, դժբախտ կանքի դէմ պաշտպան չլինէր, խռովութեան դէմ միջնորդ չլինէր, յուսահատութեան դէմ յոյս չլինէր, հիւանդութեան դէմ Գալիլիայի բուժարանը չլինէր, և եթէ առհասարակ մեր աշխարհում բժիշկ չլինէր։ Ինչ կը լինէր մեզ հետ, եթէ մենք բազմաթիւ մեղքեր ունենալով՝ այն գիտակցութեամբ ապրէինք, թէ այն մեղքերին ներում չկայ։ Այս կը լինէր անտանելի բեռն, մեր ծնունդը մեզ համար անէծք կը լինէր։ Ահա այս վարձուրանաց զարհուրանքից մեզ փրկելու համար եկաւ Քրիստոսը։ Միայն Նորա շնորհով մենք ճանաչեցինք Հայր Աստուծուն և Որան, Որ Որդի Աստուծոյ է։ Միայն Նորա մահը ազատեց մեզ դիւական որոգայթներից։ Մեր աղօթքները լսելի են դառնում Նորա պաշտպանութեան շնորհով։

Մենք ինչպէս պէտք է իմանայինք, թէ խաւար գետի այն կողմն եւ՝ կայ մի բան, եթէ չունենայինք Նորա յարութեան ու համբարձման հաւատքը։ Ի՞նչպէս պիտի իմանայինք, թէ մարդուն այլ բան է վիճակուած, քան ոչնչանալու և հող դառնալու և գետնի տակ փտելու։ Այս յայտնութիւնը, փրկութիւնը, պաշտպանութիւնը, ստրկութեան խորտակումը, մահուանից խայթոց խլելը — Աստուծոյ Որդւոյ գործ է։ Եւ Նա ոչ միայն ճշմարտութիւն սովորեցրեց, այլ և Իւր մարդեղութեան վարքով ճշմարիտ կենաց օրինակ տուեց մեզ։ «Արդ եղերուք դուք կատարեալք, որպէս և Հայրն ձեր երկնաւոր կատարեալ է», ասում է Ս. Գիրքը [1])։ Բայց ինչպէ՞ս կարող էինք երբ և իցէ Քրիստոսին նմանելու կամ այդ ցանկալի կատարելութեան հասնելու յուսալ, եթէ Յիսուս Քրիստոս երկրի վերայ ցոյց չտար, թէ ինչպէս պէտք է ապրի կատարեալ մարդը, եթէ Նորա քայլերը չլուսաւորէին մեր մանկութեան դաշտերը և հասունութեան լեռնագագաթները։ Նա թողեց մեզ սրբութեան օրինակ, և ոչ թէ ապրելու տեսութիւն։ Non elocutus est magna, sed vixit— մեծ է գործը, քան խօսքը։

Մեզ խրատելու համար Նա ընտրեց խաղաղ-հասարակ ասպարէզ. ոչ թէ մարդկային հօյակապութեան պերճ թատրոնը, այլ խուլ տեղի գիւղական տունը, ոչ թէ արքայական մեծափառութիւնը, այլ ծառայի աւելի սուրբ սպասաւորութիւնը։ Նորա մեծութիւնը նման չէ մարդկային մեծութեան, որ ջահի պէս բռնկում է ասուպի կերպով և յանկարծ թողնում է միայն թանձր ծուխ։ Ո՛չ, այս կեանքը շարունակ անյայտ ողորմածութեան և գթութեան կեանք

---

1) Մատ. Ե. 48։

կեր, որ բոլոր դարեր և սերունդներ միշտ լուսաւորել է պայծառ անփոփոխ աստղի պէս։

Ահա վարքի այսպիսի հեզ ազնուութիւնը, այսպիսի լուռ ու մաքուր աշխատասիրութիւնը, այսպիսի անհուն անձնազոհութիւնը, այսպիսի գեղեցիկ խոնարհութիւնը՝ պէտք է լինի մեր ձգտմանց նպատակ։ Ինչպէս որ նետը բարձր ձգելու ցանկացողը՝ իւր աղեղը դէպի երկինքն է ուղղում, այնպէս էլ մենք մեզ համար օրինակ ենք ընտրում ոչ այլ ոք, բայց եթէ Աստուծոյ կատարեալ Որդուն։ Սակայն քանիցս չեն յաջողուել մեր ջանքերը։ Եթէ և երբեմն կարողացել ենք յաղթել մեղքի աւելի կոպիտ տեսակները, բայց դարձեալ միշտ աւելի ցած ենք մնացել, քան ուր որ բարձրացած պիտի լինէինք։ Փոքր արատները դեռ դարձեալ շարունակում են ծաղկել, երբ որ խոշորները սանձել ենք։ Իսկ մենք ձգտում ենք սուրբ լինել, ինչպէս որ սուրբ է Քրիստոսը։ Ո՞ր տեղից են այս ստոր զգացումները, որ մենք չենք կարողանում յաղթել։ Ի՞նչից է ծագում անհամբերութիւնը խիստ ստանալիս, ցածահոգի խնդութիւնը ուրիշների անյաջողութեան դէպքում, չար նախանձը նոցա յաջողութեան ժամանակ, պծգալի ցանկութիւնը այնպէս չերեւալ, ինչպէս որ իսկութեամբ ենք։

Սիրելիք, մեզանից լաւագոյն, ամենահամարձակ և սրտոտների մէջ անգամ միշտ կը գտնուի այնպիսի արատ կամ թերութիւն, որ ամօթով մեր երեսը կը կարմրցնէ։ Հապա ի՞նչ անենք, որ լաւանանք։ Այլ հնար չկայ, բայց եթէ աչքը բարձրացնել դէպի այն լեռները, որ տեղից որ մեզ օգնութիւն է գալիս, խոստովանել մեր տկարութիւնը և դառնալ Ս. Երրորդութեան այն անձին, Որ լուսաւորում է և կարող է լուսաւորել մեզ, և Աստծու բոլոր ընտրեալներին։ Նորա գործը չի վերջացել, որ օրօրոցից է սկսվում և

գերեզմանով և վերջանում։ Նա Մխիթարիչ է, որ միշտ յօժարութեամբ պատրաստ է օգնել մեզ, որպէս մի իդէալի բարձրութեան հասնենք։ Եթէ մենք անկեղծ սրտով ձգտենք ճշմարիտ կենաց, Նա կը ոգեւորէ մեր աղօթքները և կը լսէ մեր մրմունջը։ Նա Իւր Աստուածային լուսով կը լցնէ՝ մեր սրտի մէջ հաստատուած՝ Իւր տաճարի իւրաքանչիւր խորշը։ Նա մեզ կը դասէ հրեշտակներից էլ բարձր և Իւր շնորհով արժանի կը կացուցանէ, որ Աստուծոյ Որդի լինինք։

Այս կիրակի օրը, սիրելիք, տարուայ միւս կիրակիների մէջ նշանաւոր է։ Ծննդից, մեծ պասից, Զատկից և Համբարձմանից յետոյ գալիս է Ս. Երրորդութեան օրը, որ է Հոգեգալուստ։ Այնուհետև կիրակիները այդ տօնից են հաշվում։ Այդպիսի օրը լաւ է մեզումեզ հարցնել, արդեօք հաւատո՞ւմ ենք Երեքանձնեայ Աստուծուն, սիրո՞ւմ ենք Հայր Աստծուն ամենայն սրտի մտքով, հաւատո՞ւմ ենք Նորա օրհնեալ Որդուն և առնո՞ւմ ենք օրինակ Նորանից, զգո՞ւմ ենք Սուրբ Հոգու կենդանարար և օրհնեալ ներգործութիւնը։ Ընդհակառակ ամբողջ քաղաքներ կան, որ պատրաստ են տաճարներ կանգնեցնել անծանօթ աստծուն։ Մեզանից շատերն ապրում են, բնաւ չը ճանաչելով Աստծուն։ Եթէ մենք իրօք սիրում ենք Աստծուն, հապա ո՞ր տեղից է մեր մեծամտութիւնը այնպիսիների դէմ, որոնց համար որ Աստուած խոնարհեց, ո՞ր տեղից է մեր անգթութիւնն այնպիսիների դէմ, որոնց համար որ Նա մեռաւ։ Ինչպէս կարողանում ենք ապականուիլ և մեղանչել, երբ որ Աստծու Որդին՝ մեզ օրինակ տալու համար՝ ապրեց մեր չարամէտ կեանքով, բայց կատարեալ անմեղութեամբ։ Չմոռանենք. ոչ ամենայն մարդ, որ ասում է «Տէր, Տէր» [1],

---

1) Մատ. Է. 21:

կը մտնի երկնային Արքայութիւնը, այլ միայն երկ-նային Հօր կամքը կատարողը։

Ձեռքերը սրտի վերայ դրած խոստովանեցէք, արդեօք իրօ՞ք պաշտում էք Ս. Երրորդութիւնը, թէ ձեր վարքով իսկ ապացուցանում էք, որ դուք որդի էք առաւելապէս աշխարհի, մարմնի և սատանայի, որոնք իրաւամբ կոչվում են «դժոխային եռապետութիւն»։ Եղբարք, կեղծելով մի կերպարանք ո՛չ ձեր անձի, և ո՛չ Աստուծոյ առաջ։ Իմացէք, որ Նորա աչքը ձեզ է ուղղուած, որ Նա իւրաքանչիւրիդ սրտի գաղտնիքները իմանում է, մէկ մէկ որոշելով ձեր մտքի մէջ անցած բոլոր խորհուրդները, նոյն իսկ այն ժամանակ, երբ որ դուք այս խօսքերն էք լսում, նշմարում է բոլոր մեղքերը, որոնց որ ձեր սիրտը այժմ նուիրած է։ Դուք Նորան չէք տեսնում և չէք կարող երևակայել, թէ Նա այս տեղ է այժմ։ Բայց վաղ թէ ուշ, մենք ամէնքս պէտք է կանգնենք Նորա երեսի առաջ, Հայր Աստծու առաջ, Որին որ չլսեցինք, Որդի Աստծու առաջ, Որին որ խաչեցինք, Ս. Հոգու առաջ, որին որ անարգեցինք։ Թուլացրեցէք ձեզ կաշկանդող բարակ արծաթազօծ կապերը, յետ քաշեցէք մահուան բա-րակ քօղը—և ձեր հոգին կը տեսնի Աստծուն։

Շատ ժամանակ չէ, ինչ որ այս ամբիոնից խօ-սում էի մահուան մասին, և ասացի, թէ «Անհնարին բան չէ», որ տարին չլրացած, մեզանից մէկը կոչուի այս տեղից, Բայց ի՞նչպէս գուշակենք, թէ ո՛վ կը լինի դա»։ Ոմանք այս բառերը կարող էին շտապով ասած համարել, անկարելի համարելով, որ գուշակութիւնը կատարուի այսպիսի մատաղահասների ժողովի նկատ-մամբ։ Բայց, սիրելիք, այն ժամանակից մեզանից երեքը մերձ ի մահ են եղել, իսկ ձեզանից մէկը, որ ձեր մէջ նստած էր ծաղիկ հասակում, առողջ, զօրա-ցած ուժերով, որ նոյնպէս լսում էր իմ քարոզը,

այժմ այլ եւս ոչինչ չի լսում, որովհետեւ գերեզմանական անհունով է ծածկուած։ Հազիւ թէ նա մտածէր, թէ հէնց ինքը պիտի պառկած մեր միջից։ Եւ Աստուծոյ մատը նշանեց նորան, եւ նա մեռաւ, առանց ուրիշին թողնելով։ Դուք այս տեղ ծաղկում էք ողջութեամբ, իսկ գերեզմանատանում խոտն արդէն կանաչում է նորա շիրմի վերայ։ Բայց նորան այժմ ծանօթ է մի անհասանելի մեծ գաղտնիք, որ կենդանիներից լաւերը, մեծաւորները, խելօքներն անգամ չգիտեն։

Միթէ կարո՞ղ էք գիտենալ թէ Աստուծոյ մատը մեզանից որին կը նշանէ միւսներից առաջ, մեզանից ո՞վ ստուէր կը դառնայ, մեզանից ո՞ւմ կը յայտնուի գաղտնիքը։ Կրկնում եմ թէ մեզանից մէկին այս բանը կը պատահի։ Եղբարք, այս թախծական եւ ահեղ մտածմունքը չենք ներկարել։ Միայն մի բան կաւելացնեմ։ Ով որ չի ճանաչում եւ չի սիրում կենդանի Աստծուն, մինչեւ անգամ՝ եթէ մեծատուն, հարուստ, գեղեցիկ լինի, եթէ մանկութեան բոլոր թարմ ծաղիկներով զարդարուած լինի, նա դժբախտ, այո՛ դժբախտ եւ ողորմելի է։ Երբ որ զգաստանալու ժամը գայ, նա աւելի արգահատելի կը լինի, քան դատարկ ունենականում իրան թագաւոր երեւակայող խելագարը, քան ոսկեման աղքատը, որ երազում վայելում է ճոխ խնջոյքի սեղան։

Իսկ միւս կողմից երջանիկ է նա, ով որ ի խորոց սրտէ կարող է բացականչել. «Թէպէտ գնացից ես ի մէջ ստուերաց մահու, ոչ երկեայց ի չարէ. զի դու Տէր, ընդ իս ես. ցուպ քո եւ գաւազան, նոքա մխիթարեսցեն զիս [1])։ Այո՛, այդ մարդը երանելի կը լինի, որքան որ առաջ աղքատ, թշուառ, տգէտ եւ արհամարհելի եղած լինէր։

---

1) Սաղ. ԻԲ. 4:

## ԻԲ.

## ԳԻՏԵ՞Ս, ՈՐ ԲԱՐԵԿԱՄ ՈՒՆԻՍ.

> «Մի՛ երկնչիք. դուք արարէք զայդ ամենայն չարիս. բայց մի՛ խոտորիցէք ի Տեառնէ. եւ ծառայեցէք Տեառն յամենայն սրտէ ձերմէ »։
>
> Ա. Թագ. ԺԲ. 20.

Մեր խօսակցական լեզուում գործք ենք ածում շատ բառեր, որ կորցրել են իրանց իսկական նշանակութիւնը, բայց հազիւ թէ մի ուրիշ բառ գտնուի, որ այնպէս թեթեւամտութեամբ կիրառկուի, ինչպէս «բարեկամ» բառը։ Մարդկանց կարծիքներին նայելով, այնպէս է թուում, իբր թէ ամենայն մարդ շատ բարեկամներ ունի, իբր թէ մենք ամէնքս բարեկամներով ենք շրջապատուած։ Մանաւանդ, որ աշխարհի մէջ այնքան քաղաքավարութիւն և բարեսրտութիւն է մտել, որ այդ բառը անտեղի գործ է ածվում, առանց յայտնապէս հեղնել ուզենալու։ Սակայն բառիս իսկական, բարձր և վսեմ նշանակութեամբ՝ ճշմարիտ բարեկամ ունին շատ քիչ մարդիկ, և նոքա անշուշտ լաւագոյն և ամենաբախտաւոր մարդիկ են։ Ով որ ճշմարիտ բարեկամ ունի,—բայց ոչ թէ ընդհանրացած ունայն նշանակութեամբ, այսինքն հասարակ ծանօթ մարդ, հաճելի զբուցատրող կամ մինչև անգամ

անքաժանելի ընկեր, այլ երբք հաւատարիմ հարազատ սրտակից մարդ.—Նա անգին շնորհք է արժանացել։

Նոյն իսկ ձեր մէջ, այն հասակում, երբ որ սիրտն աւելի ջերմ և վեհանձն է, սակայն կարող են պարծենալ ճշմարիտ, կատարեալ բարեկամութիւն ունենալովը։ Ձեզանից քանիսնե՞րդ ունիք այնպիսի բարեկամներ, որ նոցա հետ կարողանայիք բաց սրտով և անկասկած խօսակցել նուիրական յիշողութիւնների, սրտի մտերմութիւնների և հայրական տան մասին։ Արդեօք անխտիր ամենայն ժամանակ յոյս ունի՞ք նոցանից ստանալ օգնութիւն և խորհուրդ։ Կարո՞ղ էք, առանց քաշուելու լալ միայն նոցա ներկայութեամբ և աղօթել նոցա կշտին։ Արդեօք ունի՞ք այնպիսի բարեկամ, որ նոցա անփոփոխ համակրութեան, անաչառ ներողամտութեան հաւատալք ունենայիք, մինչև անգամ եթէ դուք գործէիք մեծ սխալ, մեծ անմտութիւն, մեծ յանցանք։ Ունի՞ք այնպիսի բարեկամ, որ իւր սուրբ սիրով ճանաչէ ձեր հոգին և այնքան մտերիմ լինի ձեզ, որ չթուլացնէ իւր բարեկամութիւնը, եթէ տեսնէ երիտասարդութեան թեթևամտութիւնները, ծերութեան տառապանքները, մեծատոհմութեան, առողջութեան, հարստութեան և փառքի յեղյեղուկ պատահականութիւնները, կամ նոյն իսկ անմեղութեան կորուստը։ Ունի՞ք բարեկամ, որ ձեզ իւր սրտի մէջ ընդունէ այնպէս, ինչպէս որ էք, ձեր բոլոր թերութիւններով, անձնյայտնի սխալանքներով, որ ձեր վատութիւնը պարսաւէ այնպիսի անկեղծ լեզուով, որ չը խոցէ և չը դաղէ ձեր սիրտը, և ընդհակառակ որ խրախուսէ և քաջալերէ այն ամէնը, ինչ որ ձեր իսկական բնութեան լաւութիւն և ճշմարտութիւն է կազմում, այն ևս մի այնպէս դիւթիչ ձևով, որ ձեր սիրտն ու միտքը չգրաւել անհնարին լինի։ Երիցս երջանիկ կը լինի այն մարդը, որ այսպիսի բարեկամ ունենայ։

Բայց այսպիսի բան գրեթէ անհնարին է երկրի վերայ։ Բարեկամը հաւատարիմ կարող է մնալ դժբախտութեան ժամանակ, բայց միայն վեհանձն, միայն լաւագոյն մարդիկ մեզ հաւատարիմ են մնում նաև մեր մոլութիւնների և մեղքերի ժամանակ։ Այն ազնուութիւնը, որով հնարաւոր է դառնում անշահասէր բարեկամութիւնը, ակամայ գարշում և խորշում է իւր ընտրեալ սիրելւոյ նուաստամտութիւնից կամ արատաւորութիւնից։ Այս ինչ մարդը մեզ սիրում էր, որովհետև կարծում էր, թէ մեր 'սիրտն էլ իւր սրտի վեհանձն և ազնիւ է։ Յետոյ նա տեսաւ, որ սխալուել է, և զգում է հիասթափութիւն։ Իւր ընտրած պաշտելին այժմ հողի հետ է հաւասարուել։ Ակամայ առաջուայ սէրը սառչում է, և նա իւր երեսը դարձնում է հառաչելով կամ նաև ափսոսալով։ Ահա այս բանից է ծագում, որ հէնց այն սխալներն ու տկարութիւնները, որ մեզ իջեցնում են առաջուայ բարձրութիւնից, այն մոլորութիւնները, որ մեզ թշուառութիւն և անհանգստութիւն են պատճառում, այն բոլոր պայմանները, որոնց մէջ որ լաւ բարեկամի կարօտութիւնն աւելի ենք զգում,—հեռացնում և սառեցնում են մեզանից բարեկամութիւնը և մեզ մէն մենակ են թողնում այնպիսի տխուր ժամում, երբ որ մեր հոգին նմանում է «անապաստան նաւին ալէկոծուած ծովի մէջ, կամ կազմալոյծ բեկորներին անմարդաբնակ ափերում»։

Մեր պատմութեան մէջ կարող ենք գտնել այսպիսի սրտաճմլիկ օրինակ։ Մեր մեծ պետական մարդկանցից մէկը միակ անբաժան բարեկամ ունէր։ Փորձուած սիրոյ և հաւատարմութեան շատ տարիներից յետոյ բարեկամի կեանքի մէջ՝ մեծամեծ մեղքերի և յանցանքների բիծ դրուեցաւ։ «Հարուածը խիստ սաստիկ էր ինձ համար։ Այդ բանը ինձ մեծ տանջանք

ապաստան է գտնում. «Մի՞թէ մոռանայցէ՞ կին զստնդեայ մանուկ իւր, կամ թէ ո՞չ գթասցի ի ծնունդս որովայնի իւրոյ։ Եւ եթէ մոռանայցէ զայն կին՝ սակայն Ես ոչ մոռացայց զքեզ», ասէ Տէր 1)։ Ո՜հ, երջանիկ է այն մարդը, որի բարեկամն է Իսրայէլի Աստուածը և որի յոյս է Տէր Աստուածը։

Սիրելիք, մեղքի գլխաւոր անէծքն այն է, որ մեր սրտի մէջ Աստուծոյ գիտակցութիւնը մթնացնում է, իսպառ ջնջում կամ խեղաթիւրում է։ Մեղքը հեռացնելով հասցնում է մեզ այն սոսկալի վիճակին, երբ որ կորցնում ենք յոյս և ասում ենք անզգամութեամբ. «ոչ գոյ Աստուած» 2)։ Այսպէս կամ այնպէս այն չար սերմը անաստուածութիւն է բուսցնում։ Մեղքը ուսումնականին մեղձենում է և կամացուկ շշնջում է, թէ «Նայիր այս անսահման տարածութիւններին, որ փոշուց աւելի թանձրութեամբ լցուած է անթիւ անհամար լուսատու աստղերով։ Այդ փայլուն կէտերից փոքրագոյնը՝ այնքան մեծ արեգակ է, ինչպէս և այն, որ մեր դրութիւնն է լուսաւորում, և իւրաքանչիւրը միւս կէտից և մեզանից հեռու է յաւիտենական ժամանակներով, անհուն տարածութեամբ, անթափանցելի անեզրութեամբ, ուր որ մեր ամբողջ աշխարհը իւր բոլոր արեգակներով, լուսնեակներով և մոլորակներով համեմատաբար աւելի փոքր է, քան ցեցը արեգակի ճառագայթների մէջ կամ աւազի հատիկը անապատում։ Մի՞թէ Աստուած կը հոգայ այդպիսի փոքրագոյն հիւլէի մասին, ուր որ դուք ապրում էք ողորմելի կեանքով, և այն գաճաճների մասին, որ այդ հիւլէի ժողովուրդ էք կազմում»։ Պատմաբանին մեղքն ասում է. «Տես, ինչ սարսափելի լռութեամբ,

---

1) Ես. ԽԹ. 15։

2) Սաղ. ԺԳ. 1, ԾԲ. 1։

ինչ սոսկալի խաւարի մէջ անցնում են դարեր դարերից յետոյ—և միշտ տգիտութեան, մոլութեան, մեղքերի դարեր։ Ոչ մի ձայն բարբառոյ չի փարատում տգիտութիւնը, ոչ մի արշալոյս լոյս աշխարհ չի դուրս բերում մոլութիւնը, ոչ մի կայծակ չի հարուածում մեղքը։ Աստուած երկնքում շատ հեռացել է։ Նախախնամութիւն չկայ, և մենք լոկ փոշի ենք կոյր օրէնքների մեքենայութեան մէջ, որին որ Նա յանձնել է Իւր իշխանութիւնը»։ Աստուծոյ օրինաց դէմ գընացողին մեղքն ասեցնել է տալիս. «Այս բանի համար Աստուած փոյթ չի ունենայ։ Ով է տեսնում ինձ։ Մութ է իմ շուրջը, պատերն ինձ ծածկում են, և ոչ ոք չի տեսնում ինձ։ Էլ ինչից վախենամ։ Ամենաբարձրեալը չի յիշի իմ մեղքերը»։ Իսկ եթէ մեղաւորը կատարելապէս զղջացել է և յուսահատութիւնից տանջվում է, մեղքը Նորան այսպէս է սադրում. «Միթէ դու կարծում ես, որ Աստուած քեզպէսին կը ների՞, թէ Ամենասուրբը, Արդարը, Ճշմարիտը չի՞ մերժի քո ցած, ապականուած հոգին։ Ո՛չ, Աստծուն էլ ատելի են այդպիսի անարգ արարածները։ Դու ուղղուելու հնար չունիս։ Ուրեմն շարունակիր մեղանչելդ, մինչև որ մեղքը քեզ մաշեցնէ և քեզանից իւր ձեռքը վերցնէ։ Գէթ մի առ ժամանակ դարձեալ կը կարողանաս գինու բաժակի մէջ խեղդել խղճահարութիւններդ։ Մեղքին անձնատուր լինելով՝ կը հանգցնես քո մէջ բանականութեան կամ զղջման վերջին կայծը»։

Այս ամէնը անիծեալ փորձիչ-դևի ստութիւններ են, որ աշխատում է մեզանից ծածկել Աստուծոյ գոյութիւնը և այն, թէ Նա սէր է և մերձ է մեզանից իւրաքանչիւրին։ Այն անպատմելի չարաչար խաւարը, այն զարհուրելի մեռեալ լռութիւնը, որի մասին որ խօսք եղաւ,—լոկ միայն մեր պղծած երևակայութեան արգասիք է։ Միշտ եղել են և կան մարդիկ,

որոնց սիրտը խաւար չէ, որովհետեւ իրանց վերայ ծագել է լոյս, իրանց համար եկել է մշտական գարուն, և Տէր Աստուածը լուսաւորում է իրանց ճանապարհը։ Եղել են և կան մարդիկ, որ ոչ միայն չեն զգացել անապատի լռութեան զարհուրանքը, այլ միշտ հաղորդութիւն ունին Արարչի հետ և երաժշտութեան պէս լսում են Նորա ձայնը, խօսում են Նորա հետ, ինչպէս որ մարդ կարող է բարեկամի հետ խօսակցել, տեսնում են Նորա ներկայութիւնը, ինչպէս որ հին ժամանակում Ադամը Աստծու հետ էր դրախտի արմաւենու հովանու տակ։ Մարդկային բարեկամութիւնը երբէք այսչափ երջանկացնել չի կարող։ Ով որ այս զգացումը չի ունեցել, նա չի կարող հասկանալ այս տեսակ կենաց քաղցրութիւնը։ Թոյլ տուեցէք, որ ձեր առաջ կարդամ մի բարեհոգի, մեծարգոյ մարդու յիշողութիւնը, ուր որ նկարագրում է, թէ ինչպէս նա առաջին անգամ լսեց Աստուծոյ ձայնը։

«Երբ որ չորրորդ տարիս էր ընթանում, գրում է նա, գարնան գեղեցիկ օրերից մէկին հայրս ձեռքիցս բռնելով՝ տարաւ ինձ ագարակի հեռաւոր ծայրը, բայց իսկոյն ինձ դարձրեց մենակ։ Ճանապարհին պէտք է անցնէի փոքր լճակի կողմը, որ այդ ժամանակ յորդացել վարարուել էր։ Մի լաւ ծաղկած և հաղուադիւտ մրտավարդ, որ այդ ջրերում բուսնում է, գրաւեց իմ ուշքը։ Հրապուրուած գնացի այդ կողմը։ Այն պայծառ թփի ստորոտում ջրի մէջ արեգակի ճառագայթներով տաքանում էր փոքրիկ կրիան։ Ես բարձրացրի ձեռնափայտս, որ խփեմ անվնաս սողունին։ Բայց կարծես թէ մի աներևոյթ զօրութիւն ձեռքս բռնեց, իսկ սրտիս մէջ ձայնը պարզ և բարձրաղաղակ ասաց ինձ, թէ «արածդ լաւ բան չէ»։ Զարհուրած այս նոր տեսակ զգացումից, ակամայ կատարուած ինքնազսպութեան գիտակցութիւնից, շուա-

րած մնացի, ձեռքս ու փայտս ամբարձած, այնքան ժամանակ, մինչև որ թէ՛ սողունը, և թէ՛ մրտավարդը իմ աչքից անյայտացան: Վազեցի տունը, պատմեցի մօրս բոլոր պատահածը և հարցուցի, թէ ո՞վ էր ինձ «արածդ լաւ բան չէ» ասողը: Նա օրհնեց իւր արտասուքի կաթիլը և, գրկելով ինձ ասաց. «Ոմանք այդ ձայնը կոչում են խիղճ, բայց ես աւելի հաւանում եմ Աստուծոյ ձայն համարել այդ, որ մարդու հոգու մէջ է լսվում: Եթէ դու լաւ մտիկ անես և հնազանդութեամբ լսես այդ ձայնին, դու այսուհետև աւելի և աւելի պարզ կը լսես նոյնը, որ և քեզ առ բարին կառաջնորդէ: Իսկ եթէ խուլ մնաս և չես լսի այդ ձայնին, այնուհետև ականջիդ մէջ հետզհետէ աւելի կամաց կը հնչուի, մինչև որ դու կու մնաս խաւարի մէջ և առանց քարոզչի: Քո կեանքը կախուած կը լինի քո հնազանդութիւնից այդ ձայնին»:

Սիրելիք, մեծ բարիք է, որ կարող ենք իմանալ Աստուծոյ հանդարտ ձայնը, մեր Բարեկամի և Հօր ձայնը, ինչպէս որ նկարագրած է այս զարմանալի մանկութեան յիշողութեան մէջ: Յիշատակողը մանկութիւնից լսել է այդ ձայնը, չի հալածուել անպտուղ վատնած անցեալի ճիւղներից, երբէք չի աղտոտել իւր երիտասարդութեան տօնական հանդերձները, իւր հոգու վերայ չի սփռուել հեշտութեան, անգթութեան, ստութեան ստուերը, և աւելի բախտաւոր է եղել, քան եթէ իւր գլուխը պսակուած լինէր երկնային աստղերով: Թշուառութիւնը անզօր է եղել նորա դէմ, որովհետև նա հաւատարիմ է եղել Երկնային բարեկամին:

Հին ժամանակներում յանցաւոր կայսրը (Կալիգուլան), հէնց որ երկինքը որոտար և կայծակով լուսաւորուէր, սոսկալով փախչում էր պալատի ամենամութ անկիւնը և թագչում էր մահճակալի տակ:

Բայց տապալուող աշխարհի ճայթիւնը չի կարող զարհուրեցնել այն մարդու սիրտը, որի խղճի մաքրութիւնը անյաղթելի է դարձել թշնամիների դէմ։ Նա ահ չի իմանայ, որովհետև Աստուած, որ արհաւիրքն և կատաղութեան բոլոր տարերքը Իւր ձեռքումն է պահում, Հայր և Բարեկամ է Նորան։ Նա չի կարող մենակութիւն զգալ, որովհետև նոյն իսկ անապատում՝ սիրտը Նորան ասում է. «Հեռի են մարդիկ, մերձ է Աստուած»։

Մենք խօսեցինք սրբերի, անմեղների, մաքուրների մասին, իսկ ես կուզենայի, որ ինձ լսէին ոչ միայն այդպիսիները, այլ աւելի ևս տկարները, արատաւորեալները, անկեալ թշուառները։ Մեզանից ո՞վ կարող է ասել, թէ «Զմեղս ատեցի և անարգեցի, և զօրէնս Քո սիրեցի»[1]։ «Աստուած, Դու ծանեար զանզգամութիւն իմ, և յանցանք իմ ոչ ծածկեցան»[2]։ «Մեղաք մեք ընդ հարսն մեր, անօրինեցաք և յանցեանք»[3]։ «Զմոխիր որպէս հաց կերայ, և զըմպելին իմ արտասուաք խառնեցի՝ յերեսաց բարկութեան սրտմտութեան Քո»[4]։ «Վտակք ջուրց իջին յաչաց իմոց, զի ոչ պահեցին զօրէնս Քո»[5]։ Եւ որովհետև մենք ընկել և թշուառութեան մէջ ենք, աւելի կարօտ ենք բարեկամներ ունենալու։ Բայց եթէ մարդիկ խորշում են մեզանից և ոչինչ ներողութիւն չեն գտնում մեր սխալանքների համար, էլ ի՞նչ յուսով կարող ենք ակնկալութիւն ունենալ, թէ Նա կը սեղմէ մեզ Իւր

---

1) Սաղ. ճԺԸ. 163։
2) » ԿԸ. 6։
3) » ճԵ. 6։
4) » ճԱ. 10։
5) » ճԺԸ. 136։

կուրծքին և թոյլ կու տայ մեզ Իւր Ներկայութեան փառքում ապրելու, Նա, որ աւելի ևս խորշում է պղծութիւնից և նոյն իսկ երկինքը բաւական մաքուր չի համարում։ Միթէ անմեղների Բարեկամը՝ յանցաւորների Բարեկամ կը լինի։ Միթէ բարի և հեզ մարդկանց Սիրողը կը սիրէ ապերախտներին և յանդուգների՞ն։ Միթէ Նա կարո՞ղ է ձեզ սիրել, որ ի մանկութիւնէ խոտորուել էք ուղիղ ճանապարհից, ձեզ, որոնց մտածմունքները պղծուած են, ձեզ, որ քրիստոնեայ մանուկ էք անուանում ձեր անձը, բայց արհամարհում էք պարտականութիւնները, ձեզ, որ բազմաթիւ մեղքերի մէջ էք թաւալում։ Միթէ Նա կարո՞ղ է ձեզ Բարեկամ լինել։

Այո՛, Նա ձեզ սիրում է։ Նա ձեր Բարեկամ է։ Հէնց այս բանն էի ուզում ձեզ մի քանի խօսքով հասկացնել։ Նա զզուանօք էր նայում ձեր մեղքերի վերայ, բայց գիտենալով, որ դուք հողեղէն էք միայն, սիրում է ձեր հոգին։ Ո՞ւմ հետ էր ապրում Նորա Որդին, երբ որ մարդկային բնութեամբ շրջում էր մեր մէջ։ Ոչ թէ ծանրաբարոյ քահանաների, ոչ թէ քաղաքավարի փարիսեցիների, ոչ թէ նոյն իսկ աւելի չափաւորութեան վարժուած եսսէացիների հետ, այլ մերժեալների և սամարացիների հետ, մաքսաւորների և մեղաւորների հետ։ Նա ապրում էր ոչ թէ երիտասարդ, գեղեցիկ, ազնուական և հարուստ մարդկան հետ, այլ ծեր, թառամած, անտուն, անտէր, հիւանդների, անդամալոյծների, այսահարների, տգէտների, կոյրերի հետ։ Նա զզուանօք չէր զարհուրում, երբ որ Իւր մաքուր ձեռքով շօշափում էր բորոտեալի ապականուած կաշին, արհամարհանօք երեսը չէր դարձնում, երբ որ Նորա ոտքերը լուանում էր անառակ կինը իւր ջերմ արտասուքներով և ջնջում էր իւր երկար մազերով։ Նա անարգական հայեացք չէր զգում չնու-

թեան ըմբռնած կնոջ վերայ, որ հեկեկում էր Նորա առաջ տաճարի յատակի վերայ։ Նորա գութը շարժուեցաւ մոլորեալ որդու զղջումից և աղտոտ գերգեսացու մոլեալ և բարեպաշտ երկրպագութիւնից։ Լսեցէք Իւր փառաւորութեան օրերում Նորա թափած արտասուքները կործանուող Երուսաղէմի համար. «Երուսաղէ՛մ, Երուսաղէ՛մ որ կոտորէիր զմարգարէս և քարկոծ առնէիր զառաքեալսն առ քեզ» 1)։

Բայց ի՞նչպէս են շարունակվում այս բառերը։ Արդեօք մարգարէն երկնքից կրակ և անէ՞ծք է կոչում։ Ո՛չ, այլ արտասանում է հետևեալ գորովալից գեղգեղանքը. «Քանի՜ցս անգամ կամեցայ ժողովել զորդիս քո, որպէս հաւ զձագս իւր ընդ թևօք, և ոչ կամեցարուք»։

Սիրելիք, լաւ մտածեցէք այսպիսի սիրոյ մասին։ Աստուած, մեր Աստուածը, միակ Աստուածը, երկնքի և երկրի Տէրը, մեռնում է ստոր, յանցաւոր, կամապաշտ հոգիների համար։ Նա կոչում է մեզ, իսկ մենք մերժում ենք. Նա Իւր ձեռքն է կարկառում, բայց ոչ ոք ուշադրութիւն չի դարձնում տարածուած գրկի վերայ։ Այս բանը միշտ մտածեցէք, մանաւանդ երբ որ ձեր սրտի մէջ զղջում կայ կամ մեղք։ Երբէք մի յուսահատուիք։ Թող յոյսն ու թողութեան հաւատքը դարձնեն ձեզ, ինչպէս որ շատ մոլորեալ որդոց դարձրել են իրանց հայրական տունը։ Կարելի է թէ դուք զգում էք և յայտնի գիտէք, որ խիստ մեղաւոր էք, փչացած և չար էք, — բայց թող երբէք ոչ մի մեղք, ոչ մի յանցանք արգելք չկանգնէ Աստուծոյ և ձեր մէջ։ Զթողնէք մեղքին կամ սատանային, որ զրկեն ձեզ այսչափ Անսպառելի, Յաւիտենական Բարեկամից։

---

3) Ղուկ. ժԳ. 34։

Մտածեցէք Նորա խաչի մասին և մի՛ խաչէք Նորան վերստին։ Շատ անգամ տեսել եմ, թէ ինչպէս քաղցր յիշողութիւնները կակղացրել են մարդկանց քարէ սրտերը, որ խուլ էին մնում ուրիշ տեսակ խրատներին։ Շատ անգամ ներել եմ և ստացել եմ աւելի լաւ համարում այն հպարտ, կամակոր մանուկի մասին, որի կեանքը մեզ միշտ տրտմութիւն և հոգս է պատճառել, եթէ նորա աչքերից խոշոր կայլակներ են թափուել իւր այտերի վերայ, միայն այս հարցմունքը լսելիս. «Բայց ի՞նչ կասէ հայրդ կամ մայրդ»։ Ինչպէս որ ծայրայեղ դէպքերում դուք ամենից առաջ ապաւինում էք ձեր հօրը կամ մօրը, որովհետև զգում և գիտէք, որ եթէ ամենքը հրաժարուէին ձեզանից, նոքա չեն հրաժարուի, այլ կասեն. «Այո՛ դիտենք բոլորը և ներում ենք, դու մեր տան և սրտի մէջ առաջուանից աւելի սէր կը վայելես». այնպէս էլ դիմեցէք Աստծուն, Որ միշտ ձեզ համար հայր կամ մայր է, Որ վաղուց բոլորը տեսել է և գիտէ, և դարձեալ ներում է, այնպէս որ Նորա ողորմութեամբ մեղքը կարող է սևից սպիտականալ։ Թէպէտ անհնազանդ էք, բայց և այնպէս եղել էք և էք Նորա ժողովուրդ։ Դուք Նորա արօտի ոչխարներ էք, թէպէտ և կորած, մոլորուած, վիրաւորած։ Հէնց այդ միտքն է արտահայտուած իմ առաջ բերած բնաբանի մէջ. «Մի՛ երկնչիք, դուք արարէք զայդ ամենայն չարիս. բայց մի՛ խոտորիցիք ի Տեառնէ, և ծառայեցէք Տեառն յամենայն սրտէ ձերմէ»։

Ո՜հ, զարթեցէք, համարձակութիւն առէք առաջ, քան մեռնէք և անհեղ դատաստանին ներկայանաք։ Դեռ դարձեալ իւրաքանչիւր օրը ձեզ բերում է յաջողութեան նոր հաւանականութիւն։ Անցեալը ձեր յետևն է մնացել, այն կարելի է թէ անօգուտ կերպով վատնուել է. բայց ձեր առջև կան եղեմական

դրախտի պէս—ներկայ ոսկի արտեր, ապագայ առատ հունձ։ Իւրաքանչիւր օր, իւրաքանչիւր շաբաթ, իւրաքանչիւր ամիս, իւրաքանչիւր տարի—Աստծու պարգեւած նոր հաւանականութիւններ են։ Նոր հաւանականութիւն, նոր բողբոջ, նոր կեանք—այս ամէնը անպատմելի, ոսկի շնորհներ են, որ ձեզ առաջարկում է իւրաքանչիւր օրը։ Դարձէք առ Աստուած, շնորհով գործ ածեցէք այդ շնորհները։ Հերիք համարեցէք, որ անցեալում ընթացել էք մեղքի և նախատինքի սոսկալի ճանապարհով։ Այժմ հոգնած, չարչարուած, դարձէք առաքինութեան և խաղաղութեան ճանապարհը։ Անցեալ սխալները, անմտութիւնները, մեղքերը, թշուառութիւնները կարող են՝ եթէ խոհեմութեամբ վարուիք՝ դառնալ ձեզ կարեկցող հրեշտակներ, որ և ապահովապէս կառաջնորդեն ձեզ դէպի ապագան։ Անոնց յիշողութիւնը թող ձեր մէջ զարթեցնեն խոնարհութեան զգացմունք, բայց երբէք մի տխրիք և մի յուսահատուիք։ Կարելի է ձեր մէջ կան այնպիսիք, որ անօգուտ կերպով կամ աւելի ևս վատթարապէս անցուցել են իրանց դպրոցական տարիները, որ ի դերև են հանել իրանց սիրողների յոյսերը, որ խախտել են իրանց հաւատացողների հաւատքը։ Կամ այնպիսիք, որոնց կեանքն այն տեղ ապարդիւն է եղել և վնասակար թէ՛ անձին, և թէ՛ այլոց։ Այնպիսիք, որ միշտ անհնազանդ և ծոյլ են եղել, որ կորցրել են ամենայն վարկ, և որ իրանց շուրջը կուտակել են միայն ցածութիւններ, հրաժարուելով դպրոցի լաւագոյն և լուսաւոր կողմերից։ Նոյն իսկ այդպիսիներին, այս տեղ նստածներից ամենաչար և կատաղած մանուկին անգամ՝ ասում է Աստուած (երանի թէ երեկոյեան քաղցր սիւք լինի այդ ձայնը ձեզ համար)․ «Մի երկնչիք, դուք արարէք զայդ ամենայն չարիս, բայց մի խոտորեցիք ի Տեառնէ, և ծառայեցէք Տեառն յամե-

նայն սրտէ ձերմէ»: Մի՛ երկնչիք. Աստուած տակաւին սիրում է ձեզ: Կարելի է, թէ միայն մէկ. վերջին հնարաւորութիւն է մնացել ձեր փրկութեան համար: Դարձեալ՝ մի՛ երկնչիք: Եթէ դպրոցում մնալու միայն վեց շաբաթ ունիք,—օգտուեցէք այդ վեց շաբաթներից. իւրաքանչիւր շաբաթը լաւ առիթ է զղջալու և արդարութեան խաղաղաբեր պտուղների համար: Ամբողջ դպրոցական կեանքից պինդ բռնած այդ չնչին վեց շաբաթը՝ ահագին նշանակութիւն կարող է ունենալ ձեր հոգու համար: Անոնք կարող են բաց է ի բաց փոխել տալ ձեր հայեացքը. երբ որ ապագայում շըրջահայէք Հարրովի դպրոցում ապրած ժամանակները: Աստուածային ողորմութիւնը անսպառ է, բայց եթէ դուք յամառութեամբ մեղքի մէջ մնաք, ողորմութիւն ստանալու ձեր ընդունակութիւնը կը փոխուի, կը նուաղանայ, օրէցօր կը սպառուի: Եթէ այժմ չզղջաք, զղջալու ժամանակը կարող է ընդ միշտ փախչել ձեզանից: Այժմ դուռը տակաւին բաց է ձեզ համար:

Ո՛հ, եթէ ձեզանից իւրաքանչիւրը սեղանի առաջ խոնարհի, իմանալով, զգալով, հաւատալով, թէ Աստուած—մեր Բարեկամ և Հայր է, թէ Նա իրան մերձեցողներից ամենամեղաւորին անգամ չի մերժի:

Մի խըլացրու խըղճիդ ձայնը,
Առաքինութեան պատրաստուիր.
Թող միայն որ յօժարութիւնդ լինի,
Եւ Աստուած քեզ զօրաւիգն կը լինի:

Եկէք, ներկայանանք մեր անարգած՝ բայց ամենագութ Հօրը, Աստուծոյ որդուն և Ս. Հոգւոյն, և աղօթենք միմեանց համար, ներենք և օգնենք միմեանց: Մեր հայրը թողութիւն և օրհնութիւն է տալիս մոլորեալ որդիներից ամենավատթարին անգամ, եթէ նա դառնում է իւր թողած հայրական տունը: Ո՛հ, մոլորեալ որդկերանցից ոչ ոքին մի՛ թողէք, որ

մեղքի աշխարհքի մէջ յետին աստիճան սովալլուկ տանջուէին։ Վերադառնալով, նա կը լսէ Հայր Աստծու ձայնը, որ հնչուել է հին ժամանակի իսրայէլացի յանցաւորի ականջում. «Միթէ որդի սիրելի՞ էցէ իմ Եփրեմ, մանո՞ւկ գրգանաց. փոխանակ զի բանք իմ են ի նմա, յիշելով յիշեցից զնա միւս անգամ . . . Վասն այնորիկ դալարին աղիք իմ, ողորմելով ողորմեցայց նմա» 1)։

1) Եր. ԼԱ. 20:

## ԻԳ.

# ՅՈՅՍ.*)

«Արի՛ լուսաւորեաց, զի հասեալ է լոյս քո, եւ փառք Տեառն ի վերայ քո ծագեցին»։ Ես. Կ. 1.

Երբ որ մտերիմ, սիրագումար ընտանիքում անդամներից մէկը տօն է տօնում, նա դէպի ինքեան է գրաւում միւսների բոլոր ուշադրութիւնը։ Մեր հոգևոր ընտանիքում ևս այս մի քանի օրերում կատարուեցան մարդկային կենաց երկու ամենանշանաւոր եղելութիւններ։ Մեր սիրելի ընկերներից շատերը քրիստոնէական դրոշմ ընդունեցին և սուրբ հաղորդութեան արժանացան։ Նոքա անցան ճշտիւ որոշած այն սահմանը, որով բաժանուած է հոգևոր մանկութիւնը, որ կոչվում է երեխայութիւն, հոգևոր չափահասութիւնից։ Մենք ամէնքս նոցա ուրախակից ենք, յոյս ունինք նրանց մասին, աղօթում ենք նրանց համար։ Մեր մտածմունքը հարկաւ նուիրած է նոցա, և թէպէտ ես յոյս ունեմ, որ իմ խօսքերը օգտաւէտ կը լինին ամէնին, բայց կուզենայի առաւելապէս նոցա հետ խօսել։ Նրանք թէ իմ ճառը լինէին համապա-

*) Առաջին անգամ Սրբութիւն առնողներին:

տասխանէ այն ներքին հրաշալի օրհներգութեան, որով նոցա մտածմունքները այս նուագում հոգեւորապէս քերկրանում են։ Այո՛, այս օրը մինչև կենաց վախճանը կու մնայ բոլորի յիշողութեան մէջ, որոնք որ այս-օր առաջին անգամ ճաշակեցան մեր Տէր Յիսուս Քրիստոսի Ս. Սեղանից։

Չեմ կարծում, թէ դուք անկեղծ սրտով կամենում էք ձեր սիրտը տալ Աստծուն, ձեր կեանքը նուիրել Նորա սպասաւորութեան։ Գիտեմ նմանապէս, որ ձեր հոգին լցուած է յուսով, իսկ ձեր պարտականութիւն է, որ այդ յոյսը վառ պահէք ձեր աղօթքներով։ Ոչ մի վատ ազդեցութիւն չպէտք է թուլացնէ կամ խլացնէ այդ ձայնը ձեր սրտում (իսկ չար զօրութիւնները հենց այս օրերում կրկնապատիկ պիտի գործեն ձեր կորստեան համար)։ Մարդու սրտի համար յուսոյ կորուստը՝ խաւարի զօրանալ է արտաքրում։ Իսկ յուսոյ նշոյլը առաւօտեան արշալուսի նման է։ Մեծ է մարդու թշուառութիւնը, որ այս երկրաւոր կեանքում զրկուած է մնում այդպիսի շնորհից։

Մարդու մէջ կարող է լինիլ գործելու եռանդ նաև առանց յուսոյ, բայց նա հոգեկան պայծառութիւն չի ունենայ։ Այն վիճակում մարդ կարող է իւր պարտքերը խղճով կատարել, բայց նորա երջանկութիւնը կորած կը լինի։ Նա այդպիսի վիճակում լոկ մեքենայ է, և ոչ թէ կենդանի հոգւով ապրող։ Յոյսը ոչինչ նշանակութիւն չունի մեզ համար, եթէ իւր գանձերը չեն պահուած այն տեղ, որ տեղից որ էլ ոչ ոք չի կարողանայ յափշտակել։ Հիները կարծում էին, որ եթէ վարդափայտը (եղեւնոսի տեսակը, aspalathus) ծիածանի գոյներից լոյս ստանայ, ծաղիկն աւելի կը չքնաղանայ և զարմանալի անուշաբուրութիւն կը ստանայ։ Թող յոյսը, ծիածանի ներգործութեան պէս, կակղացնէ և

բարեհամբոյր կացուցանէ այն մարդկերանց տխրամած և խստացած սրտերը, որոնք Փրկչի Ս. Շնորհներին ընդունելով՝ զգացին Նորա ողորմութիւնը։ Սակայն թող ձեր յոյսը նման լինի ոչ թէ վայրկենական ծիածանին, որ ոստացող ամպի վերայ կազմվում է և ապա իսկոյն անցնում է, այլ աւելի հաստատուն ծիածանին, ինչպէս որ շարունակ լուսացած է մնում զոր օր. Ջրվէժի ծիածանը։ Շատ հետաքրքրական են երևելի Տինդալ ֆիզիկոսի խօսքերը, որ Ջրվէժի այդպիսի երևոյթը որպէս ականատես է նկարագրում. «Ծիածանը անեղծ անշարժ կացած էր, երբ որ փրփուրի ամպերը կատաղութեամբ հալածվում էին Նորա շուրջը և ջարդվում էին ժայռի վերայ։ Երևոյթը յիշեցնում էր հաւատով մեծապէս զօրացած ոգուն, որ անյողդողդ կանգնած է իրան շրջապատող կրքերի մրրկութեան մէջ կատարեալ յուսով, և որ ժայռի վերայ պինդյինուած՝ ուրիշներին ևս յոյս է ազդում և քաջալերում է։ Եւ այն կաթիլների կուտակութիւնները, որ թւում էր, թէ իրանց մոլեգնած յորձանքով պէտք է ամենայն ինչ չքացնէին, աւելի ևս կենդանութիւն էին տալիս ծիածանին և աւելի գեղեցկացնում»։ Թող և ձեր մէջ, իմ երիտասարդ եղբայրներ, յուսոյ ծիածանը փարատէ կենաց դառնութիւնն ու մրրիկները և ձեզ համար լինի այն նեղ լուսափայլ շաւիղ, որով արդարները երկինքն են ընթանում, և որի երևոյթը միշտ յոյս է նշանակում ըստ արևելեան երևակայութեան։

Երբ առաքելականութեան ծաղկեալ ժամանակում պատանուն առաքելութեան էին ընծայում, նա անապատական եկեղեցում գիշերում էր աղօթքով և պահքով։ Առաւօտեան լուսաբացին նորան լուանում էին և հագցնում էին սպիտակ հանդերձներ—նշան մաքրութեան։ Նա խոնարհութեամբ ճաշակվում էր

Տէր Աստծու Սեղանից։ Նորա ձեռքն էին դնում
օրհնուած սուրը։ Հանդիսաւոր պատարագից և օրհ-
նութիւնից յետոյ, եպիսկոպոսը խրատում էր նորան
լինել խոնարհ ամենայն արարքներում, համարձակ և
արի վտանգի մէջ, համբերող դժուարութիւններում,
և որ գլխաւորն է՝ խօսել ճշմարտութիւն, Քրիստոսին
ճանաչել հաւատարապէս և կատարել ամբողջ աշխարհի
վերաբերութեամբ ունեցած պարտքը։ Երբ որ նա
զրահաւորվում էր և ասպետական ուխտի մէջ ըն-
դունուած էր համարվում, պատուէր էր ստանում
լինել ազնիւ, քաջ և հաւատարիմ։ Եւ նա սրտապըն-
դած, սուրբ ուխտը մշտամռունչ շրթունքներում, ձի
հեծած վաղ առաւօտ դուրս էր գալիս, լի հաւատով
և յուսով, պատրաստ ամենայն րոպէ մենամարտել
կամ Ասորիքի դաշտերում ախոյանալ, և յանձնել
իւր մաքուր հոգին Քրիստոս—Փրկչին։ Սիրելիք, ձեզ
էլ, ձեր այժմեան կոչումն էլ, ձեր ապագան էլ, որ
առաջներիդ կայ, ես պատկերացնում եմ մի և նոյն
կերպով։ Ասպետութեան դարն անցել է, այն էր—լոկ
միայն արեգակի լուսով լուսաւորուած ծփանք, սակա-
ւին շարունակւող մեր գոյութեան գետի մէջ։ Որոշ
դէպքերն անցել են, էութիւնը մնացել է. հանգա-
մանքները փոխուել են, իսկութիւնը նոյն է։ Փո-
խանակ եկեղեցում գիշեր ժամանակ հսկում անելու,
դուք աղօթում և պատրաստվում էիք մի քանի շա-
բաթ։ Եպիսկոպոսի տեառնագրութիւնը փոխանակեց
ձեզ համար՝ նախկին արի զարկը ուսին։ Քրիստոնեայ
մանկան «հաւատամ»-ը համեմատ է ասպետական
ուխտին։ Մաքրութիւնը, անձնազոհութիւնը, արիու-
թիւնը նոյնչափ և ձեր պարտքն է, որչափ որ աս-
պետի պարտք է համարուել։ Հուրը կամ օրհնութիւնը
ձեզ վերայ էլ առատօրէն հեղվում է ի վերուստ,
ինչպէս և նոցա վերայ։ Ասպետի զրահը լոկ մի նշան

էր աստուածային սպառազինութեան, նորա թշնամի-
ներ էին՝ մարդկային կերպարանք ընդունած՝ այն զօ-
րութիւնները, որ և ձեր հոգին պաշարում և սպանում
են։ Դուք էլ Քրիստոսին էք հետևում արդէն ծագող
կռուի մէջ, և դուք զրահաւորուած առաջ էք գնում
այն յուսով, թէ նա կօգնէ ձեզ աւելի փառքով հան-
դիսանալու: Դուք այժմ զգում էք, որ ձեզ համար
անհնարին բան չկայ։ Եւ իրօք, ամենայն ինչ հնարա-
ւոր է ձեզ սիրող Քրիստոսով։ Ձեզանից ամենաերկ-
չոտը յաղթութեան հաւատք կարող է ունենալ, եթէ
կռուի իւր Հայրապետի դրօշակի տակ և այն զօ-
րութեամբ, որ Քրիստոսից ունի։

Ի՞նչ ներգործութիւններով էր զօրանում աս-
պետը վէպի կամ իսկական կենաց մէջ, Քրիստոնեայ—
հերոսը պատմութեան կամ մասնաւոր կենաց մէջ,
երբ որ նոքա կատարում էին բարձր, արժանաւոր
սխրագործութիւններ։ Ի՞նչ մշտական խնկով էր պահ-
պանվում աստուածային սիրոյ հուրը նոցա սրտի սե-
ղանի վերայ։ Պերսիվալը, Լիւտէրը, Միլտոնը, Վայտ-
ֆիլդը ո՞ր տեղից էին հայթայթում հզօր ոգևորու-
թիւն, որով նոցա կեանքը դարձաւ այնպէս ճշմա-
րիտ, սուրը՝ այնպէս անդիմադրելի, սիրտը՝ այնպէս
ազնիւ, խօսքը՝ այնպէս ազդու։ Հարկաւ ոչ թէ աշ-
խարհի դայթակղիչ փիլիսոփայութիւնից, ոչ թէ յիմար
ցնորաբանութիւններից, որ մեղքը լոկ միայն կատակ
են համարում։ Նոքա այն ոգևորութիւնը գտան ոչ
թէ հեշտասէրների այցելած տեղերում, ոչ թէ կշտա-
ցած հարուստների մօտ, այլ անձնուրացութեան
վարժող խիստ դպրոցում, աշխատութեան և պար-
տաճանաչութեան խիստ հրահանգութեան ներքոյ,
մարգարէների խիստ ճշմարտութիւններում, որ չէին
մեղմացնում փարիսեցիների և քահանաների նման
անձնադոհութեամբ։ «Քաջալերացարուք և զօրասցին

սիրտք ձեր, ամենեքեան ոյք յուսացեալ էք ի Տէր»[1]:
լսում էր մի ձայն, որ անդադար հնչում էր Նոցա
ականջում. «Դու ես յոյս և բաժին մեր, Տէր Աստ-
ուած», պատասխանում էր Նոցա հաւատարիմ սիր-
տը: Նոքա խորհում էին միայն այն, ինչ որ ճշմարիտ,
ազնիւ, արդար, սուրբ, գեղեցիկ, բարի էր: Դուք էլ
այդպէս խորհեցէք և այդպիսի մտածմունքների երկ-
նային ճառագայթների վերայ բարձրացէք մինչև լոյ-
սերի Հայրը, որ կենում է անմատչելի լուսոյ մէջ:
Հոգւոյ այդպիսի ոգևորութեամբ դուք կարող էք յու-
սալ, որ ոչ միայն զերծ կու մնաք աշխարհի կոշտ ու
կոպիտ փորձութիւններից, որպէս թէ մեռելութեան
մոխրի տակ ծածկած ճարակող կրակից, ոչ միայն կը
յաղթէք ծուլութեան, երկչոտութեան և ամբարտա-
ւանութեան աւելի բարդ փորձութիւնները, այլ Աս-
տուծոյ օրհնութեամբ ոյժ կը ստանաք աւելի վսեմ
և հերոսական կեանք վարելու, քան այն գռեհկական,
թմբրած կեանքը, որ վարում են «կրօնասէր», «բարե-
պաշտ» կոչուած մարդիկ:

Այո՛, սիրելիք, այսպիսի խորհուրդներ, այսպիսի
յոյսեր՝ նման են աներևոյթ սերովբէներին, որ իւրեանց
սուրբ խունկը վեր են առաքում հոգևոր տաճարի
մէջ, իսկ ձեր սիրտը այդպիսի տաճար պիտի լինի: Ով
որ ձեզ համախոհ է, աւելի բարձր է, քան ով որ հա-
կառակ է: Չարութիւնը յատուկ չէ ձեր բնութեան,
որովհետև ապականիչ է, չարութիւնը օրէնք չէ ձեր
կենաց, այլ ընդհակառակ ուրացութիւն է կեանքից,
և ոչ ձեր կոչման կատարումն է, այլ աւելի արգելք
է կոչման: Լուսաթաթախ բարի հրեշտակները ձեզ են
հովանաւորում: Ձեզ հետ են և լռակեաց և անմահ
մեռեալները, և ամենայն ոք, որ Տեառն Աստուծոյ

---

1) Սաղ. Լ. 25:

տան և քաղաքի որդիք են։ Երկրի վերայ ապրող Աստուծոյ ճշմարիտ որդոց սրտերը՝ ձերինների հետ ներդաշնակութեամբ են բաբախում։ Որդին Աստուծոյ, Հոգին Ս. և ամենակարող Տէր Աստուածը սիրում են իրանց ստեղծած, սրբացած և փրկած հոգին։ Ուրեմն չկայ այնպիսի վսեմ, ազնիւ, աստուածանման գործ, որի համար որ դուք կոչուած և պիտանացու չլինիք։ «Մի երկնչիր, ծառայ իմ Յակոբ, և սիրեցեալդ Իմ Իսրայէլ, զոր ընտրեցի։ Զի ես հեղից ջուր ի ծարաւին, և հոսանս յանջրդւոց. հեղից զՈգի իմ ի վերայ զաւակի քո՝ և զօրհնութիւնս Իմ ի վերայ որդւոց քոց» [1]։ Սակայն այսպիսի մեծամեծ յոյսերին անձնատուր եղէք խոնարհութեամբ, դողալով։ Կանգուն հաւատացողը թող զգուշանայ, որ չընկնի։ Դուք զրահները հագել էք, և էլ չէք հանում։ Եթէ դուք անիմաստութեամբ խիղախում էք, եթէ մտածում էք և ուրիշներին գոռոզաբար ասում, թէ «Հեռու ինձնից, որովհետև քեզանից աւելի սուրբ եմ»,—Աստուած կարող է փորձի դառնութեամբ զգաստացնել ձեզ և խրատել, թէ դուք առանց Նորա ոչինչ էք։ Մի՞ գուցէ դուք ձեր վեց շաբաթուայ պատերազմով փորձութիւնների դէմ, մանաւանդ այսօր երկնային մանանայ ճաշակելուց յետոյ, որ Քրիստոս մատակարարեց ձեր հոգւոյն, —չը լինի թէ, ասում եմ, ընդ միշտ սատանայի հրապոյրներից ազատ կարծէք ձեզ։ Այո՛, կարելի է, թէ ստուգապէս ընդ միշտ ազատուել էք, եթէ ի հարկէ շարունակում էք հոգւով պատերազմել, հսկել, աղօթել, և եթէ երբէք երեսը չէք դարձնում Տէր Աստծուց։ Բայց հակառակն էլ կարող է պատահել. կարելի է թէ մահացու քայլ անէք, ուրանաք, կարելի է թէ «ուխտադրուժ» սոսկալի անունը կրէք։ «Որքան աւելի

1) Ես. ԽԴ. 2:

տուրը է այն սրբութիւնը, որին դուք արժանացաք, այնքան աւելի մահացու կը լինի սրբապղծութիւնը»։

Եղբարք, մի օր ես կանգնած էի Ալպեան սարերից մէկի գագաթի վերայ. աղօտ մէգը տարուբերվում էր անոնց վերայ, պատառուած ամպերի ճեղքից տեսայ կապոյտ երկինքը իւր կատարեալ գեղեցկութեամբ. Ներքև, իմ ոտքերի տակ, երկնային արևի լուսով փայլում էին գետեր, քաղաքներ, դաշտեր։ Բայց մառախուղի նոսր եղրները քիչ քիչ խտացան, իրար մօտեցան, միացան և՝ գրեթէ ինձ համար աննշմարելի կերպով՝ տեսարանը հետզհետէ գունատուեցաւ և աղօտացաւ, մինչև որ լեռների մոխրագոյն մթնոլորտը բոլորովին պատեց ինձ, և այն հրաշալի երևութից մնաց միայն ցուրտ մառախուղն ու մարմնի մէջ թափանցող անձրևը։ Նոյնը կարող է ձեզ պատահել։ Այժմ, աղօթքներով սրբագործած օրերից յետոյ, երկինքը ձեզ բացուած է թւում, և ձեզ երևում է Քրիստոս՝ Հայր Աստծու աջ կողմը նստած։ Բայց մեղքի և աշխարհի ունայնութեան խոր մառախուղը կարող է աննկատելի կերպով բարձրանալ ձեր շուրջը, հալածել ձեր հոգուց երկնային լոյսը և թողնել ձեզ խոնջացած, մենացած հոգւոյ վտանգաւոր վհատութեան մէջ։

Երիտասարդ ասպետներից շատերը խիստ անձնավստահութեամբ գնացել են հեռու տեղեր և դարձել են ամօթով։ Նորընծայ քրիստոնեաներից շատերը վերադարձել են կեանքի կռուից ջարդուած, ամօթով ծածկուած, իրանց անփութութեան պատճառով։ Դաւիթը, այն անբիծ, քաջ պատանին, որ Աստուծոյ տնօրէնութեամբ ոչխարների հօտը թողեց, որպէս զի Նորա իսրայէլ ժողովրդեան առաջնորդ լինի, դարձաւ, աւա՜ղ, մարդասպան և անառակ։ Մինչև անգամ Պետրոսը, որ Քրիստոսին համարձակ մեծախայ

էր ճանաչել, երբ որ ամէնքը փախել էին Նորանից, վերջը, այն սոսկալի երեկոյին, քահանայապետի գաւթում, արհամարհանօք և երդումներով ուրացաւ Նորանից:

Միջին դարու մի մարդու կեանքը միշտ խիստ խրատական է թուել ինձ: Այն էր մի էակի կեանք, որ Աստծուց առատօրէն պարգևներ էր ստացել: Նա գեղեցիկ, քաջ, պերճախօս, ուսեալ, նրբամիտ էր: Նա հարուստ էր և երևելի ի մանկութենէ: Փիլիսոփայ և քահանայ գոլով, և բացի այս հանգամանքից արդէն իւր բնութեամբ զզուելով ամէն ցածութիւններից, հասաւ կատարեալ տարիքին, անարատ, արդար կեանք վարելով: Եւ ահա այս մարդը, իւր փառքի և մտքի կատարեալ ծաղկման ժամանակ, գիտակցութեամբ ընկաւ անարգական մեղքի մէջ, ստացաւ յանկարծական սարսափելի հատուցումն, ապրեց անպատմելի յուսահատութեան մէջ և մեռաւ դառնագոյն կորստեան մէջ: Այո՛, Աբելեարի անունը, փարոսի պէս, վտանգաւոր տեղում կանգնած է այնպիսիներին զգուշացնելու համար, որոնք մասամբ հասակում ենթարկվում են մտաւոր գերազանցութեան և հոգեկան գոռոզութեան փորձութեանց:

Ով, սիրելիք, յուսացէք և երկիւղածութեամբ աշխատեցէք ձեր փրկութեան համար: Հոգւով կորած և իւր անարգութիւնն զգացող Դաւիթը՝ վերստին ստացաւ սրտի մաքրութիւն և նորոգուած ոգի: Յիսուսի գորովագութ, աստուածային հայեացքը թափանցեց Պետրոսի հոգու խորութեան մէջ. աքաղաղը կանչեց, և նա զղջացաւ բորբոքած արտասունքներով: Աստուծոյ ողորմութիւնն իջաւ նաև դժբախտ Աբելեարի վերայ, որ ծերացել և հիւանդացել էր մարմնով [illegible] Նա մարմնով նորոգուեցաւ, սրտ[illegible] խաղաղ աբբայութեան մէջ ն[illegible]

*սրտի խոնարհութիւն։ Նա շատ էր աղօթում, լուռ էր մնում և դարձաւ խոնարհ, պարզամիտ, երկիւղած, չարութիւնից խուսափող մարդ։ Բայց դոցանից իւրաքանչիւրը ի՛նչ ամօթոյ և տառապանաց հեղեղների մէջ բաց արաւ իւր ճանապարհը։ Թող Աստուած փրկէ ձեզ Իւր ողորմութեամբ այսպիսի անկումից, իսկ եթէ ընկնէք, թող Նա ձեզ ոյժ պարգևէ՝ մեծ վիշտ և կորուստ կրելուց յետոյ՝ այնպէս խոր և անկեղծ սրտով զղջալու, ինչպէս որ զղջացան այն մարդիկ։*

*Բայց ես անմիտ, սովորական-պայմանաւոր, լաւատեսութեամբ չեմ խօսի, պնդելով թէ ձեզանից շատերը այնքան բարձր վստահութիւն ունին, որով մարդ կարողութիւն է ստանում արդար կեանք վարելու։ Ո՛չ, այդպէս չէք։ Իմ մի բարեկամի խօսքը կրկնելով, ասում եմ. «Աւելի լաւ է մեռնեմ, քան սուտ խօսեմ»։ Ձեզանից շատերի հետ խօսակցելիս նկատեցի, որ դուք թէպէտև խիստ տարբերում էք իրարից, և թէպէտ դուք ամէնքդ (բացի մէկից կամ երկուսից, որ բնաւ ուշք ու միտք չեն հաւաքել, չեն աղօթել և ոչինչ բանի չեն ձգտել) այսօր միտքը ինչ լոյս էք զգում,—բայց առ հասարակ զուրկ էք հաստատուն յուսոյ շնորհից։ Ձեր լոյսը մի քանիսների մէջ նման է մոխրի տակ հանգչող վերջին կայծերին, միւսների մէջ մթնանում է թերահաւատութեան կամ գրեթէ յուսահատութեան խաւարով։*

*Դէպի ձեզ, իմ կրտսեր եղբարք, աւելի է ձգտում սիրտս. ձեզ եմ ուզում մի քանի խօսք ասել, որ ձեզ համար բժշկութիւն կամ օգնութիւն լինի։ Ձեր յոյսը [illegible] ջախջախուած եղեգն է, որ մեր Փրկիչը չի փշրի, [illegible] ծխացող պատրոյգ է, որ Նա չի շիջուցանի[1]։ [illegible] նոռն էք վիրաւորած, դուք ձգտել էք*

[1] [illegible] ԺԲ. 20։

ուղիղ ճանապարհից, դուք ընկճվում էք մեղքի ծանրութեան տակ և ձեր տկարութեան գիտակցութիւնից, դուք ի զուր չէք դողում ձեր անձի համար։ Եթէ անհեղ դրոշմ ընդունելուց յետոյ, ձեզ ասուի, թէ էլ չպէտք է երդուէք, պարտքեր անէք, պէտք է անաչառութեամբ վերաբերուիք յանձն առած գործին, լիրբ խօսակցութեան զուարճութիւնից խորշէք, դուք կարող էք զզջալով խոստովանել, թէ արդարև այդպիսի մեղքեր ունեցել էք, և խոստանալ, թէ «կաշխատեմ այլ ևս այդպիսի բան չանել»։ Բայց արդեօք այնքան ոյժ կունենաք, որ իրօք խոստանաք այնպիսի արարքներից խուսափելու, որոնցից որ ոչ միայն քրիստոնէութիւնն է զզուշացնում, այլ և որոշ չափով բնածին անձնազսպութիւնը, «ազնուական, բնութեան հպարտութիւնը» սանձել է նաև տգէտ հեթանոսներին։ Դուք այս մանր բաների մասին դեռ էլի տատանուող ամօթխածութեամբ էք խօսում, որովհետև վատ սովորութիւններն արդէն արմատացել են ձեր մէջ, և զգում էք, որ կեանքի կանոնները անդադար խախտել էք։ Բայց ի՞նչ կը լինի ձեզ հետ, եթէ մենք աւելի ծանր բան պահանջենք և համոզենք ձեզ, որ ձգտէք քրիստոնէական կենաց աւելի բարձր, վսեմ, խոր կատարելութեան. եթէ յիշեցնենք յարատև, քաջասիրտ ջանասիրութիւնը, որ մեր բնութեան ամենատարրական պարտքն է. եթէ ասենք, թէ դուք պարտական էք պաշտպանել ձեր եղբայրակիցներին և նոցա փրկել մեղքերից ամենայն ուժով. եթէ քաջալերենք ձեզ, որ հոգւոյ բոլոր ուժով պատերազմէք ձեր դէմ, որպէսզի ձեր աչքի գերանը շիւղի տեղ չընդունէք, որ չմոռանաք Աստծուն և զգուշանաք չար խորհուրդներից, կռապաշտութիւնից և ձեր խղճի վերայ ծանրացած մեղքի բռնակալութիւնից։ Այս բաներից այնպէս էք շփոթվում, որ պարզ երևում է, թէ դուք գիտէք

ձեր տխուր թուլութիւնը, բայց տակաւին չգիտէք ձեր Փրկչի զօրութիւնն ու ոյժը. զգում էք ձեր տկարկութիւնը, բայց չէք իմանում Նորա հզօրութիւնը, որ կարող է ձեզ փրկել: Հազիւ ոյժ կունենաք, որ խոստում տաք և ուխտէք: Ձեր կամաց ձայնով արտասանած «Ես կաշխատեմ»-ը—հնչում է որպէս «Վախենում եմ, թէ չեմ կատարի, ինչ որ խոստանում եմ»: Ձեզանից ոմանք կարող են խռոված սրտով ասել, թէ «Ես աշխատել եմ, ես փորձել եմ տարեցտարի կատարել ուխտած ուխտս, բայց միշտ անյաջողութեան եմ յանդիպել: Գիտեմ, որ այժմ էլ ջանքս զուր պիտի անցնի: Ինչ որ ուզում եմ, չեմ կատարում, իսկ կատարում եմ այն, ինչ որ չեմ ուզում: Իմ ուզածը միշտ բարի է, բայց չգիտեմ ինչպէս գլուխ բերեմ ցանկութիւնս: Զզւում եմ մեղքից, որով ստորանում եմ, և գիտեմ այն բանի չքնաղութիւնն ու ազնուութիւնը, ինչից որ հոգիս իսպառ անյոյս է: Չկայ ոչ մի ոյժ, որ ազատէր ինձ այս վիճակից և իմ մէջ արմատացած մեղքերից: Էհ, եթէ կամենաք, լաւ լաւ դիտաւորութիւններ կընդունեմ, բայց իմ լաւ դիտաւորութիւններից ես երբէք օգուտ չեմ տեսել: Անոնք նմանել են առաւօտեան ցողին կամ վաղորդեան ամպին 1): Աստուած ինձանից ծածկել է Իւր երեսը, մինչև անգամ այս օրերում ես ինձ զգում եմ տառապած և մեղաւոր. չեմ կարողանում աղօթքով մերձենալ Նորան»:

Սիրելիք, երբ որ այսպէս էք խօսում, սիրտս ցաւում է և այնպէս եմ զգում, թէ Աստուծոյ կամքն է, որ Նորա քաղցրութիւնը ձեզ յայտնեմ: Յուսացէք, ինչ էլ որ լինի, և շարունակեցէք ձեր պարտքը

---

1) «Իբրեւ զամպ վաղորդայնի եւ իբրեւ զցօղ առաւօտեան որ անցանէ:

կատարելու վախճանը միշտ բարի պիտի լինի։ Մինչև այսօր ձեր դիտաւորութիւններն եղել են լոկ միայն դատարկ բառեր. Աստուծոյ սիրոյն հաւատացէք, և դուք «վիրաւորուած զինուորներից շատերի պէս, տակաւին յաղթութիւն կտանէք կռուի մէջ»։ Ամենօրեայ պարտականութիւնները կատարելիս՝ ձեր ասած «չեմ կարող» բառը՝ ցոյց է տալիս բարոյական թուլութիւն, իսկ հոգևոր պարտականութեան նկատմամբ՝ ամբարշտութիւն է և մահ։ Ամբարշտութիւն՝ որովհետև այդ խօսքով հասկացնում էք, իբր թէ Աստուած է թափել ձեր գլխին մեղքերը, որպէս զի անպատճառ մեղաւոր դառնաք, իսկ մահ՝ որովհետև այդպիսի վիճակը մարդու թևերը պիտի կտրատէ և վարժեցնէ անփութութեան ու յուսահատութեան։ Բայց այսօր Աստուած խօսում է ձեզ ձետ։ Նա ասում է ձեզ, որ թէպէտ և հեծութիւնից վաստակել էք և հիւանդ էք մեղքերով [1]), բայց և այնպէս Ինքը սիրում է ձեզ հայրական սիրով։ Քրիստոս մեռել է ձեզ համար և ձեզպէսների համար։ Դուք էք այն կորածները, որոնց որ փնտռելու Նա եկել է, այն հիւանդները, որոնց որ բժշկեց, այն բանտարկեալները, որոնց համար որ բաց արաւ պղնձէ դռները։ Թէպէտ և մոլորեալ որդիք էք, ձեզ համար այնու ամենայնիւ տեղ կը գտնուի ձեր Հօր տան մէջ։ Դարձէք Նորա մօտ այնպէս, ինչպէս որ այժմ էք, հալածութեան աշխարհից, ոտի տակ կոխոտած եղջերենիների և ցեխոտ խոզերի միջից։ Դարձէք առ Նա ձեր ուրացութեան ամօթով, մեղքերի տոյժը կրած, և այն ինչ հագիւ դուք ճանապարհի կէսին հասած լինիք, Նա Ինքը ձեզ ընդ առաջ կու գայ և արտասուքով կընկնի ձեր պարանոցը։ Դուք միայն աղօթեցէք մաքսաւորի պէս. «Աստուած, քաւեա զիս զմեղա-

---

1) Սաղ. Ձ.

ւորս» 1), բացականչեցէք Սաղմոսերգուի պէս. «Տէր Աստուած իմ, ի քեզ յուսացայ, փրկեա զիս»։ 2) Ուրիշ աղօթք հարկաւոր չէ, եղբարք, միթէ այսքանը բաւական չէ։ «Հաւատամ, Տէր, օգնեա անհաւատութեանս իմում» 3), աղաղակեց այսահարեալ մանուկի հայրը, —և պիղծ այսը ելաւ նորա որդուց։ «Տէր փրկեա զմեզ, զի կորնչիմք» 4)—և յուժկու ձեռքը մեկնեցաւ դէպի աշակերտները, յարուցեալ հողմերը սաստուեցան, և նոքա փրկուեցան մութ ծովի մեծ շարժման կորուստից։ Հաւատացէք ինձ, ձեզ համար յոյս կայ. եթէ երբ և իցէ գէթ աղօտ կերպով այդ զգացումը ունեցել էք, պինդ բռնեցէք, որ ձեր կեանքը փրկուի։

Հիմա աւարտում եմ խօսքս։ Ով որ ձեզանից Աստուծոյ ողորմութեամբ մինչև այսօր լաւ է ապրել, թող շարունակէ աւելի ևս լաւ ապրելու, աւելի սուրբ նպատակներ ընտրելու, աւելի քաջասրտութեամբ հետևողական և անձնազոհ լինելու։ Իսկ որոնք որ հարկաւոր չափով լաւ չեն ապրել կամ վատ են կացել, աշխատեցէք, որ ձեր բոլոր վատութիւնները ձեր անցեալում մնան։ Ոչ ոք կատարեալ չի դառնում, առանց երկար մաքառելու։

Ասում են, թէ երբ որ կայծակը մարդու երեսի առաջ է փայլում, ելեքտրականութեան բոցը մի վայրկեանում սրանում է բոլոր ջղերի և նեարդերի ճանապարհներով և մտնում է ապականուող մարմնի ամէն մի հիւլէի մէջ։ Նոյնը պատահում է նաև հոգևոր աշխարհում, թէև հազուագիւտ դէպքերում։ Աւելի յաճախ Աստուծոյ ողորմութիւնը գործում է

1) Ղուկ. ԺԲ. 13:
2) Սաղ. Է.
3) Մարկ. Թ. 23:
4) Մատ. Ը. 25:

կամաց կամաց—աճող բոյսի պէս և ծագող արշալուսի պէս։ Աստուծոյ ողորմութիւնը նման է քնքոյշ, կանաչ բողբոջին, որ յետոյ կատարեալ հասկ է դառնում. մոխրագոյն, միգապատ առաւօտեան ծէգին, որ յետոյ պայծառ լուսաւոր օր է դառնում։ Դուք էլ ջանալով, կամաց կամաց առաջ գնալով, շատ ու քիչ սխալներ գործելով, բայց աղօթելով, հսկելով, ծուլութիւնից, վատ ընկերներից, երիտասարդութեան հեշտանքներից խուսափելով,—կը դառնաք նախ ապաշխարող, ապա արդարամիտ մարդ և վերջապէս այնպէս կատարեալ, ինչպէս ձեր երկնային Հայրն է։ Եթէ դուք երբ և իցէ լաւ դիտաւորութիւններ էք մտածել, այժմ էլ վերստին ընդունեցէք։ Բայց յուսացէք ձեր ոյժերի վերայ, մի վախեցէք ձեր տկարութիւնից։ Յիշեցէք միայն Նորան, Որ ձեզ սիրում է և Որ մեռաւ, որպէս զի Իւր արեամբ ձեզ կեանք պարգևէ։ Նորա մատը ձեզ նշանեց ամբոխի միջից։ Նա կոչեց ձեզ ձեր թափառութիւններից։ Գնացէք Նորա մօտ և ասացէք. «Տէր, գիտեմ, որ ապականուել եմ, մեղաւոր եմ, թոյլ եմ մնացել, թէ մեղքերի և յանցանքների մէջ եմ թաւալել։ Բայց ես զղջում եմ, Տէր, ես ծարաւում եմ դառնալ առ քեզ։ Ընդունիր սիրտս, որքան էլ կարծր և պղծուած լինի, որովհետև Դու ես իմ ստեղծողը, Քո արարածն եմ։ Առ կեանքս և արա՛, ինչ որ հաճոյ լինի Քեզ, միայն թէ Քեզ նուիրած լինի»։ Եւ հաւատացած կացէք, որ այսպիսի աղօթքը անլսելի չի մնայ։ Կրկնում եմ, ինչ որ քարոզիս սկզբում ասացի—յուսացէք և դարձեալ յուսացէք։ «Ո՞չ ծանեար, կամ ո՞չ լուար, Աստուած յաւիտենական Տէր, Որ հաստատեաց զծագս երկրի, ոչ քաղցիցէ և ոչ վաստակեսցի, և չիք քննութիւն իմաստութեան Նորա։ Տայ վաստակելոյ զօրութիւն, և որոց չիք ոյժ՝ յաճախէ զօրութիւն։ Վաստակեսցին

*մանկունք և խոնջեսցին, և ընտիրք անզօրք եղիցին։ Բայց որ սպասեն Տեառն՝ նորոգեսցին զօրութեամբ, նորափետուր զարդարեսցին իբրև զարծուիս. ընթասցեն և մի՛ վաստակեսցեն, գնասցեն և մի՛ խոնջեսցին»։ Այսպէս է ասում Տէրը* [1])։

1) Ես. խ. 28—31։

էր ճանաչել, երբ որ ամէնքը փախել էին նորանից, վերջը, այն սոսկալի երեկոյին, քահանայապետի գաւթում, արհամարհանօք և երդումներով ուրացաւ նորանից։

Միջին դարու մի մարդու կեանքը միշտ խիստ խրատական է թուել ինձ։ Այն էր մի էակի կեանք, որ Աստծուց առատօրէն պարգևներ էր ստացել։ Նա գեղեցիկ, քաջ, պերճախօս, ուժեղ, նրբամիտ էր։ Նա հարուստ էր և երևելի ի մանկութենէ։ Փիլիսոփայ և քահանայ գոլով, և բացի այս հանգամանքից արդէն իւր բնութեամբ զզուելով ամէն ցածութիւններից, հասաւ կատարեալ տարիքին, անարատ, արդար կեանք վարելով։ Եւ ահա այս մարդը, իւր փառքի և մտքի կատարեալ ծաղկման ժամանակ, գիտակցութեամբ ընկաւ անարգական մեղքի մէջ, ստացաւ յանկարծական սարսափելի հատուցումն, ապրեց անպատմելի յուսահատութեան մէջ և մեռաւ դառնագոյն կորստեան մէջ։ Այո՛, Աբելեարի անունը, փարոսի պէս, վտանգաւոր տեղում կանգնած է այնպիսիներին զգուշացնելու համար, որոնք մատաղ հասակում ենթարկվում են մտաւոր գերազանցութեան և հոգեկան գոռոզութեան փորձութեանց։

Ով, սիրելիք, յուսացէք և երկիւղածութեամբ աշխատեցէք ձեր փրկութեան համար։ Հոգւով կորած և իւր անարգութիւնն զգացող Դաւիթը՝ վերստին ստացաւ սրտի մաքրութիւն և նորոգուած ոգի։ Յիսուսի գորովագութ, աստուածային հայեացքը թափանցեց Պետրոսի հոգու խորութեան մէջ. աքաղաղը կանչեց, և նա զղջացաւ բորբոքած արտասուքներով։ Աստուծոյ ողորմութիւնն իջաւ նաև դժբախտ Աբելեարի վերայ, որ ծերացել և հիւանդացել էր մարմնով և հոգւով։ Նա մարմնով նորոգուեցաւ, որպէս մանուկ։ Կլիւնիի խաղաղ աբբայութեան մէջ նա սովորեց հեզութիւն և

սրտի խոնարհութիւն։ Նա շատ էր աղօթում, լուռ էր մնում և դարձաւ խոնարհ, պարզամիտ, երկիւղած, չարութիւնից խուսափող մարդ։ Բայց դոցանից իւրաքանչիւրը ի՜նչ ամօթոյ և տառապանաց հեղեղների մէջ բաց արաւ իւր ճանապարհը։ Թող Աստուած փրկէ ձեզ Իւր ողորմութեամբ այսպիսի անկումից, իսկ եթէ ընկնէք, թող Նա ձեզ ոյժ պարգևէ՝ մեծ վիշտ և կորուստ կրելուց յետոյ՝ այնպէս խոր և անկեղծ սրտով զղջալու, ինչպէս որ զղջացան այն մարդիկ։

Բայց ես անմիտ, տխրական-պայմանաւոր, լաւատեսութեամբ չեմ խօսի, պնդելով թէ ձեզանից շատերը այնքան բարձր վստահութիւն ունին, որով մարդ կարողութիւն է ստանում արդար կեանք վարելու։ Ո՛չ, այդպէս չէք։ Իմ մի բարեկամի խօսքը կրկնելով, ասում եմ. «Աւելի լաւ է մեռնեմ, քան սուտ խօսեմ»։ Ձեզանից շատերի հետ խօսակցելիս նկատեցի, որ դուք թէպէտև խիստ տարբերում էք իրարից, և թէպէտ դուք ամէնքդ (բացի մէկից կամ երկուսից, որ բնաւ ուշք ու միտք չեն հաւաքել, չեն աղօթել և ոչինչ բանի չեն ձգտել) այսօր փոքր ինչ յոյս էք զգում,—բայց առ հասարակ զուրկ էք հաստատուն յուսոյ շնորհից։ Ձեր յոյսը մի քանիների մէջ նման է մոխրի տակ հանգչող վերջին կայծերին, միւսների մէջ մթնանում է թերահաւատութեան կամ գրեթէ յուսահատութեան խաւարով։ Դէպի ձեզ, իմ կրտսեր եղբարք, աւելի է ձգտում սիրտս. ձեզ եմ ուզում մի քանի խօսք ասել, որ ձեզ համար բժշկութիւն կամ օգնութիւն լինի։ Ձեր յոյսը այն ջախջախուած եղեգն է, որ մեր Փրկիչը չի փշրի, այն առկայծող պատրոյգ է, որ Նա չի շիջուցանի [1]։ Դուք շատ խորն էք վիրաւորած, դուք չեղուել էք

1) Ես. խբ. 3, Մատ. ժբ. 20։

ուղիղ ճանապարհից, դուք ընկճվում էք մեղքի ծան-
րութեան տակ և ձեր տկարութեան գիտակցութիւ-
նից, դուք ի զուր չէք դողում ձեր անձի համար։ Եթէ
անհեղ դրոշմ ընդունելուց յետոյ, ձեզ ասուի, թէ էլ
չպէտք է երդուէք, պարտքեր անէք, պէտք է անաչա-
ռութեամբ վերաբերուիք յանձն առած գործին, լիքը
խօսակցութեան զուարճութիւնից խորշէք, դուք կարող
էք զղջալով խոստովանել, թէ արդարև այդպիսի մեղ-
քեր ունեցել էք, և խոստանալ, թէ «կաշխատեմ այլ
ևս այդպիսի բան չանել»։ Բայց արդեօք այնքան ոյժ
կունենաք, որ իրօք խոստանաք այնպիսի արարքներից
խուսափելու, որոնցից որ ոչ միայն քրիստոնէութիւնն
է պղուշացնում, այլ և որոշ չափով բնածին անձ-
նազապութիւնը, «ազնուական. բնութեան հպարտու-
թիւնը» սանձել է նաև տգէտ հեթանոսներին։ Դուք
այս մանր բաների մասին դեռ էլի տատանուող
ամօթխածութեամբ էք խօսում, որովհետև վատ սո-
վորութիւններն արդէն արմատացել են ձեր մէջ, և
զգում էք, որ կեանքի կանոնները անդադար խախտել
էք։ Բայց ի՞նչ կը լինի ձեզ հետ, եթէ մենք աւելի
ծանր բան պահանջենք և համոզենք ձեզ, որ ձգտէք
քրիստոնէական կենաց աւելի բարձր, վսեմ, խոր կա-
տարելութեան. եթէ յիշեցնենք յարատև, քաջասիրտ
ջանասիրութիւնը, որ մեր բնութեան ամենատարրա-
կան պարտք է. եթէ ասենք, թէ դուք պարտական
էք պաշտպանել ձեր եղբայրակիցներին և նոցա փրկել
մեղքերից ամենայն ուժով. եթէ քաջալերենք ձեզ, որ
հոգւոյ բոլոր ուժով պատերազմէք ձեր դէմ, որպէս
զի ձեր աչքի գերանը շիւղի տեղ չընդունէք, որ չմո-
ռանաք Աստծուն և զգուշանաք չար խորհուրդներից,
կռապաշտութիւնից և ձեր խղճի վերայ ծանրացած
մեղքի բռնակալութիւնից։ Այս բաներից այնպէս էք
շփոթվում, որ պարզ երևում է, թէ դուք գիտէք

ձեր տխուր թուլութիւնը, բայց տակաւին չգիտէք ձեր Փրկչի զօրութիւնն ու ձեռքը. զգում էք ձեր ստրկութիւնը, բայց չէք իմանում Նորա հզօրութիւնը, որ կարող է ձեզ փրկել: Հազիւ ոյժ կունենաք, որ խոստում տաք և ուխտէք: Ձեր կամաց ձայնով արտասանած «Ես կաշխատեմ»-ը—հնչում է որպէս «Վախենում եմ, թէ չեմ կատարի, ինչ որ խոստանում եմ»: Ձեզանից ոմանք կարող են խռոված սրտով ասել, թէ «Ես աշխատել եմ, ես փորձել եմ տարեցտարի կատարել ուխտած ուխտս, բայց միշտ անյաջողութեան եմ յանդիպել: Գիտեմ, որ այժմ էլ ջանքս զուր պիտի անցնի: Ինչ որ ուզում եմ, չեմ կատարում, իսկ կատարում եմ այն, ինչ որ չեմ ուզում: Իմ ուզածը միշտ բարի է, բայց չգիտեմ ինչպէս գլուխ բերեմ ցանկութիւնս: Զզւում եմ մեղքից, որով ստորանում եմ, և գիտեմ այն բանի չքնաղութիւնն ու ազնուութիւնը, ինչից որ հոգիս իսպառ անյոյս է: Չկայ ոչ մի ոյժ, որ ազատէր ինձ այս վիճակից և իմ մէջ արմատացած մեղքերից: Էհ, եթէ կամենաք, լաւ լաւ դիտաւորութիւններ կընդունեմ, բայց իմ լաւ դիտաւորութիւններից ես երբէք օգուտ չեմ տեսել: Անոնք նմանել են առաւօտեան ցօղին կամ վաղորդեան ամպին[1]: Աստուած ինձանից ծածկել է Իւր երեսը, մինչև անգամ այս օրերում ես ինձ զգում եմ տառապած և մեղաւոր. չեմ կարողանում աղօթքով մերձենալ Նորան»:

Սիրելիք, երբ որ այսպէս էք խօսում, սիրտս ցաւում է և այնպէս եմ զգում, թէ Աստուծոյ կամքն է, որ Նորա քաջալերութիւնը ձեզ յայտնեմ: Յուսացէք, ինչ էլ որ լինի, և շարունակեցէք ձեր պարտքը

---

1) «Իբրեւ զամպ վաղորդայնի եւ իբրեւ զցօղ առաւօտեան որ անցանէ:

կատարել, վախճանը միշտ բարի պիտի լինի։ Մինչև այսօր ձեր դիտաւորութիւններն եղել են լոկ միայն դատարկ բառեր. Աստուծոյ սիրոյն հաւատացէք, և դուք «վիրաւորուած զինուորներից շատերի պէս, տակաւին յաղթութիւն կտանէք կռուի մէջ»։ Ամենօրեայ պարտականութիւնները կատարելիս՝ ձեր ասած «չեմ կարող» բառը՝ ցոյց է տալիս բարոյական թուլութիւն, իսկ հոգևոր պարտականութեան նկատմամբ՝ ամբարըշտութիւն է և մահ։ Ամբարշտութիւն՝ որովհետև այդ խօսքով հասկացնում էք, իբր թէ Աստուած է թափել ձեր գլխին մեղքերը, որպէս զի անպատճառ մեղաւոր դառնաք, իսկ մահ՝ որովհետև այդպիսի վիճակը մարդու թևերը պիտի կտրատէ և վարժեցնէ անփութութեան ու յուսահատութեան։ Բայց այսօր Աստուած խօսում է ձեզ ձետ։ Նա ասում է ձեզ, որ թէպէտ և հեծութիւնից վաստակել էք և հիւանդ էք մեղքերով[1]), բայց և այնպէս Ինքը սիրում է ձեզ հայրական սիրով։ Քրիստոս մեռել է ձեզ համար և ձեզպէսների համար։ Դուք էք այն կորածները, որոնց որ փնտռելու Նա եկել է, այն հիւանդները, որոնց որ բժշկեց, այն բանտարկեալները, որոնց համար որ բաց արաւ պղնձէ դռները։ Թէպէտ և մոլորեալ որդիք էք, ձեզ համար այնու ամենայնիւ տեղ կը գտնուի ձեր Հօր տան մէջ։ Դարձէք Նորա մօտ այնպէս, ինչպէս որ այժմ էք, հալածութեան աշխարհից, ստի տակ կոխոտած եղջերենիների և ցեխոտ խոզերի միջից։ Դարձէք առ Նա ձեր ուրացութեան ամօթով, մեղքերի տոյժը կրած, և այն ինչ հագիւ դուք ճանապարհի կէսին հասած լինիք, Նա Ինքը ձեզ ընդ առաջ կու գայ և արտասուքով կընկնի ձեր պարանոցը։ Դուք միայն աղօթեցէք մաքսաւորի պէս. «Աստուած, քաւեա զիս զմեղա-

---

1) Սաղ. Զ.

ւորս»[1], բացականչեցէք Սաղմոսերգուի պէս. «Տէր Աստուած իմ, ի քեզ յուսացայ, փրկեա զիս»:[2] Ուրիշ աղօթք հարկաւոր չէ, եղբարք, միթէ այդքանը բաւական՞ չէ: «Հաւատամ, Տէր, օգնեա անհաւատութեանս իմում»,[3] աղաղակեց այսահարեալ մանուկի հայրը,—և պինդ այսք ելաւ նորա որդուց: «Տէր փրկեա զմեզ, զի կորնչիմք»[4]—և յուժկու ձեռքը մեկնեցաւ դէպի աշակերտները, յարուցեալ հողմերը սաստուեցան, և նոքա փրկուեցան մութ ծովի մեծ շարժման կորուստից: Հաւատացէք ինձ, ձեզ համար յոյս կայ. եթէ երբ և իցէ գէթ աղօտ կերպով այդ զգացումը ունեցել էք, պինդ բռնեցէք, որ ձեր կեանքը փրկուի:

Հիմա աւարտում եմ խօսքս: Ով որ ձեզանից Աստուծոյ ողորմութեամբ մինչև այսօր լաւ է ապրել, թող շարունակէ աւելի ևս լաւ ապրելու, աւելի սուրբ նպատակներ ընտրելու, աւելի քաջասրտութեամբ հետևողական և անձնազոհ լինելու: Իսկ որոնք որ հարկաւոր չափով լաւ չեն ապրել կամ վատ են կացել, աշխատեցէք, որ ձեր բոլոր վատութիւնները ձեր անցեալում մնան: Ոչ ոք կատարեալ չի դառնում առանց երկար մաքառելու:

Ասում են, թէ երբ որ կայծակը մարդու երեսի առաջ է փայլում, ելեքտրականութեան բոցը մի վայրկեանում սրանում է բոլոր ջղերի և նեարդերի ճանապարհներով և մտնում է ապականուող մարմնի ամէն մի հիւլէի մէջ: Նոյնը պատահում է նաև հոգևոր աշխարհում, թէև հազուագիւտ դէպքերում: Աւելի յաճախ Աստուծոյ ողորմութիւնը գործում է

---

1) Ղուկ. ԺԸ. 13:
2) Սաղ. Է.
3) Մարկ. Թ. 23:
4) Մատ. Ը. 25:

կամաց կամաց—աճող բոյսի պէս և ծագող արշալուսի պէս։ Աստուծոյ ողորմութիւնը նման է քնքոյշ, կանաչ բողբոջին, որ յետոյ կատարեալ հասկ է դառնում. մոխրագոյն, միգապատ առաւօտեան ծէգին, որ յետոյ պայծառ լուսաւոր օր է դառնում։ Դուք էլ ջանալով, կամաց կամաց առաջ գնալով, շատ ու քիչ սխալներ գործելով, բայց աղօթելով, հսկելով, ծուլութիւնից, վատ ընկերներից, երիտասարդութեան հեշտանքներից խուսափելով,—կը դառնաք նախ ապաշխարող, ապա արդարամիտ մարդ և վերջապէս այնպէս կատարեալ, ինչպէս ձեր երկնային Հայրն է։ Եթէ դուք երբ և իցէ լաւ դիտաւորութիւններ էք մտածել, այժմ էլ վերստին ընդունեցէք։ Բայց յուսացէք ձեր ոյժերի վերայ, մի վախեցէք ձեր տկարութիւնից։ Յիշեցէք միայն Նորան, Որ ձեզ սիրում է և Որ մեռաւ, որպէս զի Իւր արեամբ ձեզ կեանք պարգևէ։ Նորա մատը ձեզ նշանեց ամբոխի միջից։ Նա կոչեց ձեզ ձեր թափառութիւններից։ Գնացէք Նորա մօտ և ասացէք. «Տէր, գիտեմ, որ ապականուել եմ, մեղաւոր եմ, թոյլ եմ մնացել, թէ մեղքերի և յանցանքների մէջ եմ թաւալել։ Բայց ես զղջում եմ, Տէր, ես ծարաւում եմ դառնալ առ քեզ։ Ընդունիր սիրտս, որքան էլ կարծր և պղծուած լինի, որովհետև Դու ես իմ ստեղծողը, Քո արարածն եմ։ Առ կեանքս և արա՛, ինչ որ հաճոյ լինի Քեզ, միայն թէ Քեզ նուիրած լինի»։ Եւ հաւատացած կացէք, որ այսպիսի աղօթքը անլսելի չի մնայ։ Կրկնում եմ, ինչ որ քարոզիս սկզբում ասացի—յուսացէք և դարձեալ յուսացէք։ «Ո՞չ ծանեար, կամ ո՞չ լուար, Աստուած յաւիտենական Տէր, Որ հաստատեաց զծագս երկրի, ոչ քաղցիցէ և ոչ վաստակեսցի, և չիք քննութիւն իմաստութեան Նորա։ Տայ վաստակելոց զօրութիւն, և որոց չիք ոյժ՝ յաճախէ զօրութիւն։ Վաստակեսցին

*մանկունք և խոնջեսցին, և ընտիրք անզօրք եղիցին։ Բայց որ սպասեն Տեառն՝ նորոգեսցին զօրութեամբ, նորափետուր զարդարեսցին իբրև զարծուիս. ընթասցեն և մի՛ վաստակեսցեն, գնասցեն և մի՛ խոնջեսցին»։ Այսպէս է ասում Տէրը* [1])։

---

1) *Ես. խ.* 28—31։

ԻԴ.

# «ԱՍՏՈՒԱԾ ԵՄ ԵՍ».

«Ոչ արարից ըստ բարկութեան սրտմտութեան իմոյ, եւ ոչ դարձայց ջնջել զԵփրեմ. զի Աստուած եմ ես, եւ ոչ մարդ»:

Ովս. ԺԱ. 9:

Ովսէ Մարգարէի խիստ տարբեր դարձուածներում շարունակ միշտ մի և նոյն խրատ է լսվում, բայց կարծես թէ այդ մարդն անդադար ինքն իրան հակառում է: Մի տողի մէջ նա խօսում է վախճանական կորուստ սպառնող անէծքի մասին, միւսի մէջ գորովաձայն մխիթարում է և խոստանում է նորոգման ոսկի աւուր գալուստը: Մի տունը Եփրեմի վերայ թափում է պատուհասի սոսկաշունչ սպառնալիքներ, իսկ հետևեալ վկայութիւնն այն տպաւորութիւն է գործում, որպէս թէ մարգարէն անսայլայլելի սիրով հեկեկում է մոլորեալ որդու պարանոցի վերայ: Գերեզմանական նզովքը ընդհատվում է հրեշտակային օրհներգութեան հնչիւններով. այն սպառնալիքը, թէ Իսրայէլը կը չորանայ, արմատախիլ կը լինի և այլ ևս պտուղ չի տայ, փոխվում է այն հաւատով, թէ Իսրայէլը աստուածային ցօղով ոռոգած շուշանի պէս

կը ծաղկի, և Լիբանանի պէս արմատ կարձակէ [1]։ Մարգարէն իւր գրքի մէջ հակասութիւնները այնպէս էլ թողնում է առանց հաշտեցնել ձգտելու։ Այսպիսի հակասական մարգարէութիւնները կարո՞ղ են ճշմարիտ լինել։ Միթէ անոնք իրար չե՞ն քարձում։ Միթէ անհնարութիւն չէ՞ լինի, եթէ ասենք, թէ և՛ մէկ և՛ միւս գուշակութիւնները կատարուելու են։ Բայց ես հաւատում եմ, որ անոնք կատարուել են յատուկ կերպով, հոգևոր իդէալական կերպով։

Երբեմը չորացել և արմատախիլ է եղել. ազգը որպէս ազգ. դադարեց գոյութիւն ունենալ և յաւիտեանս յաւիտենից անյայտացել է։ Մարգարէութեան այս մասը դժուար չէ մեկնել։ Կարելի է, թէ դուք ասէք, դատավճիռը կատարուել է, բայց ոչ խոստումը, որ սուտ հանդիսացաւ. թէ դատաստանը կատարուել է, բայց ողորմութիւնը չերևեցաւ. թէ սապարը փայլատակեց օդի մէջ, շշնջեց՝ օդը ճեղքելով, կտրած ծառը վայր տապալեցաւ, բայց այնուհետև այլ եւս չծաղկեց։ Այս բոլորը պատմութեան մէջ կատարուել է։ Ուրեմն այն խոստումը, թէ ծառը կանճի հոտաւէտ ծաղիկներով, կը ծաղկի, պտուղ կը բերէ, միայն խաբուսիկ յոյս էր։ Այս չէ՞ ձեր միտքը։ Կամ Ս. Գրքի իմաստը այլապէս ընբռնելով, կարելի է ձեզ թուի, թէ սպառնալիքները բառացի կատարուել են, իսկ խոստումները ապագայ քրիստոնէական եկեղեցու պանծելի նկարագրութիւն են կազմում։ Կամ թերևս և այսպէս ասէք. թէ դատավճիռը մօտալուտ ապագայի կանխագուշակութիւն էր, իսկ խոստումը խիստ հեռաւոր ժամանակին է վերաբերում, այնպէս որ մի օր, երբ և իցէ, Իսրայէլացւոց երկոտասան ցեղերը բաղխս բուն նշանակութեամբ անշուշտ կրկին կը միա-

---

1) Ովսէ. ԺԴ. 5, 6։

նան, որով հակասութիւնը կը վերանայ: Կարծում եմ, որ դժուարակնճիռ խնդրի այսպիսի լուծումները ձեզ չեն գոհացնի: Ի՞նչ երկրաւոր օգուտ պիտի բերէր Ովսէի ունկնդիրներին նորա գուշակութիւնը, թէ թէպէտ իրանք պէտք է կորչեն և տարագրուին, բայց շատ դարերից յետոյ մի բոլորովին նոր ժողովուրդ, այն ևս հեթանոսական ժողովուրդ, հոգեկան երանութիւն պիտի վայելէ: Կամ թէ ի՞նչ շահ պիտի ունենայ նոցա համար այն մարգարէութիւնը, թէ ամբողջ հազարամեակներից յետոյ, երբ ու իրանց ոսկրները փոշի և մոխիր դարձած կը լինեն, օտարների հետ խառնակուած իրանց թոռանց թոռները մի որոշ երկրում կապրին: Բռնաւորի սրի տակ ճնշուած Եփրեմի խեղճ ուսուցիչները (քահանաները)[1] կարող էին լսած նախատինքի դէմ՝ իրանց սրտունջը անդրադարձնել նախատողին, թէ մարգարէներն էլ ոչինչով լաւ չեն խաբեբայ ուսուցիչներից, որովհետև բառախաղութիւններ են բանեցնում, խօսում են երկդիմի, տալիս են խոստում և յետոյ խլում են յոյսը: Բայց ի հարկէ մարգարէի դիտաւորութիւնը այդ չէր լինել: Նա, ինչպէս ինձ թւում է, այն կարծիքն ունէր, թէ աշխարհը ինքը ամբողջովին մի հակասութիւն է—կեանք և մահ, լոյս և խաւար, օրհնութիւն և անէծք, բարկութեան հուր և երանութեան ցօղ: Այս բաները տեսնելով, նա չէր ճգնում հաշտեցնել հակառակութիւնները, այլ հաստատապէս հաւատում էր, թէ Աստուած—սիրոյ Աստուած է, թէ վերջիվերջոյ գթութիւնը կը յաղթանակէ, թէ Աստուած պատուհասելով մեղքը, չի մոռանայ նաև յանցաւորներին խնայել հայրաբար:

Գերմանական մեծ փիլիսոփան, մարդկային կե-

---

1) Ովս. Դ. 1—10, Ե—Զ:

նաց լուրադոյն թափանցողը, հին հրէական մարգարէից ոչ նուազ պայծառութեամբ տեսաւ անհաշտելի հակասութիւններ բնութեան այն իրերի մէջ, որոնք ենթակայ են մեր սահմանափակ մտքին, որի առաջ առերեւութապէս հանդիսանում են անհամաձայն, հակառակ օրէնքներ, բայց այդ օրէնքները ճշմարիտ են, որովհետեւ իրանց վախճանական միութիւնը եւ հաշտութիւնը վերաբերում են անհուն բնազանցութեան բաժնին, որ վեր է, քան մեր տկար հասկացողութիւնը։ Մարգարէն ամենայն պարզութեամբ առաց. Աստուած ձեզ կը պատժէ, նա կօրհնէ եւս. Նա անշուշտ կը հաւանէր Ջորջ Փաքոյին, որ ցնորելով ասում է. «Ես տեսայ մահուան եւ խաւարի ովկիանը. սակայն լուսոյ անհուն ովկիանը իւր հեղեղի մէջ խեղդեց խաւարը, եւ այս հանգամանքում տեսայ Աստուծոյ անհուն սէրը»։ Սրբերից շատերը նորա պէս դաւանել են, թէ «վերջիվերջոյ բարութիւնը կը տարածուի, վերջիվերջոյ լայնածաւալ կը սփռուի բոլորի վերայ եւ ամենուրեք, եւ ձմեռը կը դառնայ գարունք»։

Ուրեմն Ովսէի մարգարէութիւնը ճշմարիտ էր, եւ ոչ ստութիւն, այն եւս խռոված սիրտը խաղաղացնող մարգարէութիւն է. բայց աւելի խաղաղական են այս բառերը, թէ «Զի Աստուած եմ Ես, եւ ոչ մարդ» 1)։ Կարծում եմ, որ մեծագոյն մխիթարութիւն կեանքի մէջ, մանաւանդ զղջման եւ ինքնադատութեան րոպէներում, պէտք է այն մտածութիւնը լինի, թէ մեր դատաւորը Աստուած է, եւ ոչ մարդ։ Մարդկանց դատավճիռները շատ անգամ լինում են կոշտ, կոպիտ, եսական, անգութ։ Աստուծոյ արդարութիւնը մեղմ է եւ ոչ նեղսիրտ։ Երբ որ դատաւոր են հանդիսանում դպիրներն ու փարիսեցի-

3) Ովս. ԺԱ. 9։

ները, յոյս չկայ նոյն իսկ Ս. Պօղոս առաքեալի կամ Ս. Յովհաննէս Աստուածաբանի համար։ Ի՞նչ կարող էր յուսալ նոյն իսկ Փառաց Տէրը, երբ որ կանգնած էր նոցա դատաստանի առաջ։ Ի՞նչպէս էին վարուում հաւատաքննիչները մեծագոյն սրբերի հետ յանուն կրօնասիրութեան։ Նոքա մէջ տեղ էին բերում տանջելու համար ունելիք, մամուլ, երկաթէ կօշիկ, կախաղան և խարոյկ։ Եթէ դոցա նման դատաւորներ դատէին մարդկանց, էլ ո՞վ մեզանից կարժանանար աւելի ողորմած դատավճռին, քան մշտական տանջանքի դատապարտութեան, այնպիսի տանջանքի, որով հաւատաքննիչները չարչարում էին երկրի վերայ տառապողներին, իբր թէ այն նպատակով, որ նոցա հոգին ազատուի գեհենի յաւիտենական կրակից։ Ուղիղ է ասել հնդկաց այն իմաստունը, որ շատ անգամ կրկնել է, թէ Աստծուն նկարագրել կարելի է մի միայն «Ոչ, ոչ» բառերով։ Այս խօսքով նա այն իմաստն էր յայտնում, թէ շատ բան պէտք է մերժուի, ինչ որ մեր մոլորամտութեամբ Աստծուն ենք վերագրում. Աստուած—Աստուած է, և ոչ թէ մարդ։ Աստուած միշտ ողորմած է, անհունապէս գորովագութ է, ուստի և նորա ճշմարիտ սէրը Իւր սիրեցեալների սրտից հանում է վախը, որովհետև վախի մէջ տանջանք կայ։ Աստուած—մոլորեալ որդոց Հայր է. Քրիստոսը մաքսաւորների և մեղաւորների բարեկամ էր։ Թէ Աստուծոյ յայտնութեան մէջ, Ս. Գրքում, և թէ Քրիստոսի խօսքերում մենք շարունակ տեսնում ենք սպառնացած պատժի անհեղութիւնների հետ (այնքան որոշ յայտնած, որ ոչ մի մարդ չի կարող կարծել, իբր թէ ինքը պատուհասից զերծ կը լինի) նոյնպէս և անկասկած սիրոյ և յուսոյ անշէջ ճառագայթներ։ Այն խօսքը, թէ «Ոչ արարից ըստ բարկութեան սրտմտութեան Իմոյ, և ոչ դարձայց ջնջել զԵփրեմ. զի Աստ-

ուած եմ Ես, և ոչ մարդ»», կարող է բովանդակ Ս. Գրքի մեծագոյն մասի երևակայութիւն համարուիլ։

Բայց ինչո՞ւ այս անհամեմատ աստուածային խօսքը հէնց Ովսէի սրտից է բղխել, այն աղքատ, տխուր, գրեթէ ծերութեան ժամանակ քարոզող մարգարէից։ Ինչո՞ւ Նորա քարոզութիւնների մէջ այսպէս վեհագոյն յաղթանակով է հանդիսանում սէրը բարկութեան վերայ, յոյսը յուսահատութեան վերայ։ Ինչո՞ւ իւր շրջապատողների մեղքի և ատելութեան մէջ՝ Աստուծոյ ձայն է լսում, որ կարծես թէ ասում լինի. «Իմ սէրը—անփոփոխ է, բարձր է, քան երկինքը, խոր է, քան անդունդը, ճշմարիտ է և հաւատարիմ, բուռն է իբրև զմահ»։

Նա վիշտ և չարչարանք կրելով՝ կեանքից խրատ է ստացել։ Իւր գրքի առաջին երեք գլխում բաց է անում մեզ այդ գաղտնիքը։ Նորա նկարագրութեան այդ երեք գլուխները արձակ շարադրութեամբ են գրուած, և այն տեղ Նա խօսում է դառնացած կենաց տառապանքի մասին, որով Նա մարգարէ է դարձել, տառապանք, որ Նորա բոլոր պատկերների, տեսարանների և խրատների վերայ իւր դրոշմն ու գոյն է դնում։ Ահա Նորա պատմութիւնը. Նա ամուսնացաւ մի կնոջ հետ, որ իսկութեամբ կամ նշանական կերպով կոչվում էր Գոմեր։ Ովսէի գրքի մէջ մի քանի գծեր կան, որով անդլիացու ուսումնականի ենթադրութիւնը ստուգվում է, թէ երևի Նա այդ կնոջը առաջին անգամ տեսել է վայրագ պար կաքաւելիս ի պատիւ Աստարտայի (Բահաղիմի), պսակ դրած թուխ մազերին, կարմիր հագուստով, ձեռքին և ոտքին փայլուն թանկագին զարդերով [1]։ Թերևս մարգարէն խանդաղատանօք երազում էր, թէ պիտի կարողանայ այս

1) Ովս. Բ. 8, 11, 13:

չքնաղ արարածը փրկել գարշելի գայթակղութիւննե-
րից, իւր կին առնելով։ Գէթ հաւատում էր նա, թէ
Գոմերին ամուսնանալով, կատարում է Աստուծոյ
հրամանը։ Սակայն հէնց առաջին ժամանակից այս կինը
անհաւատարիմ գտնուեցաւ։ Մինչև անգամ կնոջից
ծնած զաւակները իւր կրծքին սեղմելով, մարգարէն
տարտամելի կասկածների մէջ էր՝ և նոցա կոչեց Լո-
րուխամա և Լոամմի, որ նշանակում է «Զողորմեալ»
և «Ոչ ժողովուրդ իմ» 1)։ Ովսէն ամենայն ինչ համբե-
րութեամբ տարաւ. նա ներեց, նա յուսացաւ, նա
աշխատեց սրտի մէջ խոր ծածկել իւր մաշող վէրքը։
Բայց պատահեց աւելի վատթարագոյնը. Գոմերը, այս
քարասիրտ մայրը, այս անարժան ամուսինը, յայտ-
նի, անամօթ կերպով թողեց հեռացաւ նորանից։ Նո-
րան թողեց ուրիշի համար, բայց Ովսէն դարձեալ սի-
րում էր շնացողին։ Այնուհետև մոլորեալ որդու պէս,
երեսով գեղեցիկ, բայց բարքով վատ կինը սկսեց աւելի
և աւելի ընկնել, ընկղմելով խայտառակութեան և
պատուհասի աղտեղութեան մէջ։ Կոպիտ անգթու-
թեամբ, որ միշտ ընթացակից է անսանձական հեշտա-
սիրութեան, հոմանին, որի համար որ Գոմերը փա-
խաւ ամուսնուց, դուրս բերեց այդ կնկան շուկայ,
որպէս զի ստրկուհու պէս վաճառէ. ոչ ոք չուզեց
այս ողորմելի, անպատուած կնոջ գնել, նոյն իսկ այն
գնով, որ յետին ստրկուհուն էին վճարում. այն ժա-
մանակ ինքը մարգարէն գնեց թշուառուհուն 2)։ Նա
գնեց դորան, որպէս զի իւր քամահած, խայտառա-
կած, տխուր տունը դարձնէ, հարկաւ ոչ այն նպատա-
կով, որ դարձեալ իրեն կին լինի, և ոչ որ կրկին մայր
լինի իւր զաւակների. ոչ, այս անկարելի էր։ Ովսէն

---

1) Ովս. Ա. 6, 9։
2) » Գ. 1—3։

Գոմերին այն նպատակով չփրկանաւորեց գերութիւ-
նից, որ նա իւր թեթեւամիտ, աղջկութեան օրերի պէս
կրկին կաքաւէ ծիրանւոյ և զարդերի մէջ։ Ոչ, նորան
իւր տունը բերեց, որպէս զի նա մենակ ապրի իւր
կենաց աւերակներում, որ մենակ լաց լինի և մի առ
մի յիշատակէ դառն անցեալը, այն օճախի կշտին
նստած, ուր նա արդէն դժոխային կրակ էր վառել[1])։
Թշուառականագոյն Գոմերը իւր անկման պատիժ էր
կրում իւր աւերած և քայքայած կենաց խաւարի մէջ.
այնու ամենայնիւ մարգարէի սրտում յոյս էր ջերմա-
նում, թէ թշուառը երկար զղջմամբ կարող է իւր
մեղքերից սրբուիլ, թէ արցունքների բարերար ցօղն
երբ և իցէ կը լուանայ նորա բոլոր բծերը։ Նա նորան
սիրում էր, ուստի և տակաւին հաւատք կարող էր
ունենալ նորա զղջման մասին. սրտի բաբախմամբ
յուսալով, որ կինը թերևս մաքրուի, թոյլ տուեց
նորան իւր օճախում ապրելու։ Իւր բոլոր վարմունք-
ներով, կարծես թէ ասում էր նորան. «Մի համարիր,
որ ինձ չսիրելով՝ դու կորցրել ես իմ սէրը։ Մի կար-
ծիր, որ ես չարայիշութեամբ մեղքերդ միշտ երեսիդ
պիտի տամ. ես պատրաստ եմ մոռնել, արգահատե-
լով վիճակդ։ Հաւատա, ներում եմ քեզ բոլոր սրը-
տովս, միայն թէ Տէրն էլ քեզ թողութիւն տայ։
Փրկութիւնը քո ձեռքումն է, կրկին յուսացիր Ա-
տուծոյ գթութեանը»։

Այս է այն տխուր, սոսկալի պատմութիւնը, որ
Ովսէն պատմում է իւր գրքի առաջին երեք գլխում.
Նա շատ կարճ է խօսում, հաղորդում է միայն այն-
քան, որքան որ հարկաւոր է իւր կեանքը և խրատը
հասկացնելու համար։ Նորա պատմութիւնը բացա-
տրում է իւր մարգարէացածների մէջ արտայայտուող

---

1) Ովս. Բ. 14—24:

յուզումների փոփոխութիւնը, որ ալէկոծուած ծովի ընդդիմակ ծփանքներին է նմանում։ Դարձեալ բացատրում է և այն, թէ ինչու այս մարգարէն Աստուծոյ սէրը այնպէս խորութեամբ է ըմբռնում։

Ինձ այնպէս է թւում, որ Ովսէի կեանքից և Նորա վարդապետութիւնից մենք կարող ենք մեծ խրատ քաղել։ Նորա կեանքը ուսուցանում է մեզ հետեւեալը։ Եթէ բացի մեր աշխարհից, ուրիշ ոչինչ չլինէր, եթէ չհաւատայինք, թէ կայ հանդերձեալ կեանք, որ տեղ որ Տէր Աստուածը ուղղում է այն առերևութական անարդարութիւնները, որ մեզ վիճակվում են մեր երկրաւոր գոյութեան ժամանակ, — անբացատրելի գաղտնիք կու մնային մարդկանց երկրաւոր վիճակի խիստ ծայրայեղ տարբերութիւնները, մինչև որ մենք հարկադրուած կարող էինք բացականչել, թէ «չար մարդը մշտադալար մրտենու պէս է ծաղկում», իսկ արդարը տոորացած, տանջուած և ոչնչացած է մնում։ Ամենայն մարդուն վիճակուած է վիշտ, թէև ոչ մի և նոյն չափով։ Մի տեսնենք, թէ տառապանքները ինչպէս են ազդում իմաստուն և անմիտ մարդու վերայ։ Ոմանք տրտնջում են Աստծու դէմ, տրտնջում են նոյն իսկ Նորա արդար պատիժների վերաբերութեամբ. Նորա արդար դատաստանը նոքա ընդունում են ըմբոստ բարկութեամբ, որ թէ՛ անմիտ և թէ՛ անզօր է։ Միւսները հնազանդվում են ամենայն բանին, ինչ որ Նորանից ստանում են, գիտենալով, որ Նորանից եկածը լաւ և արդար պիտի լինի. կարելի է, թէ նոքա այդ ժամանակ տխուր սրտով խոնարհում են իրանց գլուխը, կարելի է թէ դառնութեան րոպէներին նոցա աչքերը արտասունքով են լցվում, բայց նոցա սիրտը նման է ծծից նոր կտրած մանուկի սրտին։ Այդ մարդիկ Աստծու առաքած դժբախտութիւնն ընդունում են, որպէս զզուելի դեղ, բայց բուժիչ դեղ. իսկ առաջինների

վերայ վիշտը ազդում է, որպէս բանականութիւնն հանգցնող թոյն: Եւ ինչ զանազան կերպով են ազդում փորձութիւնները երկուսի վերայ: Ոմանք նմանում են Լիբանանու նետահար վագրին, որ իւր կատաղութեամբ ինքն իրան աւելի է վիրաւորում, որովհետև ջանալով որսորդի վերայ յարձակուելու և նորան պատառ պատառ անելու, աւելի խորն է մխում նետը իւր մարմնի մէջ. այս մարդկանց սրտին պատճառած վէրքը՝ մահաբեր քաղցկեղ է դառնում: Իսկ Աստուծոյ խրատիչ պատուհասին խոնարհողները՝ աւելի լաւանում են և հոգւով կազդուրվում: Միայն անխառն զուտ ոսկուց, գեղեցիկ պայծառ գունով ոսկուց՝ կարելի է զարդարել սուրբ սեղանը. միայն ամենազուտ ձուլածոյ ոսկուց կարելի է քերովբէներ դրոշմել սրբութեանց սրբութեան համար: Իրաւ է, Ովսէն սարսափելի փորձութեան հանդիպեց: Նորա ամբողջ կեանքը խաւարեցաւ, Գոմերին ունելով. Նա կարող. էր, որպէս ողբերգութիւնների թշուառ և խաբուած ամուսին, մեծաչարչար տառապութեան հանդիպելով, եղերերգը վերջացնել սպանութեամբ կամ ինքնասպանութեամբ: Սակայն ոչ սպանութիւն, ոչ ինքնասպանութիւն, ոչ կատաղութեան վայրագ յորձանք փոթորկուեցաւ Աստուծոյ մարգարէի սրտի մէջ. ոչ, Աստուծոյ մատը նորա քարոզութեան մագաղաթի վերայ արձանագրեց յաւիտենական բառեր, ի շնութիւն տակաւին ոչ ծնեալ սերնդոց: Այդպէս կը պատահի և ամէն մէկին, որ հաւատով կը հնազանդուի Աստուծոյ անօրէնութեան, որ կաշխատէ իւր հոգու օգտին դարձնել Աստուծոյ պատիժը և իւր խոնարհութեամբ կը ձգտի, որ նորա բարկութեան այժմեան ծանրութիւնը՝ ապագայում բերէ արդարութեան հարուստ հունձ: Սաղմոսերգուն ասում է, թէ մինչև որ վշտերի չէր հանդիպել՝ չարութեամբ

էր ապրում։ «Խրատք Քո կանգնեաց զիս իսպառ»[1])։

Այս մենք տեսնում ենք, որ Ովսէի սուրբ հնազանդութիւնը իւր համար մեծ խրատ դարձաւ, առանց որոյ երբէք մեծ մարգարէ չէր լինի։ Արդեօք մենք էլ քան չե՞նք կարող սովորել այդ մեծ խրատից։ Ի՞նչ էր խրատը։ Ահա կարճ խօսքով. եթէ մարդու սէրը, ամուսնու սէրը դէպի իւր կինը, հօր սէրը դէպի իւր զաւակը, այդպէս խոր կարող է լինել, հապա որչափ անհամեմատ, անհուն, յաւիտենական պիտի լինի Աստուծոյ սէրը։ Ո՞ր անյատակ խորութեան, ո՛ր անդունդների մէջ չի հասնի այդպիսի Լուսոյ ճառագայթը։ Ովսէն իւր վշտալից օրինակով հասկացաւ, որ նոյն իսկ մարդկային սէրը, այդ տկար, խեղճ զգացումը, որի մէջ միշտ խառնուած է լինում անձնապաշտութիւնը, թէ մարդկային այդպէս անկատար սէրը, որի թևերը հեշտ է աղտոտվում և ճմլվում և որ խորշակի շնչից թառամում է,—կարող է հերոսութեամբ տանել անհաւատարմութիւնը, ապերախտութիւնը։ Միթէ նոյնպէս չէ՞ Աստուծոյ անփոփոխ անհուն սէրը, որ սիրում է իւր հողածին թոյլ արարածներին։ Այնպէս սաստիկ սիրելով իւր յանցաւոր և ապերախտ կնոջ, Ովսէն զգում էր, որ Աստուած էլ կարող էր շարունակ սիրել մեղաւոր և ապերախտ ժողովուրդը, մեղաւոր և ապերախտ հոգուն։ Ահա թէ ինչու նորա սպառնալիքը յաճախակի ընդհատվում է օրհնեբանութեամբ։ Նա տեսնում է Եփրեմի[2]) անկումն ու կորուստը. նա տեսնում է թէ ինչպէս թագաւոր թագաւորի յետևից կործանում է պատերազմի մէջ կամ սպանութեամբ, նա հեռուից լսում է, թէ ինչպէս երկիրը սասանում է Ասորեստանեայց զօրքի ոտքի

1) ԺԷ. 36, Աչ. եւ այլն։

2) Ովս. ԺԳ—ԺԴ։

տակ։ Նա գիտէր որ Եփրեմի համար էլ պահուած է Ցեղապետի[1]) վիճակը. թէ այն օրինակով այժմ եւ մայրին ու պուրակները ծայրերից վայր կը ձգուէին, որպէս զի ստնդիացիները քարով ջարդուէին և յղիները պայթէին, բայց և այնպէս դրքի վերջին գլխում ոճն այնպէս մռայլ, խիստ, ճնշուած չէ յուսաբեկ մտքերի ծանրութեամբ. և նա անտարակուսելի, ամենապարզ խօսքով նկարագրում է Եփրեմի վիճակը. «Դարձի Իսրայէլ, առ Տէր Աստուած քո. սիրեցից զքեզ կամակար, զի դարձաւ բարկութիւն Իմ ի քէն»։[2]) Աթոռի շուրջ կայծակները փայլատակում են, որոտումը դղրդում է, ահարկու ձայներ են լսվում, բայց և այնպէս աթոռը շրջանակուած է զմրուխտի ծիածանով։

Եղբարք սիրելիք, խորհեցէք Ովսէի խրատի մասին, որովհետև ձեզանից իւրաքանչիւրի հոգուն է վերաբերում այդ քարոզը։ Դուք մեղանչել էք, դուք խոտորուել էք ուղիղ ճանապարհից մոլորուած աշխարհների պէս, բայց և այնպէս հաւատացած եղէք, որ Աստուած ձեզ սիրում է, որովհետև Աստուած սէր է և Աստուած Աստուած է, և ոչ թէ մարդ։ Դուք մոլորեալ որդի էք, այո, մոլորեալ էք, բայց և այնպէս որդի էք։ Կարելի է, թէ դուք նստած էք խոզի երամակի մէջ, բայց և այնպէս դուք Նորա զաւակներ էք։ Մարդն անխղճաբար վերջնականապէս փշրում է ընկեալ եղէգը և ոխակալութեամբ չէջուցանում է առկայծեալ պատրոյգը։ Սակայն Աստուած ընկեալ եղէգը չի ջարդի և առկայծեալ պատրոյգը չի հանգցնի, զի Աստուած է և ոչ մարդ[5])։ Ուստի և Նորա յայտնած

---

1) Գ. Թագ. ԻԱ. 5 եւ շար., Դ. Թագ. Թ. 7 եւ շար.

2) Ովս. ԺԴ. 2 . . . 5 . .

3) Ես. ԽԲ. 3։

խօսքերը մեզ այսպէս են խրատում. «Կացէք ինչո՞ւ էք ուզում մեռնել և ձեր հոգին կորցնել: Միթէ երկրնքում աւելի չե՞ն ուրախանում մի ապաշխարող մեղաւորի համար, քան իննսուն և իննը արդարների համար, որոնք կարօտ չեն ապաշխարութեան» 1) Ահա ինչ է Ովսէի գրքի իմաստը, և ահա թէ ինչ է Աստուծոյ Որդու աւետարանի էութիւնը:

1) Ղուկ. ժե. 7:

## ԻԵ.

# ԿԱՄՔՆ ԱՍՏՈՒԾՈՅ.

«Պատմեցաւ քեզ, ով մարդ, զինչ է բարի. կամ զինչ խնդրէ ի քէն Տէր. բայց առնել զիրաւունս եւ սիրել զողորմութիւն եւ խոնարհեցուցանել զանձն գնալ ընդ Աստուծոյ քում»: Միք. Զ. 8:

Զպէտք է անուշադիր թողնենք Միքէ մարգարէի այս վերին աստիճանի շահեկան խօսքերը, որ պատահեցան այսօրուայ ընթերցուածների մէջ։ Անոնց մէջ աւանդվում է յայտնութեան նպատակը, որ է մարդկանց ուղղութիւն. անոնք արտայայտում են սրբութեան ձգտող կենաց՝ ներքին նշանակութիւնը։ Ս. Գիրքը երկու անգամ առաջարկում է մարդկային խորհրդածութեան համար նշանաւոր հարցում և տալիս է պարզ ու որոշ պատասխան։ Մէկ տեղը արդէն յիշատակած վկայութիւնն է. միւսը Աւետարանի այն տողերն են, որ մեզ պատմում են, թէ մեծատուն պատանիներից մէկը հարցրել է. «Զի՞նչ բարի գործեցից զի ընդունիցիմ զկեանսն յաւիտենականս»։ 1) Այս դէպքում պատասխանն եղաւ. «Եթէ կամիս ի կեանս մտանել, պահեա զպատուիրանսն»։ Մի և նոյն հարցմունքի այլ պատասխանն են կազմում Միքէի գրքի բառերը. «Պատմեցաւ քեզ, ով մարդ, զինչ է բարի, կամ զինչ խնդրէ ի

---

1) Մատ. ԺԹ. 16:

քէն Տէր, բայց առնել զիրաւունս և սիրել զողոր-
մութիւն և խոնարհեցուցանել զանձն գնալ ընդ Աս-
տուծոյ քում»։ Այս բառերը այն աստիճան պարզ
են, որ բացէիբաց ոչնչացնում են դարերով հիւսած
սարդոստայնի թելերը։ Անոնց իմաստն այն է, թէ
կրօնասիրութեան նպատակն է բարձրացնել, վսեմաց-
նել մարդկային հոգին, մաքրել մեր արարքները, ազդել
մեր սրտին բարութիւն և ողորմածութիւն։ Բոլոր մար-
գարէների ազդեցիկ ուսուցման էութիւն էլ այդ բա-
ռերով կարելի է արտայայտել. և դարձեալ Աստուծոյ
Որդւոյ սքանչելի բարոյական յայտնութեան աւետա-
բեր ազաւնին նոյն այդ բառերն են։ Ուշի ուշով
զննելով հին ուխտի և քրիստոնէական եկեղեցու
պատմութիւնը, մենք տեսնում ենք, որ գրեթէ ամ-
բողջ հին և նոր կտակարանի մէջ՝ բարեպաշտու-
թեան արտաքին կողմի զօրեղ հօսանքի հետ ի միասին՝
հոսում է արդարութեան աւելի ևս առատ, մաքուր
խոր հոսանք։ Եւ երբ արդարամտութիւնը՝ միայն
արդարամտութիւնը՝ ճշմարիտ կրօնասիրութեան գլխա-
ւոր էութիւնն է կազմում. ճշմարիտ բարեպաշտը՝ լաւ
հոգի ունի, լաւ կեանք է վարում։ Կրօնը—մի զօրու-
թիւն է, որ մարդուն դարձնում է առ Աստուած.
կրօնասիրութեան զգացումը մեզ օգնում է հրաժար-
ուիլ մեր ցանկութիւններից, օգնում է մեզ սանձել
մեր լեզուն, մեղմացնել մեր բռնկումները, սպանել
մեր մէջ արթնացող չարաչար մոլութիւնները. կրօնը
մեզ սովորեցնում է համբերութեան, հեզութեան, հա-
մեստութեան, ներողամտութեան, միշտ և հանապազ
թելադրում է մեզ լաւ բարք ու վարք ունենալ։ Կրօնը
—կամք է բանականութեան մէջ և սէր է կամքի մէջ։

Հարցրեցէք դաւանաբանութեան կարճահայեաց
գիտունից. «Ի՞նչ պէտք է անեմ, որ փրկուեմ»։ Նա ձեզ
կը պատասխանէ, խիստ խնամով ու բարեխղճութեամբ

ձեւակերպած տրամաբանական-բնազանցական սահման տալով։ Նոյն բանը հարցրեցէք մեր կրօնական կուսակցութիւնների մէկի արբանեակից, և նա մոլեռանդաբար կը պնդէ կրօնաւորութեան արտաքին հանդամանքները։ Բայց հարցրեցէք Սամուէլից, Դաւթից, Եսայայից, Ամովսից, Միքէից, Երեմիայից, չորս աւետարանիչներից, հարցրեցէք նոյն իսկ մեր Տէր և Վարդապետից, և դուք գլխովին այլ պատասխան կը ստանաք, այլ՝ ոչ միայն բառով, այլև հոգւով։ Դուք կը լսէք, թէ «Եթէ կամիս ի կեանս մտանել, պահեա զպատուիրանսն»։ 1) Սամուէլը հարցնում է. «Եթէ հաճո՞յ իցէ Տեառն ողջակէզ և զո՞հ՝ իբրև լսել ձայնի Տեառն», և պատասխանում է. «Ահա լաւ է ունկընդրութիւն քան զզոհ ընտիր, և հնազանդութիւն քան զճարպ խոյոց»։ 2) Սաղմոսերգուն ասում է, թէ Աստծուն պատարագ կը մատուցանէր, բայց Նորան հաճելի չեն ողջակէզները, ուստի ինքը միշտ Նորան օրհնութիւն է երգում։ 3) Օրինաց երկրորդումն ասում է, թէ Աստուած Իսրայէլից պահանջում է միայն մի ինչ, որ Իսրայէլը ամէն բանում գնայ Նորա ճանապարհով և սիրէ Նորան։ 4) Եսային գրել է. «Զի՞ կայ Իմ և յաճախելոյ զոհիցդ ձերոց, ասէ Տէր։ Յագեալ եմ ողջակիզօք խոյոց ձերոց, և զճարպս գառանց և զարիւն ցլոց և նոխազաց ոչ կամիմ։ Անօրէնութիւն է տօնն, զամսագլուխս ձեր և զտօնս ձեր ատեաց անձն Իմ, եղեն ինձ բեռն. ձեռք ձեր լի են արեամբ։ Լուացարուք, սրբեցարուք, ընկեցէք զչարիս ձեր յանձանց ձերոց առաջի աչաց Իմոց։ Դադարեցէք ի

---

1) Մատ. ժթ. 17։
2) Ա. Թագ. ժե. 22։
3) Սաղ. Ծ. 18։
4) Բ. Օր. Ժ. 12։

չարեաց ձերոց, ուսարուք զբարիս գործել»։ [1]) Այն հարցին, թէ «Ո՞վ ելցէ ի լեառն Տեառն, կամ ո՞վ կացցէ ի տեղւոջ սրբութեան Նորա», գրական պատասխանն այս է. «Որ սուրբ է ձեռօք և ամբիծ սրտիւ, որ ոչ առ զնանրութիւնս յանձն իւր, և ոչ երդուաւ նենգութեամբ»։ [2]) Իսկ ի՞նչ է ծողովողի խօսքով վախճան բանի այդ ամէնի. «ԶԱստուծոյ երկիր, և զպատուիրանս Նորա պահեա. զի այս է մարդն ամենևին»։ [3]) Ամենևի՛ն—այսինքն այս է մարդու կատարելութիւնը։

Այսպէս են խօսել մեծ մարգարէները. նոր կտակարանը շնչուած է մի և նոյն գերագոյն գաղափարով։ Ի՞նչ է մեծագոյն ճգնաւոր Յովհաննէս Մկրտչի քարոզութեանց եզրակացութիւնը։ Ճիշտ միայն երկու բառ. ապաշխարեցէք և հնազանդեցէք։ Ի՞նչ է Քրիստոսի յայտնութեան եզրակացութիւնը։ Երկու բառ, որ փորագրուած է այն արձանի վերայ, որը որ այսօր գրուեցաւ մեր աքքայութեան մէջ, և որը որ ներկայացնում է մի ազնիւ մարդասիրէն,—այն է, թէ սիրեցէք, Աստծուն ծառայեցէք։ Քրիստոս ոչ մի բառով չի յիշում այն հին աւանդութիւնները, որ իւր ժամանակ ուղղափառութիւն էր համարվում. չի յիշէլ ոչ լուացում, ոչ զգեստաւորութիւն, ոչ տօն կամ պահք, ոչ աղօթքի երկարութիւն կամ ծնկաչոքութիւն, որ այն ժամանակ բարեպաշտութեան անպայման կարևոր արտաքին կողմն էր համարվում։ Նա Բարեկամ էր մեղաւորների, նոցա պղջացած անառակ կնոջ և մի և նոյն ժամանակ Իւր սոսկալի մերկացումներով մտրակում էր ի պաշտօնէ քրմերին։ Իսկ Նորա առաքեալների վարդապետութիւնները։ Նոցա լեզուն նման է

1) Ես. Ա. 11... 17։
2) Սաղ ԻԴ. 3—4։
3) Ժող. ԺԲ. 12։

հին մարգարէների լեզուին։ Կարևորագոյն արարողութիւն համարուած թլպատութեան մասին՝ Պօղոս առաքեալն ասում է, թէ ոչինչ է, բայց ոչինչ է նմանապէս և անթլպատութիւնը, այլ հարկաւոր է միայն Աստուծոյ պատուէրների կատարումը։ «Այդչափ անմի՞տ էք, գրում է նա Գաղատացիներին, սկսեալ հոգւով, և արդ մարմնո՞վ վախճանիք»։ 1) Ինչ էր Պօղոս առաքեալի վարդապետութեան գումարութիւնը—«կեանք ի Քրիստոս» խօսքը և երկու բառ՝ «հաւատք, գործք»։ Ի՞նչ էր Յակոբ առաքեալի քարոզութեանց կնիք բանի—կարեկցութիւն, անարատ մնալը աշխարհի պայթակղութիւններից։ Ի՞նչ էր Յովհաննու Աստուածաբանի վարդապետութեան ամփոփումը։ Մի բառ—սէր։ Դուք այսօր լսեցիք նորա մի խօսքը, որ ասում է, թէ «որ առնէ զարդարութիւն—արդար է»։ 2) Այս խօսքը ակնյայտնի ճշմարտութիւն է, բայց Աւետարանիչ Յովհաննէսը մեկնում է այն, որոշելով ճշմարիտ սրբութեան նշանակութիւնը մի այլ ասացուածով. «Ամենայն որ յԱստուծոյ է ծնեալ՝ մեղս ոչ առնէ, զի սերմն Նորա ի նմա մնայ» 3)։ Այո՛, դուք այս լսեցիք այսօրուայ թղթից, և մի և նոյն ժամանակ գիտէք, որ պապն ու կարդինալները այրեցին Յովհաննէս Հուսին, բարձրացնելով նորան խարոյկի վերայ, ինչպէս որ Քրիստոսի ուրիշ շատ սրբերին բարձրացրել էին. նորան հագցրին դատապարտեալի հագուստ, այն է բոցերի մէջ այրուող սատանաների նկարներով հագուստ, և հաւատացրին, թէ նա երկրաւոր խարոյկից յետոյ՝ կանցնի դժոխքի անշէջ կրակի յաւիտենական տանջանքներին։ Սակայն Աստուծոյ հրեշտակները դատապարտեալի հագուստի

1) Գաղ. Գ. 3:
2) Ա. Յով. Գ. 7:
3) » » » 9:

մէջ ամփոփեցին ոչ թէ զոհերին, այլ հաւատաքննիչնե-րին, վասն զի մարդասպան էին նոքա, և ոչ թէ Հու-սը. նոքա էին վարվում անարդարութեամբ, և ոչ թէ նա, իսկ «որ առնէ զմեղս՝ ի սատանայէ է» 1): Երբ որ Քրիստոսից հարցուցին, թէ ինչպէս որոշուի ճշմարիտ մարգարէն. կամ ուսուցիչը սուտից, նա չպատասխա-նեց, թէ նոքա կը ճանաչէք իրանց կարծիքներով և գիտութիւններով, այլ ասաց, «Ի պտղոյ նոցա ծանի-ջիք զնոսա» 2): Այս սկզբունքներն են Ս. Գրոց բա-րոյական ճշմարտութեանց էութիւնը:

Դուք բարեպաշտ էք, սիրելիք, ապացոյց այդ-քանի այն է, որ այս տեղ ժողոված էք: Բայց եկեղե-ցին յաճախելուց աւելի կարևոր բան կայ: Ամէնից գլխաւոր խնդիրն է, որ դուք ձեր սրտում իմանաք, գիտակցութիւն ունենաք, թէ արդեօք անկե՞ղծ է թէ դիմակաւոր է ձեր կրօնական զգացմունքը: Ինչպէս որ աշխատեցի Ս. Գրքի շատ վկայութիւններով ցուցանել և ապացուցանել ձեզ, արդարութիւնն ու սրբութիւնը ճշմարիտ կրօնասիրութեան էութիւնն ու հետևանք է. ձեր կենաց ձգտումն ու նպատակը այդ առաքինու-թիւններն են. Եթէ դուք հասնիք այդ բարեմասնու-թիւններին, դուք ազատ կը լինիք այն ամէնից, ինչից որ Քրիստոս ազատել է ձեզ, այսինքն դուք կազատ-ուիք ամէն աւելորդ ծանրաբեռն և առաւելապէս մարմնական լուծից: Եթէ ձեր սիրտը մաքուր չլինի, եթէ արդար կեանք չվարէք, ձեր արտաքին եկեղեցա-սիրութիւնն ու աստուածպաշտութիւնը Աստուծուն աւելի կարևոր չի երևայ, քան «զպղինձ որ հնչէ, կամ զծնծղայս որ ղօղանջէն» 5). այս դէպքում Աստուծոյ

---

1) Ա. Յով. Գ. 8:

2) Մատ. Է. 16:

3) Ա. Կոր. ԺԳ. 1:

կշեռքում այդ ցոյցը աւելի չի ծանրանայ, քան աւազի հատիկ։ Հարցնում եմ, արդեօք դուք ձեզ չէ՞ք խաբում Աստուծոյ առաջ, արդեօք համարձա՞կ էք դնում ձեր խղճի դատարանը, կամ առ հասարակ դուք ձեր դատաստանին դիմո՞ւմ էք։ Զգո՞ւմ էք դուք ձեր անձը իբրև ճշմարտապէս լաւ մարդ։ Եթէ այդպէս էք, այն ժամանակ թէպէտև ձեզ ատեն և հալածեն մարդիկ, որ ձեր կարծիքները չեն հաւանում, այնու ամենայնիւ դուք կը տեսնէք, թէ ինչպէս ձեր առաջ կը բացուին երկնքի ոսկի դռները և ձեզ կը հովանաւորեն յաւիտենական սիրոյ թևերը։ Իսկ եթէ դուք լաւ չէք լինի և եթէ հաւատարմութեամբ չէք ծառայի Աստըծուն և մարդկանց, հապա ձեր արտաքին բարեպաշտութեան բոլոր սխրագործութիւնները ոչ մի շահ չեն բերի ձեզ, և Տէրը կասի ձեզ. «Ոչ երբէք գիտէի զձեզ, ի բաց կացէք յինէն» 1)։

Գիտեմ որ հին բաներ եմ քարոզում։ Յիշում եմ, որ ուրիշ անգամներումն էլ այսպիսի ճշմարտութիւններ ձեզ յայտնել եմ։ Բայց ես պատրաստ եմ դարձեալ կրկնելու ասածներս, որովհետև հէնց այդ բաներից ենք իմանում Աստուծոյ կամքը։ Աստուած ամէնից առաջ պահանջում է արդարամտութիւն։ Ձեզ կը պահէ և կը փրկէ միայն արդարութիւնը։ Աստծու առաջ առաւելապէս նշանակութիւն ունի ձեր բարութիւնը, ձեր բարոյականութիւնը։ Առանց բարութեան, առանց շնորհի, առանց մաքրութեան, ազնուութեան, հաւատքի, առանց ամենահազուադէպ առաքինութեան՝ այսինքն առանց ճշմարտասիրութեան և առանց մեծանձն խոնարհութեան—լոկ միայն արտաքին բարեպաշտութիւնը՝ ոչինչ է։

Այսպիսի քարոզութիւնը շուտ շուտ պէտք

---

1) Մատ. Է. 23:

կրկնուի, որովհետև մարդու սրտի մէջ մշտապէս խոր նստած է փարիսականութիւնը, որով ձևը գերադասավում է էութիւնից և հրէութեան ոգին մուծանվում է քրիստոնէական մաքրութեան մէջ։ Հին և Նոր կտակարանի յարաբերութեանց կատարեալ տգիտութիւնից՝ աղէտալի թիւրիմացութիւններ առաջ եկան, թէպէտ Ա. Եբրայեցիս թուղթը պէտք է բոլոր այդպիսի տարակոյսները փարատէր։ Գործը գնալով միշտ աւելի վատթարացաւ։ Կարծիքների անսխալականութեան գաղափարը սոսկալի անէծք դարձաւ մարդկային ազգի համար. տասը հազար զոհերի արիւնը՝ թէժ դրեց այդ գաղափարի վերայ, և միլիոնաւոր կտրած սրտերի դառնութիւնը՝ բողոքում է դորա դէմ։ Մեղքի, ապականութեան և արատի մէջ ընկղմած պապը հաւատաքննութիւն հիմնեց։ Կարլոս Ե-ը և Փիլիպոս Բ-ը, այդ ծայրագոյն անբարոյականները, միայն Նիդերլանդում հազար ութ հարիւր անմեղ զոհ դատապարտեցին գլխատութեան և խարոյկի՝ այնպիսի չնչին յանցաւորութեան համար, ինչպէս որ է մսեղէն կերակրի գործածութիւնը պահքի օրերին, կամ թէ մայրենի լեզուով սաղմոսի ընթերցանութիւնը։ Երբ որ վերածնութիւնից յետոյ յունաց գրականութիւնը դարձեալ կեանք առաւ, ձեռքին բռնած ունենալով Նոր կտակարանը, երբ որ լուսազուարթ, բարեբար վերանորոգութիւնը Աստուծոյ օգնութեամբ ճանապարհ բաց արաւ տգէտ կաթոլիկութեան և հակաքրիստոնեայ բռնակալութեան մութ խաւարի մէջ, և երբ որ Աւետարանի չքնաղ անուշաբուրութիւնը մարդկանց հոգին կրկին լցրեց երկնային լուսով, այն ժամանակ յանկարծ՝ հնացած աւանդութիւնների երկաթի ցանցը խորտակուեցաւ։ Բայց շուտով հին մոլորութիւնները կրկին գլուխ բարձրացրին։ Նոյն իսկ այժմ սակաւ չեն այնպիսի մարդիկ, որոնք ըստ չափու կարողու-

թեան աշխատում են քանդել վերանորոգութեան գործը, բայց եթէ անգլիական Եկեղեցին քիչ քիչ մօտենայ այն կէտին, որ սկսէ դաւաճանել իւր ամենաէական սկզբան, որ է՝ վերանորոգեալ եկեղեցի, ես ամենայն վստահութեամբ գուշակում եմ, թէ նրա գոգից կը հեռանան շատերը, այսինքն այն ծնկները, որ չեն պաշտել Բահաղին, և այն շրթունքները, որ չեն համբուրել այդ կուռքը։ Եթէ անգլիական Եկեղեցին մոռանայ և քիչ քիչ սկսէ նմանել Հռովմէական եկեղեցուն, անոր յատուկ վարդապետութիւնների և ծիսակատարութիւնների որքանեակ դառնալով, հապա վաղ թէ ուշ (ես կարծում եմ, շատ շուտ) անդառնալի կերպով կը կործանուի, որպէս կը իւր աւերակների վերայ աւելի կատարեալ և մաքուր չէնք կանգնի։

Կարծում եմ, հիմա պարզ պէտք է լինի այն ճշմարտութիւնը, թէ կենաց համար ամենակարևորն է—«առնել զիրաւունս, և սիրել զողորմութիւն, և խոնարհեցուցանել զանձն գնալ ընդ Աստուծոյ»։ Այս է Աստուծոյ կամքը։ Եթէ այս տեղ գտնուողներից մէկը պարծենում է իւր կրօնական կարծիքների ուղղափառութեամբ, բայց մի և նոյն ժամանակ ցած կերպով է վարվում — առուտուրի մէջ անազնիւ է, ամենայն ինչ սրբապղծելով է դատում, բամբասում է, զըրպարտում է, անառակ կեանք է վարում, եթէ նա ըստախօս է (իսկ ստութեան քողով ծածկուածների թիւը շատ է, շատ շատ է), եթէ նա կեղծ վկայութիւն է տալիս, եթէ ընչասէր է, — այն ժամանակ նա, թերևս հարսանեաց խնջոյքին մասնակցէ, բայց կը մնայ ոչ հարսանեկան հանդերձներով։ Իսկ եթէ ձեր մէջ կայ իրօք մաքուր, անկեղծ և բարի մարդ, եթէ նա աջանչանում է ամենայն մեհ և վսեմ բաներից և ընթանում է ազնիւ շաւղով, եթէ նա խոնարհութեան և

տիրոջ գործերում Քրիստոսի օրինակին հետևելու է ձգտում,—Նա կարելի է թէ ամբողջ աշխարհի անարգութիւն կրելով մեռնի, բայց ձեր Փրկիչը, որ Նորա համար օրինակ էր, կորոշէ Նորա վիճակը, շշնջելով Նորա խոնջացած հոգուն—«ազնիւ, ծառայ բարի և հաւատարիմ... մուտ յուրախութիւն Տեառն քո» 1):

Եթէ կամենում էք լսել այսօրուայ քարոզի վերջաբանը—ահա երկու խօսքով. Դուք, Տէր Աստծուն սիրողներ, ջանացէք ատել չարութիւնը: Մի՛ խօսէք ձեր կուսակցութիւնների և աղանդների մասին, այլ լաւ քննեցէք ձեր հոգին: Աստուած ամէնից աւելի հարցնում է ձեր սիրտը: Նա չի հարցնի, թէ ինչ անուն էք կրել երկրի վերայ, ինչ աղանդի էք պատկանել. Նա կը հարցնէ, թէ ո՛վ էք: Եղէք մաքուր, ապա թէ ոչ լուացէք ձեր ձեռքերը, ով մեղաւորներ: Սրբեցէք ձեր սիրտը, կեղծաւորներ և երկդիմի խարդախներ: Թէրևս այդ հնարով փրկուէք, Խաչեցեալի ամենառատ ողորմութեամբ: Միմիայն ուղղուելու կամքն ու ձգտումը—կարող է ձեզ օգնել:

## ՎԵՐՋ

1) Մատ. ԻԵ. 21:

# ՑԱՆԿ

# ՎՐԻՊԱԿՔ

| Եր. | տող. | | սխալ է. | Ուղղիր. |
|---|---|---|---|---|
| 16 | 3 | ներք. | Անգլեկան | Անգլիան |
| 28 | 11 | » | ստանում | ստանում. |
| 33 | 16 | » | բեմի | աթոռի |
| » | 10 | » | շատեր | շատերը |
| » | 6 | » | , չնչին | չնչին |
| 36 | 2 | վեր. | թէ և | թէև |
| » | 4 | » | բեմի | աթոռի |
| » | 3 | ներ. | կարգը, | կարդը. |
| 40 | 4 | վեր. | Հպատակութիւնը | Հպարտութիւնը |
| » | 18 | » | Զաբէն | Զարրէն |
| 42 | 6 | » | ընդ միջեց | ընդմիջեր |
| » | 10 | » | ունի | ունի, |
| 43 | 8 | » | կուրացած | կուրացած՝ |
| 44 | 2 | ներ. | Exatiner | Examiner |
| 45 | 2 | վեր. | Անգլիայում։ | Անգլիայում»։ |
| » | 3 | » | .Մենք | Մենք |
| » | 14 | » | Մի | Ամենայն |
| » | 7 | ներ. | պաշտութեան | պաշտութեան՝ |
| 46 | 1 | վեր. | վայէնդ | վայէնտ |
| » | 3 | » | նորա | նոցա |
| » | 14 | » | պան են Ց. Քրիս-տոսի, | պանեն Ց. Քրիս-տոսի |
| 47 | 7 | ներ. | փրկել, | փրկել |

25

| | | | | |
|---|---|---|---|---|
| 49 | 13 | վեր. | քեր. | քեր |
| 50 | 16 | ներ. | դիտէք | դիտէք |
| » | 12 | » | Քրիստոսին | Քրիստոսին՝ |
| 52 | 9 | վեր. | համար։ | համար, զմուռսը կամ այնիւ իւղը՝ թաղման համար։ |
| 54 | 6 | » | րախութիւն | րախութիւն, |
| » | 4 | ներ. | որորանին | որորանին, |
| 57 | 5 | » | անբիծ չէ։ | անբիծ չէ, |
| 60 | 5 | վեր. | չփթէք | չփոթէք |
| » | 12 | » | միջից. | միջից |
| » | 5 | ներ. | «լոյս | , «լոյս |
| 61 | 4 | վեր. | խորը | խոր |
| » | 9 | » | իսկութիւն, | իսկութիւն. |
| » | 11 | » | շրջապտող | շրջապատող |
| » | 12 | » | տեղերում, | տեղերում. |
| 62 | 10 | » | հերկուի | հերքուի |
| » | 17 | » | հանգամանքներով | հանգամանքնե-րով այդ |
| » | 8 | ներ. | ծաեց, որ կարծգես | ծագեց, որ կար-ծես |
| 63 | 13 | վեր. | շարժուել | շարժուել, |
| 64 | 5 | ներ. | բղխումը ( | բղխումը՝ |
| 65 | 14 | վեր. | չունինք։ | չունի՞նք։ |
| » | 11 | ներ. | շըշիւնի | շրշիւնի |
| 66 | 13 | վեր. | կլինի | և լինի |
| 72 | 9 | ներ. | կոխոտին | կոխոտեն |
| » | 4 | » | մոլութեան | մոլորութեան |
| 73 | 10 | վեր. | չե՞ն | չե՞ն փրկուել ո-րոգայթներից։ Այո, չար սա-տանայի որո-գայթներից կա-րողացել են |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 73 | 13 | ներ. | մեղքերը | մեղքերը» |
| » | 6 | » | մէջ | մէջ, |
| » | 4 | » | անտաժանելի | անտանելի |
| 74 | 5 | վեր. | արդար և | արդարև |
| » | 10 | » | թւով | թուով |
| » | 12 | ներ. | չեկնա- | չիկնա-` |
| » | 8 | « | եղբայր էք։ | եղբայր էք, |
| 75 | 14 | վեր. | որ Ս. Հոգուն | Ս. Հոգուն |
| 78 | 1 | ներ. | դորան | այն |
| » | | ծան. | Գskալ | գskալ |
| 79 | 8 | վեր. | Արքեցան | Արքեցած |
| » | 12 | » | կացան | բացան |
| » | 14 | » | տուժում | գուժում |
| 81 | 15 | ներ. | չեն | չէին |
| 83 | 1 | վեր. | թագաւորը [1]) | թագաւորը, ո՞ւր է Սեփփարուիմ քաղաքի, Անայի և Աւայի թագաւորը [1])։ |
| » | | ծան. | Դ. Թ. | Դ. Թագ. |
| 84 | 14 | վեր. | հոգու դժգոհութեան | դժգոհ հոգու |
| 90 | 11 | ներ. | իմանալով | իմանալով, |
| 91 | 15 | վեր. | մէջ։ | մէջ *)։ |
| » | | ծան. | 6։ | 26։ |
| » | | » | ———————— | *) Առակք Սող. Ե. Զ. Է. եւ այլն։ |
| 92 | 11 | վեր. | բայց ոչ ոքի զղջումն չի խոստացել, ով որ մեղանչում է»։ | բայց զղջացումը թողել է մեղանչողի կամքին»։ |
| 93 | 7 | » | փողով | քողով |
| » | 9 | ներ. | կատարեալն | կատարեալ |
| 101 | 3 | վեր. | հնարիմացութիւն՝ | հնարիմացութիւն, |

| Page | Line | | Misprint | Correction |
|---|---|---|---|---|
| 101 | 5 | վեր. | մրցութեան | մրցութիւն |
| 102 | 14 | » | դապետութեան | դապետութեան, |
| 103 | 12 | ներ. | Նկատմամբ | Նկատմամբ։ |
| » | 10 | » | անարատ | անարդար |
| 104 | | ծան. | Ո՞չ ասե | Ո՞չ աս ե |
| 105 | 13 | վեր. | աւա́ղ | առաջ |
| » | 12 | ներ. | Գեբբոն | Գիբբոն |
| » | 7 | » | ողողուող | ողողած |
| 106 | 7 | » | Էդմոնդի | Էդմունդի |
| 108 | 15 | » | Էտմունդն | Էդմունդն |
| 109 | 12 | վեր. | աարիներ | տարիներ |
| 110 | 8 | ներ. | ասենք | այսինքն |
| » | 6 | » | պարեգօտ | պարեգօտ հագած |
| » | | ծան. | 28։ | 25։ |
| 111 | 7 | ներ. | հրով և | հրով և իբր |
| » | 5 | » | այժմ էլ | էլ |
| » | 4 | » | յուզուի | յուզուի այժմ |
| 112 | 15 | » | մադասպանի | մարդասպանի |
| 113 | 4 | վեր. | եթէ | թէ եթէ |
| 114 | 13 | » | հակուիք | համակուիք |
| » | 15 | » | ուաել | ուտել |
| 115 | 6 | ներ. | սրտով | սրտով՝ |
| 116 | 9 | վեր. | համար | համար ինքը |
| » | 5 | ներ. | Օդէմբորսկեան | Պէմբրոկեան |
| 117 | 4 | վեր. | Գէկոնը | Բէկոնը |
| » | 6 | ներ. | եռանդով | եռանդով. |
| 119 | 8 | վեր. | չարող էակների | չարուածների |
| » | 4 | ներ. | Նպատակի դռներին | Նպատակի, դըռ-ներ են, |
| » | 3 | » | Նաւէ | Նաւ է |
| 121 | 3 | վեր. | Եթէ | «Եթէ |
| » | 4 | » | մեր | մեր, |
| » | 12 | ներ. | էր քարի էր | էր, քարի էր |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 122 | 11 | » | անցորտները | անցորդները |
| » | 5 | » | վազում | վազում էին |
| 123 | 14 | » | կէր» | կէտ» |
| » | 2 | » | տօնախմբութեամբ, | տօնախմբութեան |
| 124 | 10 | » | տմենեքեան | ամենեքեան |
| » | 8 | » | յեդին | յետին |
| 125 | 1 | » | խաղացնում | խաղաղացնում |
| 126 | 13 | վեր. | պահես | պահել ես |
| » | 10 | ներ. | գետից | գետից, |
| » | 5 | » | սուրբերը | սուրբերը, « |
| » | 2 | » | ամէնքը․ գառան | ամէնքը Աստու-ծոյ գառան |
| 127 | 8 | վեր. | ինչ որ | ինչ ոչ |
| » | 18 | » | ձգտում են | ձգում են |
| 128 | 13 | ներ. | հանդի- | կը հանդի- |
| 130 | 10 | վեր. | մաքուր, | մաքուր |
| 134 | 13 | ներ. | փառքր | փառքը |
| 135 | 7 | » | լին | լինին |
| 136 | 6 | վեր. | Ոչ | Ոչ, |
| » | 10 | » | ազգարար | ազդարար |
| » | 17 | » | Կատարեցէք | Պարդացէք |
| 137 | 13 | » | իրար | խրատ |
| » | | ծան. | ԻԴ. 3։ | ԻԳ. 3։ |
| 138 | 8 | վեր. | սպասեցէք | սարսեցէք |
| » | » | » | անզգամութեամբ, | անզգամութեամբ |
| » | 10 | » | ներքին | ներքին, |
| » | » | » | հեզութիւնը | հեզութիւնը, |
| » | 11 | » | հաւատքը | հաւատքը, |
| 139 | 6 | » | քով | քով, |
| » | 10 | » | որքութիւնները | Նրբութիւնները |
| 140 | 12 | » | աղօթնների | աղօթքների |
| » | 10 | ներ. | հիւր | հետ |
| » | 4 | » | Բերում | բերում |

Digitized by Google

| | | | | |
|---|---|---|---|---|
| 141 | 9 | վեր. | մէջ | մէջ, |
| » | 9 | ներ. | վայրկեանին: | վայրկեանին, |
| » | 7 | » | խոցհուրդները | խորհուրդները |
| » | 1 | » | լուսով, | լուսով: |
| 142 | 6 | » | իրան | իրան |
| 143 | 9 | վեր. | է թուում | էր թուում |
| » | 17 | » | ես հէք | ես, հէք |
| » | 11 | ներ. | Տէր Տէր | Տէր, Տէր |
| » | 9 | » | աէսից | աեսից |
| » | 7 | » | տատանցէր | տատանեցեր |
| » | 5 | » | Ով է Նա՛, Նա մի | Ով է Նա՛. Նա այն |
| 144 | 2 | վեր. | կազմութիւնը | կազմութիւնը: |
| » | 9 | » | բոպէներին | բոպէներին, |
| 154 | 9 | ներ. | տութեան | տութեան |
| 164 | 16 | վեր. | ոիրելիք | սիրելիք |
| 168 | 12 | » | որամտութիւնը | սրամտութիւնը |
| 171 | 8 | ներ. | կը շարժէ | շարժէ |
| » | 2 | » | դանուի | գտնուի |
| 172 | 6 | վեր. | դատապարվում | դատապարտվում |
| 181 | 3 | » | դնում | գնում |
| 186 | 9 | ներ. | հմաանալ | հմտանալ |
| 190 | 1 | » | անդամ | անգամ |
| 193 | 2 | վեր. | ԽՆՋՈՅՔ | ԽՆՋՈՅՔ *) |
| » | | ծան. | ——— | *) Ս. Հաղորդութեան արժանանալու օրը: |
| 194 | 3 | վեր. | սեղան ի | սեղանի |
| » | 11 | » | ղուք | դուք |
| 200 | 5 | » | դգուում | գգուում |
| » | 12 | » | մեղանչական | մեղանչական |
| 211 | | ծան. | ասուած: | ասուած, ուսման տարեմտին: |
| 212 | 4 | ներ. | էշին | էշին կամ ցռուն |

| | | | |
|---|---|---|---|
| 212 | 3 ներ. | էշը | էշը կամ ցեռը |
| 237 | 1 վեր. | շլացած | շլացած՝ |
| 254 | 1 » | արի | բարի |
| 255 | 1 ներ. | մարդ։ | մարդ։ 1) |
| » | ծան. | ——————— | 1) Ա. Կոր. Գ. 12, 13։ |
| 260 | 9 վեր. | Թոյլ էր տալիս զըղ-ջացած անառակ կը-նոջ, որ նա իւր ջերմ արտասուքով լուա-նայ նորա ոտքերը և ի՛ր մազերով սրբէ, | Թոյլ էր տալիս, որ Իւր ոտքերը մի զղջացած ա-նառակ կնոջ ջերմ արտասու-քով լուացուին և նորա մազերով սրբուին, նա |
| 262 | 6 ներ. | ո | ու |
| 265 | 9 » | մարդիք և քաղա-քացիք | մարդ և քաղա-քացի |
| 271 | 5 վեր. | 5։ | 25։ |
| 273 | 2 » | լոնացել | լռնացել |
| 326 | 6 ներ. | նացհեց | նարհեց |
| 342 | 9 » | Թող | Թող |
| 348 | 14 վեր. | Քրիստոնեայ | քրիստոնեայ |
| 360 | 5 » | իմ Ես | եմ Ես |
| 370 | 4 ներ. | բուոտը | բուստը |